


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝* [http://www.armin.am](http://www.armin.am)

*էլ. փոստ՝* [info@armin.am](mailto:info@armin.am)

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ԱՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ



ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ—1988

ԳՄԴ 63.3(2Հ)43
Հ 177

Գրախոս՝ ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Վ. Բ. ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ

**Հակոբյան, Թ. Խ.**

**Հ177** Անի մայրաքաղաք /Երևանի պետ. համալս.— Եր.: Երևանի համալս. հրատ., 1988.—328 էջ.

Սույն աշխատությունը ստեղծվել է հեղինակի «Անիի պատմություն» հայերեն երկհատոր ուսումնասիրության (լույս տեսած 1980 և 1982 թթ.) հիման վրա: Համառոտակի շարադրված են Հայաստանի փառավոր մայրաքաղաքի դարավոր պատմությունը, տնտեսության, հասարակական, քաղաքական և մշակութային կյանքի բնորոշ կողմերը: Ներկայացվում են նաև կոմունալ տնտեսությունը, ճարտարապետական և պատմական հուշարձանները, քննվում են քաղաքի կործանման պատճառները, նրա հետագա ճակատագիրը և այլն: Գիրքը պատկերազարդ է:

Հ $\frac{0505040000-00}{704(02)-88}$ 51—88 ԳՄԴ 63.3(2Հ)43

АКОПЯН ТАТЕВОС ХАЧАТУРОВИЧ

СТОЛИЦА АНИ

(На армянском языке)
Издательство Ереванского университета
Ереван—1988

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

**«Անին չեն, աշխարհս ավեր.**
**աշխարհս չեն, Անին ավեր»**
**(ժողովրդական)**

Միջնադարյան Հայաստանի մեծահռչակ Անի մայրաքաղաքը 4—5 հարյուրամյակ եղել է երկրի տնտեսական ու քաղաքական կյանքի, մշակույթի, հասարակական հարաբերությունների գլխավոր կենտրոնը: Անին տնտեսական ու մշակութային կապերով առնչվում էր հարևան ու հեռավոր երկրների՝ Վրաստանի, Աղվանքի, Պարսկաստանի, Հնդկաստանի, Միջին Ասիայի, Բյուզանդիայի, Միջագետքի, Հարավային Ռուսիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Հունգարիայի և, նույնիսկ, հեռավոր Չինաստանի հետ: Լինելով Մերձավոր Արևելքի խոշորագույն քաղաքներից մեկը և ունենալով այդպիսի լայն կապեր՝ այն իր պատմական ընթացքով ու հասարակական-տնտեսական-սոցիալական հարաբերությունների արտահայտումներով բանալի է տալիս լուսաբանելու ոչ միայն Հայաստանի, այլև հարևան երկրների միջնադարյան քաղաքների պատմության հետ կապված զգալի թվով հարցեր: Նրա պատմությունը ընթերցողների լայն շրջանների համար մեծ հետաքրքրություն կարող է ներկայացնել:

Աշխատությունը գրված է նախորդ տարիներին հեղինակի հրապարակած Անիի համակողմանի պատմության երկհատորյակի հիման վրա: Առանձնահատուկ ուշադրություն է դարձված վաղեմի քաղաքի տնտեսական ու մշակութային կյանքին, քաղաքական կապերին, հուշարձաններին ու հնություններին, նրա ավերակների և ամենատարբեր կողմեր արտագաղթած հազարավոր բնակիչների ճակատագրին: Հատուկ բաժնով ներկայացված է

15—16-րդ դարերից հնավայրի վերածված Նրա ճակատագիրը՝ նկատի ունենալով, որ այն դարեր շարունակ առնչվել է մեր ժողովրդի պատմական կյանքում տեղի ունեցած իրադարձություններին, հաճախ վերածվելով քաղաքական դեպքերի ու ճակատամարտերի թատերաբեմի: Անին իր ավերված վիճակում էլ չէր դադարել հետաքրքրություն ներկայացնելուց: Նրանով հետաքրքրվում էին ճանապարհորդները, արվեստագետներն ու ճարտարապետները, մասնագետները, տուրիստները, քաղաքական ու հասարակական գործիչները, հնագետ հետազոտողները և ուրիշներ: Անիով «հետաքրքրվում էին» նաև քոչվորները, թուրք իշխողները, հարստություն որոնող բախտախնդիրները, Նրա սքանչելի կոթողների ավերակները «քարհանք» դարձնողները, որոնք դարեր շարունակ փորփրել են Նրա հնությունները և կողոպտել գիտության համար այնքան մեծ արժեք ունեցող գանձերը: Պակասը լրացրել են կործանիչ երկրաշարժերը և ամենազոր ժամանակը:

Աշխատությունը նկարազարդ է: Նրան կցվում է Անիի հատակագիծը՝ կարևոր կառույցների, հուշարձանների և հնությունների նշումով:

# ԱՆԻԻ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

Անի մայրաքաղաքը մտնում էր Այրարատյան աշխարհի Շիրակ գավառի մեջ, գրավելով Ախուրյան ու Անի (Ծաղկոցաձոր, Ալաջա) գետերի խորը ձորերով ակոսված եռանկյունաձև մի սարահարթ, որը հյուսիս-արևելքում միացած է Շիրակի դաշտին՝ կազմելով նրա հարավային մասի բնական շարունակությունը: Անին Լենինականից գտնվում էր մոտ 46 կմ, իսկ Երևան—Թբիլիսի երկաթուղու Անի կայարանից՝ 7—7,5 կմ հեռավորության վրա, ՀՍՍՀ Անիի շրջանի Խարկով գյուղի դեմ-դիմաց, Ախուրյան գետի բարձրադիր աջ ափին: Վաղեմի քաղաքի բուն տարածքը ծովի մակերևույթից ունի 1500 մ բարձրություն և հյուսիս-արևելքից դեպի հարավ-արևմուտք ձգվում է մոտ մեկ կիլոմետր, իսկ ամենալայն տեղում՝ արևելքից արևմուտք՝ 500—600 մ:

Եռանկյունաձև այդ սարահարթը քաղքարոտ է ու ալիքավորված: Նրա հարավային ծայրում գտնվում է Ախուրյանի ձորից ավելի քան 120 մ բարձրությամբ մի բլուր, որի վրա գտնվում էր քաղաքի միջնաբերդը, իսկ հարավ-արևմտյան ծայրում, որտեղ իրար են միանում Ախուրյանն ու նրա աջակողմյան վտակ Անին, Աղջկաբերդի (Կըզ-կալա) բարձունքն է: Քաղաքի բնական համայնապատկերը ավելի գեղատեսիլ էին դարձնում հարավ-արևելյան կողմից քառակատար Արագածը (4096 մ), արևմտյան կողմից՝ պատմական Առձն-Առիծ (այժմ՝ Ալաջա) լեռները (մինչև 2920 մ), որոնց առանձին լեռնաճյուղերը մոտենում էին քաղաքի հյուսիս-արևմտյան արվարձաններին:

Անի քաղաքի գետնատնակը բաղկացած է հիմնականում երկու գոյացություններից՝ ստորին շերտը կազմող տրախիտներից ու բազալտներից և դրանց վրա ընկած տուֆի հզոր շերտից:

Անին գտնվում էր պարբերաբար կրկնվող երկրաշարժերի գոտում: Հայ պատմագիրները (Արիստակես Լաստիվերտցի, Վարդան Արևելցի, Մատթեոս Ուռհայեցի) հիշատակում են քաղաքին հսկայական վնասներ հասցրած և մարդկային բազմաթիվ զոհերի պատճառ դարձած մի քանի աղետաբեր երկրաշարժերի մասին: Դրանցից առանձնապես կործանիչ բնույթի են

եղել 1045, 1131 և 1319 թթ. երկրաշարժերը: Անիի կլիման ընդհանուր առմամբ ցուրտ է, և տարվա եղանակները խիստ ընդգծված են: Ձմռանը երբեմն լինում են ուժեղ սառնամանիքներ (օդի բարեխառնության բացարձակ նվազագույնը իջել է մինչև —41), իսկ ամռանը համեմատաբար շոգ է (առավելագույն ջերմությունը՝ +36): Ձմռանը տեղում է առատ ձյուն և եղանակները պարզկա են: Հով ու հաճելի են եղանակները գարնանն ու աշնանը: Օդի տարեկան միջին բարեխառնությունը +6 է, մթնոլորտային տեղումների քանակը ավելի քան 475 մմ: Օդը կազդուրիչ ու առողջարար է: Այստեղ ամռանը կեսօրից հետո հյուսիսից մշտապես փչում է ծաղիկների բուրմունքով հագեցած՝ տեղացիների կողմից «Կարախաչի» կոչված լեռնահովտային քամին:

Քաղաքի պաշտպանության համար խիստ կարևոր նշանակություն են ունեցել Ախուրյանի և նրա աջակողմյան Անի վտակի անդնդախոր ու զառիվեր ձորերը: Անիի մայր գետն Ախուրյանն էր, որը քաղաքի տարածքում հոսում է արևելքից արևմուտք՝ 35—80 մ խորությամբ խիստ զառիվեր կողեր ունեցող ձորով՝ հարավային մասից անմատույց դարձնելով Բագրատունիների մայրաքաղաքը: Քաղաքի մակարդակից ցածր լինելու պատճառով, Ախուրյանի ջրերը քաղաքացիների կողմից քիչ են օգտագործվել: Սակայն հիմնավորված ենթադրություն կա այն մասին, որ պաշարման ժամանակ այդ նույն գետից գաղտնի անցքով ջուր են վերցրել խմելու համար: Ախուրյանը ձկնառատ էր և ոմանք այնտեղ զբաղվել են ձկնորսությամբ: Նրա ձորի զառիվեր կողերին նույնպես փորված էին մեծ ու փոքր բազմաթիվ քարայրներ՝ «քարտուններ»:

Անիի հյուսիս-արևելյան մասում աջ կողմից Ախուրյանին է միանում Գայլիձոր կամ Գլիձոր գետակը, որի ջրերն օգտագործվել են ջրաղացներ գործի դնելու, ոռոգման և քաղաքի պաշտպանական խրամը լցնելու համար: Արևմտյան եզրով, հյուսիսից հարավ հոսում է Անի գետը՝ Ախուրյանի աջակողմյան վտակը, որը կարևոր դեր էր խաղում քաղաքի ներքին կյանքում. նրա նեղ հովտում կային բազմաթիվ բանջարանոցներ, կողերին փորված էին հարյուրավոր «քարտուններ», իսկ եզրով ձգվում էր տեղական ճանապարհ: Անին իր հերթին ուներ մի փոքրիկ վտակ՝ Իգաձորը, որը սկիզբ առնելով քաղաքի հյուսիսային մասից հոսում էր դեպի արևմուտք և միանում Անիին: Իգաձորի կողերը նույնպես ժայռոտ են, այստեղ նույնպես կային ժայռափոր «քարտուններ»:

Բնական վիճակում գտնվող այդ ջրերից բացի, Անիի բնակիչները խմելու համար օգտվում էին Առճո-Առիճ լեռների ստորոտից ջրմուղով բերված ջրից, իսկ ոռոգելու համար՝ հետագայում Գեդիկլեր կոչված գետակի ջրերի մի մասից:

Անի քաղաքի տարածքը լեռնային տափաստան է, Շիրակի արգավանդ դաշտի բաղկացուցիչ մասը, այն Շիրակի, որն, ըստ ավանդության, իբրև հացառատ շրջան տրված էր Հայկ նահապետից սերած շառավիղ Շարային: Շիրակը ծածկված է սևահողով և անտառազուրկ է: Ամառվա կեսին ամբողջ դաշտը թավշապատ է դառնում, որը առանձին գեղեցկություն էր տալիս անտառազուրկ քաղաքին:

Միջնադարյան քաղաքների համար բնական հումքերի մեջ ամենակարևորը շինանյութերն էին՝ առաջին հերթին շինարարական քարը, ինչպես նաև բնափայտը, կավը, կրաքարը, ավազը, որոնք երկար տարածությունների վրա տեղափոխելը կապված էր մեծ դժվարությունների հետ: Անին բնական շինանյութերով առանձնահատուկ հարուստ քաղաք էր: Այստեղ կան հզոր շերտերով և գործնականորեն նույնիսկ այժմ անսպառ համարվող բազմերանգ տուֆեր (դեղին, գորշ, կարմիր, սև, կարմրավուն, դեղնակարմրավուն և այլն), որոնց շինարարական բարձր հատկանիշները՝ դիմացկունությունը, գրեթե անհաղորդիչ լինելը, շաղախների հետ կպչողականությունը, թեթևությունն ու փափկությունը, դեկորատիվությունը հայտնի էին հնագույն ժամանակներից և մեծ առավելություն էին տալիս դրանց գործածությանը: Անին հիմնականում կառուցված էր հենց իր շրջակայքի տուֆերից: Տուֆակերտ էին նրա ամրակուռ պարիսպներն ու դրանց բարձրաբերձ բուրգերը, չքնաղ տաճարներն ու շքեղ պալատները, մոնումենտալ հյուրանոցներն ու կամուրջները և ճարտարապետական մյուս կոթողները: Տուֆ քար է արդյունահանվել և՛ Ախուրյանի ձորից, և՛ բուն քաղաքից ու նրա շրջակայքից:

Անիի շրջանը հարուստ է նաև բազալտներով: Դրանք հզոր շերտերով ընկած են տուֆերի տակ և մերկանում են քաղաքը շրջապատող ձորերում, հատկապես՝ Ախուրյանի նեղ հովտում: Սակայն տուֆերի համեմատությամբ Բագրատունիների մայրաքաղաքում բազալտը քիչ է օգտագործված, այն էլ գերազանցապես անմշակ կամ քիչ մշակված կոշտերի ձևով:

Շինարարության համար անհրաժեշտ ավազը արդյունահանվում էր Ախուրյանի ձորից: Բացառված չէ, որ պատերի շարման շաղախի համար օգտագործված լինի ընդամենը 7—8 կմ վրա գտնվող պեմզան (ներկայիս ՀՍՍՀ Անիի շրջանի Անիպեմզա հանքավայրից):

Ախուրյանի ձորում, Հոռոմոսի վանքից մինչև քաղաքի տարածքն ընկած հատվածում բխում է ծծմբային հանքային ջուր, որտեղ, տեղացիների ասելով, լոգանք են ընդունել հիվանդները:

Այսպիսով, մայրաքաղաք Անին ուներ ամուր ու հարմար դիրք, առատ ջրեր, մեծ քանակությամբ բնական լավորակ շինանյութեր, իսկ մերձակայքում ունեցել է արգավանդ հարթություններ և հանգստի հարմար տեղեր:

# ՀՆԱԳՈՒՅՆ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՄՆԱՑՈՐԴՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Անիի տեղում բնակավայր է եղել դեռևս հնագույն ժամանակներից և դրա իրեղեն վկայությունն այն ընդարձակ գերեզմանոցն է, որ գտնվում է քաղաքի ավերակներից մոտ մեկ կիլոմետր հեռավորության վրա։ Այդտեղ հայտնաբերված իրերը վերագրվում են 8—7-րդ դդ. (մ. թ. ա.) և համարվում են ամենահին իրեղեն փաստերն Անիի տարածքում բնակավայրի գոյության մասին։

Անի անվան ծագման մասին գոյություն է ունեցել հեթանոսական շրջանում առաջացած մի ավանդություն, ըստ որի քաղաքի հարավ-արևմտյան ծայրում, որտեղ իրար են խառնվում Ախուրյան գետն ու նրա աջակողմյան վտակ Անին (Ալաջա), Աղջկաբերդ (Կըզ-կալա) կոչված անմատչելի լեռան վրա ամրոցի հետ միասին հեթանոսական շրջանում եղել է նաև Անահիտ աստվածուհուն նվիրված տաճար, որ հետագայում վերածվել է եկեղեցու։ Ավանդության ասելով, տաճարի մոտ առաջացած բնակավայրը (ավանը) նրա անունով էլ կոչվել է Անի։ Գիտական բանասիրությունը, սակայն, Անի անվան ծագումը կապում է Aniani կամ Aynian կոչված ցեղախմբի անվան հետ։ Վերջինս Ատրպատականի հնագույն ժողովուրդներից էր, որի մի մասը վաղ ժամանակներում իր այդ բնօրրանից գաղթել է դեպի Հայաստան և բնակություն հաստատել այնտեղ։ Դրա հիշատակը պահպանվել է պատմական Հայաստանի Փայտակարան աշխարհի Հանի գավառանվան, հետագայի Անի մայրաքաղաքի, հին ժամանակներից հիշատակվող Անի (Կամախ) ամրոցի, Տայոց աշխարհի Անիակերտ վայրի ու նույն անունը կրող Ճորոխ գետի վտակներից մեկի, ինչպես և Կիլիկիայի Անե բերդի անունների մեջ։

Անվան հնագույն ծագումը և տարբեր առիթներով քաղաքի տարածքում ու դրա շրջակայքում հայտնաբերված նյութական մշակույթի գտածոները, որոնք բաղկացած են հնագույն կառույցվածքների մնացորդներից, դրամներից, զարդերից ու արձանիկներից, խեցեգործական իրերից և հնա-

գիտական այլ նյութերից, որոշ չափով ուրվագծում են Անիի նախակամ-սարական հնագույն ժամանակների պատմությունը:

Պատմահնագիտական առումով առանձնահատուկ նշանակություն ունեն քաղաքի տարածքում նկատված կիկլոպյան կառուցվածքների մնացորդները: Առաջինը դրանց վրա հատուկ ուշադրություն է դարձրել ակադեմիկոս Հ. Աբիխը: Նա գրում է, որ քաղաքի հյուսիսային կողմում, պաշտպանական պարսպի ուղղությամբ նկատվում են բազալտե հսկայական քարերով, առանց շաղախի կատարված մի շարք կառուցվածքների մնացորդներ, որոնք իրենց բնույթով կիկլոպյան են և վերաբերում են հնագույն ժամանակներին: Աբիխը որոշ կապ է տեսնում դրանց և հնագույն հայկական կառուցվածքների միջև՝ հատկապես մատնացույց անելով Երվանդաշատ մայրաքաղաքի (Արաքս և Ախուրյան գետերի միախառնման վայրի մոտ) շինվածքները: Անիի կիկլոպյան կառուցվածքները նկարագրել է նաև հայագետ-բանասեր Կոնիբերը, որը 5-րդ դ. հայտնի փիլիսոփա Դավիթ Անհաղթի աշխատություններն ուսումնասիրելու նպատակով 1888 թ. եղել է Հայաստանում և ի թիվս Էջմիածնի ու այլ վայրերի այցելել է նաև Անի: Բանասեր-ճանապարհորդը Անիի ավերակների տարածքում նկատել է 15-ի հասնող դոլմեններ:

Քաղաքի ամենահին մասը, եթե այդպես կարելի է արտահայտվել, Աղջկաբերդի ժայռային թերակղզին է, որտեղ տեղադրված է եղել մի հնագույն ամրոց և հեթանոսական տաճար, որոնց մասին դարերով գոյություն է ունեցել բերնեբերան հաղորդվող ժողովրդական ավանդություն: Այդ նույն ավանդության ասելով, այստեղի հեթանոսական տաճարը քրիստոնեական եկեղեցու էր վերածվել 4-րդ դ. (մ. թ.) սկզբներին՝ Գրիգոր Լուսավորչի անմիջական մասնակցությամբ, իսկ հետագայում, հարյուրամյակներ անց՝ 13-րդ դ. Զաքարե իշխանը նույն թերակղզու վրա կառուցել էր մի նոր եկեղեցի, կամ վերակառուցել ու հիմնովին նորոգել հնից գոյություն ունեցածը:

Հնագիտական բավական նյութեր են հայտնաբերվել Անի քաղաքի մոտ գտնվող թուրքական Անի գյուղի մոտակայքի հնագույն ընդարձակ գերեզմանոցում: Հեթանոսական շրջանի հասարակական այդ գերեզմանոցը պեղել է Ն. Մառը և այստեղ հայտնաբերված նյութերով կազմել Անիի թանգարանի փոքրիկ բաժիններից մեկը:

Հնագիտական ուսումնասիրությունների ընթացքում հնագույն ժամանակների նյութեր են հայտնաբերվել Անին շրջապատող հարյուրավոր քարայրներում՝ «քարտուններում», ինչպես դրանք կոչված են մատենագրության մեջ: Այստեղի գտածոների մեջ առանձնահատուկ նշանակություն ու-

նի բրոնզե ապարանջանը, որ վերաբերում է երկրորդ հազարամյակի վերջերին (մ. թ. ա.):

Բուն Անիից և նրան հարակից ձորերից բացի, հնագույն ժամանակների կառուցվածքների հետքեր են նշմարվել նաև վաղեմի մայրաքաղաքի շրջակայքում, որը հնագիտական-ճարտարապետական առումով մասնավորապես ուսումնասիրել է Թորոս Թորամանյանը: Հայ ճարտարապետության ականավոր պատմաբանը գրում է, որ կիկլոպյան ամրոցի բավական լավ պահպանված ավերակներ կան Անիից մոտ 5—6 կմ արևմուտք, քրդական Ղոզլիջա (պատմական Բագնայր) գյուղից հարավ-արևելք, Ալաջա լեռան արևելյան գագաթներից մեկի վրա: Հնագույն այդ ամրոցը կառուցված է եղել բազալտե հսկա քարերով առանց շաղախի:

Անիի տեղում հնագիտական պեղումների ընթացքում հայտնաբերվել են նորքարեդարյան ժամանակի սև փայլով խեցեգործական իրեր, որոնք Դվին մայրաքաղաքում գտնված նույնատեսակ խեցեղենի հետ միասին հիմք են տալիս որոշ գաղափար կազմելու հնագույն ժամանակներում Հայաստանում տարածված կավագործության վերաբերյալ ընդհանրապես: Անիում հայտնաբերվել են Տիգրան Բ-ի արծաթե դրամներ, փյունիկյան Տյուրոս քաղաքի տետրադրախմա և այլ դրամական միավորներ: Այդ գըտածոները ցույց են տալիս, որ հելլենիստական դարաշրջանում Անին նշանակալի բնակավայր է եղել և առևտրատնտեսական որոշ կապեր է ունեցել ինչպես մայր երկրի տարբեր մասերի, այնպես էլ օտար երկրների հետ:

Այսպիսով, կիկլոպյան կառուցվածքների մնացորդներն ու հետքերը, քաղաքի մոտակայքում հին գերեզմանոցից պեղված իրերը, «քարտուններից» հայտնաբերված բրոնզե ապարանջանը, հելլենիստական ժամանակաշրջանի դրամների առկայությունը, նորքարեդարյան խեցեղենի հայտնաբերումները պեղումների ընթացքում, Աղջկաբերդի ու քաղաքի շրջակայքի հնությունները, այս բոլորը ցույց են տալիս, որ Անիի տեղում հնագույն ժամանակներից ի վեր գոյություն է ունեցել նշանակալի բնակավայր (թերևս ամրոց), և այն շեն է մնացել դարեր շարունակ:

# ԱՆԻՆ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՆԵՐԻ ԵՎ ԱՌԱՋԻՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆԵՐԻ ՕՐՈՔ

Անին հայ Արշակունիների թագավորության ժամանակ Հայաստանի ամուր բերդերից էր, թեպետև առիթներ չլինելու պատճառով 1—4-րդ դդ. մեր պատմագիրները նրա մասին հիշատակություններ չեն թողել: Կամսարական նախարարների աթոռանիստը Արշարունիք գավառի Արտագերս հայտնի բերդն էր և նրանց պատկանող Անին դեռևս մնում էր ստվերի տակ: Անիի նշանակության որոշակի բարձրացման համար հավանաբար պայմաններ են ստեղծվում միայն 4-րդ դարից, երբ Հայոց Արշակ 2-րդ թագավորը անհնազանդ Կամսարականներից գրավելով նրանց աթոռանիստ Արտագերսը, այն դարձնում է Արշակունի թագավորների բերդ-գանձարաններից մեկը: Պատմական դեպքերի ընթացքից ակնհայտ է դառնում, որ հետագայում իրենց նախարարական հեղինակությունն ու իրավունքները վերականգնած Կամսարականները (հավանաբար հենց նույն 4-րդ դարի վերջերից) իրենց իշխանական ոստանը դարձրել էին իր ամրությամբ հայտնի Անին՝ ապագայի հռչակված մայրաքաղաքը:

Հայ պատմագրության մեջ Անին առաջին անգամ հիշատակվում է 5-րդ դարի կեսերին, կապված Սասանյան Պարսկաստանի դեմ ուղղված Վարդանանց ազատագրական պատերազմի հետ: Ժամանակակից Եղիշե պատմագրի վկայությունից երևում է, որ Անին այդ ժամանակներում իր ամրությամբ ոչնչով չէր զիջում Գառնի ու Արտագերս բերդերին և վերջիններիս նման նրա բերդին կից, պաշտպանական պարիսպներից դուրս գոյություն ուներ բավական մարդաշատ ավան:

Անիի երկրորդ հիշատակությունը հայ պատմագիրների կողմից դարձյալ կապված է սասանյան լծի դեմ ուղղված մեր ժողովրդի մղած ազատագրական պատերազմների հետ, որոնք մղվում էին 481—484 թթ. Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ: Դեպքերին ժամանակակից Ղազար Փարպեցին հաղորդում է, որ ապստամբության մասին դավաճան Վարազշապուհ Ամատունու մատնությունից հետո Հայաստանի պարսիկ մարզպան Ատրվշնասպը իր ջոկատով և դրան միացած դավաճանների խմբով դիմում

է փախուստի՝ ժամանակավորապես ապաստանելով Անի բերդի պարիսպների հետևում։

Հայ պատմագրության մեջ անառարկելի են համարել այն վարկածը, ըստ որի Անին Եղիշեի ու Ղազար Փարպեցու այդ հիշատակություններից հետո ընդհուպ մինչև 8-րդ դարի վերջերը այլևս չի հիշատակվել։ Սակայն հիմնովին պետք է վերանայել ավանդույթի ուժ ստացած այդ կարծիքը։ 5—8-րդ դդ., ինչքանով մեզ հայտնի է, Անին հիշատակվել է երեք անգամ։ Դրանցից առաջինը կատարվել է 6-րդ դարի վերջերին, մի ճառընտիրի մեջ, որի գրիչները եղել են Սամվել և Հովհաննես անուններով հոգևորականները։ Նրանք այդ ձեռագիրը ընդօրինակել են Երուսաղեմում 1419 թվականին։ Երկրորդ հիշատակությունը նույնպես վերաբերում է 6-րդ դարին։ Դրա հեղինակը մի ժամանակ համարվում էր Շապուհ Բագրատունին, բայց վերջինիս աշխատության մասին այլ հեղինակների հաղորդած տեղեկությունների հիման վրա ժխտվեց այդ ենթադրությունը, և նախկինում Նրա անունով հրատարակված պատմությունը վերահրատարակվեց 1971 թ. Երևանում՝ «Պատմութիւն Անանուն Զրուցագրի, կարծեցյալ Շապուհ Բագրատունի» վերտառությամբ։ Դրանում տեղ գտած զրույց-ավանդություններից երկուսում, որոնք վերաբերում են բյուզանդական Մորիկ կայսրին (582—603), հիշատակված է Անին՝ մի տեղ նույնիսկ այդ բերդաքաղաքի կառուցումը հիշյալ կայսրին վերագրելով։ Երրորդ հիշատակությունը վերաբերում է 554 թվականին։ Այս վերջինը վկայակոչված է 18-րդ դարի պատմագիր Զաքարիայի կողմից, որի ասելով իբր այդ ձեռագիրն ընդօրինակել է Գրիգոր Մանկիկ Անեցին։ Ղ. Ալիշանը այդ ենթադրությունը համարում է պարզապես անախրոնիզմ, նկատի ունենալով գլխավորապես այն, որ դրա մեջ Անին կոչված է մայրաքաղաք։ Սակայն Ն. Մառը այստեղ ոչ մի անախրոնիզմ չի տեսնում։ Նրա կարծիքով (որ կարելի է ընդունել անվերապահորեն) տարօրինակ ոչինչ չկա, որ 18-րդ դարի հեղինակը Անին հիշատակելիս այն կոչել է մայրաքաղաք՝ ժամանակի կնիքը դնելով ինից եկող հիշատակության վրա։

Այնպես որ Անիի մասին տեղեկությունները 5-րդ դարի պատմագիրների (Եղիշե, Ղազար Փարպեցի) հիշատակություններով չեն սպառվում։ Լինելով ամուր բերդ և Կամսարականների աթոռանիստը, այն 6—7-րդ դդ. հիշատակվել է մի քանի աղբյուրներում, որոնք հիմնականում ավանդական են և լրացված ու փոփոխված են հետագա դարերում՝ գրիչների և այլ հեղինակների կողմից։

Կամսարականների շրջանի Անիի պատմության թերի կողմերը մասամբ լրացվում են պեղումների ընթացքում հայտնաբերված նյութերի շնորհիվ։ 5—8-րդ դարերի կառուցվածքների հետքեր ու ավերակներ բուն

քաղաքում հիմնականում նշմարվում են երկու տեղ՝ Աղջկաբերդում և միջնաբերդում, իսկ քաղաքից դուրս, նրա շրջակայքում՝ Մաղասաբերդում, Մրենում, Երերույքում, Տեկորում: Ժամանակագրական տեսակետից, ինչպես նկատում է Լեոն, Կամսարականների շինարարական արվեստի զարգացումը սկսվել է հարավից՝ Արշարունիք գավառից (Արաքս և Ախուրյան գետերի միացման շրջանում) և աստիճանաբար տարածվել դեպի հյուսիս, մոտավորապես Մրեն—Տեկոր—Ալաման—Երերույք—Անի ուղղությամբ: Նա Կամսարականների շինարարական բարձր մշակույթի հյուսիսային ծայրակետը համարում է Անին: Իսկ Անիում նրանց շինարարական մշակույթի հանգրվաններն Աղջկաբերդն ու միջնաբերդն էին:

Անիում հնագույն կառուցումները կատարվել են Աղջկաբերդում: Աղքատիկ են Կամսարականների շրջանից այստեղ պահպանված հնություններն և հստակ տեղեկությունների բացակայության պատճառով դրանց ժամանակը որոշվում է միայն հավանական ենթադրությամբ: Դրանք երկու կարգի են՝ պաշտպանական կառուցվածքներ և պաշտամունքային: Աղջկաբերդի՝ Կամսարականների ժամանակաշրջանի պաշտպանական պարսպի մնացորդները պահպանվել են մինչև մեր օրերը, բայց դրանք ընդգրկված են հետագայի, ըստ երևույթին 13-րդ դարի, նույնատիպ կառուցվածքների մեջ, որոնք գտնվում են բլրի բարձունքի վրա: Այստեղ տարբեր ժամանակներում կառուցվել են մի քանի եկեղեցիներ, որոնցից երկուսը 19-րդ դարի 40-ական թվականներին տակավին կանգուն էին: 13-րդ դարի սկզբներին, այստեղ, Զաքարե իշխանի կառուցած (կամ վերականգնած) եկեղեցու մոտ, ինչպես ասված է նրա շինարարական արձանագրության մեջ, գոյություն է ունեցել մի ավելի հին եկեղեցի: Այս վերջինի կառուցումը պատմական հիմք ունեցող ավանդության ուժով վերագրում են Գրիգոր Լուսավորչին, որը, այդ նույն ավանդության ասելով, քանդել է տվել Աղջկաբերդի հեթանոսական տաճարը և դրա տեղում կառուցել տվել եկեղեցի: Հետագայում այդ եկեղեցին, որի նույնիսկ հետքերը մեզ համար հայտնի չեն, կոչել են նրա անունով՝ ս. Գրիգոր Լուսավորիչ:

Հավանական է համարվում, որ Կամսարականների օրոք է կառուցվել նաև այն ժայռակերտ, աստիճանավոր, կամարակապ ծածկով ճանապարհը, որը միջնաբերդը կապում էր Աղջկաբերդի հետ: Պահպանված ավանդությունը (ըստ որի Աղջկաբերդում բնակվող ինչ-որ թագավորի դուստրն այդ ճանապարհով էր գալիս քաղաք ու վերադառնում) հաստատում է դրա հնությունը:

Եթե Աղջկաբերդը Կամսարականների առաջին հանգրվանն էր, ապա միջնաբերդն ամենայն հավանականությամբ նրանց իշխանանիստ ամրոցն էր, որի մոտ տարածվում էր համանուն ավանը: Եվ միանգամայն հասկա-

նալի է, թե ինչու այն բլուրը, որի վրա գտնվում էր միջնաբերդը, դեռևս Կամսարականների օրոք շրջափակված էր բուրգավոր պարսպով: Նրանց կառուցած այդ ամրակուռ պարիսպների որոշ մասերն ու հատվածները պահպանվել են և հետագայում՝ Բագրատունիների օրոք, ներառնվել մի ընդհանուր պաշտպանական համալիրի մեջ:

Կամսարականների ամրոցի պաշտպանական պարիսպները հայտնաբերվել են Ն. Մառի ղեկավարությամբ կատարված 1907—1908 թթ. պեղումների ընթացքում: Դրանք կազմում էին միջնաբերդի բագրատունյան պարսպի այն հատվածը, որը ձգվում էր թագավորական պալատի հյուսիսարևմտյան դահլիճից դեպի արևմուտք, դեպի Ծաղկոցաձորի կիրճը՝ ունենալով իր աշտարակները: Այդ հին պարիսպները որոշակիորեն տարբերվում են հետագայի պաշտպանական պարիսպներից: Դրանք շարված են բազալտի խոշոր կոշտերից, որոնք մինչ այդ մեկ անգամ արդեն օգտագործվել են էին հնագույն ժամանակներում: Կամսարականների ամրոցի պարսպի մյուս հատվածները և, ընդհանրապես, պաշտպանական համալիրի մեծագույն մասը միանգամայն հասկանալի պատճառներով չեն պահպանվել: Դրանք մասամբ ավերվել են և մասամբ էլ քանդել են նորը կառուցելու համար: Ընդ որում, այդ քարերը օգտագործել են ոչ միայն տեղում, այլև տարել են նաև քաղաքի տարբեր մասեր: Ն. Մառը նշում է, որ դրանց կարելի է հանդիպել նույնիսկ Սմբատյան (կամ Արտաքին) պարսպի վրա:

Միջնաբերդի՝ Կամսարականների շրջանի քաղաքացիական մյուս կառուցվածքը համարվում է արքայական պալատի ջրամբարը, որը վերագրում են 7-րդ դարին: Կամսարականները այդ եղանակով են լուծել աղբյուրաջրով Անի ամրոցում խմելու ջուր ունենալու հարցը: Նույնիսկ բացառված չէ, որ Կամսարականների իշխանության շրջանում այստեղ ջրմուղ կարո էր կառուցված լինել:

Հատուկ ուշադրության է արժանի պալատական եկեղեցին, որը հա մարվում է Անիի միջնաբերդի եկեղեցական ամենահին կառույցը: Հ. Աբիի այն համարում է «Անիի թանկագին քարը»: Անկախ եկեղեցու վրայի շինո րարական արձանագրության վերծանման տարբերակներից, որ գոյությո ունեն տարբեր հեղինակների մոտ, բոլոր մասնագետները այն համարո են 7-րդ դ. սկզբների կառույց: Ավելին, Ն. Մառը շինարարական արձանո գրության մեջ նշված հայոց «ՀԱ» (71+551=622 թ.) համարում է ա կասկածելի և նշում, որ այն իրոք կառուցվել է 7-րդ դ. առաջին քառոր վերջերին և այդ արձանագրությունն էլ մեզ հայտնի ամենահին վիմագ արձանագրությունն է հայոց պատմության մեջ: Հետագա ժամանակներո պալատական եկեղեցին ենթարկվել է վերանորոգումների, վերակառուցո

ների և վերականգնումների։ Այն 20-րդ դարի սկզբներն էր հասել կիսավեր վիճակում։

Պալատական եկեղեցին գտնվում էր արքայական պալատի մոտ, նրա հյուսիս-արևելյան կողմում։ Չափսերով փոքր, բայց գեղեցիկ ու անպաճույճ այս եկեղեցին (երկարությունը ներսից մոտ 12 մ) պատկանում է միանավ բազիլիկների ընտանիքին։ Թաղակապ ծածկը հանգում է լավ մշակված երկու զույգ որմնամույթերի վրա։ Եկեղեցու տարբեր մասերը կրում են տարբեր ժամանակներում կատարված վերափոխումների կնիքը։ Նույնիսկ եղել են ժամանակներ, երբ այս եկեղեցին հարմարեցրել են ուրիշ կարիքների («անգամ բաղնիքի») համար, նշում է Ն. Մառը։ Այն ամենայն հավանականությամբ կոչվել է ս. Սարգիս։

Ընդհանուր ճարտարապետական կառուցվածքից բացի, եկեղեցին հատուկ հետաքրքրություն է ներկայացնում նաև իր կիսաշրջանաձև խորշերով, սյունիկներով, խոյակներով, զարդաքանդակներով։ Սակայն Անիի մյուս բազմաթիվ ճարտարապետական կառուցվածքների նման պալատական եկեղեցին ևս ենթարկվել է կողոպտման։ Նրա քարերի մի մասը ուշ ժամանակներում մոտիկ գյուղերի բնակիչները տարել են և օգտագործել իրենց խրճիթների կառուցման համար։

Տեղում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ Կամսարականների օրոք շինարարական աշխատանքներ են կատարվել նաև միջնաբերդից դուրս, դրան կից ավանում՝ հետագայի բուն քաղաքում։ Այդպիսի մի կառուցվածք է նկարագրում Հ. Օրբելին։ Այն մի փոքր շենք է և հայտնաբերվել է 1908 թ. պեղումների ընթացքում։ Շենքի հիմքը կազմում են չորս հաստ ու համեմատաբար ոչ բարձր պիլոններ, որոնք շարված են մուգ գորշագույն քարերից։ Այդ պիլոններով շենքը Անիի հին կառուցվածքներից է և հավանաբար եղել է մատուռ։ Իսկ դրա՝ նոր քաղաքում գտնվելը ցույց է տալիս, որ Կամսարականների շրջանում Անի բնակավայրը չէր սահմանափակվում միայն բուն ամրոցով, այլ ամրոցին կից կար նաև բնակելի թաղ կամ ավան։ Հաջորդ տարում (1909 թ.) կատարված պեղումների ընթացքում հայտնաբերվել է ևս մի հին շենք, մի փոքրիկ եկեղեցի, որի կառուցումը նույնպես վերագրվում է 7—8-րդ դարերին՝ նկատի ունենալով դրա ճարտարապետական ընդհանուր ոճավորումը և, առանձնապես, նրան զարդաքանդակները, որ հիշեցնում են 7-րդ դարի եկեղեցիները, հատկապես Զվարթնոցի հայտնի զարդաքանդակները։ Այդ հին եկեղեցին պայմանականորեն կոչեցին «Նուերով եկեղեցի»։ Չափսերով փոքր է։ Կառուցված է երկարավուն հատակագիծ ունեցող եկեղեցիների օրինակով, պատերը շարված լավ տաշած, կարմրավուն, խոշոր սալաքարերից, կանգնած կըրկ-

նակի ցոկոլի վրա։ Ունի Առաքելոց եկեղեցու կիսասյուները հիշեցնող սյունիկներ, գտնվում է վերջինիս մոտ և մեզ է հասել ավերված վիճակում։

Չհաշված Անին երեք կողմերից պատող ալրային տները՝ «քարտունները», որոնց մի մասը նույնպես գոյություն ուներ հին ժամանակներից, Կամսարական ժամանակաշրջանի մեզ հայտնի հուշարձաններն ու հնությունները սահմանափակվում են վերը նշվածներով, որոնք հետագայում մի շարք անգամ վերաշինվելուց, վերանորոգումներից ու վերականգնումներից հետո 20-րդ դարի սկիզբն են հասել նկարագրված վիճակում։

Ժամանակագրական առումով Կամսարականների իշխանության ամենաբարձր զարգացման շրջանի հետ է կապված Հայաստանում մի ամբողջ շարք գիտությունների (աստղագիտություն, մաթեմատիկա, աշխարհագրություն և այլն) հիմնադիր **Անանիա Շիրակացու** գործունեությունը։ 7-րդ դարի վերջերին ապրած այդ նշանավոր հեղինակը, որի կենսագրությունը պահպանվել է բավական մանրամասնությամբ, կոչվել է նաև Անանիա Անեցի։ Եվ միանգամայն տրամաբանական է, որ նա կամ ծնվել է Անիում, կամ երկար ապրել է այնտեղ՝ իր գործունեությամբ կապված լինելով Կամսարականների իշխանանիստ ամրոցի հետ։

Ահա այն հիմնականը, ինչ կարելի է ասել Կամսարականների ժամանակաշրջանի Անիի վերաբերյալ։

8-րդ դարի վերջերին տեղի ունեցած դեպքերը ճակատագրական նշանակություն են ունենում Հայաստանի մի շարք նախարարական-իշխանական տների համար։ Դրանց թվում են նաև արաբական լծի դեմ բռնկված 773—775 թթ. ապստամբության եռանդուն մասնակիցներ Մամիկոնյաններն ու Կամսարականները։ Դրանից հետո Մամիկոնյանները Հայաստանում, համենայն դեպս Արևելյան Հայաստանում, դադարում են էական դեր խաղալուց։ Ապստամբության ճնշման ժամանակ մեծ հարված են ստանում նաև Կամսարականները։ Նրանք պատմական ասպարեզից իջնում են ապստամբությունից ընդամենը տաս տարի անց, կապված Կամսարական տան նշանավոր ներկայացուցիչ Ներսեհ Կամսարականի մահվան հետ (785 թ.), խզարաց արշավանքին դիմագրավելու ժամանակ։ Խալիֆայության գահի վրա հաստատված Աբբասյանները 8-րդ դ. վերջին քառորդից վարում էին հայ իշխանական տները վերացնելու, Հայաստանում արաբա-պարսկական ցեղեր բնակեցնելու, ժողովրդական-ազատագրական ապստամբությունները արյան մեջ խեղդելու և կողոպտիչ հարկային քաղաքականություն, մի քաղաքականություն, որի առաջին զոհերից էին նաև Մամիկոնյաններն ու Կամսարականները։

Սակայն հենց այդ դաժան դարում բոլորովին այլ ընթացք է ստանում Հայաստանի երեք խոշոր նախարարական-իշխանական տների՝ Բագրա-

տունիների, Արծրունիների և Սյունեցիների պատմությունը: Սրանք ոչ միայն կարողանում են պահպանել իրենց տիրապետության ենթակա տարածքները, իշխանական իրավունքները, այլև մեծապես հզորանալով՝ երկրում ձեռք են բերում քաղաքական մեծ նշանակություն: Առանձնապես զգալի էին Բագրատունիների ձեռքբերումները: Նրանց ձեռներեց ու հեռատես ներկայացուցիչները՝ Վասակ Բագրատունին, նրա որդի Աշոտը, որը արաբների կողմից նշանակվել էր իշխանաց իշխան, վերջինիս որդի Սմբատը, Սմբատի որդի Աշոտ Մսակերը, ապա՝ Սմբատ Խոստովանողը և սրա որդի Աշոտ իշխանաց իշխանը, որ հետագայում թագադրվեց Աշոտ 1-ին անունով, օգտվելով խալիֆայության ու Բյուզանդիայի, Հայաստանում հաստատված արաբա-պարսկական տարբեր ցեղերի ու բնիկ իշխանությունների միջև եղած հակասություններից, քայլ առ քայլ ընդարձակում են իրենց իշխանության սահմանները և 9-րդ դարի վերջերին արդեն տեր են դառնում Հայաստանի մեծ մասին: Նրանց՝ Արշարունիքում, Շիրակում և դրանց հարակից գավառներում իշխող ճյուղն էլ հենց հիմնադիրը եղավ Բագրատունիների թագավորական հարստության:

Առաջին դեպքը, որով սկսվում է Անիի պատմության Բագրատունյաց շրջանը՝ Արշարունիքի և Շիրակի գնումն է քաղաքական ասպարեզից հեռացող Կամսարականներից: Իսկ այդ տեղի է ունենում հետևյալ պայմաններում: 775 թ. զոհված Սմբատ սպարապետի որդի Աշոտը, որին արաբները տվել էին Մսակեր մականունը, ձգտում է իր տոհմի հենակետը դարձնել երկրի խորքում գտնվող Շիրակ և Արշարունիք գավառները: Նախկին աթոռանիստ Դարոյնք ամրոցը (Բայազետի տեղում) մշտապես վտանգի էր ենթակա Հարք ու Ապահունիք գավառներում հաստատված արաբական կայսիկ և ութմանիկ բավական ռազմատենչ ցեղերի, ինչպես և Դվինի արաբական փոխարքայի («ոստիկանի») բազմամարդ կայազորի կողմից: Բագրատունիների համար հուսալի իշխանանիստ չէր կարող լինել նաև Ճորոխի հովտում՝ Սպեր (Իսպիր) գավառում գտնվող Կամախ ամրոցը, որտեղ քաշվել-ապաստանել էին Աշոտ Մսակերն ու իր եղբայր Շապուհը՝ 773—775 թթ. ազատագրական շարժումները արաբների կողմից հրով ու սրով ճնշելու ժամանակ: Բագրատունի ձեռներեց եղբայրները այդ քաջ գիտակցում էին և երկրի խորքում՝ Արշարունիքում ու Շիրակում հաստատվելու համար սպասում էին հարմար պահի: Եվ իրոք, ապստամբության ճնշումից հետո նպաստավոր պայմաններ են ստեղծվում նշված գավառներին ու դրանց շրջակայքին տեր դառնալու համար: Նախ դրանց տերերը՝ Կամսարականները խալիֆայության կողմից ստացել էին մահացու հարված, այլևս ի վիճակի չէին իրենց վաղեմի դիրքերը վերականգնել և երկրորդ՝ Արշարունիքի մի մասին տեր դարձած արաբական զորավար-ֆեոդալ Ջահապը,



2—2682

որը հավակնում էր գրավել գավառի նաև մյուս մասը, առանց խալիֆայության կամքը հարցնելու և նույնիսկ առանց Դվինում նստող արաբական գլխավոր կառավարիչին հաշվի առնելու, անցանկալի անձ էր արաբական իշխանությունների համար: Ահա, օգտվելով այդպիսի նպաստավոր պայմաններից, Բագրատունի եղբայրները, որ նախօրոք իրենց համար արդեն աթոռանիստ էին դարձրել Ախուրյանի աջ ափին գտնվող Բագարանը, կարողանում են զենքի ուժով ի չիք դարձնել Ջահապի հավակնությունները և տեր դառնալ ոչ միայն ամբողջ Արշարունիքին, այլև Շիրակին, Աշոցքին և Տայքի գավառներին: Սակայն զենքի ուժով գրավված Շիրակն ու Արշարունիքը, ինչպես երևում է, մեխանիկորեն չէին կարող համարվել Բագրատունիների սեփականությունը, քանի որ Կամսարականներն ունեին ժառանգորդներ: Այդ ընդարձակ գավառներին տեր դառնալու համար անհրաժեշտ էր նախկին տերերին որոշ հատուցում: Հենց այդ դրամով հատուցումն է, որ, մեր կարծիքով, պատմագիրների մոտ դարձել է «առ ու վաճառք»: Գործարքը կատարվել է 783 թվականին և այդ մասին ուղղակի վկայություն ունի Ստեփանոս Ասողիկը:

Հատուկ հետաքրքրություն է ներկայացնում Անիի՝ 885—961 թվականների վիճակը. Նրա խաղացած դերը առաջին Բագրատունի թագավորների օրոք, սովորական ամրոցից քաղաքի վերածվելու ժամանակի և հանգամանքների հետ կապված հարցերը, այդ ժամանակներից պահպանված հուշարձանների, հնությունների և նյութական մշակույթի մնացորդների բընույթն ու ծավալը:

Առաջին Բագրատունի թագավորների օրոք Անին մայրաքաղաք չէր, բայց սերտորեն առնչվում էր երկրի ներքին և արտաքին քաղաքական դեպքերին, հաճախ գտնվելով ուղղակի դրանց կիզակետում: Տակավին Աշոտ 1-ին թագավորից առաջ, Աշոտ Մսակերի որդիների օրոք Անին դարձել էր Բագրատունիների Շիրակի ճյուղի կենտրոնատեղին: Ղ. Ալիշանի ասելով, այդ ճյուղի ոչ պակաս նշանավոր ներկայացուցիչ, Աշոտ Մսակերի կրտսեր որդի, Հայոց սպարապետ Սմբատ Խոստովանողը իր համար աթոռանիստ էր դարձրել Շիրակի ամենաամուր բերդը՝ Անին: Բագրատունիների թագավորության հաստատումից հետո էլ Անին մնում էր որպես այդ թագավորության ժամանակավոր աթոռանիստը և կարևորագույն բերդը, ավելի ճիշտ՝ բերդ-գանձարանը, որտեղ պահվում էր պետության հարստությունների մեծ մասը:

10-րդ դ. առաջին կեսում Անին ամրոց լինելու հետ միասին նաև քաղաքային տիպի բնակավայր էր (թերևս իսկական ֆեոդալական քաղաք): Մինչև 9-րդ դարի վերջին քառորդը, անկասկած, նախկինի նման նա սոսկ ամրոց էր: Պատմությունից հայտնի է, որ 8—9-րդ դդ. Հայաստանը գտնը-

վում էր արաբական խալիֆայության ծանր լծի տակ և նախորդ ժամանակների համեմատությամբ տնտեսապես հետադիմել էր, նրա նախկին քաղաքներից շատերը կորցրել էին իրենց նշանակությունը և վերածվել սովորական բերդաքաղաքների: Անի ամրոցն էլ այդ դարերում որևէ առաջադիմություն չի ունեցել: Նրա զարգացումն էլ սկսվել է երկրի ընդհանուր առաջադիմության հետ միասին՝ քաղաքական անկախության վերականգնման ժամանակներից՝ 9-րդ դարի 70—80-ական թվականներից և շատ կարճ ժամանակաընթացքում վերածվել է քաղաքային տիպի բնակավայրի: 10-րդ դարի առաջին կեսի վկայություններում մեր պատմագիրները Անին արդեն համարում են քաղաք: Այնտեղ, ինչպես կարելի է եզրակացնել վիմագիր արձանագրություններից, կային տասնյակներով կուղպակ-խանութներ, որոնք ցույց են տալիս նրա առևտրի լայն զարգացումը և մեծ, քաղաքային տիպի բնակավայր լինելը: Այլ կերպ ասած, Անին մայրաքաղաք հռչակվելուց առաջ արդեն քաղաք էր, կամ, համենայն դեպս, քաղաքային տիպի բնակավայր, որ ռազմականի հետ միասին արդեն կարևոր դեր էր խաղում Բագրատունյաց Հայաստանի քաղաքական, տնտեսական և հոգևոր կյանքում:

Այդ ժամանակների Անիի վիճակի մասին գրավոր վկայությունները հաստատվում են հնագիտական նյութերով: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ առաջին Բագրատունիների օրոք Անիում ծավալվել են բավական լայն շինարարական աշխատանքներ, որոնց զգալի մասը կատարվում էր միջնաբերդից դուրս՝ բուն քաղաքում: Այնպես որ մինչև մայրաքաղաք դառնալն Անին արդեն բավականաչափ բազմամարդ քաղաք էր և Աշոտ 3-րդի կառուցած պարիսպներով շրջափակված տարածությունից բացի ընդգրկում էր դրան հարակցող սարահարթը:

Աշոտյան պարիսպներից առաջ էր կառուցված և դրանց շրջագծից դուրս էր գտնվում Վահրամ Պահլավունու հոր՝ Գրիգոր Պահլավունու 10-րդ դարի կեսին շինած տոհմական եկեղեցին՝ Ապուղամրենց ս. Գրիգորը: Փոքրիկ, բայց ակնահաճո այդ եկեղեցին ներսից վեցաբսիդ է, իսկ արտաքինից՝ բազմաբսիդ: Հատակագծով և արտաքին եռանկյունաձև խորշերով սերտորեն առնչված է 7-րդ դարի տաճարների հետ, բայց զգացվում են նաև նոր ձևավորվող եկեղեցական ոճի տարրերը՝ վերսլաց համաչափությունների բացահայտ գերակշռմամբ:

Վերը նշված պիլոններով շենքը, որ հայտնաբերվել էր Ն. Մառի կատարած պեղումների շնորհիվ, նույնպես գտնվում էր քաղաքի հին մասից դուրս: Այն հայտնաբերվել էր Արտաքին կամ Սմբատյան պարսպի մոտակայքում:

Դրանցից բացի, Սմբատյան պարսպին գրեթե կից պահպանված են

եղել մի հին, փոքրիկ եկեղեցու ավերակներ: Քաղաքի Նոր մասում է հայտնաբերվել հնագույն խաչքարերից մեկը, որն ունի հին ոճի քանդակազարդեր և վերաբերում է 952 թվականին:

Շինարարական աշխատանքները քաղաքացիականով (որից շատ քիչ բան է պահպանվել) և եկեղեցականով չի սահմանափակվում: Բագրատունիները մտահոգված էին իրենց գլխավոր բերդ-գանձարանի պաշտպանության ուժեղացմամբ: Նրանք այստեղ պաշտպանական կառուցումներ էին կատարել մինչև մայրաքաղաք հռչակվելը: Այսպես, քաղաքի պարսպի բուրգերից մեկի վրա արձանագրված է. «Աշոտոյ իշխանաց իշխանի է»: Անկասկած է, որ այդ բուրգը կառուցել է Աշոտ 1-ինը դեռևս իր իշխանաց իշխան եղած տարիներին (885 թվականից առաջ):

Նշված այդ շինությունները ամենայն հավանականությամբ միայն չնչին մասն էին կազմում այն կառուցվածքների, որոնք կատարվել էին միջնաբերդից դուրս, Անին մայրաքաղաք հռչակելուց առաջ: Բագրատունիները Անին մայրաքաղաք են դարձրել այն ժամանակ, երբ նա արդեն ձևավորված քաղաք էր, որոշակի կառուցվածք ունեցող միջնադարյան քաղաք: Այլապես այն մայրաքաղաք հռչակվելուց հետո (961 թ.) ընդամենը 2—3 տարի անց հարկ չէր լինի նոր, ավելի մեծ տարածք ընդգրկող պարիսպ կառուցելու, որին ձեռնամուխ է եղել Աշոտ 3-րդը:

# ԱՆԻՆ 961—1045 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 1. ԱՆԻՆ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ

Պատմական հանգամանքների բերումով Բագրատունի առաջին թագավորների օրոք մեկը մյուսին փոխարինել են երեք մայրաքաղաքներ՝ Բագարան, Շիրակավան (Երազգավորս), Կարս: Դրանցից ոչ մեկը չուներ մայրաքաղաք լինելու այն տվյալները, որ ուներ Անին, այն ժամանակվա Շիրակի «ամենախոշոր կենտրոնը», մի այնպիսի կենտրոն, որը, Լեոյի պատկերավոր արտահայտությամբ, «կարող էր որոշ գույն հաղորդել Բագրատունյաց թագավորությանը, որոշ կնիք դրոշմել նրա կերպարանքի վրա»:

Անին մայրաքաղաք հռչակելը դարձել էր մի տեսակ անհրաժեշտություն: Այն վաղուց արդեն կարևոր դեր էր խաղում Բագրատունյաց թագավորությունում՝ լինելով ամենամեծ բերդը, արքունական ամրոց-գանձարանը և պատմական մի շարք իրադարձությունների հետ սերտորեն առնչված քաղաք:

961 թվականին Բագրատունի Աշոտ 3-րդը, որ կրում էր Ողորմած մականունը, Անիում, հանդիսավոր պայմաններում օծվում է Հայոց թագավոր՝ «շահնշահ» (թագավորաց թագավոր) տիտղոսով: Դրանով էլ հենց Անին հռչակվում է Բագրատունյաց թագավորության մայրաքաղաք: Աշոտի այդ թագադրությանը և Անին մայրաքաղաք հռչակվելուն մեծ կարևորություն են տվել և՛ բուն երկրում, և՛ հարևան երկրներում: Աշոտ 3-րդի թագադրմանը ներկա էին զորքը, բարձրաստիճան պաշտոնյաներն ու իշխանները, հոգևորականներ, հանդիսություններին մասնակցելու համար հրավիրված Աղվանից աշխարհի թագավորն ու կաթողիկոսը իրենց մեծ շքախմբով:

Անին մայրաքաղաք հաստատվելու պահից Բագրատունյաց թագավորությունը թևակոխում է քաղաքական ու, հատկապես, մշակութային կյանքի մի նոր ժամանակաշրջան, որը շատ հեղինակների կողմից արդարացիորեն

կոչված է անիական շրջան և կազմում է Հայաստանում զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանի մի կարևոր ժամանակահատվածը:

Անին Բագրատունիների նախորդ մայրաքաղաքների նկատմամբ ուներ մի շարք առավելություններ: Նախ և առաջ նրա դիրքը բնականից շատ հարմար էր՝ երեք կողմերից ակոսված Ախուրյանի և դրա աջակողմյան վտակ Անիի (Ալաջայի) խոր ու խիստ զառիվեր ձորերով: Երկրորդ, դեռևս Կամսարականները այստեղ կառուցել էին բուրգավոր հաստապատ պարիսպներ, ավելի ուժեղացնելով և անմատույց դարձնելով Շիրակի իրենց կարևորագույն հենակետը, որը հետագայում դարձել էր Բագրատունիների բերդ-գանձարանը: Կասկածից վեր է, որ մայրաքաղաք հռչակվելու պահին Կամսարականների պաշտպանական կառույցները դեռևս գոյություն ունեին և Բագրատունի թագավորները զրոյից չպետք է սկսեին իրենց մայրաքաղաքի ամրացման գործը:

Երրորդ. Անին 10-րդ դարի սկզբներին դարձել էր քաղաք և նախկին ամրոցը փաստորեն վերածվել էր միջնաբերդի: Այդ տեսակետից ևս Անին մարաքաղաքի համար ավելի հարմար էր, քան Բագարանն ու Երազգավորսը, որ սովորական ավաններ (գյուղաքաղաքներ) էին, և նույնիսկ Կարսը, որ նույնպես ուներ անմատույց բերդ, բայց այդ ժամանակներում այն, ըստ երևույթին, դեռ սովորական բերդ էր, քաղաքի չէր վերածվել և դարձել էր սոսկ սպարապետի աթոռանիստ: Կասկած չի կարող լինել, որ Աշոտ 3-րդի եղբայր սպարապետ Մուշեղը հենց այդ հանգամանքից է օգտվել՝ իրեն հայտարարելով Կարսի (կամ Վանանդի) թագավոր, անելանելի փաստի առաջ կանգնեցնելով իր թագավոր եղբորը:

Չորրորդ. Անին մայրաքաղաք դարձնելու համար, մեզ թվում է, կարևոր հանգամանք կարելի է համարել նաև այն, որ ի տարբերություն Բագրատունիների մյուս մայրաքաղաքների, Անին գտնվում էր Բագրատունյաց թագավորության (10-րդ դարի կեսերի սահմաններով) գրեթե երկրաչափական կենտրոնում: Իսկ հնում, ինչպես հայտնի է, մայրաքաղաքները սովորաբար գտնվում էին երկրի կենտրոնական շրջաններում: Այս առիթով տեղին է նշել, որ ժամանակին, հավանաբար, այդ նկատի ուներ Տիգրան 2-րդը՝ նոր մայրաքաղաք կառուցելով իր տերության կենտրոնական մասում՝ Աղձնիք աշխարհում, Հայաստանի հռչակված նախկին մայրաքաղաք Արտաշատի դիրքը համարելով աննպաստ՝ պետության հյուսիս-արևելյան ծայրամասում գտնվելու պատճառով:

Հինգերորդ. հայտնի է, որ Բագրատունիներն իրենց տիրույթներն ընդարձակել են ամենատարբեր եղանակներով՝ զենքի ուժով, խալիֆայության հետ «լեզու գտնելով», գնմամբ և այլն: Այդ տիրույթների մեջ առանձնահատուկ տեղ ունեին Արշարունիք և Շիրակ գավառները: Դրանք, ինչպես

նշվեց, Բագրատունիները իբրև սեփականություն ձեռք էին բերել մասամբ զենքի ուժով և մասամբ՝ դրամով, քաղաքական ասպարեզից հեռացող նախկին տերերից՝ Կամսարականներից: Քաղաքական տեսակետից մայրաքաղաքի համար ամենաապահով տեղը ամենից առաջ հենց նրանց այդ հայրենի գավառները կարող էին լինել: Իսկ այդ գավառների բնակավայրերից և ոչ մեկը տվյալ ժամանակաշրջանում մայրաքաղաքի համար չէր կարող լինել Անիի մրցակիցը:

Վեցերորդ. խոսելով Անիի՝ բնականից ամուր դիրքի մասին չպետք է մոռանալ, որ այն միայն մի ամրացված կետ չէր, այլ շրջակայքի ամրոցների՝ հատկապես Մաղասաբերդի և Տիգնիսի հետ միասին կազմում էր ամրությունների հուսալի հանգույց: Անիի շրջակայքում մեկը մյուսի հետևից առաջանում էին մշակույթի կենտրոններ՝ Տեկոր, Հոռոմոս, Բագնայր և այլն: Այս հանգամանքները նույնպես պակաս չնպաստեցին Անին մայրաքաղաք դարձնելուն, որն իր հերթին ազդեց դրանց հետագա զարգացման վրա:

Անին մայրաքաղաք հռչակելը ինչ-որ ինքնանպատակ ձեռնարկում չէր: Բագրատունի թագավորները նոր մայրաքաղաքը հիմք դարձնելով պետք է ջանքեր գործադրեին միասնական պետություն ստեղծելու, չնայած դրա համար անհրաժեշտ սոցիալ-տնտեսական պայմաններ չկային: Երկրում մեկը մյուսի հետևից առաջացել էին ֆեոդալական փոքր թագավորություններ ու իշխանություններ (Վասպուրական, Վանանդ, Լոռի, Կապան, Տարոն, Սասուն և այլն), որոնք ավելի էին խորացնում մասնատումը և արգելք դառնում միացյալ պետություն ստեղծելու գործում:

Այնուամենայնիվ, Բագրատունի թագավորները օգտվելով երկրում հաստատված երկարատև խաղաղ կացությունից, որ տևեց 10-րդ դարի 20-ական թվականներից մինչև հաջորդ դարի 20-ական թվականները, ամեն կերպ ձգտում էին հասնել քաղաքական այդ նպատակին: Աշոտ 2-րդին (914—928) արդեն հաջողվել էր գերիշխանություն ստանալ Հայաստանի մյուս պետական միավորումների նկատմամբ և կրել «շահնշահ» տիտղոսը: Աշոտ 3-րդը, որը նույնպես կրում էր «շահնշահ» տիտղոսը, կարողացել էր իրեն ենթարկել իշխանություններ և արաբական էմիրություններ: Երկրի միավորման գործն ավելի որոշակի կերպարանք է ստանում Սմբատ 2-րդի (977—989) և Գագիկ 1-ինի (989—1020) թագավորության տասնամյակներում: Սմբատ 2-րդը ոչ միայն կարողացավ ձևականորեն իր ենթակայության տակ պահել նշված ֆեոդալական թագավորությունները, այլև բարեկամական դաշնակցության մեջ մտավ Տայքի Դավիթ կյուրապաղատի և Վրաց թագավորի հետ: Իսկ Գագիկ 1-ինը նախորդների կողմից ստեղծված այդ միությունը ավելի ամրապնդելու հետ միասին, ընդարձակում է պե-

տության սահմանները դեպի արևելք, իր թագավորությանը միացնելով Սյունիքի հյուսիսային մասի և Արցախի մի շարք գավառներ։ Նա մեծ ջանքեր գործադրեց հատկապես զինված ուժերի կազմակերպման վրա՝ ըստեղծելով մի քանի տասնյակ հազար զինվորից բաղկացած, լավ վարժված ու ժամանակի պահանջներին համապատասխան զինված բանակ։

Սխալ են հայագիտության մեջ երբեմն տեղ գտնող այն արտահայտությունները, թե Անի-Շիրակի թագավորությունը շատ փոքր տարածք ուներ, «գավառական» էր և Անին էլ (Ն. Մառի արտահայտությամբ) սոսկ մայրաքաղաքն էր «հայկական միջնադարյան փոքր իշխանություններից մեկի»։ Մինչդեռ Գագիկ 1-ինի օրոք այդ թագավորության սահմանները Ստեփանոս Ասողիկի (11-րդ դ.) և Ստեփանոս Օրբելյանի (13-րդ դ.) վկայությամբ ձգվում էին Ուխթիքից (Օլթի) ու Կարինից (Էրզրում) մինչև Արցախի խորքերն ու Վասպուրականի ծայրաշրջանները՝ իրենց մեջ ընդգրկելով նախկին Այրարատյան աշխարհի մեծագույն մասը, Սյունիքի հյուսիս-արևմտյան գավառները (Գեղարքունիք, Սոտք, Վայոց ձոր, Աղահեջք), զգալի տերիտորիաներ Արցախի և Գուգարքի կողմերում։

Ամենահամեստ հաշիվներով այդ սահմանների միջև ամփոփված Անի-Շիրակի թագավորության տարածքը հասնում էր մոտ 50 հազար քառակուսի կիլոմետրի, որ միջնադարյան ֆեոդալական պետության համար փոքր չի կարելի համարել։ Այնպես որ Անին ոչ թե գավառապետության, այլ մի ամբողջ շարք փոքր թագավորությունների ու իշխանությունների գըլուխ կանգնած բավական ընդարձակ պետության մայրաքաղաքն էր, որ իր ժամանակին հասավ միջազգային ճանաչման։ Բագրատունիների այդ թագավորությունն ուղղակի կոչվում էր նաև մայրաքաղաքի անունով՝ Անիի թագավորություն։

Բագրատունի թագավորների համար երկրի միասնության հարցից պակաս կարևոր չէր նաև իրենց հիմնական հենակետի՝ մայրաքաղաք Անիի ամրացման, անմատչելի դարձնելու և շքեղացնելու գործը։

Անիին մայրաքաղաքի առաջին տեսք տվողը այստեղ հաստատված Բագրատունի առաջին թագավորն է՝ Աշոտ 3-րդը։ Նա նախ կառուցում է քաղաքի Ներքին բուրգավոր ու աշտարակավոր պարիսպը (963—964 թթ.), որը հետագայում կոչվեց Աշոտյան կամ Փոքր պարիսպ։ Աշոտյան պարիսպները, որ բացվել են Ն. Մառի կատարած պեղումների ընթացքում, կառուցված են մեծ վարպետությամբ, ժամանակի տեխնիկական-շինարարական պահանջներին համապատասխան։ Այս պարիսպներով չէին սահմանափակվում Աշոտ 3-րդի ժամանակվա պետական պաշտպանական նշանակություն ունեցող կառուցումները։ Ենթադրվում է, որ նրա օրոք է անցկացվել քաղաքի ջրմուղը և կառուցվել արքունի պալատի որոշ մասեր։

Քաղաքն աճում, զարգանում և ընդարձակվում է միջնադարի համար անսովոր արագությամբ: Մայրաքաղաք հռչակվելուց հետո ընդամենը մեկ և կես տասնամյակի ընթացքում Անին արդեն գրավում է միջնաբերդից հյուսիս-արևելք ընկած ընդարձակ սարավանդը և խիստ պահանջ է զգացվում պաշտպանական երկրորդ՝ Արտաքին կամ Մեծ պարսպի, որն արդեն կառուցվում է Աշոտ 3-րդի որդի՝ Տիեզերակալ մականունը ստացած Սմբատ 2-րդի օրոք, ութ տարվա ընթացքում:

Սմբատյան կամ Արտաքին (Մեծ) պարսպի ավերակները համեմատաբար լավ են պահպանվել և նշմարվում են ամբողջ տարածության վրա՝ մոտ 2,5 կմ երկարությամբ:

Անիի պաշտպանական կառուցվածքները Աշոտյան և Սմբատյան պարիսպներով չէին սահմանափակվում: Քաղաքի պաշտպանական համալիրի մեջ մտնում էին նաև Աղջկաբերդի և միջնաբերդի ամրությունները, Ախուրյանի, Ծաղկոցաձորի, Գլիձորի ուղղությամբ կառուցված պարսպահատվածները և առանձին ամրացված կետեր, որոնց մի զգալի մասը նույնպես ստեղծվել էր Բագրատունիների օրոք: Մասնավորապես Սմբատ 2-րդի օրոք է անցկացվել Մեծ պարսպին զուգահեռ, նրա արտաքին կողմով մոտ 500 մ ձգվող խրամը, որը լցնում էին ջրով և որը պաշտպանականից բացի ուներ նաև տնտեսական մեծ նշանակություն: Այդ կառուցումները նկատի ունենալով, գույների խտացում չի կարելի համարել Լեոյի այն արտահայտությունը, թե՝ «Անի մայրաքաղաքն իսկապես» Սմբատ 2-րդի «ձեռքի գործն է»:

Սակայն չպետք է կարծել, որ Բագրատունի թագավորներն իրենց բոլոր միջոցներն ու եռանդը ներդնում էին միայն պաշտպանական-ռազմական նպատակներով և Անին էլ դարձրել էին մի ռազմական ճամբար: Անիում Բագրատունիների թագավորության օրոք են կառուցվել Ախուրյանի վրայի կամուրջներից մի քանիսը, արքայական պալատի հիմնական մասերը, քարավանատներ, ամբողջական թաղամասեր ու փողոցներ, բազմաթիվ եկեղեցիներ (որոնց թվում են՝ Մայր եկեղեցին, Գագկաշենը, Առաքելոց եկեղեցին, ս. Փրկիչը և այլն), իշխանական ապարանքներ, հիվանդանոցներ, «քարտուններ»:

Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում երկրի տնտեսական ու մշակութային կյանքի մեծ առաջադիմության, քաղաքային կյանքի աննախընթաց զարգացման հետ միասին Անին արագորեն վերածվում է խոշոր, բազմամարդ, բարեկարգ քաղաքի, արհեստագործության ու առևտրի, զարգացած մշակույթի հայտնի կենտրոնի: Եվ այդ բոլոր նվաճումները Անիում ձեռք են բերվել մեկ հարյուրամյակից էլ պակաս ժամանակաընթացքում (961—1045 թթ.): Չի կարելի չնշել, որ այս հարցում անհա-

գիտության մեջ երկու ծայրահեղ կարծիք է արտահայտվել։ Մեկը, որի հիմնադիրը, եթե կարելի է այդպես արտահայտվել, Ն. Մառն է, լրիվ ժխտում է Բագրատունի թագավորների ժամանակ Անիի մեծ քաղաք լինելը և այդ շրջանի ձեռքբերումները ձգտում է կապել մայրաքաղաքի պատմության հետագա ժամանակների, այդ թվում՝ նույնիսկ սելջուկյան շրջանի հետ, իսկ մյուս վարկածը, որի ականավոր ներկայացուցիչը Լեոն է, մայրաքաղաքի կյանքում տեղի ունեցած ամեն մի առաջադիմություն կապում է Բագրատունիների թագավորության շրջանի հետ, հետագա ժամանակների Անին համարում սոսկ «նախկին փառքով ապրող մի քաղաք»։

Այդ երկու կարծիքներից ոչ մեկը նույնությամբ չի կարելի ընդունել։ Պատմական իրականությունն այն է, որ Անիի ամենաբուռն զարգացման շրջանը Բագրատունիների թագավորության շրջանն է, երբ այն մեծ արագությամբ վերածվեց բարեկարգ քաղաքի, ճարտարապետական գլուխգործոցների քաղաքի, բավարար կոմունալ պայմաններ ունեցող, կրկնակի պարիսպներով պաշտպանված քաղաքի, որի շուրջը փռված էին նրա վերգետնյա ու ստորգետնյա արվարձանները, արհեստագործության, առևտրի մեծ կենտրոնի։ Ուրիշ շատ հանգամանքների հետ միասին չպետք է մոռանալ նաև այն, որ Անին այդ ժամանակ ինքնուրույն պետության մայրաքաղաք էր, այն էլ այնպիսի մայրաքաղաք, որ պետությունը նրա անունով էր կոչվում՝ Անի-Շիրակի, կամ ուղղակի՝ Անիի թագավորություն։ Բայց այդ բոլորով հանդերձ, սխալ է կարծել, թե 1045 թվականից հետո Անին ամենևին զարգացման շրջան չի ունեցել։ Չէ՞ որ նա ծաղկուն քաղաք էր նաև Զաքարյան հայ իշխանների օրոք՝ 12-րդ դ. վերջին և 13-րդ դ. առաջին տասնամյակներում, մինչև մոնղոլական ավերիչ արշավանքներն ու ծանր լծի հաստատումը։

Պատմական տարբեր ժամանակներում, գերազանցապես քաղաքական հանգամանքների բերումով, Հայոց կաթողիկոսական աթոռը հաստատվել է տարբեր տեղերում։ Բագրատունյաց թագավորության կազմավորումից հետո՝ կաթողիկոսական աթոռը նախ հաստատվեց Անիից ոչ հեռու գտնվող Արգինա ավանում, ապա՝ 993 թվականից, ուղղակի Անիում։ Եթե Անին կաթողիկոսի նստավայր դառնալը մի կողմից նպաստել է Բագրատունի թագավորների՝ երկրի միավորման ձգտումներին, մյուս կողմից էլ մեծ խոչընդոտ է հարուցել։ Ավելին, Անիի կաթողիկոսներից Պետրոս Ա (1019—1058) Գետադարձը, որ հսկայական հարստությունների տեր էր և երկրի խոշորագույն ֆեոդալներից մեկը, ոչ միայն խանգարում էր երկրի միասնությանը, այլև իր նման մի այլ, բայց աշխարհիկ ֆեոդալի՝ Վեստ Սարգսի հետ միասին հունասեր կուսակցության գլուխ անցած փաստորեն Անին վաճառեց Բյուզանդիային։

Այնուամենայնիվ, կաթողիկոսանիստ լինելը նույնպես Անիին տալիս էր ավելի մեծ կշիռ։ Այստեղ էին ձեռնադրվում Հայաստանի եկեղեցական թեմերի թեմակալները՝ եպիսկոպոսները։ Անին էլ մի առանձին թեմ էր, որի թեմակալը, ի տարբերություն երկրի մյուս բոլոր քաղաքների թեմերի առաջնորդների, սովորաբար կոչվում էր մեծ եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս։

Իբրև մայրաքաղաք Անիում էին գտնվում Բագրատունի թագավորներն իրենց շրջապատող բարձրաստիճան վարչական ապարատով (իշխանաց իշխան, սպարապետ, մարզպան, մութսիբ և այլք), թագավորության մեջ կարևոր դեր խաղացող իշխանական տներով (Պահլավունիները և ուրիշներ), ազատանի դասի մեծ մասով, նոր առաջացած մեծատունների հայտնի ընտանիքներով, հոգևոր հայրերով։ Անիում էր զետեղված նաև պետության զորքի հիմնական մասը։ Իբրև գիտության կենտրոն, Անիի հետ էր կապված ժամանակի նշանավոր մտավորականներից շատերի գործունեությունը։

Միջնադարյան քաղաքներից յուրաքանչյուրը մեկ վարչական միավոր էր, մի համայնք, եթե այդպես կարելի է որակել, որտեղ ժամանակի ընթացքում առաջացել էին տարբեր կարգի կառավարման հիմնարկներ՝ պետական կամ տիրակալական և հասարակական։ Վերջիններս ինքնավարական հիմնարկներ էին, որոնք կարող էին իրենց գործունեության մեջ կամ ազատ լինել, կամ ենթարկված էին պետական մարմիններին՝ հանձինս քաղաքի տիրոջը։

10—11-րդ դարերի Հայաստանի խոշոր քաղաքներում, որոնց թվում և Անիում, գլխավոր պաշտոնյաներից մեկը համարվում էր վերակացուն՝ մութսիբը (կամ մութսայիբ), որը հսկում էր շուկաների, դրանցում գործող չափ ու կշիռների վրա։ Բացի դրանից, նա ուներ ֆինանսական և ոստիկանական պարտականություններ։ Վերակացու-մութսիբներին, ըստ երևույթին, ստորադրված էին ավելի ցածր կարգի մի շարք պաշտոնյաներ՝ տանուտերերը, որոնք հետագա դարերում կոչվեցին մելիքներ։ Ֆեոդալական հողի վրա գտնվող քաղաքի գլխավոր վերակացուն նշանակվում էր գավառատեր իշխանի, իսկ մայրաքաղաքինը՝ թագավորի կողմից։ Անիի քաղաքային պաշտոնյաների պարտականությունների մասին որոշ գաղափար են տալիս վիմագիր մի քանի արձանագրություններ, որոնք վերաբերում են քաղաքում առևտրի կազմակերպմանը, հարկերին և այլն։

Սակայն 10—11-րդ դարերի Հայաստանի խոշոր քաղաքների, մասնավորապես մայրաքաղաք Անիի կառավարումը չէր սահմանափակվում միայն պետական մարմինների կողմից նշանակված վերակացուներով ու «տանուտերերով»։

Այդ ժամանակներում երկրի խոշոր քաղաքները (Անի, Դվին, Արծն, Կարս և այլն) դարձել էին առևտրի ու արհեստագործության նշանակալի կենտրոններ, քաղաքային դասը՝ առևտրականներն ու արհեստավորները բավական շատ էին և իրենց տնտեսական գործունեությամբ կարևոր դեր էին խաղում քաղաքների ներքին կյանքում՝ սկսած դրանց կոմունալ պայմանների բարելավումից, քաղաքի պաշտպանության կազմակերպումից մինչև դրա քաղաքական վիճակով զբաղվելը ներառյալ: Արհեստավորների ու առևտրականների պայքարը քաղաքատեր ֆեոդալների դեմ, հատկապես քաղաքների կառավարմանը մասնակցություն ունենալու իրավունքի համար, դառնում է անխուսափելի: Այդ պայքարի արդյունքը այն է, որ միջնադարյան Հայաստանի խոշոր քաղաքներում 10—11-րդ դարերում աստիճանաբար ստեղծվում են ինքնավարական օրգաններ՝ «ավագանի», «ավագների խորհուրդ» կամ ուղղակի՝ «երիցանի»:

Անիում Բագրատունիների թագավորության շրջանում գոյություն ուներ քաղաքի այդպիսի «գլխավորք», որն, ըստ վիմագիր արձանագրությունների հաղորդած տեղեկությունների, կարևոր դեր էր խաղում քաղաքի ներքին կյանքում: Անիի այդ առաջին ինքնավարական մարմնի մասին խոսելիս սովորաբար վկայակոչում են 11-րդ դ. պատմագիր Արիստակես Լաստիվերտցու հիշատակությունն այն մասին, որ Բագրատունի վերջին թագավոր Գագիկ 2-րդին Բյուզանդիայում արլեգափակելուց հետո՝ մայրաքաղաքի «գլխավորքը» որոշում են նրա բախտը տնօրինել իրենց հայեցողությամբ: Սակայն Անիի «գլխավորքի» մասին հայտնի է ավելի հին վկայություն: Այդ մի վիմագիր արձանագրություն է, գրված Գագիկ 1-ինի օրոք (989—1020), ըստ որի թագավորի հրամանով քաղաքի «գլխավորքը» պարտավոր էր օտար քաղաքից եկած անձի մահվան դեպքում նրա դիակը պահել մինչև հարազատների գալը:

Անիի «գլխավորքի» մասին այդ արձանագրությունը բանալի է տալիս հասկանալու քաղաքի ինքնավարական բարձրագույն օրգանի ենթակայության աստիճանը: Պարզվում է, որ քանի դեռ Բագրատունի թագավորները հաստատուն նստած էին իրենց գահին, մայրաքաղաքի «գլխավորքը» («երիցանին») հավանաբար լիովին ենթակա էին նրանց կամքին: Բագրատունիների թագավորության անկումից հետո քաղաքի «գլխավորքի» դերը կտրուկ բարձրանում է մինչև այն աստիճան, որ նա իրավասու էր տնօրինելու ամբողջ քաղաքի ճակատագիրը: Մի այդպիսի դեպքի մասին էլ վկայում է 13-րդ դ. պատմագիր Կիրակոս Գանձակեցին մոնղոլների 1236 թ. արշավանքի հետ կապված: Նրա այդ հաղորդման համաձայն, քաղաքի «գլխավորքը» կտրուկ մերժել են Անին հանձնելու մասին մոնղոլական զորավարի ուղարկած պատվիրակների առաջարկը:

Այսպիսով, 10—11-րդ դարերում Անիում ձևավորվել էր քաղաքային դասի ինքնավարության օրգանը՝ քաղաքի «գլխավորքը», որն այդ նույն ժամանակաշրջանի վերջում ձեռք էր բերել ավելի լայն իրավունքներ:

## 2. ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔՆ ՈՒ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

9-րդ դարի երկրորդ կեսից, քաղաքական անկախության նվաճումից հետո, Հայաստանը թևակոխում է տնտեսական բուռն զարգացման շրջան. զարգանում են նրա գյուղատնտեսության ճյուղերը, ներքին ու արտաքին առևտուրը, արհեստները, քաղաքային կյանքը: Հայ պատմագիր Արիստակես Լաստիվերտցին Բագրատունյաց Հայաստանը նկարագրում է որպես մի «փարթամ այգի»: 10-րդ դ. պատմիչ Իբն-Ֆակիհը նշում է, որ այդ ժամանակ միայն Արաքսի հովտում եղել են մոտ 1000 քաղաք ու գյուղ, իսկ արաբական ավելի հայտնի հեղինակ Յակուտի վկայությամբ Հայաստանում կային 18000 գյուղեր ու քաղաքներ:

Տնտեսական այդ վերելքի հիմքում երկրի քաղաքական անկախության վերականգնումն էր, որին 15—20 տարի հետո հաջորդեց այն ժամանակաշրջանը, երբ Բագրատունյաց Հայաստանը դադարեց նաև խալիֆայությանը հարկատու լինելուց: Երկրի նյութական միջոցները կուտակվում էին ներսում և հիմք դառնում նրա տնտեսական առաջադիմության համար:

Հայաստանի տնտեսական զարգացմանը պակաս չափով չէր նպաստում ավելի քան 100 տարի տևած ընդհանուր խաղաղությունը, որ հաստատվել էր Աշոտ 2-րդի (Երկաթի) օրոք, 10-րդ դ. առաջին քառորդի վերջերին:

Բագրատունիների թագավորության շրջանում Հայաստանը, ընդհանուր առմամբ, չեզոք էր խալիֆայության և Բյուզանդիայի մրցակցությունից: Այն դարձել էր Արևելքն Արևմուտքի հետ կապող կարևոր օղակներից, տարանցիկ աշխույժ առևտրի միջավայր, որը նույնպես մեծապես նպաստում էր նրա տնտեսության զարգացմանը:

10—11-րդ դարերի տնտեսական ընդհանուր վերելքի առանձնահատուկ կողմերից մեկը քաղաքային կյանքի աշխուժացումն էր, արհեստագործության, առևտրի զարգացումը, տասնյակ բերդեր՝ քաղաքների, ագարակներ՝ ավանների, ավաններից շատերը՝ քաղաքների, բազմաթիվ գյուղեր՝ գյուղաքաղաքների վերածվելը: Հիմնվում են տասնյակներով նոր բնակավայրեր, ավելի բազմամարդ են դառնում հնից գոյություն ունեցած քաղաքներն ու մյուս բնակավայրերը: Ժամանակակից պատմագրի արտահայտու-

թյամբ՝ «ագարակաց աւանացեալ և աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ և ընչեղությամբ» (Ասողիկ)։

Քաղաքների այդ բուռն վերելքը Հ. Մանանդյանը հիմնականում համարում է միջազգային տարանցիկ առևտրի հետևանք։ Թվում է, թե միանգամայն ճիշտ բնութագրելով այդ ժամանակաշրջանի քաղաքների և քաղաքային կյանքի զարգացումը, դրա հետ միաժամանակ նա որոշակիորեն գերագնահատել է այդ ընդհանուր առաջադիմության մեջ տարանցիկ և միջազգային առևտրի դերը։ Անժխտելի է, որ միջազգային և տարանցիկ ծավալուն առևտուրը հսկայական նշանակություն է ունեցել 10—11-րդ դարերում Հայաստանի քաղաքների և քաղաքային կյանքի զարգացման համար։ Այնուամենայնիվ այդ առևտուրը չէր կարող ընդհանուր զարգացման գլխավոր նախապայմանը լինել։ Հայտնի է, որ մոնղոլական տիրապետության շրջանում ևս մոնղոլ խաները խրախուսում էին արտաքին առևտուրը՝ այն դիտելով որպես տերունական դրամարկղները հարստացնող կարևոր աղբյուր։ Բայց 10—11-րդ դարերի և մոնղոլական ժամանակաշրջանի առևտուրը իրարից էապես տարբերվում էին։ 10—11-րդ դդ. արտաքին առևտուրը սերտորեն առնչված էր երկրի ներքին տնտեսական կյանքի հետ, ներքին մանրամախ առևտրի հետ, զարգացող արհեստագործության ու գյուղատնտեսության հետ, բխում էր երկրի տնտեսական ընդհանուր զարգացումից և գերազանցապես արտացոլելով այդ զարգացումը՝ ինքն իր հերթին նպաստում էր երկրի տնտեսական ընդհանուր առաջադիմությանը։ Մինչդեռ մոնղոլական տիրապետության և հետագա ժամանակների Հայաստանի վրայով կատարվող առևտուրը երկրի տնտեսական կյանքի հետ համեմատաբար քիչ էր առնչվում և մեր ժողովրդի ընդհանուր առաջադիմությանը գրեթե ոչնչով չէր նպաստում։ Հանրահայտնի է, որ արտաքին ու տարանցիկ առևտուրը տվյալ երկրի համար խոշոր նշանակություն է ունենում միայն այն ժամանակ, երբ այդ առևտուրը ձուլվում է ներքին առևտրի հետ, երբ դրան տվյալ երկիրն իր հերթին լայն չափով մասնակցում է սեփական ապրանքներով։ Ժողովրդական տնտեսության խորքերը թափանցող, դրա ծյուղերի վրա ազդող և նույն ժողովրդական տնտեսության զարգացման հիման վրա ավելի ծավալվող առևտուր էր Հայաստանի 10—11-րդ դդ. և՛ արտաքին, և՛ նրա տարածքի վրայով կատարվող քարավանային տարանցիկ առևտուրը։

Քաղաքների առաջացման ու զարգացման հիմնական նախապայմանը, այնուամենայնիվ, մնում է երկրի ներսում աշխատանքի հասարակական բաժանումը, քաղաքի աստիճանական անջատումը գյուղից, որի մասին այնքան որոշակիությամբ ասել են մարքսիզմի կլասիկները 9—12-րդ դարերի Գերմանիայի օրինակով։ Հայաստանում 10—11-րդ դդ. իրոք որ պայ-

մաններ էին ստեղծվել քաղաքի՝ գյուղից աստիճանաբար անջատման, արհեստների ու մեծածախ առևտրի քաղաքում կենտրոնացման, դրամական հարաբերությունների ծավալման, առանձին անհատների ձեռքում հսկայական հարստությունների կուտակման համար։

Իբրև ընդհանուր կանոն, 10—11-րդ դդ. Հայաստանի խոշոր քաղաքները գտնվում էին միջազգային քարավանային մայրուղիների վրա։ Պարսկաստանից՝ Հայաստանի վրայով Տրապիզոն տանող հյուսիսային հիմնական մայրուղու վրա էին գտնվում Նախճավանը, Դվինը, Անին, Կարսը, Արծնը, որոնցից վերջին երեքը իբրև քաղաք ձևավորվել էին 9—10-րդ դարերում և դարձել մարդաշատ, գեղեցիկ քաղաքներ, առևտրի ու արհեստագործության խոշոր կենտրոններ։ «Իբրև ակն մի պատուական լուսագեղ պայծառութեամբ փայլէր քաղաքս մեր ի մէջ ամենայն քաղաքաց, ամենևին գեղեցիկ, բոլորովին զարդարուն», «ծով և ցամաք երկնէր և առատանայր կրել ի սմա զզօրութիւն իւր»,— գրում է Արիստակես Լաստիվերտցին իր հայրենի քաղաք Արծնի մասին։ Նա նույն կերպ բնութագրում է նաև մյուս քաղաքները։

10—11-րդ դդ. հայտնի են նաև երկրի հարավային մասի մի շարք քաղաքներ, որոնք նույնպես գտնվում էին քարավանային մայրուղու վրա։ Վերջինս ձգվում էր Հայաստանի հարավային շրջաններով և նրա վրա էին գտնվում Վանը, Մանազկերտը, Խլաթը, Բաղեշը (Բիթլիս) և այլն, որոնք նույնպես դարձել էին վաճառաշահ, խոշոր քաղաքներ։

Գլխավոր մայրուղիների վրայի խոշոր քաղաքներից բացի, 10—11-րդ դարերում մի ամբողջ շարք քաղաքներ էին առաջացել նաև երկրի տարբեր անկյուններում (Կապան, Լոռի, Արտանուջ, Աղթամար և այլն), որոնք դարձել էին տեղական առևտրի և արհեստագործության զգալի կետեր։

Թվում է, թե սխալված չենք լինի, եթե ասենք, որ 10—11-րդ դարերի բովանդակ Հայաստանում ամենաարագ զարգացողը Անին էր՝ Բագրատունիների հռչակված մայրաքաղաքը։

Անին և՛ Բագրատունիների օրոք, և՛ հետագայում ֆեոդալական Հայաստանի խոշորագույն քաղաքներից էր, իր բնույթով միանգամայն համապատասխան այդ հասարակարգին, արտացոլելով վերջինիս բնորոշ գծերը։ Անընդունելի է Ն. Ադոնցի, Հ. Մանանդյանի և մյուսների վարկածը, որ իբր Բագրատունյաց Հայաստանում ֆեոդալական հասարակարգն արդեն քայքայվում էր և ձևավորվում էր բուրժուական հասարակարգ։

Բուրժուական հարաբերությունները մեզ մոտ չէին ձևավորվել նաև հետագայում՝ 12—13-րդ դդ., ինչպես փորձում են համոզել մի շարք հեղինակներ, վկայակոչելով տնտեսական զարգացման ցուցանիշները, դրամական հարաբերությունների զարգացումը, գաղափարախոսության մեջ աշ-

խարհիկ մտածողության տարրերի որոշակի գերակշռությունը, ֆեոդալիզմի դեմ ուղղված գյուղացիական շարժումները և այլ երևույթներ:

Այնպես որ մենք գործ ունենք ֆեոդալական քաղաքի պատմության հետ, զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանի խոշոր մայրաքաղաքի պատմության հետ:

922 թվականին հաստատված երկարատև խաղաղության, երկրի տընտեսական կյանքի ընդհանուր առաջադիմության, ներքին և արտաքին առևտրի ծավալման, դրամական հարաբերությունների զարգացման շնորհիվ, քաղաքական անկախության պայմաններում, 10—11-րդ դարերում մեծ առաջընթաց են ապրում նաև արհեստները: Դրանք նախորդ ժամանակների համեմատությամբ հասել էին ավելի բարձր վարպետության և աստիճանաբար կենտրոնանում էին քաղաքում: Այդ կարգի քաղաքներից էին Անին, Դվինը, Արծնը, Կարսը, Խլաթը, Վանը և այլն: Իբրև արագ ընդարձակվող մայրաքաղաք, բազմամարդ բնակավայր ու միջազգային առևտրի կենտրոն՝ Անիում արհեստավորական արտադրանքների մեծ պահանջարկ կար ընկըսած տնային գործածության իրերից, կավե հասարակ ամանեղենից և հագուստից, գյուղատնտեսական ու արհեստավորական գործիքներից, զենքերից ու զինամթերքից և վերջացրած մետաքսե ընտիր գործվածքներով ու գորգերով, ոսկերչական ու արծաթագործական զարդերով, եկեղեցական սպասքով և բազմատեսակ այլ առարկաներով: Անիում արհեստների զարգացման համար, այլ տեղերից բերվող հումքերի հետ միասին (ոսկի, արծաթ, պղինձ, հում մետաքս, անագ, փայտանյութ), կային տեղական մի շարք նյութեր, որոնք մշակման էին ենթարկվում անեցի արհեստավորների կողմից (տուֆեր, բազալտներ, պեմզա, կավեր, գյուղատնտեսական մթերքներ՝ կաշի, բուրդ, քնջութ ու կտավատ, վուշ և այլն):

Այնուամենայնիվ, Անիի 10—11-րդ դարերի զարգացած արհեստագործությունը պատմական առումով ներկայացնելը դժվարությունների հետ է կապված: Գրավոր աղբյուրների հաղորդած տեղեկությունները աղքատիկ են, իսկ պեղումների ընթացքում հայտնաբերված նյութերը զանգվածորեն վերաբերում են քաղաքի պատմության համեմատաբար ուշ շրջանին, որոնց շատերի ժամանակն էլ ընդհանրապես չի ճշտված: Պեղումները հիմնականում ընդգրկել են հնագիտական վերին շերտերը և միանգամայն հասկանալի է, որ 10—11-րդ դարերին վերաբերող նյութեր շատ սակավ պետք է ի հայտ գային: Բոլոր դեպքերում, եղած վկայություններն ու հայտնաբերված նյութերը, մի փոքր ուշ շրջանի տվյալները (միջնադարյան արհեստները շատ պահպանողական էին և կարճ ժամանակամիջոցում դրանց կըրած փոփոխություններն աննշան էին) թույլ են տալիս Բագրատունիների մայրաքաղաքի արհեստագործությունը բնութագրել բավարար խորությամբ:

Մեզ հետաքրքրող ժամանակների արհեստագործության մեջ աշխատանքի բաժանումը մեծապես խորացել էր։ Ճյուղավորվել էին նախկին արհեստները, առաջացել էին նոր արհեստներ, մասնագիտացման հետ կապված երևան էին եկել ավելի կատարելագործված գործիքներ։

Անիում բավական բարձր զարգացման էին հասել մի շարք արհեստներ՝ զինագործություն, դարբնություն, ջուլհակություն, գորգագործություն, ասեղնագործություն, կավագործություն, փայտագործություն և այլն։ Դրանց արտադրած ապրանքների մի մասը արտահանվում էր զանազան երկրներ։ Քաղաքի ավերակներում հայտնաբերված արհեստավորական գործիքների հավաքածուն շատ աղքատիկ է և հնարավորություն չի տալիս բնութագրել արհեստավորների օգտագործած գործիքների զարգացման աստիճանը։

Արհեստագործության վարպետության բարձրացման, արհեստավորական արտադրանքների որակի բարելավման, ինչպես և արհեստավորների տնտեսական-իրավական վիճակի մասնակի լավացման համար հանրահայտնի են արհեստավորական եղբայրությունների (հետագայում՝ համքարություններ ու էսնաֆություններ) խաղացած դերը։ Եվրոպայում այդ կարգի՝ արհեստավորական-արտադրական կազմակերպությունները՝ ցեխերը ծագել են 11—12-րդ դարերի սահմանագլխին, որպես արդյունք քայքայվող փակ բնատնտեսության և ճորտատիրությունից ազատ արհեստավորների երևան գալուն։

Լուծված կարելի է համարել համքարությունների ծագման հարցը նաև Հայաստանում։ Այստեղ համքարությունների ծագումը կապվում է Բագրատունիների թագավորության ժամանակների հետ։ Դրանց կրոնական և որոշ արտադրական սովորություններ գալիս էին տակավին հին ժամանակներից՝ ավանդույթի ձևով։ 10—11-րդ դարերում, համքարությունները կազմավորվելուց հետո, նույնպես մեծի մասամբ ղեկավարվում էին ավանդույթներով, իսկ շատերը մինչև վերջ էլ ընդհանրապես չեն ունեցել իրենց գրավոր օրենքները։

Եթե 10—11-րդ դարերի Հայաստանի մյուս քաղաքներում արհեստավորական եղբայրությունների մասին խոսվում է անուղղակի նյութերի կամ ավելի ուշ ժամանակներին վերաբերող հիշատակությունների հիման վրա, այն էլ միայն հավանական ենթադրությունների շրջանակներում, ապա Անիի արհեստավորական եղբայրությունների մասին կան ավելի արժանահավատ տեղեկություններ, որոնք հաղորդվում են հիմնականում վիմագիր արձանագրություններում։ Ըստ այդ արձանագրությունների, Անիում գոյություն են ունեցել արհեստավորական եղբայրությունների անուններով մի շարք փողոցներ՝ Դարբնոց (ս. Գրիգոր եկեղեցու մոտակայքում), Բազզնոց,

Կոշկակարոց, Նալպանդոց, Փոլկարարոց (՞) փողոցներ, Կատանոց (ըստ Ղ. Ալիշանի ենթադրության, քյուդադ կոչված լայն զգեստ կարողներ), Գտակկարոց խանութ և այլն։ Իրենց գոյության ամբողջ ընթացքում համքարություններից յուրաքանչյուրը կազմված էր միևնույն տեսակի արհեստավորներից կամ առևտրականներից, զբաղեցնում էր քաղաքի որևէ փողոց, փողոցի մի հատված, Նրբանցք, շարք կամ թաղամաս, որը և սովորաբար կոչվում էր տվյալ համքարության անունով։ Արհեստը ժառանգաբար անցնում էր հորից որդուն, իսկ համքարության պաշտոնական անձինք ընտրովի էին։

Արհեստավորական եղբայրությունների մեջ միանգամայն տարբեր դիրք ու իրավիճակ ունեին վարպետներն ու աշակերտները։ Դրանց իրավական փոխադարձ հարաբերություններն իրենց տեղն են գտել նաև Մխիթար Գոշի դատաստանագրքում, ըստ որի վարպետն աշակերտին սովորեցնելու համար իրավունք չուներ վարձ վերցնելու։ Սակայն դրա փոխարեն աշակերտը որակավորում ստանալուց հետո պարտավոր էր վարպետին տալ հատուկ նվերներ, մի սովորույթ, որը Անդրկովկասի և հարևան երկրների համքարությունների պրակտիկայում ուժի մեջ մնաց ընդհուպ մինչև 19-րդ դարը՝ մինչև դրանց վերացումը։

Իրավական որոշ հարաբերություններ էին ձևավորվել նաև եղբայրությունների մեջ մտնող վարպետների միջև։ Ենթադրվում է, որ արհեստավորների միջև ծագած վեճերի համահարթման գործում հիմնական դեր էին խաղում քաղաքներում առաջացած «ծերոց ատյաններ» կոչված դատական մարմինները։

Թե արհեստավորական և թե առևտրական եղբայրությունների անդամները հարկատու էին։

Հատուկ հետաքրքրություն է ներկայացնում արհեստավորների աշխատանքի վարձատրման հետ կապված հարցը։ Մխիթար Գոշի դատաստանագրքի 114-րդ հոդվածում ասված է այն մասին, որ արհեստավորները կարող են աշխատել և՛ դրամով («վարձով»), և՛ «հատվածով», այսինքն պատվիրատուի տված հումքի մի մասով։

Պեղումների շնորհիվ Անիում հայտնաբերվել են մեծ քանակությամբ արհեստավորական արտադրանքների մնացորդներ՝ բրուտագործական ամենատարբեր տեսակի ամաններ ու անոթներ, զինագործական, ոսկերչական, տեքստիլ, դարբնոցային և արհեստավորական այլ իրեր, որոնց ճնշող մասը տեղական ծագումի է։ Եվ դրանց մի մասը, անշուշտ, բաժին է ընկնում 10—11-րդ դարերին։

Վիմագիր արձանագրություններում, պատմագիրների և ժամանակագիրների աշխատանքներում, հիշատակարաններում և այլ աղբյուրներում

հիշատակված Անիի արհեստների թիվը մոտ 40-ի է հասնում, որի մի մասը Բագրատունիների թագավորության շրջանում արդեն գոյություն ուներ և զանգվածորեն համախմբված էր արհեստավորական եղբայրությունների մեջ:

Տարբեր աղբյուրներում վկայություններ կան քաղաքի արհեստանոցների վերաբերյալ: Սակայն ինչպես հետագա դարերում, այնպես էլ մանավանդ միջնադարում արհեստավորի արհեստանոցն ու առևտրականի կրպակը իրարից ոչնչով չէին տարբերվում: Այնպես որ սկզբնաղբյուրներում հիշատակված կրպակը կարող էր լինել և՛ արհեստանոց, և՛ խանութ:

Անիում տարածված արհեստներից էին (մետաղամշակման հետ կապված) դարբնությունը, զինագործությունը, ոսկերչությունն ու արծաթագործությունը, պղնձագործությունը, անագագործությունը: Տեքստիլ արհեստներից՝ մանածագործությունը, ջուլհակությունը, գորգագործությունը, ներկարարությունը, ասեղնագործությունը, ինչպես նաև դերձակությունը, գդակարությունը և այլն: Շինարարական և դրանց հետ կապված արհեստներից՝ քարտաշությունը, որմնադրությունը, ծեփագործությունը, ներկարարությունը, հյուսնությունը (և ատաղձագործությունը), ճրագկալներ, ջահեր և ապակյա իրեր արտադրող արհեստները, կավագործությունը լայն առումով (որի մեջ մտնում էին մի շարք ինքնուրույն արհեստներ), լարարարությունը, փոլկարարությունը (որի բնույթը հայտնի չէ), գրաստային տրանսպորտի և հեծյալ բանակի կարիքները բավարարող կաշեգործությունը, համետագործությունը, պայտարությունը, ձեռագրերի ստեղծման հետ կապված բազմաթիվ արհեստները՝ սկսած մագաղաթ (կամ թուղթ) պատրաստելուց մինչև ձեռագիր մատյանի ձևավորումն ու կազմելը ներառյալ:

Նեղ տնտեսագիտական առումով քաղաքում կային նաև այնպիսի արտադրական ձեռնարկություններ, որոնք չի կարելի նույնացնել բուն արհեստների հետ: Դրանք ձիթհանքերն ու ջրաղացներն էին, որոնք ավելի շուտ տնայնագործական տիպի ձեռնարկություններ էին:

Արձանագրություններում հիշատակված և երկարամյա պեղումների ընթացքում հայտնաբերված ձիթհանքերի թիվն Անիում հասնում էր 20-ի: Բոլոր ուսումնասիրողներն այն կարծիքի են, որ ձիթհանքերը սովորաբար կառուցվում էին եկեղեցիներին կից, կամ վերջիններիս էին նվիրվում տարբեր անձնավորությունների կողմից և դրանց արտադրած ձեթով լուսավորում էին եկեղեցիները: Որ ձեթի ճրագներով էին լուսավորում եկեղեցիները երեկոյան և, մասամբ, առավոտյան ժամերգությունների ժամանակ, կասկածից վեր է: Սակայն միանգամայն հասկանալի է նաև այն, որ մի քաղաքում տասնյակ ձիթհանքերի արտադրած ձեթը օգտագործել են նաև այլ նպատակներով՝ սննդի մեջ, Այրային Անիի «քարտուղները», ինչպես և քա-

ղաքի բնակելի շենքերը լուսավորելու համար։ Ձեթ էին ստանում և՛ կտավատից (որով Շիրակի դաշտն այնքան հայտնի էր), և՛ քնջութից, որն այնքան լայն տարածում ուներ ամբողջ Հայաստանում։

Ն. Մառը մանրամասն նկարագրել է Անիի ձիթհանքերից մեկը, որը գտնվում էր ս. Սարգիս եկեղեցու մոտ։ Նրա ասելով այդ ձիթհանքը քաղաքի «ամենախոշորներից չէր, բայց նրանում պահպանվել էին հետաքրքիր մասեր»՝ գերանի համար պատրաստված լամբը (փոսը), դրա տակ սարքված միանգամայն դատարկ փոսը, որտեղ տեղավորում էին կարասը կամ չանը և ստացված ձեթը լցվում էր դրա մեջ, վառարանը (մեծ թավան, սաջը), որի վրա չորացնում էին կտավատը կամ քնջութը, ամբողջական քարե հսկա անիվ, քարե մեծ կոշտերից պատրաստված շրջան, որի վրա դրված է եղել եզի (կամ գոմեշի) օգնությամբ պտտվող քարը և այլն։ Ձիթհանքի ավերակների նկարագրությունից պարզվում է, որ դարեր շարունակ ժողովրդի համար կենսական նշանակություն ունեցող այդ տնայնագործական ձեռնարկության «տեխնիկական» վիճակը էական փոփոխության չի ենթարկվել։ Ճարտարապետների հավաստիացմամբ, դարեր շարունակ (ընդհուպ մինչև 17—18-րդ դարերը) կայուն են եղել և դրանց արտադրական շենքերի տեսակները։ Հետևապես, տեխնիկական և կառուցողական առումով 10—11-րդ և 12—14-րդ դդ. ձիթհանքերն իրարից ամենևին չէին տարբերվում։

Ձիթհանքեր են հիշատակվում նաև ս. Փրկիչ եկեղեցու մոտ, քաղաքային պարսպի Կարինի դռան մոտակայքում և այլուր, որոնք կառուցվել են տարբեր ժամանակներում։

Ջրաղացները նույնպես տնայնագործական տիպի ձեռնարկություններ էին, որոնց շարժող ուժը հոսող ջուրն էր և եթե ձիթհանքում սովորաբար մի քանի հոգի էին աշխատում, ապա ջրաղացում միայն մեկ ջրաղացպան կարող էր լինել։ Ջրաղացները տեղադրված էին հոսող ջրերի՝ գետակների ափերին, որոնցով այնքան հարուստ է Անին։

Վիմագիր արձանագրություններում բազմաթիվ հիշատակություններ կան Անիի ջրաղացների վերաբերյալ։ Հավանաբար քաղաքի ջրաղացները նույնպես տասնյակների էին հասնում և տեխնիկապես հար ու նման էին ուշ միջնադարի (և նույնիսկ նոր ժամանակների) ջրաղացներին։ Ջրաղացները հիմնականում գտնվում էին Ծաղկոցաձորի, Գայլիձորի, քաղաքի պաշտպանական խանդակի, Ախուրյանի եզրերին։

Հայտնի է, որ դարբնությունը մետաղամշակման հետ կապված արհեստների «նախահայրն» է։ Մի ամբողջ շարք արհեստներ են ծագել դարբնությունից (զինագործություն, փականագործություն և այլն), այն մինչև վերջ էլ պահպանել է իր գոյությունը։ Անիում երկաթյա իրեր համեմատա-

բար քիչ են հայտնաբերվել: Դա մասամբ պետք է բացատրել նրանով, որ երկաթյա իրերի զգալի մասը օքսիդացել-ոչնչացել է: Սակայն քաղաքում տարածված այդ արհեստը միանգամայն նյութագուրկ չի ներկայանում մեզ: Պեղումների ընթացքում հայտնաբերված գյուղատնտեսական գործիքները, պատմագիրների մոտ հիշատակված քաղաքի դարպասների դռների երկաթե գամերը և այլ արտադրանքներ դարբինների ձեռքի գործն էր:

Մետաղամշակման արհեստներից զինագործությունն ուներ առաջնակարգ նշանակություն: Տասնյակ հազարների հասնող բանակի զինումը, զինամթերքով ապահովումը առաջին հերթին կատարվում էր տեղական զինագործների ջանքերով: Հնագիտական պեղումների շնորհիվ Անիում գործածվող զենքերի և զինամթերքների բավական հարուստ հավաքածու է եղել ստեղծված:

Պեղումներից ի հայտ եկած պղնձե իրերը, որոնց մեծագույն մասը տեղական ծագումի է, հիմք են տալիս ենթադրելու, որ Անիում զարգացած էր նաև մետաղամշակման այդ ճյուղը՝ պղնձագործությունը: Հայտնաբերված են տնային գործածության իրեր՝ թավաներ, գդալիկներ, պղնձե ամաններ ու կաթսաներ, տարբեր մեծության խաչեր, ջահեր և այլ իրեր: Պղնձագործության հետ սերտորեն կապված էր անագագործությունը:

Գրավոր աղբյուրների հաղորդած տեղեկություններից ու կատարված նկարագրություններից երևում է, որ Անիում տարածված արհեստներից էին նաև ոսկերչությունն ու արծաթագործությունը: Այդ են վկայում եկեղեցական ոսկե ու արծաթե հարուստ սպասքների, արքունական և իշխանական պալատների ոսկեզօծ դահլիճների, հասարակության բարձր խավի ներկայացուցիչների (հատկապես կանանց) ոսկե ու արծաթե զարդերի մասին եղած նկարագրությունները, որոնք այնքան ընդգծված չափազանցությամբ կատարել են ժամանակակից պատմագիրները: Հատկանշական է, որ Անիի հնագիտական պեղումների ընթացքում ոսկե կամ արծաթե առարկաներ ու իրեր չեն հայտնաբերվել, որի մասին և զարմանքով նշում է Կ. Ղաֆադարյանը: Սակայն զարմանալու ոչինչ չկա: Մինչև հնագետի բահն ու բրիչը կգործեր, ավերակ քաղաքում հարյուրամյակներ շարունակ «ջանասիրաբար» փորփրել են գանձագողերը և առաջին հերթին կողոպտել ոսկուց ու արծաթից պատրաստած առարկաներն ու իրերը: Գրիգոր Մագիստրոսի մի հիշատակությունից ակնհայտ է դառնում, որ ոսկերչությունը 11-րդ դարի առաջին կեսի Հայաստանում տիպիկ քաղաքային արհեստագործություն էր, մի քանի նեղ մասնագիտությունների (ենթաարհեստների) բաժանված արհեստագործություն, որի արտադրանքների համար այնքան մեծ պահանջարկ կար և՛ հոգևոր շրջաններում, և՛ բարձր ազնվականության մոտ ու արքունիքում:

Զարդարանքների թվին են պատկանում նաև ապակե տարբեր ուլունքներ, ապարանջաններ, որոնցից մեծ քանակությամբ հայտնաբերվել են պեղումների ընթացքում: Ընդ որում, 1907 թ. հայտնաբերված ապարանջանները գրեթե անվնաս են: Անիում հանդիպում են տարբեր գույնի՝ կանաչ, կապույտ, սև և դեղին ապարանջաններ, որոնք պատրաստված են բարձր վարպետությամբ: Ապակեգործությունը մայրաքաղաքի հայտնի արհեստներից էր: Անիի ապակեգործները արտադրում էին նաև սրվակներ, գավաթներ, բաժակներ, գունավոր նախշավոր սրվակներ և, նույնիսկ, բյուրեղապակյա զանազան իրեր: Անգլիացի ճանապարհորդ Լինչը վկայում է, որ Էջմիածնում եղած ժամանակ իրեն ցույց են տվել Բագրատունիների ժամանակվա բյուրեղապակե խաչ, ինչպես և մի ուրիշ խաչ, որը տեղացիների ասելով վերցված է եղել Անիից:

Մեծ խումբ են կազմում տեքստիլ արհեստներն ու դրանց հետ սերտորեն առնչված մյուս մասնագիտությունները: Դրանց մեջ ամենից տարածվածները, անշուշտ, մանածագործությունն ու ջուլհակությունն էին, որոնք նաև գյուղական արհեստներ էին և գոյություն ունեին շատ թե քիչ նշանակալի բոլոր բնակավայրերում: Անին, Դվինի, Կարինի, Երզնկայի և Վանի հետ միասին համարվում էր Հայաստանի 9—13-րդ դարերի մանածագործության ու ջուլհակության խոշոր կենտրոններից մեկը: Մանածագործները թել էին մանում բրդից, բամբակից, վուշից և մետաքսից: Պեղումների ընթացքում հայտնաբերվել են բամբակե գործվածքի, մետաքսե զգեստի, ոսկեթելով նախշված սփռոցի, կապերտի և այլ գործվածքների մնացորդներ: Մանկական գերեզմաններից մեկում հայտնաբերվել են իրար վրա հագցրած մետաքսե զգեստներ, մետաքսե գործվածքի մի կտոր է հայտնաբերվել է իշխանական դամբարաններից մեկում, իսկ Ծաղկոցաձորի իշխանական դամբարանում ի հայտ է եկել կարմիր, դեղին և շագանակագույն թելերից գործված մի զարդարուն դեկորատիվ կապերտի կտոր, որի մեջ կա նաև վուշե թել: Այսպիսով, Անին նուրբ գործվածքներ արտադրող հայտնի քաղաքներից էր, իսկ այդպիսիները՝ հատկապես մետաքսաթելերի գործվածքները, ինչպես երևում է Ստեփանոս Ասողիկի մի վկայությունից, լայն տարածում ունեին 10—11-րդ դդ. Հայաստանում, առանձնապես նրա մայրաքաղաք Անիում, որտեղ կերպասագործները կազմում էին հատուկ արհեստավորական (կամ առևտրական) եղբայրություն՝ «Բազզնոց»:

Հայաստանն արտաքին շուկայում միշտ էլ լավ համբավ է ունեցել իր գորգերով: 10—11-րդ դդ. աղբյուրներում հիացմունքով է խոսվում հայկական գորգերի մասին: Դրանք իրենց նախշազարդերով, գույներով, գործվածքի որակով համարվում էին առաջնակարգ և արտաքին շուկաներում ունեին շատ բարձր գին: Անիում կատարված պեղումների ընթացքում,

կապերտների մնացորդների հետ միասին, նշմարվել են նաև գորգերի հետքեր: Ենթադրվում է, որ պալատական սենյակների ու դահլիճների մի մասի ներսի պատերը ծածկում էին թանկարժեք գորգերով, որոնք արտադրում էին տեղի արհեստավորները:

Ձեռագործությունն իբրև արհեստ վաղ ծագում ունի. գյուղի, ավանի, քաղաքի բնակիչները դրանով սկզբնապես զբաղվում էին որպես երկրորդական գործ, ազատ ժամանակի զբաղմունք: Սակայն քաղաքային կյանքի զարգացմամբ, հասարակության բարձր խավերի պահանջմունքների ավելացմամբ ձեռագործությունն էլ ուրիշ մի շարք զբաղմունքների նման ձեվավորվում է իբրև ինքնուրույն արհեստ, սերտորեն առնչված ջուլհակության, դերձակության և նման այլ արհեստների հետ: Ըստ երևույթին այդ արհեստի ամենանշանավոր կենտրոնը Անին էր, որտեղ, ինչպես ասվեց, հնագիտական պեղումների ընթացքում գտնվել են դրա զանազան արտադրանքների մնացորդներ:

Կան արհեստներ, որոնց գոյությունը քաղաքում (այն էլ Անիի նման խոշոր քաղաքներում) պարտադիր է: Այդպիսի արհեստների թվին է պատկանում նաև դերձակությունը: Բնակչության հագուստի պահանջը բավարարելու, զորքը հանդերձավորելու համար պահանջում էին մեծ թվով դերձակներ: Նրանք Անիում ունեին իրենց հատուկ եղբայրությունները («Կատանոց» և «Գդակկարոց»): Այստեղ դերձակության գոյության և լայն տարածման նյութական ապացույցներն են այն տարբեր տեսակի հագուստներն ու դրանց մնացորդները, որ բավական քանակությամբ գտնվել են հնագիտական հետազոտությունների ընթացքում:

Հայաստանը բնական ներկանյութերով հայտնի երկրներից է: Այստեղ արհեստական եղանակով զանազան ներկեր են ստացել նաև բույսերից ու կենդանիներից: Առանձնապես մեծ հռչակ է վայելել Արարատյան դաշտի եղեգնուտներում ապրող որդի մի տեսակից ստացվող վառ կարմիր գույնի, չգունաթափվող ներկը՝ «որդան կարմիրը», որի մասին այնքան գովեստով են խոսում արաբական մատենագիրները (նրանք այդ ներկը կոչում են «ալկըրմըզի»—վառ կարմիր): Այդ ներկով են նկարված միջնադարյան մեր մանրանկարչության աննման կտավները, դրանցով են գրված ու զարդանախշված մեր հազարավոր ձեռագրերը: Սակայն ներկի ամենամեծ սպառողը եղել է ներկարարությունը, որը սերտորեն կապված է եղել ջուլհակության, գորգագործության, ասեղնագործության և նման այլ արհեստների հետ: Անիում հայտնաբերված տեղական արտադրության կտորները և դրանցից կարված բոլոր հագուստները, անշուշտ, ներկվել են տեղում, տեղական ներկարարների կողմից:

Մեծ խումբ են կազմում շինարարական արհեստները՝ քարտաշություն,

որմնադրություն, ծեփագործություն, ներկարարություն, հյուսնություն: Շինարարական արհեստներն այնպիսի բնույթ ունեն, որ առանց գրավոր հիշատակությունների էլ կարելի է դրանք բնութագրել քաղաքի պահպանված շենքերի ավերակների, փայտյա մասերի մնացորդների, ծեփագործության՝ մեզ հասած նմուշների հիման վրա: Այդ նույն շինարար վարպետների ձեռքով էր մի քանի տասնյակ տարիների ընթացքում կառուցվել Բագրատունիների չքնաղ մայրաքաղաքը: Հատկապես մեծ վարպետության էին հասել Անիի քարտաշներն ու որմնադիրները: Մասնագետները զարմանքով են արձանագրում դրանց ձեռքի աշխատանքի բարձր արվեստը՝ քարի մշակումը, շենքերի ու պաշտպանական պարիսպների շարվածքը, կառուցվածքների վրայի զանազան քանդակները: Բոլոր ճանապարհորդներն ու մասնագետ հետազոտողները միահամուռ վկայում են, որ Անիում քարի (հատկապես տուֆի և բազալտի) շինարարական մշակումն ու պատերի շարվածքը յուրահատուկ էր այդ քաղաքի համար: Պետք է նշել, որ Շիրակի քարագործ վարպետների ավանդույթները շարունակվում են առ այսօր:

Բագրատունիների թագավորության ժամանակներում կարևոր շենքերի ներսի պատերը սովորաբար սրբատաշ քարերից էին և ծեփի կարիքը չէր զգացվում, կամ սովորական մշակված քարերից էին և պատերը ներսից ծածկված էին գորգերով ու կապերտներով: Իսկ սովորական խրճիթներն ընդհանրապես չէին ծեփվում: Այնպես որ շատ հավանական է Ն. Մառի այն ենթադրությունը, թե պեղումների ժամանակ հայտնաբերված գիպսե ձուլածո նախշազարդերը, որոնք դրվում էին սովորաբար պատերի ներսից՝ քիվերի ուղղությամբ, ուշ ժամանակաշրջանի են՝ 12—13-րդ դարերի և կպցվել են («կարկատանի» ձևով) նախկին սրբատաշ ու քանդակազարդ քարերի վրա: Սակայն առանց ծեփագործի ու ներկարարի սովորաբար շենքը չի կարող կառուցել ու ավարտել: Նրանք աշխատանքի իրենց բաժինն ունեն հատկապես բնակելի շենքերի շինարարության մեջ:

Հյուսնությունն ավելի տարածված արհեստ էր: Հյուսների ձեռքի գործն էր մատենագիրների մոտ հիշատակվող Անիի պարիսպների մայրի փայտից պատրաստած ամուր դռները, Ախուրյանի կամուրջների փայտյա մասերը, պեղումների ընթացքում հայտնաբերված գրքակալները և մյուս իրերը: Հյուսնի արհեստագործությունը մասնատված էր մի քանի ենթաճյուղերի: Նրանք արտադրում էին աթոռներ, գահորակներ և այլ իրեր: Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ հյուսների պատրաստած իրերն ընդհանրապես վատ են պահպանված: Եթե արծաթագործի և ոսկերչի արտադրած իրերը կողոպտվել են գանձ որոնող բախտախնդիրների կողմից, ապա հյուսնի պատրաստած իրերն էլ ճարակ են դարձել հրդեհների ու ժամանակի քայքայիչ գործունեությանը: Սակայն պահպանված սակավաթիվ առարկաներն

էլ բավական են (Սևանի վանքի եկեղեցու փայտյա մասերը՝ խոյակներն ու դռները, Անիի Առաքելոց եկեղեցու դռները, պեղումների ընթացքում գտնըված փայտյա իրերի նախշավոր բեկորները և այլն) որոշակի գաղափար կազմելու այդ շրջանի հյուսնության զարգացման մասին, որի վերաբերյալ կան նաև մատենագրական ուղղակի և կցկտուր տեղեկություններ:

Հայտնի է, որ հին և միջին դարերում կավագործական արհեստը տարածում էր գտել ոչ միայն քաղաքներում, այլև ավաններում, գյուղաքաղաքներում ու գյուղերում: Կավագործությունը արհեստների լայն բնագավառ էր, այն իր մեջ ընդգրկում էր հասարակ աղյուսից, կղմինդրից ու ջրի խողովակներից, թոնիրներից ու տնային առօրյա գործածության կոպիտ ամաններից մինչև հախճապակի ու ճենապակի արտադրող արհեստները ներառյալ:

Անիում շինարարության մեջ աղյուս ամենևին չի օգտագործված: Այստեղ չեն կառուցել կավաշեն տներ, ինչպես և չեն եղել կղմինդրապատ տանիքով շենքեր: Անին ամբողջովին քարակերտ էր: Սակայն դա ամենևին չի խանգարել կավագործական արհեստների լայն զարգացմանը: Դեռևս 1906 թ., այսինքն Անիի պեղումների վերջնական ընդհատումից ավելի քան տաս տարի առաջ, Ն. Մառը գրում էր. «Ինձ հայտնի չէ ուրիշ որևէ այնպիսի վայր, որն իր մեջ գտնված ինչպես հասարակ, այնպես էլ գունավոր առարկաների քանակությամբ մրցեր Անիի հետ»: Նա հույս էր հայտնում, որ հետագայում այդ կարգի, բայց ավելի բարձրորակ առարկաների նմուշներ (նույնիսկ անվթար մնացած վիճակում) դեռ շատ կհայտնաբերվեն: Մեծ անիագետը չէր սխալվում: Հետագա տարիներին կատարված պեղումների ընթացքում Անիի կերամիկական արտադրանքների հավաքածուն հարստացավ ամենատարբեր կարգի ու որակի ջնարակած խեցեղենով: Այդ նկատի ունենալով, Ն. Մառը դեռևս 1906 թ. եկել էր այն եզրակացության, որ Խերսոնեսում ջնարակած խեցեղենի արտադրության եղանակը անցած պետք է լինի ոչ թե «Եգիպտոսից, Սիրիայի և Կովկասի վրայով, կամ Պարսկաստանից Կասպիական առևտրի միջոցով», որ պնդում էին նախորդները, այլ, ամենայն հավանականությամբ, Հայաստանի և Անդրկովկասի վրայով:

Անիի խեցեղենի արտադրության մասին ավելի բարձր գնահատական է տվել Բ. Ա. Շելկովնիկովը, որը այն դարձրել է հատուկ մենագրության առարկա և ընդհանրացրել այն բոլոր նյութերը, որոնք գտնվել են Ն. Մառի գլխավորած հնագիտական պեղումների ընթացքում: Նա նշում է, որ Անիում հայտնաբերված հարստագույն խեցեղենը՝ սկսած «հասարակ և կոպիտ կավե առարկաներից մինչև նրբագույն հախճապակին ու ճենապակին», «գեղարվեստական և մշակութային-պատմական առումով իսկական հետաքրքրություն է ներկայացնում» և դրա նշանակությունը դուրս է գալիս

Կովկասի պատմության շրջանակներից՝ «լույս սփռելով Մերձավոր և Միջին Արևելքի միջնադարյան ժամանակաշրջանի գեղարվեստական խեցեղենի պատմության մի քանի մութ կողմերի վրա»: Այնուհետև նա ավելացնում է, որ Եվրոպայում ու Ամերիկայում եղած Առաջավոր Ասիայի բարձրորակ խեցեղենի նմուշները մեծամասամբ չունեն իրենց «անձնագիրը» (արտադրության տեղն ու ժամանակը) և իրենց նշանակությամբ զիջում են Անիում հայտնաբերված նմուշներին:

Անիի խեցեղենի հավաքածուն իրոք որ բացառիկ հարուստ է ինչպես քանակով, այնպես էլ բազմազանությամբ: Բ. Ծելկովնիկովը, նկատի ունենալով պատրաստման տեխնիկան, ամրությունը, գույնը և այլ հատկանիշներ, Անիում հայտնաբերված խեցեղենը բաժանել է 14 խմբի, որոնցից մի քանիսը մասնատելով նաև ենթախմբերի, նկարագրել է գտնված բոլոր իրերը՝ տեղական և բերովի, նշելով դրանց տեսակը, ձևը, գույնը, ամրությունը, նախշերի բնույթն ու բովանդակությունը, երեսպատումը:

Անիի խեցեղենի ամենաբարձրորակ տեսակները հախճապակին, ճենապակին ու ապակին էին, որոնց լավագույն նմուշները՝ թասեր, բաժակներ, ջրամաններ և այլ առարկաներ, գտնվել են թագավորական պալատում: Դրանք բաժանվում են երկու խմբի՝ գունավոր, փորագիր քանդակներով և սպիտակ՝ թափանցիկ ջնարակով: Բոլորը նախշազարդ են՝ գազանների, թռչնակերպ կենդանիների, ծաղիկների (հատկապես վարդի) պատկերներով, բույսերի ու երկրաչափական ձևերի փորագրություններով զարդարված: Մասնագետները բոլորն էլ այն կարծիքի են, որ հախճապակյա և ճենապակյա իրերի (հատկապես հախճապակյա նրբին թասերի) արտադրությունը Անիում ծագել ու զարգացել է Բագրատունիների թագավորության օրոք:

Անիի կավագործության մեջ իր ուրույն տեղն ունի կարասների ու, այսպես կոչված, սնդկամանների արտադրությունը: Պեղումների ընթացքում գտնվել են տարբեր մեծության, տարբեր նախշերով հարյուրավոր կարասներ, որ այնքան կարևոր դեր են խաղացել միջնադարյան գյուղացու և քաղաքացու տնտեսական կյանքում: Առանձնապես բարձրորակ են դրոշմազարդ կարասները, որոնց նմանները (բեկորատված վիճակում) հայտնաբերվել են նաև Ջվարթնոցում, Գառնիում, Տավուշի ու Ամբերդի բերդերում, մեծ քանակությամբ՝ Դվինում:

Դրոշմազարդ հասարակ խեցանոթների մեջ հատուկ հետաքրքրություն են ներկայացնում պեղումների ընթացքում բավական մեծ քանակությամբ հայտնաբերված սնդկամանները, որ երկար ժամանակ համարում էին առեղծվածային իրեր և որոնց նշանակության մասին արտահայտվել են մի շարք իրարամերժ կարծիքներ. ոմանք համարել են հրձիգ նռնակներ (իբր

այրող հեղուկ են լցրել դրանց մեջ և նետել թշնամու վրա), ոմանք՝ ծիթածրագներ, ոմանք՝ փոքրիկ ջրամաններ, իսկ ոմանք էլ ենթադրել են, որ դրանք զարդարանքներ են եղել և «քիվի փոխարեն» շարել են շենքերի ճակատներին։ Սակայն ժամանակի ընթացքում լուծվեց սնդկամանների հետ կապված գաղտնիքը։ Պարզվում է, որ նեղ շուրթերով և ընդհանուր առմամբ ձվաձև այդ փոքրիկ անոթները (բռնցքի չափ) օգտագործել են օծանելիք պահելու համար։

Այսպես, ուրեմն, մայրաքաղաք Անին 10—11-րդ դարերում բրուտագործության հայտնի կենտրոններից էր։ Այստեղի վարպետ բրուտն իր ձեռքի տակ ունենալով տեղական կավը պատրաստել է բազմատեսակ առարկաներ ու անոթներ՝ ամանեղեն, կարասներ, սնդկամաններ, ջրի խողովակներ, ջրամաններ, հախճապակե ու ճենապակե զանազան իրեր, աղյուս, կղմինդր և այլն։

Անիում առանձին փողոց կամ շարք զբաղեցնող (արհեստավորական եղբայրություն կազմող) արհեստավորներից էին նաև կոշկակարները («Կոշկակարոց»), սառաջները (համետագործ կամ թամբագործ՝ «Սառաջ փողոց») և փոլկարարները («Փոլկարարոց»), որոնց բնույթը, ինչպես ասվեց, հայտնի չէ։

Միջնադարյան քաղաքի տնտեսական կյանքի հիմքում արհեստագործությանը հավասար ընկած էր նաև առևտուրը՝ ներքին, արտաքին և տարանցիկ։

Երկրի ընդհանուր տնտեսական զարգացման, դրամական տնտեսության առաջադիմության հետ միասին վերելք է ապրում նաև առևտուրը՝ իր հերթին ազդելով դրանց հետագա առաջընթացի վրա։ Հայաստանի տասնյակ քաղաքների շուկաներում ու խանութներում, վանքերի մոտ՝ կրոնական տոների ժամանակ գործող առ ու վաճառքի կետերում, որտեղ կենտրոնական դեմքը ուխտավորներն էին, ճանապարհային կայաններում և իջևանատներում կատարվում էր ներքին, իր զգալի մասով մանրածախ առևտուր։ Երկրի ու նրա քաղաքների համար է՛լ ավելի կարևոր նշանակություն էր ստացել արտաքին ու տարանցիկ առևտուրը։ Պատահական չէ, որ 11-րդ դարի պատմագիր Արիստակես Լաստիվերտցին ժամանակների վաճառաշահ Արծն և Կարս քաղաքների հարստացման աղբյուրը համարում է առևտուրը։ Բագրատունիների շրջանում Հայաստանում արտաքին ու տարանցիկ առևտրի համար ստեղծված արտակարգ բարենպաստ պայմանների մասին նշել են մի շարք հեղինակներ (Վ. Գուրկո-Կրյաժին, Հ. Մանանդյան և ուրիշներ)։ Նրանք նշում են, որ բյուզանդական ու արաբական դարավոր պայքարի և հարատև պատերազմների հետևանքով Ասորիքի ու Փոքր Ասիայի վրայով կատարվող առևտուրը ընդհատված էր և այդպիսի

պայմաններում, ընդհակառակը, խիստ մեծացել էր Բագրատունյաց Հայաստանի նշանակությունը համաշխարհային առևտրի մեջ՝ դառնալով այդ առևտրի միակ ապահով կամուրջը Արևմուտքի և Արևելքի միջև, նպաստելով երկրի հին քաղաքների աշխուժացմանը և նոր, վաճառաշահ ու փարթամ քաղաքների առաջացմանն ու ծաղկմանը: Սակայն 10—11-րդ դդ. քաղաքային կյանքի զարգացման համար միջազգային առևտրի ծավալումը միակ նախապայմանը չէր: Երկրում առկա էին նաև ուրիշ այնպիսի ազդակներ, որոնք իրենց հերթին պայմանավորում էին այդ առևտրի ծավալումը պասիվ տարանցիկ առևտրից երկրի ներսում բեկվող և նրա տնտեսական կյանքի վրա ազդող ավելի ակտիվ առևտրի վերածվելուն: Եթե հարցին այդ կողմից մոտենանք, իսկ մեզ թվում է, թե այդ ավելի ճիշտ է, ապա կտեսնենք, որ արտաքին՝ միջազգային առևտրի զարգացումը ոչ թե նախապայման էր, այլ առաջին հերթին հետևանք երկրի տնտեսական ընդհանուր զարգացման, դրամական տնտեսության առաջադիմության, խաղաղ պայմանների, քաղաքական անկախության և այլն:

10—11-րդ դարերի Հայաստանի տնտեսական զարգացումն առաջին հերթին իր ծանրաչափական արտահայտությունն էր գտնում մայրաքաղաք Անիի կյանքում: Անին այդ ընդհանուր զարգացման կիզակետն էր և շատ կարճ ժամանակաընթացքում վերածվել էր վաճառաշահ խոշոր քաղաքի, առևտրի խոշորագույն կենտրոնի, «տիեզերահռչակ» քաղաքի, ինչպես այն կոչել է Արիստակես Լաստիվերտցին:

Անիի տնտեսական կյանքում կարևոր դեր էին խաղում և՛ ներքին, և՛ արտաքին ու տարանցիկ առևտուրը:

Սկսենք նրա ներքին առևտրի բնութագրումից: Անիում մեզ հետաքրքրող շրջանում առևտուրը կազմակերպվում էր ըստ Բագրատունի թագավորների հրամանի, որով սահմանվում էին նաև չափի ու կշռի միավորները: Շուկաներում նշանակվում էին վերակացուներ՝ «կռփիչ»-ներ, որ հավանաբար համապատասխանում էր մութսիբին: «Կռփիչ»-ները պարտավոր էին հսկել ու կանխել նենգությունը, խարդախությունը, դրամանենգությունը, որոնց համար սահմանված էին խիստ պատիժներ:

Հատուկ կարգ ու կանոնի էր ենթակա նաև շուկայի կամ վաճառատեղի ընտրությունը: Վիմագրական մի փոքր արձանագրությունից պարզվում է, որ շուկաների ու դրանց խանութների տեղաբաշխումը հաստատվում էր հատուկ հրամանագրով, որով հաստատվում էր նաև տվյալ առևտրական կետում՝ հրապարակում կամ շուկայում կատարվող առևտրի ապրանքների տեսակները:

Անիի ներքին առևտուրը չէր սահմանափակվում միայն քաղաքի շրջանակներով: Նա մշտական և ամուր կապեր ուներ երկրի տարբեր ծայրերի

հետ: 10-րդ դարում, ինչպես վկայում է արաբական մատենագիրներից մեկը, Անիի անունով հատուկ դարպաս (դուռ) կար Դվինում, իսկ Անիում կար Դվինի (կամ Երևանի) անվան դուռ: Անիում արտադրված զանազան իրեր են գտնված Բագրատունյաց Հայաստանի տարբեր շրջաններում: Անիում արտադրող ընտիր խեցեղենի բավական թվով նմուշներ են հայտնաբերված ՀՍՍՀ Սպիտակ քաղաքի մոտի միջնադարյան քարանձավային բնակատեղիում:

Արևելքի միջնադարյան քաղաքների կյանքում արտակարգ դեր են խաղացել շուկա-հրապարակները: Անին իբրև խոշոր քաղաք, անշուշտ, ունեցել է ոչ թե մեկ, այլ մի քանի շուկաներ: Նրա գլխավոր շուկան, ինչպես ենթադրում են, գտնվում էր Աբուլ-Մամրանի մզկիթի մոտ, որտեղ հայտնաբերվել են քարաշեն խանութների երկու շարք՝ իրենց մեջ ընդգրկելով բավական լայն հրապարակ:

Վիմագիր արձանագրություններում բազմաթիվ հիշատակություններ կան քաղաքի խանութների մասին: Խանութները սովորաբար մանր էին և կոչվում էին «կուղպակ»-ներ (բառացի՝ կրպակ): Դեռևս Բագրատունիների թագավորության շրջանում «հոգու փրկության» քողի տակ մեծ թվով խանութներ էին նվիրել եկեղեցիներին: Այդպիսի խանութների քանակը հասնում էր տասնյակների: Անիի խանութներից նվիրաբերվել էին նաև քաղաքից դուրս, երկրի տարբեր վայրերում գտնվող եկեղեցիներին ու վանքերին: Կուղպակ-խանութները և կուղպակ-արհեստանոցները, սակայն, զանգվածորեն կազմում էին առևտրականների, վաճառականների և արհեստավորների սեփականությունը:

Կուղպակ-խանութների մեծության, կահավորանքի, օժանդակ հարմարությունների մասին գաղափար ենք կազմում գլխավորապես Այրային Անիում պահպանված «քարտուն»-խանութների հիման վրա: Վերջիններս ունեն քարակերտ դարակներ՝ ապրանքները դասավորելու համար, երբեմն երկու հարկանի են և առաջին հարկը, իբրև «նկուղ», ծառայում էր ապրանքները պահելու, իսկ երկրորդը՝ վաճառելու համար: Միանգամայն հասկանալի է, որ մոտավորապես այդպիսին են եղել նաև բուն քաղաքի խանութները:

Կուղպակները կենտրոնացված էին շուկաներում, մի սովորույթ, որ պահպանվեց հետագա դարերում:

Խանութների թիվն Անիում հավանաբար հարյուրների էր հասնում: Եվ այդ զարմանալի չպիտի լինի, որովհետև լայն իմաստով կուղպակ էր կոչվում և՛ առևտրականի խանութը, և՛ արհեստավորի արհեստանոցը: Առավել ևս չպետք է տարակուսել, եթե նկատի ունենանք այն, որ 18-րդ դարի

վերջերին ու 19-րդ դ. սկզբներին ընդամենը 10—12 հազար բնակիչ ունեցող Երևանի խանութների և արհեստանոցների թիվը անցնում էր 850-ից:

Քաղաքի բնակչության տնտեսական կյանքի համար խիստ կարևոր էր իմանալ վաճառվող ապրանքների մոտավոր գները, որից, սակայն, համապատասխան աղբյուրներ չլինելու պատճառով զրկված ենք: Մխիթար Գոշի Դատաստանագրքի 123-րդ հոդվածի շարունակության մեջ ասվում է, որ ապրանքների գները որոշվում են իշխանների և թագավորների հրամանով և որ գյուղատնտեսական մթերքների գները սահմանելիս նկատի են ունենում տվյալ տարվա բերքի քանակը: Եվ եթե գները սահմանելիս հիմք են ընդունել տարվա բերքի կամ մյուս բարիքների քանակը, ապա հասկանալի է, թե ինչպիսի մեծ տատանումներ են ունեցել մանավանդ գյուղատնտեսական մթերքների գները:

Բազմազան էին ներքին առևտրի ապրանքները: Դրանք հիմնականում բաղկացած էին բնական ու գյուղատնտեսական հումքերից՝ ներկանյութ, հացահատիկներ, ձուկ, կաթնամթերքներ, ինչպես նաև անասուններ, միս և այլ ապրանքներ: Մեծ խումբ էին կազմում նաև տասնյակների հասնող արհեստավորական շինվածքներն ու իրերը:

Բագրատունյաց Հայաստանում և նրա մայրաքաղաք Անիում շրջանառության մեջ եղած դրամների մասին ուղղակի հիշատակություններ չկան: Առայժմ չեն հայտնաբերված նաև Անի-Շիրակի թագավորության հատած որևէ դրամ ոչ Անիում, ոչ Դվինում, ոչ Հայաստանի այդ ժամանակաշրջանի մյուս քաղաքներում ու գավառներում: Տրամաբանական եզրակացությունն այն է, որ Անիի Բագրատունիները չունեին իրենց հատած սեփական դրամը, համենայն դեպս մինչև այժմ այդպիսին չի հայտնաբերվել: Հայտնի է, որ առանց փաստի պատմություն չի կարող լինել: Այնուամենայնիվ, միանգամայն տեղին հարց է առաջանում, թե ինչո՞ւ Անի-Շիրակի Բագրատունիները չունեին իրենց դրամը, չէ՞ որ երկիրը հարուստ էր ոսկով, արծաթով ու պղնձով, չէ՞ որ Բագրատունիները միանգամայն ինքնուրույն թագավորներ էին (նույնիսկ «արքայից արքա» տիտղոսով) և իրավունք ունեին ու կարող էին հատել իրենց սեփական դրամը, մանավանդ որ այդ շատ կամրապնդեր իրենց սուվերեն դիրքը հայկական մյուս թագավորությունների ու իշխանությունների (հայկական և ոչ հայկական) նկատմամբ: Թվում է, թե դրա հավանական պատճառը Բագրատունիների թագավորության տարանցիկ և միջազգային առևտրի արտակարգ լայն զարգացումն էր: Երկիրը փաստորեն 10—11-րդ դարերում վերածվել էր Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող առևտրի մի լայն գոտու, որտեղ շրջանառության մեջ էին գտնվում երկու աշխարհակալ տերությունների՝ Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության դրամի միավորները: Միջազգա-

յին առևտրի շահերը պահանջում էին ինչքան հնարավոր է միատեսակություն և պարզություն դրամական միավորների մեջ: Բագրատունիները մեծ շահ էին ստանում այդ առևտրից և թվում է, թե հանուն այդ շահի էլ հրաժարվել էին սեփական դրամ ունենալուց: Այդ եղանակով Բագրատունյաց Հայաստանը դարձել էր մի այնպիսի երկիր, որտեղ շրջանառության մեջ եղած դրամական միավորները իրենց արժեքներով քաջ հայտնի էին շատ երկրների վաճառականների և նրանք կարող էին առանց լրացուցիչ խոչընդոտների առևտուր անել Անի մայրաքաղաքում և Անի-Շիրակի թագավորության ցանկացած քաղաքում ու գավառում:

Արաբական տիրապետության շրջանում (7—9-րդ դդ.), ինչպես հայտնի է, Հայաստանում հիմնականում շրջանառության մեջ էին դինարը, դիրհեմը և ֆելսը, որոնք, ըստ երևույթին, երկրում մնացին տիրապետող նաև առաջին Բագրատունիների օրոք: Սակայն հետագայում, հավանաբար 10-րդ դարի երկրորդ քառորդից կամ կեսերից ավելի տիրապետող են դառնում դրամի բյուզանդական միավորները: Ն. Մառը Անիի պեղումների ժամանակ հայտնաբերել է բյուզանդական անանուն 608 պղնձե դրամներ, որոնք պահվում էին Անիի թանգարանում: Անիից բացի, բյուզանդական դրամներ են հայտնաբերված Էջմիածնի, Սուրմալուի, Երևանի, Ալեքսանդրապոլի, Բորչալուի, Զանգեզուրի գավառներում: Դրանք պղնձե, արծաթե և ոսկե դրամներ են և վերաբերում են 7—11-րդ դարերին: Իսկ դրանց աշխարհագրական տարածման այդքան լայն սահմանները, որոնք հիմնականում համընկնում են Անի-Շիրակի թագավորության սահմաններին, ցույց են տալիս, որ 10—11-րդ դարերում Հայաստանում շրջանառության մեջ բյուզանդական դրամի միավորները խաղում էին վճռական դեր: Նույնիսկ Անի-Շիրակի թագավորության արևելյան ծայրաշրջանում գտնվող Դվին քաղաքում (որտեղ բյուզանդական ազդեցությունը համեմատաբար ավելի թույլ էր արտահայտվում և այդ ժամանակներում զերծ էր բյուզանդական տիրապետությունից) 11-րդ դարի առաջին քառորդի վերջերից բյուզանդական դրամը շրջանառության մեջ գրավում էր առաջնակարգ տեղ: Թվում է, թե բյուզանդական դրամի այդքան լայն տարածումը հետևանք էր ոչ միայն կայսրության զավթողական քաղաքականության, որի զոհերը դարձան Տարոնի Բագրատունիների իշխանությունը, Տայքի կյուրապաղատությունը և Վասպուրականի ու Անի-Շիրակի թագավորությունները, այլև այն բանի, որ Բյուզանդիան խալիֆայության համեմատ կենտրոնաձիգ պետություն էր՝ իր համեմատաբար կայուն ու տերության բոլոր պրովինցիաներում շրջանառության մեջ գտնվող դրամի միավորներով:

Մեր ազգային պատմիչների մոտ, այդ դարերին վերաբերող բնագրերում և վիմագիր արձանագրություններում որպես դրամի միավորներ սովո-

րաբար հիշատակվում են դահեկանը և դրամը, որոնց պարունակած մաքուր մետաղի քանակը խիստ փոփոխական է եղել և անորոշ: Օգտվելով դրանից, անհատ անձնավորություններ հաճախ զբաղվել են դրամանենգությամբ՝ հատելով դահեկան և սովորական դրամ:

Միանգամայն հասկանալի է, որ դրամական միևնույն միավորները շրջանառության մեջ էին և՛ ներքին, և՛ արտաքին ու տարանցիկ առևտրի մեջ: Սակայն ներքին առևտուրը եթե վերցնենք ոչ թե միայն Անիի, այլ ամբողջ երկրի մասշտաբով, իր զգալի մասով փոխանակային առևտրի բընույթ ուներ և այստեղ դրամը փաստորեն ծառայում էր տարբեր ապրանքների համեմատական գինը որոշելու համար: Այլ կերպ ասած, դրամի դերը շատ ավելի բարձր էր արտաքին և տարանցիկ առևտրում:

Բուն հայկական պետությունը երբեք ծովեր չի ունեցել: Նրա ջրային ճանապարհները սահմանափակվում էին մի քանի լճերով (Գեղամա լիճ, Վանա լիճ, Ուրմիա լիճ) և երկու-երեք խոշոր գետերի (Եփրատ, Արաքս, Ճորոխ) շատ սահմանափակ հատվածներով: Երկրի խիստ լեռնային ռելիեֆի պատճառով ցամաքային ճանապարհների մեծ մասը ձմռանը ամիսներով փակվում էր: Սակայն երկրի աշխարհագրական դիրքը Արևելքի ու Արևմուտքի նկատմամբ այն դարձրել էր կամուրջ, կապող օղակ պատմական գրեթե բոլոր ժամանակներում: Հայտնի է, որ հին շրջանում Հայաստանի քարավանային կարևոր ճանապարհների հանգույցն Արտաշատ մայրաքաղաքն էր, 5—9-րդ դդ.՝ Դվինը, իսկ դրանից հետո, 10—13-րդ դդ. միջազգային առևտրի ճանապարհների մեծ հանգուցակետ էր դարձել Անին:

Անի մտնող և այնտեղից դուրս եկող ճանապարհները կարելի է բաժանել երկու խմբի՝ տեղականի և քարավանային տարանցիկ առևտրի մայրուղիների:

Անին իր շրջակայքի և երկրի տարբեր մասերի հետ կապված էր տեղական մի շարք ճանապարհներով, որոնց մի մասը արհեստական կառուցված ճանապարհներ էին՝ մասամբ Բագրատունի թագավորների ժամանակներից ի վեր գործող ճանապարհներ: Առանձնապես ուշադրության արժանի էր ժայռափոր ու ոլորապտույտ այն ճանապարհը, որ քաղաքը կապում էր Ախուրյանի վրա ձգված մեծ, երկհարկանի կամուրջի հետ: Այս ճանապարհը խիստ զառիվեր լեռնալանջով ձգվելու պատճառով համարվել է երթևեկության համար շատ վտանգավոր և այն վերևից ծածկել են կամարակապ ծածկով:

Տեղական ճանապարհներով (որոնցից մի քանիսը ուղղակի կազմում էին երկրով անցնող տարանցիկ ճանապարհների առանձին հատվածներ) Անին կապված էր Դվինի, Երևանի, Լոռու և Վասպուրականի թագավորությունների և երկրի այլ քաղաքների ու գավառների հետ: Այս տեսակետից

ուշագրավ է 13-րդ դ. առաջին կեսի հեղինակ Արիստակես Քերականի մի վկայությունը, որի մեջ նա թվարկում է Հայաստանով անցնող հյուսիսային տարանցիկ ճանապարհի գլխավոր կայանները՝ Դվինը, Կարինը, Սեբաստիան (Սվազ)՝ հիմնական հանգույցը համարելով Անին, տարանցիկ առևտրի այն ժամանակվա ամենակարևոր կենտրոնը:

Ճանապարհների վրա տարբեր ժամանակներում կառուցվել էին իջևանատներ, որոնք հիմնականում գտնվում էին քարավանային մայրուղու վրա և ազդարարում էին վերջինիս ուղղությունը (Վերին Թալին, Ներքին Ջրարփի, Արուճ):

Եկվոր վաճառականների ու նրանց բերած ապրանքների համար քաղաքում ստեղծվել էին հարմարություններ: Հիմնականում նրանց, ինչպես և այլ տեղերից զանազան գործերով Անի եկողների համար կառուցվել էին հյուրանոցներ (հյուրատներ), խանապարներ (ավելի լայն հարմարություններ ունեցող հյուրանոցներ), փնդուկներ (պանդոկներ, իջևաններ), որոնք ապրելու հարմարություններից բացի, իրենց կից ունեին վաճառականների բեռնակիր անասունների համար ախոռներ, սայլերի համար՝ կանգառի տեղեր և ապրանքներ վաճառելու համար՝ կրպակներ: Կիսաառևտական-կիսակոմունալ այդ հաստատությունները պատկանում էին և՛ մասնավոր անձանց, և՛ եկեղեցիներին:

Արդ որո՞նք էին քարավանային այն մայրուղիները, որ Բագրատունյաց Հայաստանն ու նրա մայրաքաղաք Անին դարձնում էին տարանցիկ և միջազգային առևտրի կարևոր կենտրոն: 10—11-րդ (և 12—13-րդ) դարերում Հայաստանով անցնող երկու այդպիսի մայրուղի կար, որոնցից մեկը ձգվում էր երկրի հյուսիսային շրջաններով, իսկ մյուսը՝ հարավային: Հայաստանի համար դրանցից առանձնապես կարևոր նշանակություն ուներ հյուսիսային գլխավոր ճանապարհը, որ փոխարինել էր Պևտինգերյան քարտեզում նշանակված՝ ավելի հին ժամանակներում գործող Արտաշատ (5-րդ դարից՝ Դվին)—Սատաղ (Երզնկա քաղաքից հյուսիս-արևմուտք) մայրուղուն: Անիի և ամբողջ Բագրատունյաց Հայաստանի համար կենսական նշանակություն ունեցող այդ նոր քարավանային ճանապարհը Հայաստանում ուներ հետևյալ ուղղությունը՝ Նախճավան—Դվին—Անի—Կարս—Կարին—Արծն և, այստեղից էլ՝ Տրապիզոն: Անիում այդ գլխավոր ճանապարհից բաժանվում և ճառագայթաձև դեպի տարբեր կողմեր էին ձգվում մի քանի ճանապարհներ, որոնց մեջ առանձնապես կարևոր նշանակություն ունեին Անի—Լոռի բերդաքաղաք—Շամշուլդե—Թիֆլիս և Անի—Կարս—Արտանուջ—Սև ծով ճանապարհները:

Ժամանակի համեմատությամբ հյուսիսային մայրուղին և մասամբ դրա ենթաճյուղերը բավական բարեկարգ էին, անվային փոխադրամիջոցների



4—2682

համար պիտանի: Հավանական է, որ հատուկ հսկողություն է եղել դրանք սարքին վիճակում պահպանելու համար: Քարավանները ձմռան բուք ու բորանին, գիշերները, հոգնած ժամանակ կարող էին հանգիստ առնել ճանապարհների վրա կառուցված իջևանատներում կամ քաղաքներում, որտեղ կային հյուրատներ, խանապարներ և փնդուկներ:

Երկրի ընդհանուր զարգացման համար կարևոր նշանակություն ուներ նաև հարավային մայրուղին, որը ձգվում էր Մարանդ (Ատրպատականում) —Հեր (Խոյ)—Բերկրի (Վանա լճի հյուսիս-արևելյան ափի մոտ)—Խլաթ—Բիթլիս—Արզն (Հազրու)—Ամիդ (Դիարբեքիր) ուղղությամբ: Հարավային այս ճանապարհը հյուսիսայինի հետ միանում էր Հեր—Նախճվան, Արճեշ—Վաղարշակերտ—Անի և Խլաթ—Մանազկերտ—Կարին ճանապարհներով՝ գլխավոր մայրուղիների և դրանցից անջատվող մյուս ճանապարհների հետ միասին երկրում կազմելով բեռնակիր ու անվային փոխադրամիջոցների համար մատչելի ուղիների բավական խիտ ցանց:

Անիով անցնող, Անիի հետ առնչվող և Անիին առևտրատնտեսական առումով կարևոր նշանակություն տվող ճանապարհների մասին մեր շարադրանքը անհրաժեշտ ենք համարում ավարտել մի փոքր դիտողությամբ: Պարսկաստանի կողմերից Արաքսի հովտով եկող հին ճանապարհը, որ անցնում էր Արտաշատով (Դվինով), Երվանդաշատով և Սատաղով կարճ էր ու հարմար, քան Դվինով, Անիով և Կարսով անցնող նոր ճանապարհը: Այստեղից էլ հարց է առաջանում, թե ինչո՞ւ նախկին ճանապարհին փոխարինեց այս նոր ճանապարհը, չէ՞ որ առաջինը նույնպես ձգվում էր Բագրատունիների թագավորության տերիտորիայով, և այդ ինչպես եղավ, որ քարավաններն սկսեցին գնալ նոր, ավելի երկար ճանապարհով: Մեր կարծիքով, ճանապարհի այս նոր ուղղության պատճառները առնվազն երկուսն էին. ա) նախ նոր ճանապարհն անցնում էր Բագրատունիների թագավորության ուղղակի կենտրոնական շրջաններով, որ ավելի էին զերծ թշնամական հարձակումներից և բ) 10-րդ դարում վաճառաշահ քաղաքների վերածվող Բագրատունիների զույգ մայրաքաղաքները՝ Անին ու Կարսը, մանավանդ դրանցից առաջինը, և դրանցից արևմուտք գտնվող Արծն «ազատ» քաղաքը (Կարին-Էրզրումի մոտ) դեպի իրենց էին ձգում ոչ միայն երկրի ներսի, այլև միջազգային առևտրի թելերը, քարավանային առևտրի ճանապարհները: Ուզում ենք ասել, որ եթե միջազգային քարավանային առևտուրը նպաստեց (ըստ ակադեմիկոս Հ. Մանանդյանի, ուղղակի պատճառ դարձավ) մի շարք նոր քաղաքների առաջացմանը և զարգացմանը, ապա այդ քաղաքներն էլ (հատկապես Անին) դեպի իրենց ձգեցին միջազգային առևտրի ճանապարհները և դրանով իսկ տնտեսական ավելի նպաստավոր դարձավ նրանց աշխարհագրական դիրքը:

Հայաստանում գործող մաքսային համակարգը արտաքին առևտրի համար խրախուսիչ բնույթ ուներ. ճանապարհների (հավանաբար նաև կամուրջների) և չվաճառված ապրանքների համար մաքս չէր գանձվում: Որոշ վարձ վերցնելուց բացի, ըստ երևույթին մաքսից ազատ էին նաև Հայաստանի վրայով այլ երկրներ տարվող ապրանքները: Այլ կերպ ասած, բավական արտոնյալ մաքսային համակարգ գոյություն ուներ և՛ ներմուծվող ապրանքների, և՛ տարանցիկ առևտրի համար:

Անին լինելով արտաքին ու տարանցիկ առևտրի խոշոր կենտրոն, անշուշտ, ունեցել է իր մաքսատունը, թերևս մի քանի մաքսատուն: Ենթադրվում է, որ Մանուչեի մզկիթի նախնական շենքը, որ կառուցվել էր Բագրատունիների օրոք, եղել է քաղաքի մաքսատունը: Ոմանք էլ մաքսատուն են համարել Ախուրյանի երկհարկանի կամուրջի աջակողմյան բացվող ու փակվող մասի երկրորդ հարկը:

Բյուզանդիայի և Կիևյան Ռուսիայի հետ Բագրատունիների թագավորության ժամանակներում կատարվող առևտրի վերաբերյալ արժանահավատ նյութեր մեզ չեն հասել, այդ այն դեպքում, երբ հայտնի են Հայաստանի և դրանց միջև գոյություն ունեցած փոխհարաբերությունները մյուս բնագավառներում՝ հատկապես մշակույթի ասպարեզում: Իսկ արևելյան երկրների հետ Բագրատունիների թագավորության և նրա մայրաքաղաքի առևտրական հարաբերությունների վերաբերյալ, այնուամենայնիվ, որոշ նյութեր ու փաստեր մեզ են հասել և հնարավորություն են տալիս այն բնութագրել ընդհանուր գծերով: Այսպես, պատմագիրների վկայությունները և Անիում հնագիտական հետազոտությունների ընթացքում գտնված նյութերը ցույց են տալիս, որ Անին և Անի-Շիրակի թագավորությունը առևտրական կապեր ունեին Չինաստանի, Հնդկաստանի, Միջին Ասիայի և հարևան Պարսկաստանի հետ:

Չինական ճենապակու (սելադոնի) բազմաթիվ բեկորներ են գտնվել Բագրատունիների արքայական պալատի պեղումների ընթացքում: Իսկ այդ հայտնաբերումները ցույց են տալիս, որ հատկապես պալատական վերնախավը մեծ պահանջարկ ուներ բարձրորակ ճենապակու, որը ներմուծվում էր հեռավոր Չինաստանից:

Անկասկած է, որ Չինաստանի հետ առևտրական հարաբերությունները չէին սահմանափակվում միայն ճենապակի ներմուծելով, որը տեղափոխման տեսակետից այն ժամանակվա պայմաններում անհարմարությունների հետ էր կապված, թեպետև դրանք հավանաբար Հայաստան էին հասնում ոչ թե անմիջապես հայ կամ չինացի վաճառականների, այլ միջնորդված առևտրի շնորհիվ: Հայտնի է, որ Չինաստանը միջազգային առևտրին ավելի լայն չափով մասնակցում էր իր մետաքսով և իզուր չէր, որ այնտե-

ղից դեպի արևմուտքի երկրները ձգվող մայրուղին ստացել էր «Մետաքսի ճանապարհի» անունը: Եվ եթե Անիում չինական մետաքսե ապրանքների մնացորդներ չեն գտնվել, ապա այդ պետք է բացատրել միայն նրանով, որ դրանք չեն դիմացել ժամանակի անողոք քայքայիչ ուժերին:

Չնայած Հնդկաստանը պատմական Հայաստանից բաժանված էր միայն Պարսկաստանով և առևտրատնտեսական ու այլ առումներով ավելի էր առնչված մեր երկրի հետ, բայց Անի-Շիրակի թագավորության ժամանակաշրջանում երկու երկրների հարաբերություններին վերաբերող նյութեր ու փաստեր շատ քիչ կան: Միակ արժանահավատ փաստն այն է, որ Անիի Մայր եկեղեցու համար Բագրատունի թագավորը Հնդկաստանից բերել է տվել (ամենայն հավանականությամբ հայ վաճառականի միջոցով) 12 լիտր քաշ ունեցող, գեղարվեստական տեսակետից բարձրարժեք մի ջահ: Իսկ այդ ցույց է տալիս, որ Հնդկաստանն այդ ժամանակվա Հայաստանի ու նրա վաճառականների համար «խորհրդավոր» չէր, ինչպիսին պատկերացնում էին եվրոպացիները: Հայաստանում գիտեին, թե ինչ կարելի է այնտեղից բերել և, հավանաբար, ինչ կարելի է այնտեղ արտահանել: Թվում է, թե ժամանակի ընթացքում հայ-հնդկական առևտրի մասին կհայտնաբերվեն նոր նյութեր ու փաստեր, որոնք այդ բնագավառը ևս մեզ համար կդարձնեն այնպես որոշակի, ինչպես մշակութային կապերի պատմությունն է:

Միջին Ասիայի հետ Բագրատունյաց շրջանի Հայաստանի առևտրական հաարբերությունների մասին պահպանվել են գրավոր աղբյուրներ, որոնք զետեղված են թուրքմենների ու Թուրքմենիայի պատմությանը վերաբերող ժողովածուում: Դրանցից առաջինը արաբ հեղինակ Ալ-Իդրիսի վկայությունն է: Նա հաղորդում է, որ Միջին Ասիայի Մագրա կոչված գետի հովտի անտառներում ապրող կուղբ կոչված կենդանու մորթին, որ շատ «բարձր գին ունի», տանում են «Ռումի և Հայաստանի երկրները»:

Պարզվում է, որ Միջին Ասիան (Թուրքմենիա) Հայաստանի և Ռումի (Բյուզանդիայի) հետ ուներ առևտրական ավելի լայն կապեր, բայց Ալ-Իդրիսին հետաքրքրել է միայն կուղբը, որի առիթով էլ նշվել է դրա մորթու որակի և արտահանության վերաբերյալ:

Նույն Բագրատունիների ժամանակաշրջանին է վերաբերում մի այլ արաբ հեղինակի՝ Աբուլ-Ֆազլի-Բեյխակիի (11-րդ դ.) «Թարիխի-Բեյխակի» տարեգրության մեջ հայկական գորգերի մասին մի կարևոր վկայություն, ըստ որի Թուրքմենիայում հայկական գորգերը համարվում էին ամենաորակյալն ու թանկագինը բոլոր գորգերի մեջ: Նրա ասելով Խորասանի Սուրի էմիրին հիջրայի 424 թվականին (1033 թ.) տարած 500 հակ նվերների մեջ թանկագին հագուստեղենի, անոթների, զարդերի, թանկագին քարերի ու սովորական գորգերի և այլ՝ էմիրին սազական, իրերի հետ միա-

ափն եղել են և հայկական գորգեր: Պարզ է, որ հայկական գորգերը Միջին Ասիայում ավելի վաղ էին հայտնի, այլապես դրանք չէին կարող միանգամից այդքան մեծ համբավ ձեռք բերել:

Ինչ խոսք, Անին ավելի սերտ առևտրական հարաբերություններ է ունեցել Հայաստանի անմիջական հարևանների՝ Բյուզանդիայի, Վրաստանի և Աղվանքի հետ: Հարավային մայրուղին վտանգված լինելու պատճառով, Բյուզանդիան Արևելքի ապրանքների մեծ մասը ստանում էր Բագրատունյաց Հայաստանի ու նրա մայրաքաղաք Անիի վրայով, իսկ վերջինս իր ներքին հատուկ ճանապարհներով, ինչպես տեսանք, կապված էր Վրաստանի մայրաքաղաք Տփխիսի (Լոռիի և Շամշուլդեի վրայով) և Աղվանքի մայրաքաղաք Պարտավի (Դվինի ու Ջողի վրայով) հետ: Ինչպես Բյուզանդիայի, այնպես էլ Վրաստանի համար Անին տարանցիկ առևտրի հանգույց էր: Վրաստանն Անիի վրայով էր ստանում Բյուզանդական ապրանքների մի մասը, իսկ հայկական ծագումի ապրանքների գերակշիռ հատվածն ըստ երևույթին Վրաստան էր արտահանված հենց Անիի վրայով:

Չնայած Հայաստանը Պարսկաստանի հետ միշտ էլ ունեցել է առևտրական աշխույժ հարաբերություններ, որովհետև վերջինիս տարածքով ձգվող քարավանային ճանապարհները շարունակվում էին նաև Հայաստանի վրայով դեպի արևմուտք, սակայն Բագրատունիների ժամանակաշրջանի Անիի ու Պարսկաստանի միջև կատարվող առևտրի վերաբերյալ փաստական նյութեր ու գրավոր վկայություններ քիչ են պահպանվել: Անիում կատարված պեղումների ընթացքում պարսկական ծագումի խեցեղենը, որ մեծ չափերի է հասնում, զանգվածորեն վերաբերում են Անիի պատմության հաջորդ ժամանակաշրջանին՝ 12—13-րդ դարերին: Սակայն հիմնականում բարձրորակ հախճապակուց բաղկացած այդ խեցեղենի ներմուծումը Անի հավանաբար ուներ իր ավանդույթը, դրա ներհոսքն ամենայն հավանականությամբ սկսվել էր 10-րդ դարի երկրորդ կեսից և այդ ժամանակների իրանական հախճապակու բացակայությունն Անիում բացատրվում է միայն նրանով, որ պեղումները չեն հասել Բագրատունիների թագավորության ժամանակաշրջանի հնագիտական շերտերին:

Մոտավորապես այսպիսին էր Անիի արտաքին ու տարանցիկ առևտրի բնույթն ու շրջանակները:

Արտաքին առևտուրը քարավանային բնույթ ուներ: Վաճառականներն իրենց ապրանքներով միանալով կազմում էին քարավաններ և հայտնի ճանապարհներով, երկար ժամանակով առևտրի էին գնում զանազան երկրներ: Բացառություն չէին կազմում նաև Հայաստանի ու նրա մայրաքաղաք Անիի վաճառականները: 10-րդ դարի պատմագիր Թովմա Արծրունու մի վկայությունից երևում է, որ նրանք վաղ գարնանը հատուկ նախապատ-

րաստվում էին հեռավոր ճանապարհորդությունների և առևտրի համար։ Դարերի ավանդույթ ունեցող քարավանային առևտրի այդ ձևը լիովին հարազատ էր նաև մայրաքաղաք Անիի վաճառականների համար։

Արտաքին, տարանցիկ ու տեղական առևտրի բնույթը և դրանց՝ երկրի ներքին կյանքի վրա թողած ազդեցության համար շատ կարևոր նշանակություն ունեն արտահանվող ու ներմուծվող ապրանքների տեսակները, որոնք արտացոլում են երկրի տնտեսական վիճակը՝ հարստությունները, բերքերը, արհեստավորական արտադրանքները։

Ակադեմիկոս Հ. Մանանդյանը, ի մի բերելով մատենագիրների հաղորդած տեղեկությունները, գալիս է այն եզրակացության, որ Հայաստանի քաղաքները Բագրատունիների թագավորության ժամանակաշրջանում համաշխարհային առևտրին մասնակցում էին հացահատիկներ, շինարարական փայտ (գլխավորապես ընկուզենի), ձուկ (տառեխ՝ Վանա լճից, իշխան՝ Սևանա լճից և շամային՝ Կուր գետից), անասուններ (ձիեր, ջորիներ, ոչխարներ, այծեր և այլն), մետաղներ (արծաթ, երկաթ, պղինձ, կապար, անագ, սնդիկ), լեռնային ձյութ, պղնձարջասպ, քարաղ և այլ ապրանքներ արտահանելով Ըստ նրա, Բագրատունյաց Հայաստանից արտահանվում էին նաև արհեստավորական զանազան արտադրանքներ ու իրեր՝ հագուստներ, բամբակե և մետաքսե գործվածքներ, գլխի փաթթոցներ, ծածկոցներ, բազմոցների ու բարձերի երեսներ, թիկնոցներ, վարագույրներ, գորգեր, բրուտագործական ու մետաղամշակման ամենատարբեր արտադրանքներ։

Կարծում ենք, որ արտաքին առևտուրը կատարվում էր միայն դրամով։ Ապրանքափոխանակություն, ըստ երևույթին, ամենևին չի եղել։ Արտաքին առևտրի բնորոշ կողմերից մեկն էլ այն էր, որ այն հիմնականում մեծածախ առևտուր էր, հակառակ ներքին մանրածախ առևտրի։

Նշված արտահանվող ապրանքներից շատերը բաժին էր ընկնում մայրաքաղաք Անիին։ Անիում արտադրված ապրանքներից հավանաբար արտահանվում էին գորգեր, զանազան գործվածքներ, որոշ տեսակի խեցեղեն, ներկեր, հացահատիկներ (ամբողջ Շիրակի դաշտից), անասուններ, քարաղ (Կողբից և մասամբ Կաղզվանից)։

Անին արտաքին առևտրին լայնորեն մասնակցելու հետ միասին նաև կարևորագույն հանգույց էր քարավանային տարանցիկ առևտրի մայրուղու վրա։ Անիի վրայով էին փոխադրվում Արաբական խալիֆայությունից և Արևելքի մյուս երկրներից դեպի Արևմուտք ու Արևմուտքից դեպի Արևելքի երկրներ վաճառքի տարվող ապրանքների զգալի մասը։ Անին առևտրի բաշխման կենտրոն էր նաև ամբողջ Անի-Շիրակի թագավորության համար։ Հավանաբար այստեղ էր կենտրոնացվում երկրից արտահանվող ապրանքների մեծ մասը և Անիի վաճառականների միջոցով էին հիմնականում ձեռք

թերվում ներմուծվող ապրանքները: Ճիշտ է, այդ մասին գրավոր հիշատակություններ չկան, հնագիտական նյութերն էլ աղքատիկ են, բայց այդպիսի ենթադրություն կարելի է անել ելնելով այդ ժամանակաշրջանի երկրի ու նրա մայրաքաղաքի ընդհանուր դրությունից: Առանձնապես նշելի է այն փորձությունը, որ արտաքին ու տարանցիկ առևտրին սպասարկելու նպատակով Անիում, ինչպես ասվեց, ստեղծվել էին մի շարք հյուրատներ, խանապարհներ ու փնդուկներ: Այստեղ նույն նպատակին էին հիմնականում ծառայում որոշ արհեստներ (թամբագործություն-համետագործություն, պայտարություն և այլն): Իսկ Հայաստան և Անի ներմուծվող ապրանքներից էին մետաքսե և բրդե թանկագին գործվածքները, թանկագին քարերը, ոսկե և արծաթե զարդերը, արհեստավորական զանազան շինվածքները, խախճապակե, ճենապակե և բյուրեղապակե ամանեղենը և այլն, որոնց մնացորդներից հայտնաբերվել են քաղաքի հնագիտական պեղումների ընթացքում:

Գրեթե անհնար է ասել, թե Անին և Բագրատունյաց Հայաստանը արտաքին առևտրի մեջ ինչ հաշվեկշիռ ունեին: Նույնիսկ հավանական եզրակացության համար, հատկապես ծավալին վերաբերող, հուշող նյութեր չկան: Սակայն նկատի ունենալով Անիում պեղումների ընթացքում հայտնաբերված օտարերկրյա ծագումի առարկաների սակավությունը տեղականի նկատմամբ և այն, որ պետական միջոցներով քաղաքում կատարվում էր պաշտպանական, քաղաքացիական և եկեղեցական ահռելի միջոցներ պահանջող հսկայական շինարարություն, կարելի է ենթադրել, որ արտաքին առևտրի մեջ Հայաստանի և, հատկապես, Անիի հաշվեկշիռն ակտիվ էր, դրանք ավելի շատ ապրանքներ էին արտահանում, քան ներմուծում, ինչպես Արևելքի երկրների արտաքին առևտուրը Արևմուտքի հետ ընդհանրապես առաջիններ ի համար ուներ ակտիվ հաշվեկշիռ: Կարծում ենք, որ մայրաքաղաքի արագ զարգացման նախապայմաններից մեկը հենց արտաքին առևտրից ստացվող եկամուտներն էին, որոնք համարվում էին պետական գանձարկղը հարստացնող կարևորագույն աղբյուրներից մեկը:

Ահա սրանք են, մեր կարծիքով, 10—11-րդ դարերի Անիի արտաքին և տարանցիկ առևտուրը բնութագրող հիմնական պահերն ու ցուցանիշները:

Միջին դարերի քաղաքները, որպես կանոն, զգալի չափով նաև գյուղատնտեսական խոշոր բնակավայրերի բնույթ ունեին: Նրանց տնտեսական կյանքում գյուղատնտեսական զբաղմունքները՝ երկրագործությունը, այգեգործությունն ու բանջարաբուծությունը և նույնիսկ անասնապահությունը կազմում էին քաղաքի բնակչության մի մասի, հատկապես արվարձանների բնակչության հիմնական զբաղմունքը: Սակայն բացառված չէին նաև

արհեստավորների ու մանր առևտրականների, եկեղեցիների ու վանքերի գյուղատնտեսական օժանդակ տնտեսությունների առկայությունը։ Միջնադարում Հայաստանի խոշոր քաղաքներից, մեր կարծիքով, գյուղատնտեսական զբաղմունքներով հատկապես հայտնի էին Դվինը, որ գրավում էր հսկայական տարածություն (այժմյան ՀՍՍՀ Արտաշատի շրջանի 5 գյուղերի տարածքը միասին վերցրած) և նույնիսկ պարսպով շրջափակված նրա բուն քաղաքում՝ շահաստանում կային բավական ընդարձակ այգիներ, բանջարանոցներ և անգամ հացահատիկային դաշտեր։ Վանը, որի մի ընդարձակ թաղամասը անհիշելի ժամանակներից կոչվել է Այգեստան՝ գրեթե համատարած այգեստաններ լինելու պատճառով և Վաղարշապատը, որի գրաված տարածքի արևմտյան սահմանը հասնում էր Քասախ գետը, իսկ արևելյանը՝ Զվարթնոց։ Մասամբ հենց այդ փռվածությունն է եղել պատճառը, որ Վաղարշապատը (Էջմիածին) կոչվել է նաև Քաղաքադաշտ, ինչպես Դվինի շրջակայքը՝ Դվնադաշտ։ Սակայն քաղաքների համար գյուղատնտեսական զբաղմունքները երկրորդական նշանակություն ունեին, նրանց տընտեսության գլխավոր ճյուղերը, եկամտի հիմնական աղբյուրները արհեստագործությունն ու առևտուրն էին։ Ավելին, հնագիտական նյութերը, գրավոր վկայությունները և մեզ հասած Անիի ավերակները անուղղակիորեն գալիս են ասելու, որ Դվինի, Վանի, Վաղարշապատի համեմատությամբ գյուղատնտեսական ճյուղերն այստեղ ավելի երկրորդական դեր ունեին։ Բուն քաղաքը խիտ կառուցապատված ու բնակեցված էր, գյուղատնտեսության համար ազատ տարածություններ պարսպապատ Անիում չկային։ Գյուղատնտեսական զբաղմունքները կարևոր դեր էին խաղում միայն արվարձաններում։

Բուն քաղաքի հյուսիսային և հյուսիս-արևելյան կողմում, Արտաքին պարիսպներից դուրս փռված էր մի մեծ սարահարթ, որտեղ գտնվում էին քաղաքի ամենաընդարձակ արվարձանները։ Այնտեղի բնակչության մեծ մասը հավանաբար զբաղվում էր երկրագործությամբ՝ հացահատիկների մշակությամբ։ Թ. Թորամանյանը, որ շրջագայել ու բավական մանրամասնությամբ նկարագրել է այդտեղ նշմարվող հնությունների ավերակներն ու հետքերը (գերեզմանոց, մահարձաններ, եկեղեցի, երբեմնի առանձինառանձին ցանկապատված տարածություններ), եկել է այն եզրակացության, որ այդ տարածությունը ամբողջապես բնակեցված է եղել և նրա բնակչությունը հիմնականում զբաղվել է գյուղատնտեսությամբ։

Անիի գյուղատնտեսության մյուս գոտին, եթե այսպես կարելի է ասել, հավանաբար եղել է քաղաքի արևմտյան մասում ձգվող Ծաղկոցաձորը, որտեղ, ըստ կիսաավանդական պատմությունների, կային բազմաթիվ բանջարանոցներ և ծաղկանոցներ։ Այդ ձորահովիտը միաժամանակ անեցիների

հանգստավայրերից էր։ Այնպես որ շատ հավանական է Անիի պատմությամբ զբաղվողներից շատերի այն կարծիքը, թե Ծաղկոցաձորի բազմաթիվ «քարտուններում» ապրողները զանգվածորեն զբաղվում էին գյուղատնտեսությամբ, և նրանց հողատարածությունները հիմնականում կազմում էին քաղաքի հյուսիսային կողմի հարթությունները։

Վիմագիր արձանագրություններից հայտնի է դառնում, որ Անին ուներ հացահատիկի արտեր, մշակովի հողեր, խոտհարքներ։ Այսպես, 1031 թվականին վերաբերող մի արձանագրության մեջ խոսվում է այն մասին, որ իշխանաց իշխան Վահրամի որդի Ապուղամրը Առաքելոց եկեղեցուն է նվիրել «Կառնուտի արտը», 1046 թվականի մի այլ արձանագրության համաձայն Ապլղարիբ մարզպանը ս. Փրկիչ եկեղեցուն տված կալվածքների մեջ նշում է նաև «ձիթհանք և այգի և հողեար...»։ Նույն կարգի տեղեկություններ կան նաև հաջորդ ժամանակների արձանագրություններում։ Այնպես որ «արտերը», «հողերը», որ երկրագործության նախապայմաններն են, եղել են նաև պարգևանքի առարկաներ։

Անիի պեղումների ընթացքում հայտնաբերվել են երկրագործական զանազան գործիքներ՝ տարբեր տեսակի երկաթե գութանի խոփեր, գերանդիներ, բահեր ու բրիչներ, կամներ, եղաններ և այլն։ Իսկ դրանց առկայությունը ցույց է տալիս, որ քաղաքի բնակչության մեջ կային նաև երկրագործությամբ զբաղվողներ։ Բայց քանի որ պեղումները գրեթե ամբողջապես կատարվել են միայն քաղաքի կենտրոնական թաղերում, ապա զարմանալի չպետք է թվա, թե ինչու երկրագործական և երկրագործության մեջ օգտագործվող գույք համեմատաբար քիչ է գտնվել։ Ըստ երևույթին դրանցից ավելի մեծ քանակությամբ և ավելի բազմազան գործիքներ ու գույք կգտնըվեր, եթե հնագիտական հետազոտություններ կատարվեին հատկապես վաղեմի քաղաքի արվարձաններում։

Կասկածել չի կարելի, որ Շիրակի բաղկացուցիչ մասը կազմող Անիի սարավանդում առաջին հերթին պետք է մշակեին ցորեն (և ընդհանրապես հացահատիկներ)։ Այդ են հուշում նաև հայտնաբերված երկրագործական գործիքների և գույքի տեսակները։ Սակայն հացահատիկների մշակությամբ չէր սպառվում Անիի բնակիչների երկրագործական զբաղմունքները։ Քաղաքի տասնյակ ձիթհանքերի հումքի մի մասը հավանաբար տալիս էին արվարձանները՝ մշակելով քնջութ և կտավատ, իսկ քաղաքացիների ամենօրյա պահանջները բավարարելու համար բացառված չէր նաև բանջարանոցների գոյությունը բուն քաղաքում և, հատկապես, արվարձաններում ու քաղաքը շրջափակող ձորերի նեղ հովիտներում։

Անիում հացահատիկների ու մասամբ կտավատի և քնջութի մշակությամբ զբաղվելու համար այն ժամանակվա պայմաններում հազիվ թե ար-

հեստական ոռոգմամբ անհանգստանային: Անիի սարահարթում առանց արհեստական ոռոգման էլ նշված կուլտուրաների մշակությունից կարող էին ստանալ բավարար բերք: Սակայն Անիում խմելու ջրից բացի մտածել են նաև ոռոգման ջուր ստանալու մասին: Անեցիները ոռոգման համար օգտագործում էին նոր ժամանակներում Գեդիկլեր կոչված գետակի ջրերը, որ Բագրատունի Սմբատ 2-րդի ժամանակ հատուկ ջրանցքով բերված էին Անի և Հոռոմոսի վանք: Հավանաբար ոռոգման և տնտեսական այլ նպատակներով Անին ջուր էր ստանում և ուրիշ աղբյուրներից. մեծ քաղաքի ջրամատակարարման հարցը չէր սահմանափակվում միայն Գեդիկլեր գետակի ջրի մի մասի օգտագործումով: Եվ այդ զարմանալի չպետք է թվա: Մենք գործ ունենք Անիի պատմության այն ժամանակաշրջանի հետ, երբ ոռոգիչ ջրանցքների ու ջրավազանների կառուցումը սովորական էր դարձել Սյունիքում, Վասպուրականում, Արարատյան դաշտում և երկրի այլ մասերում:

Ընդունելի է այն կռահումը, ըստ որի քաղաքի հողատարածությունների, հավանաբար հիմնականում բանջարանոցների, պարարտացման համար գոմաղբից բացի օգտագործում էին թռչնաղբ: Անեցիք քարայրային թաղամասերում խանութների, եկեղեցիների, բնակելի տների, դամբարանների հետ միասին, հսկայական քանակությամբ աղավնիների ծերտը հավաքելու և իբրև պարարտանյութ (և դաբաղանյութ) օգտագործելու համար պատրաստել էին շարքերով դասավորված ընդգետնյա հազարավոր բներ: Ն. Մ. Տոկարսկին պատմում է, որ 1915 թվականին Արևմտյան Հայաստանում շրջագայելիս, Օլթի քաղաքի մոտ, Խուվախ կոչված գյուղից վերև գտնվող բերդում տեսել է նույն կարգի աղավնատներ, որոնք սակայն պատրաստված են եղել քարից և արշավախմբերի անդամները զանազան կիսաառասպելական ենթադրություններ են արել դրանց պատրաստման և նպատակների մասին: Սակայն հետագայում, Անիի աղավնատներին ծանոթանալուց հետո, ինքը եկել է այն համոզման, որ աղավնատները պատրաստել են թռնչաղբ հավաքելու և իբրև լավագույն պարարտանյութ օգտագործելու համար:

Ահա այն բոլոր նախադրյալներն ու փաստերը, որոնք ընդհանուր գծերով բնութագրում են Անիի 10—11-րդ դարերի տնտեսության օժանդակ ճյուղերից մեկը՝ երկրագործությունն ու բանջարաբուծությունը:

Անիի գյուղատնտեսական զբաղմունքները, սակայն, նշվածներով չէին սահմանափակվում: Հանրահայտ է, որ միջին դարերում, ինչպես և հնում, երկրագործությունն առանց անասնապահության դժվար է պատկերացնել, որովհետև միակ քաշող ուժը եզները, գոմեշները, ձիերն էին: Մեզ մոտ այդ նպատակով սովորաբար օգտագործվում էին եզներն ու գոմեշները: Այդ ընդհանուր, միանգամայն տրամաբանական դրույթն անշուշտ

դեռ քիչ է Անիում անասնապահության գոյության մասին շատ թե քիչ արժանահավատ ենթադրություն անելու համար:

Ստեփանոս Ասողիկի մի անուղղակի վկայությունից արդեն կարող ենք եզրակացնել, որ Անիում իրոք անասնապահությունը նույնպես կազմում էր տնտեսության ճյուղերից մեկը: Պատմագիրը վկայելով Բագրատունի Սըմբատ 2-րդի մեծ հարստության և փարթամության մասին, նշում է, որ քաղաքում կային հացի ու գինու մեծ պաշարներ և խոտի մեծ ամբարանոց, որտեղ պահվում էին բազմաթիվ տարիների ընթացքում հավաքված ու դիզված խոտի պաշարները: Խոտի այդ դեզերը կարող էին պահվել արքայական ձիանոցի, բերդապահ զորքի ձիաների կամ այլ անասունների համար: Հաստատապես կարելի է պնդել, որ խոտի հսկայական դեզերի առկայությունը, որ այնքան խնամքով պահպանվում էր տարիներով, ենթադրում է նաև անասնապահության գոյությունը:

Տասնյակ ձիթհանքերում իբրև շարժիչ ուժ օգտագործվում էին գոմեշներ ու եզներ, որոնք, անշուշտ, պահում էին տեղում՝ քաղաքի արվարձաններում: Վերջապես քաղաքում կային մի քանի արհեստներ (պայտարություն, թամբագործություն և այլն), որոնք տարանցիկ առևտրի հետ միասին կապված էին տեղական անասնապահության հետ: Եթե տեղում անասնապահություն չլիներ, հազիվ թե քաղաքում այնքան պայտարներ ու թամբագործներ լինեին, որ առանձին-առանձին կազմեին արհեստավորական եղբայրություններ, յուրաքանչյուրն զբաղեցնելով մի փողոց կամ շարք:

Սկզբնաղբյուրների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ միջնադարյան Հայաստանի մյուս քաղաքների և գավառների գյուղատնտեսության նման Անիում ևս գոյություն են ունեցել չորս կարգի տնտեսություններ՝ պետական, տերունի, վանական-եկեղեցական և մանր, որոնցից համեմատաբար զարգացած ու զգալի մասով ապրանքային բնույթ ունեին առաջին երկուսը: Մշակում էին հացահատիկներ, կտավատ ու քնջութ, բանջարեղեն, զանազան կանաչիներ և, թերևս, պտղատու ծառեր (ձորահովիտներում): Քաղաքն ուներ իր պարտեզներն ու ծաղկանոցները:

Միջնադարյան Հայաստանի հարկերը, տուրքերն ու պարտադիր աշխատանքները տարբեր ժամանակների ու ծագման բազմաթիվ անուններով հիշատակված մի բարդ համակարգ են կազմում, որի մեջ կարող ենք գտնել ոչ միայն հայկական, այլև արաբական, պարսկական, քրդական, թուրքական ու մոնղոլական, հունական ու վրացական ծագումի այնպիսի հարկեր ու տուրքեր, որոնց իմաստն առ այսօր չի լուսաբանված: Էլ չենք խոսում դրանց չափերի մասին, որ ընդհանրապես շատ աղոտ են հայտնի: Սակայն սխալ կլիներ, եթե ասեինք, որ հարկերն ու տուրքերը քիչ են ուսումնասիր-

վել, կամ շատ սակավ են սկզբնաղբյուրները: Բավական շատ են ուսումնասիրվել և սկզբնաղբյուրների աղքատության համար էլ տրտնջալու առիթները քիչ են, սակայն դրանց հաղորդած տեղեկություններից շատերը անորոշ են և հետազոտողներին բանալի չեն տալիս ըստ էության լուսաբանելու հասարակության ներքին կյանքի համար այնքան կարևոր այդ բնագավառի մի ամբողջ շարք հարցեր:

Հարկերի ու տուրքերի մասին տեղեկություններ կան Անիի վիմագիր արձանագրություններում (առանձնապես ս. Առաքելոց եկեղեցու վրայի արձանագրություններում), ինչպես և պատմագիրների աշխատություններում: Դրանք տարբեր առիթներով ուսումնասիրել են Ղ. Ալիշանը, Ն. Մառը, Ս. Ա. Եղիազարովը, Լեոն, Հ. Մանանդյանը, Ս. Բարխուդարյանը և ուրիշներ: Անիի և նրա շրջակայքի վիմագիր արձանագրություններում հիշատակված հարկերի, տուրքերի, մաքսերի, հարկադիր աշխատանքների թիվը, նշված ժամանակների համար, հասնում էր 40-ի:

Անիում Բագրատունիների թագավորության շրջանում գոյություն ունեցող գլխավոր հարկերից, տուրքերից և հարկադիր աշխատանքներից էին **անգարիոն** պարիակը, **բամբակի** և **բերդի** հարկերը, **գինեվորի բաժը** (մաքսը), եկեղեցուն տրվող **տասանորդը**, **թաստակ** կոչված տուրքը, որ գանձվում էր քաղաքի մեծամեծների համար, **ընդհանուր** հարկը, **մսագործին** և **սպանդանոցին** անասուն մորթելու համար տրվող տուրքը, «շալակավորի» բաժը (շալակով ապրանք վաճառելու համար տրվող տուրքը), հողի հարկը՝ **շարիատը**, տան հարկը՝ **«պախտ տանց»**, **խալան**՝ ոռոգման ջրից օգտվելու համար տրվող հարկը, բազմատեսակ հարկադիր աշխատանքներ և այլն: Հասարակական հարկադիր աշխատանքները՝ բերդերի, պաշտպանական կառուցվածքների, ճանապարհների և այլ օբյեկտների կառուցումը կատարվում էր գյուղացիների և քաղաքացիների հարկադիր աշխատանքներով:

Հարկերի և տուրքերի հավաքումը կատարվում էր «կռփիչների» և նրանց ստորադրված պաշտոնյաների միջոցով: «Կռփիչների» վրա էին դրված չափերի ու կշիռների վրա հսկելը, դրանք կեղծողներին պատժի ենթարկելը և շուկայական ոստիկանական այլ պարտականություններ: Հավանաբար հարկերի հավաքման գործում որոշակի դեր ունեին նաև նոր ձևավորված արիեստավորական և առևտրական եղբայրությունները:

Ինչպես նշվեց, 10—11-րդ դարերում երկրում լայն չափեր են ընդունում դրամական հարաբերությունները: Դրամն այդ շրջանում դառնում է արտաքին ու տարանցիկ առևտրի հիմնական միջոցը, կուտակման ու պարգևանքի առարկա, որ մեծ գումարներով նվիրաբերվում էր հատկապես

վանքերին ու եկեղեցիներին։ Դրամն աստիճանաբար սկսում է մուտք գործել երկրի տնտեսական կյանքի բոլոր բնագավառները։

Հայտնի է, որ արաբական խալիֆայության տիրապետության շրջանում 7—9-րդ դարերում գրեթե միայն պետական հարկերն էին հավաքում դրամով, մնացած բոլոր հարկերը, որոնց թվում և ֆեոդալին տրվող հողի հիմնական հարկը տրվում էր բնամթերքով՝ բերքի որոշ մասով։ Դրությունը փոխվում է 9—11-րդ դարերում, երբ երկիրը արդեն թևակոխում է զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանը։ Այդ ժամանակներում արդեն սկսում են դրամով գանձել նաև ֆեոդալին տրվող հողի հարկը՝ ռենտան։ Բնամթերքից դրամական հարկին անցնելը, որ կատարվեց 10—11-րդ դարերում, անշուշտ, գերազանցապես վերաբերում է գյուղին։ Քաղաքում, մանավանդ Անիում, նրա տնտեսության հիմնական ճյուղերից՝ արհեստագործությունից և առևտրից վերցվող հարկը հիմնականում միշտ էլ գանձվել է դրամով։

10—11-րդ դարերի Անին, այնուամենայնիվ, ֆեոդալական քաղաք էր, մի քանի ավելի մանր թագավորությունների գլուխ կազնած՝ Անի-Շիրակի թագավորության մայրաքաղաքը։ Քաղաքի տնտեսական ու հասարակական կյանքի բոլոր կողմերը կրում էին ֆեոդալիզմի կնիքը։

Ամփոփելով սկզբնաղբյուրների հաղորդած անուղղակի տեղեկություններն այդ ժամանակաշրջանի Հայաստանի քաղաքների բնակչության հասարակական շերտերի մասին, ակադեմիկոս Հ. Մանանդյանը գրում է, որ դրանցում «բնակչության զգալի մասը կազմում էր խոշոր և մանր հողատիրական արիստոկրատիան, ինչպես նաև քաղաքային բնակիչները, որոնք ունեին իրենց այգիները, բանջարանոցները և երկրագործական տնտեսությունը»։ Բնակչության հասարակական կազմի տեսակետից այդպիսի քաղաք էր նաև Անին։ Բայց նա պատկանում էր նույն հեղինակի բնութագրած այն «խոշոր քաղաքների» թվին, որոնք «գործուն մասնակցություն ունեին» միջազգային առևտրին, լինելով միաժամանակ «առևտրական ու արհեստավորական բնակչության» մեծ կենտրոն։ Քաղաքի բնակչության ցածրագույն խավը կազմում էին օրավարձով աշխատողներն ու արվարձանների՝ գյուղատնտեսությամբ զբաղվող բնակիչները։

Անիում գոյություն ուներ սեփականատիրական չորս ձև՝ պետական, խոշոր մասնատիրական, եկեղեցական ու մանր սեփականատիրական։ Պետական սեփականությունը բաղկացած էր արքունի պալատից ու դրա օժանդակ շենքերից, պաշտպանական բոլոր կարգի կառուցվածքներից ու միջոցներից, ինչպես նաև զանազան կալվածքներից։ Այլապես անբացատրելի կլիներ Ստեփանոս Ասողիկի վկայությունը Սմբատ 2-րդի խոտի հսկայական դեզերի, գինու ու հացի մեծ պաշարների և այլ ունեցվածքների

մասին նշված վկայությունը: Վերջապես, մայրաքաղաքն ինքն ամբողջությամբ իրավական առումով Բագրատունի թագավորների սեփականությունն էր համարվում:

Պետական ու արքունի գանձերը հիմնականում գտնվում էին մայրաքաղաքից դուրս՝ բերդ-գանձարաններում՝ Մաղասբերդում, Տիգնիսում և այլուր: Երկրի ոսկու և արծաթի բոլոր հանքավայրերը համարվում էին առաջինները թագավորի, իսկ երկրորդները՝ թագուհու սեփականությունը: Նրանց էր պատկանում իրավունքը դրանք իրենց ձեռքում պահելու կամ օտարացնելու: Այնպես որ պետության ու արքունիքի եկամուտները և հարստության աղբյուրները միայն հարկերն ու տուրքերը չէին, այլ նաև երկրի ընդերքի հարստությունները, տարբեր տեղերում ունեցած կալվածքները, առևտրից ու արհեստագործությունից ստացվող եկամուտները և այլն:

Ըստ երևույթին Անիում ապրող ֆեոդալական վերնախավի ներկայացուցիչները, որոնք սովորաբար կատարում էին վարչական ու զինվորական ծառայություն, մայրաքաղաքում հողային տարածություններ չունեին, կամ այդպիսիք քչերն ունեին: Այդ մասնավորապես երևում է նրանից, որ ֆեոդալների կողմից եկեղեցիներին ու վանքերին տրված նվիրատվությունների մեջ արտեր ու այգիներ հազվադեպ են հիշատակվում: Նվիրատվությունները սովորաբար բաղկացած էին կուղպակ-խանութներից, ձիթհանքերից, տներից, ջրաղացներից և այլն: Նույնիսկ նրանց սեփականությունը կազմող տները հաճախ գտնվում էին քաղաքից դուրս՝ տարբեր գավառներում: Նրանց կալվածքները, որ սովորաբար կազմում էին ամբողջական շրջաններ ու գավառներ, գտնվում էին թագավորության տարբեր կողմերում: Օրինակ, Պահլավունի հայտնի տոհմի հայրենական կալվածքները գտնվում էին Բջնիի շրջակայքում, իսկ նույն տոհմի ականավոր ներկայացուցիչ Վահրամ Պահլավունու սեփականությունն էր կազմում իր կառուցած Մարմաշենի վանքի և Վահրամաբերդի շրջակայքը՝ Անի քաղաքից հյուսիս: Քաղաքից դուրս էին գտնվում նաև մյուս խոշոր ֆեոդալների՝ Վեստ Սարգսի և մյուսների հայրենական ընդարձակ կալվածքները: Կարծում ենք, որ նրանց մայրաքաղաքի հետ կապողը քաղաքի սեփականատիրություններն էին՝ խանութները, ձիթհանքերը, բաղնիքները, ջրաղացները, շքեղ տները (որոնք կարող էին լինել ուղղակի պալատներ), ինչպես նաև վարչական ու ռազմական բարձր պաշտոնները, քաղաքի, մանավանդ մայրաքաղաք Անիի շռայլ կյանքը, որի վերաբերյալ նույնիսկ ստեղծվել են չարագուշակ ավանդություններ ու զրույցներ: Այս տեսակետից ուշադրության արժանի է Լեոյի այն կարծիքը, թե Բագրատունի թագավորներն իրենք էին բոլոր միջոցներով խոշոր ֆեոդալներին կենտրոնացնում մայրաքաղաքում, որպեսզի դյուրին լիներ նրանց կենտրոնախույս ձգտումներն ու ապստամբական տրա-

մադրությունները խափանելը, օրինակ բերելով թագավորության վերջին շրջանի խոշորագույն ֆեոդալներից մեկին՝ Վեստ Սարգսին։

Դեռևս չի կարելի լուծված համարել քաղաքային դասի՝ արհեստավորների և առևտրականների սեփականատիրական իրավունքի հարցը։ Իսկ այդ, մեր կարծիքով, գրեթե ամբողջապես կապված է բնակելի տների և արհեստանոցների ու կրպակների հետ, որոնք գրավում էին քաղաքի կառուցապատ տարածքի մեծագույն մասը։ Ն. Մառի կարծիքով, աշխատավորական «հասարակ» խավի սեփականատիրական իրավունքի մասին որոշակի ոչինչ չկա և ընդհանրապես հայտնի չէ, թե այդ խավի ներկայացուցիչները սեփական տուն կամ խանութ ունեցե՞լ են, թե՞ ոչ, և կամ ինչպիսին է եղել Անիի տնատերերի ու վարձակալողների հարաբերությունները։ Մեզ թվում է, որ մայրաքաղաքի հասարակության ցածրագույն խավը՝ արվարձաններում գյուղատնտեսությամբ զբաղվողներն ու օրավարձով աշխատող ընչազուրկները, ապրում էին ամենահասարակ խրճիթներում, որոնք որևէ արժեք չէին ներկայացնում։ Հետևապես խոսքը ոչ թե դրանց մասին է, այլ արհեստավորների ու առևտրականների տների, արհեստանոցների ու խանութների, որոնցից վերջինները զգալի եկամուտ կարող էին բերել։ Խանութների և արհեստանոցների սեփականատիրական իրավունքը, եթե դատելու լինենք վիմագիր արձանագրությունների տեղեկություններով, բացառապես (կամ գրեթե բացառապես) պատկանում էր ֆեոդալներին և եկեղեցուն, որոնցից առաջինները դրանց տեր էին դարձել հիմնականում դրամով գնելով, իսկ երկրորդը՝ նվիրատվությամբ։ Ե՛վ ֆեոդալները, և՛ եկեղեցին դրանք վարձակալական հիմունքներով տալիս էին առևտրականներին ու արհեստավորներին, ստանալով զգալի եկամուտներ։ Տերունական կամ եկեղեցապատկան էին նաև հյուրանոցները, իջևանատները, ձիթհանքերը (հավանաբար նաև ջրաղացները), որոնք նույնպես տրվում էին վարձով։

Սակայն մեզ թվում է, որ քաղաքային «հասարակ» աշխատավոր բնակչությանը պատկանող տները, որոնք իրենց բակերում կարող էին ունենալ փոքրիկ բանջարանոցներ, հավանաբար զանգվածորեն կազմում էին նրանց սեփականությունը։ Եվ արձանագրություններում դրանց նվիրատվության մասին տեղեկություններ չհաղորդելը պարզապես պետք է բացատրել նրանով, որ արհեստավորներին ու մանր առևտրականներին պատկանող տները հասարակ խրճիթներ էին, առանձին արժեք չէին ներկայացնում և չէին կարող լինել նվիրատվության առարկա, և երկրորդ՝ ընդհանրապես հասարակության ցածր խավը «ավելորդ» ունեցվածք չուներ եկեղեցուն նվիրելու, այդ եղանակով եկեղեցու միջոցով «հոգու փրկության» կարիքը չուներ, որովհետև իրական կյանքում նա «մեղք» չէր գործել։ Սակայն հնարավոր

է նաև, որ մանր առևտրականներն ու արհեստավորները եկեղեցուն նվիրաբերած լինեն զանազան պարգևներ, այդ թվում և տներ-խրճիթներ, բայց դրանք արժանի չհամարվեին հատուկ արձանագրության։

Քաղաքի ավելի քան երկու ու կես հարյուրի հասնող վիմագիր արձանագրություններից, սակայն, երևում է, որ Անիի «տերերը» առաջին հերթին եկեղեցիներն էին՝ հարյուրավոր եկեղեցիները, որոնցից շատերը նվիրատվության, գնման, ժառանգություն ստանալու և այլ եղանակներով ձեռք էին բերել հսկայական հարստություններ և ընդարձակ կալվածքներ։ Ընդ որում, կարելի է ասել, որ Բագրատունիների թագավորության շրջանում «հոգու փրկության» քողի տակ եկեղեցիներին տրվող նվիրատվությունները նոր էին սկսվել, բայց ծավալվելու մեծ հակումներ ունեին և, իրոք, Զաքարյանների ժամանակ հասան առավելագույն չափերի։

Եկեղեցուն տրվող նվիրատվությունները կարելի է բաժանել 3 խմբի՝ ա) հողային տարածությունների՝ այգիներ, արտեր, խոտհարքներ և այլն, բ) առանձին օբյեկտների՝ խանութներ, ձիթհանքեր, տներ, հյուրանոցներ և այլն, գ) այլևայլ արժեքավոր իրեր, սպասք, ձեռագրեր, հարստություններ, դրամական նվիրատվություններ։

Անիի եկեղեցիները այդ եղանակով կալվածքներ էին ձեռք բերում և՛ քաղաքում, և՛ քաղաքից դուրս՝ թագավորության զանազան գավառներում։ Ոչ միայն նվիրատվությունները, այլև հենց վանքերը, տաճարները և եկեղեցիները կառուցվում էին հիմնականում ֆեոդալների, թագավորների ու թագուհիների կողմից։

10—11-րդ դարերում եկեղեցիներն ու վանքերը նվիրատվությամբ, դրամով գնելով և այլ եղանակներով հարստանալով արդեն դարձել էին խոշոր հայրենատերեր, որոնք կարող էին ունենալ և իրենց հյուրանոցները, ձիթհանքերը, արհեստանոցները, խանութները։ Այդ նույն եղանակով էր մեծ հարստությունների և ընդարձակ կալվածքների տեր դարձել նաև կաթողիկոսական աթոռը։ Իր ժամանակի խոշոր ֆեոդալներից էր հատկապես Պետրոս Գետադարձ կաթողիկոսը (1019—1058), որի հիմնական աթոռանիստն Անին էր։ Հայոց հայրապետի Արշարունիք գավառի հայրենական կալվածքներից, Սուրմարի (Սուրմալու) և Ծառաքար բնակավայրերից բացի, կաթողիկոսական աթոռն ուներ հայոց թագավորների կողմից տրված 500 «գեղ անվանի», կաթողիկոսին ստորադրված էին հարյուրավոր թեմակալ-եպիսկոպոսներ։ Նրա մշտական շքախումբը կազմված էր կաթողիկոսարանում մշտապես ապրող, կաթողիկոսի խորհրդակից 12 եպիսկոպոսներից, 4 վարդապետներից, 60 հոգևորականներից և 500 աշխարհական երեցներից։ Նա «յոյժ սիրող էր գանձուց», «Եւ չէր նուաստ աթոռ հայրապետութեանն քան զթագավորութեանն Հայոց»։

Կալվածքներն ու ունեցվածքը անցնում էին ժառանգաբար, իսկ ժառանգության մասին Մխիթար Գոշի դատաստանագրքում կա մի ընդարձակ հոդված, ըստ որի ժառանգորդը առաջին հերթին համարվում է որդին, եթե այդպիսին չկա, ապա ժառանգորդ է համարվում չամուսնացած դուստրը, իսկ ամուսնացածը կարող է ստանալ կես բաժին, բայց առանց ժառանգորդ լինելու իրավունքի։ Դուստր չունենալու դեպքում ժառանգորդ է դառնում եղբայրը, իսկ եթե եղբայր չունի, ապա ժառանգում է հորեղբայրը, և այլն։ Ունեցվածքի սեփականատիրական ու ժառանգականության իրավունքը միջին դարերում փաստորեն սրբագործվում էր, և այդ իրավունքը հայկական պայմաններում իր իրավաբանական ձևակերպումն է գտել Գոշի դատաստանագրքում, ընդգրկելով բոլոր հնարավոր դեպքերը։

Անի քաղաքի 10—11-րդ դարերի հասարակական-տնտեսական հարաբերությունները, որոնց բնութագրմանը նվիրեցինք բավական էջեր, այսպիսին էին. գնալով քաղաքի հասարակության դասակարգային շերտավորումն ավելի էր ուժեղանում ու խորանում, գնալով հսկայական հարստություններ էին կուտակվում ֆեոդալական վերնախավի ու եկեղեցու ձեռքում և արդեն աստիճանաբար ձևավորվում էր հասարակական մի նոր խումբ, այսպես կոչված, «մեծատունների» խումբը, որը բաղկացած էր վաճառականներից, հարուստ վաճառականներից, կապալառուներից՝ կրելով պարոն կամ պատրոն տիտղոսը և ավելի բարձր դիրք գրավելով հետագա ժամանակներում՝ 12—13-րդ դարերում։ Բագրատունիների թագավորության ժամանակաշրջանին հատուկ էր հասարակության տարբեր շերտերի տնտեսական ու իրավական վիճակի աղաղակող անհավասարությունը։ Այդ ժամանակաշրջանի համար բնորոշիչ են միջնադարյան հայ մեծ բանաստեղծ Ֆրիկի հետևյալ խոսքերը.

«Մէկն ի պապանց պարոնորդի,
Մէկն ի հարանց մուրող լինի.
Մէկին հազար դեկան ոսկի,
Մէկին ո՛չ փող մի պղնձի.
Մէկին հազար հատ մարգարիտ,
Մէկին ո՛չ ուլնիկ մի ապիկի...»։

Եվ պատահական չէ, որ միջնադարյան Հայաստանում գյուղացիական շարժումները (Այրարատում, Սյունիքում) և նույն բնույթի, բայց աղանդավորական քողով հանդես եկած թոնդրական շարժումը, որոնք վերջիվերջո ուղղված էին ֆեոդալիզմի դեմ ընդհանրապես, ծավալվեցին հատկապես 10-րդ դարում և 11-րդ դարի առաջին կեսում։

Մատենագրական, վիմագրական և հնագիտական անուղղակի տեղեկություններից երևում է, որ Անիի բնակչության թիվը մեծացել է միջնա-

դարի համար անսովոր արագությամբ։ Այն 10-րդ դարի առաջին կեսում դեռևս այնքան փոքր էր, որ, ինչպես տեսանք, ուսումնասիրողներից շատերը Անին համարել են սովորական բերդ կամ ամրոց, իսկ մայրաքաղաք դառնալուց հետո՝ ընդամենը մի քանի տասնյակ տարվա ընթացքում այնքան է մեծանում, որ անհրաժեշտություն է առաջանում Ներքին պարիսպը կառուցելուց 25 տարի անց՝ կառուցել Արտաքինը։ Եվ միանգամայն հասկանալի է, որ բնակչության ավելացման հիմնական աղբյուրը մեխանիկական աճն էր՝ Անի-Շիրակի թագավորության տարբեր մասերից դեպի Անի ձգվող և այնտեղ հաստատվող զանգվածները։ Տարբեր առիթներով Անիի բնակչության մեխանիկական աճին անդրադարձած հեղինակները, որպես կանոն, մատնացույց են անում միայն նրա հարմար դիրքը, անմատույց լինելը և նշում, որ ռամիկ բնակչությունը տարբեր կողմերից «գաղթեցին և եկան լցուցեան» Անի։

Բնակչության կուտակման համար, անշուշտ, Անիի՝ բնականից ամուր դիրք ունենալը և պաշտպանական հուսալի կառուցվածքները խաղացել են իրենց դերը։ Սակայն նոր հռչակված մայրաքաղաքի բնակչության արագաթափ ավելացումը բացատրել միայն նրա ամրությամբ շատ պարզունակ կլիներ և իրական դրության հետ քիչ առնչվող։ Անիի բնակչության թվի կտրուկ ավելացումը առաջին հերթին կապված էր մայրաքաղաք հռչակվելու հետ։ Իբրև այդպիսին այստեղ հաստատվեց առաջին հերթին ոչ միայն Բագրատունիների թագավորական տունն իր անմիջական ենթականերով, այլև մեծ թվով ֆեոդալ ազնվականներ, հոգևորականներ (որոնց թիվն առանձնապես ավելացավ, երբ Անին դարձավ նաև կաթողիկոսանիստ) և այլն։ Սակայն մայրաքաղաքի բնակչության հիմնական զանգվածները կազմող արհեստավորները, առևտրականները և գյուղատնտեսությամբ զբաղվողներն ու օրավարձով աշխատողներն այստեղ կուտակվել էին հիմնականում սոցիալ-տնտեսական նոր երևույթների՝ քաղաքային կյանքի ընդհանուր զարգացման, քաղաքը գյուղից և արհեստագործությունը գյուղատնտեսությունից անջատվելու հիմքի վրա։ Հատկանշական է, որ ոչ միայն Անին, այլև 10—11-րդ դարերի Հայաստանի մյուս խոշոր քաղաքները ևս (հատկապես Նորահաստատ Արծնը և Կարսը) շատ կարճ ժամանակամիջոցում դարձան մարդաշատ քաղաքներ։

Բազմամարդ դառնալու համար Անիի պայմաններն ավելի նպաստավոր էին։ Այն քարավանային ճանապարհների հանգույց էր, մայրաքաղաք, ամուր բերդ, Անի-Շիրակի թագավորության միակ նշանավոր քաղաքը գտնվում էր երկրի կենտրոնում։ Այդ բոլորը նպաստեցին, որպեսզի Անին ընդամենը 40—50 տարվա ընթացքում սովորական բերդաքաղաքից վերածվի մեծ քաղաքի։

Միջնադարյան Եվրոպայի քաղաքների օրինակով, Անիում ևս նոր բնակություն հաստատողների մեջ, ըստ երևույթին, ամենամեծ զանգվածը կազմում էր կախյալ գյուղացիությունը, որի «փախուստը դեպի քաղաք» շարունակվում էր «ամբողջ միջնադարի ընթացքում»,— նշում են մարքսիզմի դասականները: Իսկ այդ «փախուստը» հիմնականում տեղի էր ունենում ճորտացման պրոցեսի ուժեղացման, «ֆեոդալների և վանքերի կողմից գյուղացիության հողերի մի մասի զավթման հետևանքով»,— միանգամայն իրավացիորեն նշում է Բ. Առաքելյանը: Կարծում ենք, որ այդ եղանակով Անիում հավաքվեց ոչ միայն միջնադարի քաղաքներին հատուկ օրավարձով աշխատող «սևագործների ամբոխը», որի մասին նշում են մարքսիզմի դասականները, այլև բավական թվով այնպիսի գյուղացիներ, որոնք ամրացված չէին ֆեոդալական հողին և կարող էին ազատորեն տեղափոխվել ցանկացած վայրը: Ըստ երևույթին, Անիի արվարձաններում դրանք բնակություն հաստատեցին պետական հողերի վրա և, երկրագործությունից բացի կարող էին զբաղվել նաև գյուղական տիպի արհեստներով (գզրարություն, մանածագործություն, դարբնություն և այլն):

Քաղաքի բնակչության բնական աճը հավանաբար աննշան էր, ընդհանրապես միջնադարին հատուկ ցածր աճ, որը նոր ու նորագույն ժամանակների բնակչության աճի նույնիսկ կեսը չէր կազմում: Դժվար է Անի քաղաքի բնակչության բնական աճի մասին որևէ, թեկուզ միայն ենթադրական, թիվ առաջարկել: Վիմագիր արձանագրությունների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նվիրատուների երեխաների քանակը սովորաբար եղել է ոչ ավելի, քան 1—3, հետևապես բնական աճն էլ շատ ցածր էր:

Բագրատունիների թագավորության շրջանում Անիից արտագաղթ չի կատարվել, դրա համար պատճառներ ու առիթներ չեն եղել և ուսումնասիրողների կողմից այդպիսի փաստեր չեն արձանագրվել: Այնպես որ Անիից արտագնացողները այդ ժամանակներում առանձին անհատներ էին և որևէ չափով չէին կարող ազդել նրա բնակչության ընդհանուր թվի նվազման վրա:

Բոլոր ժամանակներում էլ քաղաքի դեմքը, երկրում խաղացած նրա դերը առաջին հերթին պայմանավորված էր մարդաշատությամբ: Այս առումով էլ Անիի բնակչության թվի որոշումը նրա պատմության կարևորագույն հարցերից է, մի հարց, որ շատ ու շատ ուսումնասիրողների է հետաքրքրել, բայց որը, այնուամենայնիվ, մնացել է մինչև վերջ չլուծված: Այլ կերպ էլ պատկերացնել չի կարելի: Չէ՞ որ մինչև նոր ժամանակները ընդհանուր մարդահամարներ չեն կատարվել և մեզ ստույգ հայտնի չէ ոչ առանձին երկրների, և ոչ էլ բնակավայրերի բնակչության թիվը: Այդ հարցը Ներ-

կայումս մասամբ լուծվում է էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնությամբ, բայց պակաս դժվարություն չի ներկայացնում նաև վերջիններիս ճիշտ առաջադրանքներ տալը։

Անիի մարդաշատությունը հաստատելու համար ուսումնասիրողներից ոմանք մատնացույց են անում նրա պարիսպներից դուրս ընդարձակ արվարձանների (որոնց թվում նաև քարանձավային հարյուրավոր բնակարանների) գոյությունը, քաղաքի համար վտանգավոր պահերին մինչև 60-հազարանոց հսկա բանակ դուրս բերելը, եկեղեցիների շատությունը և այն, որ Անին Շիրակի միակ քաղաքն էր, սելջուկյան տիրապետության ժամանակներից ի վեր, Անիից դուրս եկած հսկայական թվով գաղթականությունը և այլն, անուղղակի, շատ դեպքերում կիսաավանդական բնույթի, չափազանցված հիշատակություններ ու վկայություններ։ Անշուշտ այդ բոլորըն անուղղակիորեն ցույց են տալիս, որ Անին շատ բազմամարդ ու խոշոր քաղաք է եղել դեռևս Բագրատունիների թագավորության շրջանում։ Բայց դրանք առանձին-առանձին և միասին վերցրած, այնուամենայնիվ, որոշակի որևէ թիվ տալու հիմք չեն կարող լինել։

Քաղաքի բնակչության քանակի մասին, մեր կարծիքով, շատ թե քիչ գաղափար կարող ենք կազմել հատկապես այն վկայությունների հիման վրա, որոնք կատարվել են ժամանակակից պատմագիրների աշխատություններում և որոնք որոշակի թվեր են պարունակում։ Ըստ հայ պատմագիրների Անին ունեցել է 10000 տուն՝ 100000 բնակիչներով, թեպետև ոչ ընդհանուր մարդահամար և ոչ էլ տների հաշվառում Անիում տեղի չի ունեցել և առաջին իսկ հայացքից այդպիսի հարաբերակցություն չի կարող լինել տների թվի և բնակիչների քանակի միջև (յուրաքանչյուր տանը միջին հաշվով ընկնում է 10 բնակիչ, որ շատ անհավանական է)։ Բայց և այնպես 10—11-րդ դարերի Անիի բնակչության թիվը հավանաբար այդքանի է հասել։ Այդ թիվն ավելի հավանական է թվում, երբ նկատի ենք ունենում երկու այլ խոշոր քաղաքների՝ Դվինի և Արծնի մասին եղած վկայությունները։ Թովմա Արծրունու հիշատակության համաձայն 9-րդ դարում Դվինում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքով (893 թվականին) զոհերի թիվը հասել է ավելի քան 70 հազարի։ Հայտնի է, որ այդ երկրաշարժը տեղի է ունեցել գիշերը, երբ ամբողջ քաղաքը թաղված է եղել խոր քնի մեջ և այդ պատճառով էլ հսկայական թվով զոհեր են եղել։ Ինչքան էլ չափազանցված լինի այս թիվը, այնուամենայնիվ, դրանից երևում է, որ Դվինն ունեցել է մոտ 100 հազար բնակիչ։ Է՛լ ավելի բնորոշ են Կարինի (Էրզրումի) մոտ եղած Արծն քաղաքի 11-րդ դարի առաջին կեսում ունեցած բնակչության թվի վերաբերյալ վկայությունները։ Մատթեոս Ուռհայեցին հաղորդում է, որ սելջուկների երկրորդ արշավանքի ընթացքում, 1049 թվականին նրանց

ձեռքով հիմնահատակ ավերված այդ քաղաքի միայն զոհերի թիվը հասել է 150 հազար մարդու: Սելջուկյան հորդաների կողմից Արծնի գրավման ու ավերման ժամանակ զոհերի մոտավորապես այդքան քանակ է հաղորդում նաև բյուզանդական պատմագիրը: Ըստ նրա վկայության զոհերի թիվը հասել է ավելի քան 150 հազարի: Երկու միանգամայն տարբեր պատմագիրների այդ հիշատակությունները, որոնք շատ քիչ են իրարից տարբերվում, նույնպես ցույց են տալիս, որ Արծն քաղաքը հավանաբար նույնպես ունեցել է 100 հազարից ոչ պակաս բնակիչ: Իսկ Անին այդ ժամանակ իբրև մարդաշատ քաղաք ամենայն հավանականությամբ ոչ միայն ոչնչով չէր զիջում Դվինին ու Արծնին, այլև նա Հայաստանի քաղաքների մեջ միակն էր, որ ժամանակակից պատմագիր Արիստակես Լաստիվերտցին կոչել է «տիեզերահռչակ», անշուշտ նկատի ունենալով նաև նրա մարդաշատությունը:

10—11-րդ դարերի Հայաստանի ոչ մի խոշոր քաղաքում այնպիսի լայն ծավալի ու կարճ ժամանակամիջոցում կառուցողական աշխատանքներ չեն կատարվել, ինչպես Անիում. Ներքին պարիսպ, երկուս ու կես կիլոմետրանոց, աշտարակավոր, շատ տեղերում երկշարք Արտաքին պարիսպ, մի ամբողջ շարք տաճարներ (Կաթողիկե, Գագկաշեն և այլն), 500 մ երկարություն ունեցող պաշտպանական խանդակ, արքայական պալատ և այլն, և այլն: Այն ժամանակվա պայմաններում շինարարական այդպիսի մեծ աշխատանքներ, մեզ թվում է, հնարավոր էր իրականացնել միայն բազմահազար աշխատողների առկայությամբ: Հավանաբար Անիում էին կենտրոնացած Շիրակի քարագործ ու շինարար վարպետների մեծագույն մասը և հազարավոր հասարակ աշխատողներ: Այլապես անհնար կլիներ ձեռքի մուրճի, հատիչի, բահի և բրիչի օգնությամբ ընդամենը 40—50 տարվա ընթացքում սովորական բերդաքաղաքը վերածել մարդաշատ, ծոխ ու վաճառաշահ քաղաքի:

Այդ բոլորը նկատի ունենալով ընդունելի կարելի է համարել հայոց պատմության նահապետ Մ. Չամչյանցի տեսակետը, ըստ որի Անին 10—11-րդ դարերում ունեցել է շուրջ 100 հազար բնակիչ:

Հայ հեղինակներից ոմանք անհավատալի չափով մեծացրել են Անիի բնակչության թիվը՝ հասցնելով մինչև մեկ միլիոն մարդու և, նույնիսկ, դրանից ավելի, որը Գ. Պալաքյանը միանգամայն արդարացիորեն համարում է «ծիծաղելի չափազանցություն»:

Անիի մարդաշատ լինելն ընդգծելու համար այդպիսի չափազանցությունների կարիքը չի զգացվում: Առանց այդ էլ 100 հազար բնակիչը միջնադարյան քաղաքի համար շատ մեծ թիվ է, այդ ժամանակվա Արևելքի մեծ քաղաքներին համապատասխանող թիվ: Իսկ Եվրոպայի քաղաքներն,

ընդհանրապես, բացառյալ Հռոմի և Փարիզի, շատ ավելի փոքր են եղել: Այսպես, օրինակ, 15-րդ դարի Գերմանիայի խոշորագույն քաղաք Քյոլնը ունեցել է ընդամենը 35 հազար բնակիչ, 11-րդ դարում Անգլիայի ամենախոշոր քաղաքներից (Լոնդոն, Բրիստոլ և այլն) յուրաքանչյուրի բնակչության թիվը 7000—8000 մարդուց չէր անցնում, Բազելը 14-րդ դ. ունեցել է մոտ 15 հազար բնակիչ, Մայնի Ֆրանկֆուրտը՝ 9000, Լայպցիգը 1474 թ.՝ մոտ 4000, Նյուրնբերգը 1449 թ.՝ 20000 բնակչից մի փոքր ավելի և այլն:

Անին հետագայում երբեք այդքան (կամ դրանից ավելի) բնակիչ չի ունեցել. 1064 թվականին սելջուկների կողմից գրավվելուց ու ավերվելուց հետո, քաղաքից մի այնպիսի մեծ արտագաղթ է կատարվել, որ հետագայում, բնակչության թվի առումով, հավանաբար հազիվ վերականգնըվել էր նախկին դրությունը:

Միջնադարյան քաղաքներում բնակչությունը հիմնականում տեղաբաշխված էր ըստ հասարակության շերտերի: Անիի միջնաբերդում, որտեղ գտնվում էր արքայական պալատը, պալատական եկեղեցին և օժանդակ մի շարք շենքեր, բնակվում էին թագավորն ու իր ընտանիքը, պալատականները, թագավորի թիկնապահ զորքը: Բուն քաղաքի բնակչության հիմնական զանգվածները բաղկացած էին առևտրականներից ու արհեստավորներից, իսկ արվարձաններինը՝ գյուղատնտեսությամբ զբաղվողներից և ընչազուրկ ամբոխից, որն օրվա հացը վաստակում էր ֆիզիկական ծանր աշխատանքով: Հնագիտական ուսումնասիրությունների հիման վրա Ն. Մառը եկել է այն եզրակացության, որ Անիի բնակչության ցածր խավերն ապրում էին մուրացկանային վիճակում: Նրանց բնակարանները կամ ողորմելի հյուղեր էին, կամ «քարտուններ», որոնք փորված էին Ծաղկոցաձորի, Իգաձորի ու Ախուրյանի ձորալանջերին և ոչնչով չէին տարբերվում «որջերից»: Այդ նույն «քարտուններից» կային նաև ավելի շքեղները, բաղկացած մի քանի բավական մեծ սենյակներից, ունենալով միջանցքներ և օժանդակ հարմարություններ: Սրանք ամենայն հավանականությամբ հարուստ մարդկանց էին պատկանում, որոնք այստեղ, ըստ երևույթին, ապաստանում էին միայն քաղաքն արտաքին նվաճողների կողմից վտանգի ենթարկվելու կամ պաշարման ժամանակ:

Ըստ հասարակական շերտերի՝ Անիի բնակեցման նկարագրված դասավորությունը հետագայում, երբ այն դադարեց մայրաքաղաք լինելուց, սկսեց աստիճանաբար անշքանալ, փոխվեց և նրա բնակչության աշխարհագրական տեղաբաշխման պատկերը: Հնագիտական պեղումների ընթացքում ընդհուպ Ներքին (կամ Աշոտյան) պարսպի մոտ հայտնաբերվել են

աղքատ խավին պատկանող խղճուկ խրճիթների ավերակներ: Այդ հյուղերը կառուցվում էին հետագայում, հին, մայրաքաղաքի կենտրոնին սազական շքեղ շենքերի ավերակների վրա:

Քաղաքում ապրում էր երկրի բնակչության չնչին մասը: Օրինակ, ըստ որոշ հաշվարկների, 11-րդ դարի Անգլիայում քաղաքային բնակչությունը կազմում էր երկրի ընդհանուր բնակչության մոտ 10 տոկոսը միայն: Պատկերը գրեթե նույնն էր մյուս եվրոպական և արևելյան երկրներում, որոնց թվում և Հայաստանում: Կարելի է ենթադրել, որ Շիրակում (լայն առումով) 10—11-րդ դարերում ամբողջ բնակչությունը կազմում էր մոտ մեկ միլիոն մարդ, որի մոտ 10 տոկոսը կենտրոնացած էր մայրաքաղաք Անիում, իսկ մնացածը բնակվում էր գյուղական տիպի բնակավայրերում, որոնց թվում և մի քանի գյուղաքաղաքներում:

Սակայն հարցը սոսկ թվաբանական չէ: Հանրահայտ է, որ միջին դարերը «ագրարային դարեր էին» (ինչպես ներկա շրջանը կարելի է «ուրբանիզացիայի» ժամանակներ կոչել), գյուղատնտեսության և գյուղացիության բացարձակ գերակշռության դարեր երկրների մեծագույն մասում: Կարևորն այն է, թե սոցիալ-տնտեսական և իրավական ի՞նչ վիճակ ուներ տիպիկ քաղաքային բնակչությունը՝ առևտրականներն ու արհեստավորները, ինչով էին նրանք տարբերվում գյուղացիությունից:

Միջնադարյան Հայաստանի գյուղացիության և քաղաքային դասի՝ քաղաքացիների իրավական և տնտեսական վիճակի տարբերությունները դեռևս հանգամանորեն չեն ուսումնասիրված: Դրանք երկուսն էլ պատկանում էին հարկատու, շահագործվող դասակարգին, և ըստ մատենագրության սովորաբար կրում էին «ռամիկներ» անունը, բայց սոցիալ-տնտեսական և իրավական առումներով իրարից զգալի չափով տարբերվում էին: Գյուղացիությունը, որ կոչվում էր շինականություն (շինականներ), ավելի ցածր աստիճանի վրա էր գտնվում, քան քաղաքացիները: Դեռևս հայոց պատմահայր Մովսես Խորենացին (5-րդ դ.) վկայում է, որ Վաղարշակ թագավորի սահմանած կարգի համաձայն քաղաքացիները գյուղացիներից ավելի բարձր էին դասված: Այդ նույն կարգի մի վկայություն ունի նաև Հովհաննես Դրասխանակերտցի պատմագիրը (10-րդ դ.): Նա գրում է, որ Ներսես Տայեցի կաթողիկոսը Զվարթնոց տաճարը (7-րդ դ.) կառուցելուց հետո նրա շուրջը բնակեցնում է գյուղացիներ, բայց քաղաքացիների իրավունքով: Այդ վկայություններից ընդհանուր ձևով կարելի է եզրակացնել, որ քաղաքացիները գյուղացիների համեմատությամբ ավելի արտոնյալ էին, ավելի հարգված ու բարձր: Սակայն թե ինչումն էր կայանում այդ արտոնությունը, այնուամենայնիվ, մնում է անորոշ:

Պատմագիրների ու ժամանակագիրների հաղորդած անուղղակի տեղեկություններից և հնագիտական պեղումների արդյունքներից երևում է, որ Անին ազգային տեսակետից 10—11-րդ դարերում գրեթե կատարյալ միատարր քաղաք էր, նրա բնակչությունը բաղկացած էր միայն հայերից: Ուրիշ ազգությունններին պատկանողներն այստեղ տոկոս չէին կազմում: Այդպիսի եզրակացության կարելի է հանգել ոչ միայն նշված աղբյուրների, այլև պատմական ընդհանուր իրադրության հիման վրա: 10—11-րդ դարերում Անին չի նվաճվել օտարի կողմից, այստեղ այլ ժողովուրդներ չեն բնակեցվել: Քաղաքի ավերակներում հնագիտական ուսումնասիրությունների ընթացքում չեն հայտնաբերվել Բագրատունիների ժամանակաշրջանի ոչ մզկիթներ և ոչ էլ վրացական կամ հունա-բյուզանդական եկեղեցիներ: Այդպիսիները Անիում երևան են եկել հետագայում՝ սելջուկյան և զաքարյան տիրապետության շրջանում:

Անիի հասարակական-դասակարգային հարաբերությունները հատուկ ուսումնասիրության առարկա չեն դարձել: Այդ հարցը տարբեր առիթներով կողմնակիորեն շոշափել են մի քանի հեղինակներ, սակայն առանց նպատակ ունենալու խորամուխ լինել դրա մեջ: Ն. Մառը, որ իր «Անի» աշխատության առաջին մասում մի քանի տասնյակ էջերի վրա շարադրել է Անիի պատմությունը, նրա հասարակության դասակարգային հարաբերությունների մասին բավարարվել է միայն դասակարգային տրոհման խորացումը և գաղափարախոսության բնագավառում մի քանի նոր երևույթներ արձանագրելով: Ընդ որում, նրա այդ դիտողությունները վերաբերում են ոչ թե Բագրատունիների շրջանին, այլ 12—13-րդ դարերին:

Դեռևս վերջնականապես պարզաբանված չի կարելի համարել նաև Պետրոս Գետադարձ կաթողիկոսի դեմ Անիի բնակչության ընդվզումների բնույթը, ինչպես նաև թոնդրակեցիների՝ մայրաքաղաքում ու Շիրակի գավառում ունեցած գործունեության հարցը: Սակայն միանգամայն տրամաբանական է, որ 10—11-րդ դարերում տեղի ունեցած գյուղացիական և թոնդրակյան շարժումները իրենց ազդեցությունը պետք է թողած լինեին և Անիի հասարակական կյանքի վրա:

Հասարակական կյանքի նոր երևույթները չէին սահմանափակվում միայն դասակարգային պայքարի տարբեր ձևերի արտահայտումներով: Իբրև հետևանք տնտեսական ու հասարակական կյանքի զարգացման, 10-րդ դարից ի վեր արդեն նկատելիորեն անկման պրոցես է սկսվում կրոնական խստակեցության մեջ, մեծ տենչանք է առաջանում հարստություն կուտակելու, ամենուրեք արձանագրվում է աշխարհիկ մտածողության զարգացում, աշխարհիկ կյանքի վայելքներից լիովին օգտվելու ձգտում, որոնք համարվում են վերածննդի նախանշաններ գաղափարախոսության

բնագավառում։ Ժամանակակից պատմագիրներն ու մյուս հեղինակները՝ Արիստակես Լաստիվերտցին, Մատթեոս Ուռհայեցին, Սամվել Անեցին, Ներսես Շնորհալին և ուրիշներ, լինելով քրիստոնեական կրոնի ջատագովներ, այդ բոլոր երևույթները ներկայացնում են եկեղեցու հայեցակետից և համարում բարոյական անկում։ Եկեղեցական բարոյախոսության տեսակետից այդ բարոյական անկման լրիվ պատկերը տրված է կրոնական բնույթի տեսիլքով՝ 11-րդ դարի մի ավանդության մեջ, որի կենտրոնական դեմքը ժամանակի ամենագիտուն վարդապետներից մեկն է՝ Հովհաննես Կոզեռնը։ Այդ ավանդություն-տեսիլքը ըստ Ն. Մառի ապոկրիֆ է և ծագել է 12-րդ դարում, բայց բովանդակությամբ վերաբերում է 11-րդին և սերտորեն կապված է Անիի հետ։ Ըստ դրա, 1022 կամ 1036 թվականին տեղի է ունենում երկրաշարժ, որն ուղեկցվում է արևի խավարումով։ Հովհաննես-Սմբատ թագավորը և Պետրոս Գետադարձ կաթողիկոսը բնական այդ ահեղ երևույթները համարելով չարագուշակ նշաններ՝ Գրիգոր Մագիստրոսին և մի քանի այլ իշխանների ուղարկում են Սևանի վանքը՝ Հովհաննես Կոզեռնից իմանալու, թե դրանք ինչի նշան են։

Գիտնական-վարդապետի այդ տեսիլքում տրված է իրական կյանքի, աշխարհիկ մտածողության նկարագրությունը եկեղեցական գաղափարախոսության հայեցակետով։ Այդ նոր մտածելակերպն ընդգրկում է և՛ աշխարհիկ մարդկանց՝ իշխաններին, զինվորականներին, և՛ հոգևորականներին՝ սկսած հասարակ քահանայից մինչև Հայոց հայրապետը ներառյալ։

11—12-րդ դարերի աշխարհիկ մտածողության, եկեղեցու տեսանկյունով «բարքերի անկման» մասին շատ տեղեկություններ են հաղորդում նաև Արիստակես Լաստիվերցին, Ներսես Շնորհալին, Սմբատ Սպարապետը, 13-րդ դ. երկրորդ կեսում Կիլիկիայով և Մեծ Հայքով դեպի Չինաստան ճանապարհորդություն կատարած հայտնի Մարկո Պոլոն և ուրիշներ, որոնց վկայություններն ու դիտողությունները քննարկված ու լուսաբանված են Մ. Աբեղյանի կողմից։

Իսկ դրանք հանգում են հետևյալին։ Ընկնում է կրոնական խստակեցությունը, իրական կյանքն ու աշխարհը մեծ արժեք են ստանում քաղաքացիների համար, թեպետ նրանք չեն դադարում բարեպաշտ լինելուց և բարեպաշտական գործեր կատարելուց, նրանք ապրում են ծոխ պալատներում՝ օգտվելով կյանքի բոլոր վայելքներից։ Նրանք «միայն հեշտութեան և փափկութեան սպասեն»,— գրում է Արիստակես Լաստիվերտցին քաղաքացիների համար, սիրում են «ուրախ երգերը» և «հանդեսները», իսկ Մատթեոս Ուռհայեցին վկայում է, որ Հովհաննես-Սմբատ թագավորի եղբայր Աշոտի մահից հետո «Հայոց զորքը թուլամորդ

դարձավ», «ատեց պատերազմական արվեստը», «նստաւ ի գինարբուսն», «սիրեցին... զերգս գուսանաց»: Նույն կարգի վկայություններ ունեն նաև հետագայի հեղինակները՝ Ն. Շնորհալին, Սմբատ Սպարապետը, Մարկո Պոլոն:

Մեծ չափերի է հասնում ընչաքաղցությունը, արծաթասիրությունը, իսկ հարստություններ կիտելը հասնում է մոլուցքի, հատկապես եկեղեցու սպասավորների ամենաբարձր խավի մեջ: Պետրոս Գետադարձ կաթողիկոսն ու նրա անմիջական ենթակաները՝ գավառների թեմակալները ամենատարբեր եղանակներով դառնում են ժամանակի ամենահարուստ մարդկանցից: Մատթեոս Ուռհայեցին պատմելով սելջուկ թուրքերի կողմից 1049 թվականին Արծն քաղաքի ավերման ու կողոպուտի մասին՝ գրում է, որ «ինքը բազմաթիվ անգամ շատերից լսել է քորեպիսկոպոս Դավթուկի մասին, թե նրա կողոպտված գանձատան գանձերը բարձեցին քառասուն ուղտի» վրա, թե «նրա տնից 800 վեցկի էր դուրս գալիս» և այլն: Հայոց հայրապետ Պետրոս Գետադարձը, որ անբավ հարստությունների տեր էր, Դավթուկի նման անկուշտ ուրիշ թեմակալներ ևս շատ ուներ: Հարստություն հավաքելու «հիվանդությունը» մեծ տարածում ուներ նաև հասարակության աշխարհիկ խմբերում: 11-րդ դարի Անիում «վաղեմի գահերեցներից ու նախապետներից» զատ «առևտրի և փողատիրության շնորհիվ» առաջանում է «տեղական մեծատունների նոր» «խավը»,— գրում է Աշ. Հովհաննիսյանը, որի ներկայացուցիչներին Լաստիվերտցին նշում է «գլխաւորք քաղաքին» անունով, և որին «հակադրվում էին քաղքենի» «ռամիկները»...:

Հնագիտական պեղումների նյութերը, պատմագիրների կատարած նկարագրությունները,* Ղրիմում, Արևմտյան Ուկրաինայում, Լեհաստանում, Փոքր Ասիայում և այլուր ապաստանած անեցի գաղթականների նիստուկացին վերաբերող նյութերը, որոնք հրապարակված են տարբեր հեղինակների կողմից, ցույց են տալիս, որ վաղեմի մայրաքաղաքի բնակչությունն ունեցել է ազգագրական յուրահատուկ կոլորիտ, սիրել է իր հայրենի քաղաքը և ամենուրեք հպարտացել է անեցի լինելով, նույնիսկ նոր ժամանակների սերունդները, որոնց միայն պապսպապերն էին իսկական անեցիներ: Սակայն ցավով պիտի արձանագրել, որ ազգագրական տեսակետից նույնպես շատ մեծ հետաքրքրություն ներկայացնող քաղաքը առանձին ուշադրության չի արժանացել: Նրա բնակչության տնտեսական, կենցաղային և մասամբ կրոնական սովորությունների մասին նշվում են միայն պատմական, գրականագիտական և, նույնիսկ, ճարտարապետական աշխատություններում: Չի կարելի ասել, թե ազգագրագետներն ամենևին չեն զբաղվել Անիով: Նրանք նույնպես զբաղվել են Անիով և

երկրի մյուս քաղաքներով, բայց ոչ թե նեղ ազգագրական, այլ հիմնականում տնտեսության պատմության առումով։

Առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում Թորոս Թորամանյանի «Հայաստանի արքունական և իշխանական ապարանքները և անոնց ներքին կենցաղը» հոդվածը, որը տպագրվել է «Գեղարվեստ» հանդեսի 1917 թ. № 6-ում և հիմնականում գրված է Անիին վերաբերող նյութերի ու 5—15-րդ դարերի պատմիչների նկարագրությունների հիման վրա։ Ըստ որում ազգագրական սովորություններին վերաբերող մասը գրված է ընդգծված չափազանցություններով, պակասը լրացնելով հավանական եզրակացություններով։ Ըստ դրա, թագավորներն ու իշխանները դնում էին թանկագին քարերով զարդարված թագ կամ խույր, ականջներից կախում էին թանկագին օղեր, հագնում էին ոսկեթել պատմուճաններ, որոնց վրայից հագնում էին սամույրե կամ թանկագին կերպասե վերարկու, իրենց աստիճանի համապատասխան հագնում էին տարբեր գույնի կոշիկներ, իսկ մեջքներին կապում էին «ոսկեպատ կամ արծաթապատ» կամարներ։ Կանայք ավելի պճնազարդ էին. «Մետաքսեղեն ոսկեթել անկված դիպակներե շինված էին անոնց պատմուճանները։ Մարգարիտներով ու թանկագին գոհարներով խառն էին անոնց մազերու զարդարանքները։ Ոսկեձույլ կամար ունեին մեջքներին, ակնակուռ օղեր՝ ականջներին, նույնպես ապարանջաններ՝ թևերին»։ Նա գրում է, որ իշխանական ու արքունական ապարանքերում գործածում էի փետուրե փափուկ անկողիններ, «ոսկեզարդ և նկարազարդ» մահճակալներ, որոնք «ծածկվում էին ամպհովանիներով և ոսկեթել բանված վարագույրներով», ճաշատեսակներն ընտիր էին և պատրաստված էին որսակենդանիների ընտիր մսից, «մատաղ հորթուկներու» ուղեղից, գործածում էին ոսկեղեն սպասք, ունեին ընտանեկան ճաշասրահներ։

Օգտվելով գերազանցապես իր հայրենի քաղաք Արծնի փարթամության մասին Արիստակես Լաստիվերտցու հաղորդումներից և նկատի ունենալով Անիի պեղումներով գտնված հագուստների ու տնային սպասքի մնացորդները՝ Մ. Աբեղյանը գրեթե նույն կերպ է ներկայացնում 10—13-րդ դարերի Հայաստանի փարթամ քաղաքների «նիստն ու կացը և հանդերձները»։ Նա գրում է, որ «Հագնում էին դիպակ, մետաքսե պատմուճաններ և, ինչպես պեղումներից հայտնաբերվել է, մետաքսի ամբողջ հագուստներ՝ ոսկեթել ասեղնագործությամբ... Ամեն ինչ ճոխ ու պերճ էր»։ Շքեղ ու ընտիր են եղել նաև տնային գործածության իրերը և սպասքը՝ գորգերը, բազմոցները, վարագույրները, հախճապակյա և ճենապակյա պատկերազարդ ամանեղենը, որ հիմնականում արտադրվում էր Անիում, ինչպես նաև զարդերը։

Եթե նույնիսկ ընդունելու լինենք, որ մեզ հասած աղբյուրները Հայաստանի փարթամ քաղաքների ներքին կյանքը նկարագրել են առանց զգալի չափազանցությունների, այնուամենայնիվ, դրանք խիստ թերի են և գրեթե բացառապես վերաբերում են միայն քաղաքների ամենահարուստ խավի ներքին կյանքին, նիստուկացին, որոնք չեն կարող, բնականաբար, ազգագրական տեսակետից ներկայացնել բազմաշերտ բնակչությամբ քաղաքները, տասնյակ զբաղմունքների ու արհեստների ներքին տնտեսական-արտադրական և կենցաղային սովորությունները։

## 3. ՔԱՂԱՔԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ։ ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ, ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԴԵՄՔԸ, ՆԵՐՔԻՆ ԿՅԱՆՔԸ

Շնորհիվ այն բանի, որ Անիի ավերակներն, այնուամենայնիվ, հասել են մինչև մեր ժամանակները և գրավոր աղբյուրներից բացի, տասնյակ հեղինակների կողմից դրանք ենթարկվել են բավական մանրամասն ուսումնասիրության, մանավանդ հնագիտական և ճարտարապետական առումով, ուստի քաղաքի կառուցվածքի ու գրաված տարածության, քաղաքաշինության, ճարտարապետության, հատակագծման և այլ բազմաթիվ հարցերի վերաբերյալ ստեղծվել է հսկայական գրականություն։

Անին միջնադարյան այն հազվագյուտ քաղաքների շարքին էր պատկանում, որոնք համեմատաբար խիտ էին բնակեցված։ Քաղաքի բուն տարածքում ցանքատարածություններ չկային և նրա պարսպապատ մասը համեմատաբար ընդարձակ չէր։ Սակայն քաղաքը չէր սահմանափակվում միայն պարսպապատ քաղաքամասերով։ Նրա բաղկացուցիչ մասերն էին կազմում նաև արվարձանները, որոնք քաղաքը շրջապատում էին գրեթե բոլոր կողմերից։ Առանձնապես ընդարձակ էին քաղաքի հյուսիս-արևելյան կողմի արվարձանները՝ փռված սարահարթի վրա։

Մոտավորապես հայտնի է Անիի ժամանակաշրջանի Առաջավոր և Միջին Ասիայի խոշոր քաղաքների՝ Մերվի, Ռեյի և մյուսների մեծությունը։ Օգտվելով արաբական մատենագիրների հիշատակություններից Հ. Մանանդյանը գրում է, որ դրանց գրաված տարածքի միջին երկարությունը հասնում էր 6 կմ-ի (մեկ փարսախի), և ունեին մոտավորապես նույնքան էլ լայնություն, այսինքն՝ դրանցից յուրաքանչյուրը գրավել է 36 քառ կմ տարածություն (3600 հա)։ Նա հավանական է համարում, որ մոտավորապես նույն մեծությունն են ունեցել նաև Անին ու 10—11-րդ

դարերի հայկական մյուս խոշոր քաղաքներն իրենց արվարձանների հետ միասին։

Առանց կասկածի ենթարկելու ակադեմիկոս Հ. Մանանդյանի, գրավոր աղբյուրների հիման վրա արտահայտած այդ կարծիքը, մեզ թվում է Անիի մեծության հարցում առավելությունը պետք է տալ Թ. Թորամանյանին, որը շրջագայել, դիտել ու նկարագրել է պարսպապատ՝ մոտ 170 հա-ի հասնող բուն քաղաքն ու դրա ընդարձակ շրջակայքը։ Նա Անիի պարսպապատ մասի հյուսիս-արևելյան շարունակությունը կազմող սարահարթի վրա Հովվի հայտնի եկեղեցուց և դեպի Հոռոմոսի վանքը տանող ճանապարհին բարձրացող զույգ սյուներից բացի, նկատել է ընդարձակ գերեզմանոցի, տների, մահարձանների, բաղնիքի, հարյուրավոր մետր երկարությամբ պատերի և այլ շինվածքների հետքեր ու ավերակներ, և դրանից եզրակացրել, որ քաղաքը փռված է եղել ընդարձակ տարածքի վրա։ Նրա կարծիքով, քաղաքի շրջագծի մեջ էին մտնում և նրա արվարձաններն էին կազմում միջնաբերդից 4—10 կմ հեռավորության վրա գտնվող բնակավայրերը՝ Հոռոմոսի վանքը, Բագնայրը (Ղոզլիջա), Առճո-Առիճը (Ալաջա գյուղ) և այլն՝ վարչական ու տնտեսական առումներով «անմիջական կապ» ունենալով քաղաքի հետ։ Քաղաքը որոշ տարածություններ էր ընդգրկել նաև Ախուրյանի ձախ ափից, ինչպես նաև Ծաղկոցաձորն ամբողջությամբ։

Քաղաքի գրաված տարածքի մասին Ն. Մառի արտահայտած կարծիքը Թ. Թորամանյանի տեսակետից ըստ էության չի տարբերվում։ Տարբերությունը կայանում է միայն նրանում, որ Ն. Մառը Անիի այդ սահմանները վերագրում է հետագա ժամանակաշրջանին՝ Զաքարյանների իշխանության ժամանակներին։ Անընդունելի է Ն. Մառի տեսակետը։ Հայտնի է, որ քաղաքի Ներքին պարսպի կառուցումից ընդամենը 15 տարի անց, քաղաքի արագ ընդարձակման հետևանքով, կառուցել են նաև Արտաքին պարիսպը, որը, միանգամայն հասկանալի պատճառով, արվարձաններն իր մեջ չէր ամփոփում, և ընդհանրապես միջին դարերում, ինչքանով մեզ հայտնի է, քաղաքի պաշտպանական բուն պարիսպները ոչ մի տեղ արվարձաններն իրենց մեջ չեն ընդգրկել։ Այդ ակնհայտ է դառնում, եթե նկատի ենք ունենում Անիի հյուսիս-արևելյան ամենաընդարձակ արվարձանում Բագրատունիների ժամանակ կառուցված Հովվի եկեղեցին, որի գոյությունն առանց այդ հատվածներում բնակչության գոյություն ունենալու միանգամայն անիմաստ կլիներ։ Հիմնավոր փաստերով ենթադրվում է նաև, որ դեպի Հոռոմոս տանող «հեռվից զանգակատան նման» զույգ սյուները նույնպես գոյություն ունեին Բագրատունիների ժամանակներից։ Իսկ դրանից հետևում է, որ Անին իր «բնական

սահմաններին» հիմնականում հասել էր արդեն Բագրատունիների ժամանակ, հատկապես Արտաքին պարիսպը կառուցելուց հետո՝ մինչև բյուզանդական ներխուժումը:

Եթե ընդունենք Թ. Թորամանյանի կարծիքը (իսկ մերժելու ոչ մի հիմք չկա) և կատարենք թվաբանական որոշ հաշվումներ, ապա դուրս կգա, որ Անի քաղաքը Բագրատունիների օրոք էլ արվարձանների հետ միասին գրավել է մոտ 25—30 քառ. կմ (2500—3000 հա) տարածք, որի մեծագույն մասը կազմում էին արվարձանները՝ Արտաքին պարսպից դուրս գտնվող թաղամասերը, որոնք գտնվում էին Ախուրյանի ձորում ու մասամբ գետի ձախափնյա շրջանում, Ծաղկոցաձորում, Գլիձորում, Իգաձորում, հյուսիս-արևելյան սարահարթի վրա և այլուր:

Պատմա-ճարտարապետական առումով Անիի հատակագծային կառուցվածքն ուսումնասիրելը համեմատաբար դյուրին է եղել պարզապես այն պատճառով, որ դրա ավերակներում պարզորոշ նկատվում են իրարից որոշակիորեն բաժանված՝ միջնաբերդը, բուն քաղաքը և արվարձանները: Տեղանքի բնույթը արգելք է եղել միջնաբերդի շուրջը բուն քաղաքի ծավալվելուն: Անիի միջնաբերդը գտնվում էր քաղաքի ոչ թե կենտրոնում, որտեղ սովորաբար տեղադրված էին մյուս քաղաքների միջնաբերդերը, այլ հարավ-արևմտյան ծայրում: Նրա միջնաբերդն իբրև ինքնուրույն ամրոց կամ բերդ գոյություն ուներ հին ժամանակներից և մինչև Բագրատունիների ժամանակները Կամսարականների կարևորագույն հենակետերից մեկն էր: Անին մայրաքաղաք հռչակվելուց ընդամենը 2—3 տարի անց՝ 964 թվականին, երբ կառուցվեց Աշոտյան կամ Ներքին պարիսպը, այդ հին բերդն արդեն դարձավ միջնաբերդ, որի և Աշոտյան պարիսպների միջև ընկած էր Հին քաղաքը (Ներքին բերդ, ինչպես երբեմն կոչված է մատենագրության մեջ), իսկ դրանից 15—20 տարի անց՝ Արտաքին կամ Սմբատյան պարսպի կառուցմամբ՝ սահմանագծվեց նաև Նոր քաղաքը: Հին («Ներքին բերդ») և Նոր քաղաքը միասին վերցրած արդեն կազմում էին բուն քաղաքը՝ «շահաստանը» («շահրիստան»): Արտաքին պարսպից դուրս տարածվում էին քաղաքի արվարձանները, որոնք կազմում էին առանձին-առանձին զանգվածներ՝ թաղամասեր:

Ըստ Ֆ. Մոսևիչի հանույթի կազմած հատակագծի, Անիի միջնաբերդը գրավում էր մոտ 2,7 հա, Հին քաղաքը, որ ընկած էր Միջնաբերդի ու Աշոտյան պարսպի միջև՝ մոտավորապես 6—6,5 հա էր, իսկ Աշոտյան ու Սմբատյան պարիսպների միջև ընկած Նոր քաղաքը՝ 42 հա: Եվ այսպիսով, բուն քաղաքն ըստ հատակագծի կազմում էր մոտ 52 հա: Սակայն բուն քաղաքի գրաված տարածքը դրանով չէր սահմանափակվում: Նրա բաղկացուցիչ մասերն են համարվել նաև Ծաղկոցաձորն ամբողջությամբ

և Ախուրյանի կիրճի մի մասը, որոնք պարսպապատ բուն քաղաքի հետ միասին կազմել են 150—170 հա։

Միջնաբերդը, ինչպես ասվեց, տեղադրված էր քաղաքի հարավ-արևմտյան անկյունում, բլրի վրա, քաղաքի նկատմամբ ամենաբարձր կետում։ Նրա բարձրությունը բուն քաղաքից հասնում էր 80—100 մ-ի և գրավում էր մոտ 4 հա (ըստ Ֆ. Մոսևիչի հատակագծի՝ 2,7 հա) տարածք, որից 4000 քառ մ զբաղեցնում էր արքայական պալատը։ Միջնաբերդը քաղաքից բաժանված էր հաստապատ պարսպով, որ կառուցվել էր դեռևս Կամսարականների օրոք։ Այն Բագրատունիների աթոռանիստն էր։ Արքայական պալատից բացի, այստեղ էին գտնվում զինանոցը, գանձարանը, «տուն ասպազինաց»-ը, ամբարանոցը, բնակելի տներ՝ բերդապահ զինվորների, պալատական պաշտոնյաների, հոգևորականների համար, պալատական եկեղեցին, արքայական գրադարանը, թագավորների գերեզմանոցը և այլն, որոնք զետեղված էին արքունական ապարանքի պարսպից դուրս և լրացնում էին դրա համալիրը։ Այստեղ մինչև 11-րդ դարը, տարբեր ժամանակներում, կառուցված են եղել տարբեր մեծության 7 եկեղեցիներ, որոնցից ամենամեծը, որը ճարտարապետության պատմության և հնագետների մոտ սովորաբար կոչվում է պալատի կամ պալատական եկեղեցի, կառուցվել էր դեռևս 7-րդ դարում՝ Կամսարականների օրոք։ Միջնաբերդն ուներ իր բաղնիքը, ջրմուղը։ Թ. Թորամանյանը ենթադրում է, որ օգտվելով ջրի առատությունից, Բագրատունիներն այստեղ ստեղծել էին «ծառաստաններ, ծաղկանոցներ և ամբողջ արքունիքի բլուրը» զարդարել էին «նաև իբրև զբոսավայր»։ Ճարտարապետության պատմաբանի ենթադրությունը շատ հավանական է, եթե նկատի ունենանք, որ ըստ Թովմա Արծրունու հիշատակության, նույն կարգի ծաղկանոցներ ու ծառաստաններ ստեղծվել էին նաև Արծրունի թագավորների աթոռանիստ Աղթամար կղզում ու Ոստանում՝ Գագիկ 1-ին Արծրունու օրոք (908—940)։

Միջնաբերդի ամբողջ բլուրը ծածկված է տարբեր շինվածքների ավերակներով։ Հնագիտական ուսումնասիրություններն այստեղ կատարվել են 1907—1908 թվականների արշավախմբերի ընթացքում՝ հիմնական կետ ունենալով արքայական պալատը։ Թեպետ միջնաբերդի ճարտարապետական հուշարձաններից ողորմելի մնացորդներ են միայն պահպանվել, սակայն դրանք էլ բավական են, գրավոր աղբյուրների հետ միասին, բնութագրելու ու արժեքավորելու Բագրատունիների նշանավոր աթոռանիստի նշանավոր հուշարձանները՝ արքայական պալատն իր օժանդակ շենքերով հանդերձ, պալատական եկեղեցին, պալատի ու միջնաբերդի պարիսպները, ջրմուղը և այլն։

Ինչպես ասվեց, Բուն քաղաքը («շահաստան») երկու մասից էր բաղկացած՝ Հին քաղաքից և Նոր քաղաքից, որոնք այդպես են կոչվել պարզապես տարբեր ժամանակներում պարսպապատվելու հետևանքով: Առաջինը պարսպապատվել է Աշոտ 3-րդի օրոք, 964 թվականին և ընկած է այդ նոր կառուցված՝ Աշոտյան ու վաղուց գոյություն ունեցող՝ միջնաբերդի պարիսպների միջև: Գրաված տարածով Հին քաղաքը Նորից անհամեմատ փոքր էր, բայց նրա նման խիտ էր կառուցապատված: Այստեղ, Աշոտյան պարիսպների հարող մասերում 1893 թ. պեղումների ժամանակ հայտնաբերվել են «աղքատիկ տնակների ամբողջական թաղամասեր», որոնք, անշուշտ, ստեղծվել էին 13-րդ դարից հետո, երբ Անին արդեն դադարել էր թագավորական կամ իշխանական աթոռանիստ լինելուց և բավական հետադիմել: Քաղաքի արագ ծավալման և կառուցապատման հետևանքով, Աշոտյան պարսպի կառուցումից ընդամենը 15 տարի անց, 989 թ. հարկ է լինում նորից կառուցել պաշտպանական նոր պարիսպ՝ Արտաքին կամ Սմբատյան պարիսպը, որը Աշոտյան պարսպից գտնվում է 700—720 մ հեռավորության վրա: Հենց այդ երկու պարիսպների միջև եղած քաղաքահատվածն էլ սովորաբար կոչվում է Նոր քաղաք:

Միանգամայն հասկանալի է, որ Անին իբրև քաղաք առաջին հերթին բնութագրվում է նրա բուն մասով՝ «շահաստանով»: Այստեղ էր գտնըվում Բագրատունիների ժամանակաշրջանի ճարտարապետական կարևոր հուշարձանների մեծագույն մասը (Մայր եկեղեցի, Գագկաշենի եկեղեցի, Առաքելոց եկեղեցի, ս. Խաչ եկեղեցի և այլն, հյուրանոցներ, բաղնիքներ, իշխանական ապարանքներ և մոնումենտալ այլ կառույցներ), այստեղ էր հիմնականում կենտրոնացած քաղաքի տնտեսական ու մշակութային կյանքը: Քաղաքի այդ բուն մասն ավելի խստորեն էր ենթարկված ընդհանուր հատակագծման, ունենալով ժամանակի պահանջներին համապատասխան կոմունալ պայմաններ: Կարելի է նաև ենթադրել, որ Անիի բնակչության կեսից ավելին կենտրոնացած էր բուն քաղաքում:

Անին շրջապատող արվարձանների մեջ ամենից ընդարձակը, թերևս նաև մարդաշատը, գտնվում էր նրա հյուսիսային և մասամբ հյուսիս-արևելյան կողմում, Սմբատյան պարսպի և պաշտպանական խանդակի դիմաց տարածվող սարահարթի վրա: Անիի այդ ընդարձակ արվարձանը (կամ արվարձանները) պայմանականորեն կարելի է կոչել Հյուսիսային կամ Հյուսիսի արվարձան: Մյուս արվարձանների նման Հյուսիսայինը նույնպես շատ թույլ է ուսումնասիրված և նույնիսկ դժվար է որոշել այդ կողմի արվարձանը միասնական բնակելի մեծ զանգված էր, թե բաղկացած էր առանձին-առանձին արվարձաններից: Որոշակի հայտնի չէ նաև

դրա տարածման սահմանները։ Նկատի ունենալով միայն նշմարվող ավերակներն ու հնությունները, ենթադրում են, որ քաղաքի արվարձաններն այդ ուղղությամբ առնվազն ձգվում էին մինչև Հոռոմոս տանող ճանապարհին գտնվող՝ զանգակատուն կամ հաղթական կամար համարված զույգ սյուները և այժմյան թուրքական Անի գյուղը։ Այդ ամբողջ սարահարթի վրա նշմարվում են բազմաթիվ անշուք շենքերի, երբեմն հարյուրավոր մետրերով ձգվող այգեպաշտպան կամ ցանքապաշտպան ցանկապատերի մնացորդներ, հասարակական ընդարձակ գերեզմանոց, եկեղեցիների, մեծ բաղնիքի, ձիթհանքերի հետքեր, որոնք իրեղեն ապացույցներ են այդ մասերի կառուցապատման ու բնակեցված լինելուն։

Արվարձանների բնակչության հիմնական զանգվածը կազմում էր աշխատավոր հասարակ ժողովուրդը՝ արհեստավորներ, մանր առևտրականներ, գյուղատնտեսությամբ զբաղվողներ, օրավարձով աշխատող բազմաթիվ ընչազուրկներ։ Սակայն Հյուսիսային արվարձաններում ապրում էին նաև ոչ փոքր թվով հասարակության բարձր խավի ներկայացուցիչներ։ Թ. Թորամանյանը քաղաքի այս արվարձանային մասում հայտնաբերել է երկու հասարակական գերեզմանոց՝ մեկը Ծաղկոցաձորում, իսկ մյուսը՝ Հոռոմոսի ճանապարհի վրա, մինչև տաս տարբեր մեծության շըքեղ դամբարաններ, որոնցից մի քանիսը ոչնչով չէին զիջում Հոռոմոսի վանքի շքեղ դամբարաններին, և Հովվի հոյակերտ եկեղեցին։ Դրանցից էլ նա հանգում է այն եզրակացության, որ «պարսպի հյուսիսային կողմի դաշտավայրն ալ միայն անեցի հասարակ ժողովուրդի բնակության հատկացված չէր, համեմատաբար մեծ թիվ կկազմեր այնտեղ ալ ազնվական դասակարգը»։

Պատմագրական հիշատակություններից և անուղղակի փաստերից երևում է, որ հյուսիսային արվարձանների բնակիչները արտաքին հարձակումների ժամանակ ապաստանում էին քաղաքի ամրացված մասում՝ բուն քաղաքում։

Հարավի արվարձանը, որ գտնվում էր միջնաբերդի ու Աղջկաբերդի դիմաց և ձգվում էր Ախուրյան գետի ձախ ափի երկայնքով 1—2 կմ երկարությամբ, գրեթե ամենևին չի ուսումնասիրված։ Դրա մասին մեր ձեռքի տակ եղած ամբողջ նյութը սահմանափակվում է Թ. Թորամանյանի մի դիտողությամբ, ըստ որի Անիի հարավային վերջավորության դիմաց, Ախուրյանի ձախ ափին երբեմնի եղած արվարձանի տեղում կան «եկեղեցու, բնակարաններու բազմաթիվ ավերակ մնացորդներ և հասարակաց գերեզմանատներ»։ Արվարձանի բնակիչները քաղաքի և միջնաբերդի հետ կապվում էին Ախուրյանի վրա կառուցված կամուրջներով։

Հայտնի է, որ նախնադարյան ժամանակներում մարդկանց առանձին կացարանները սովորաբար քարայրներն էին։ Հետագայում, հատկապես լեռնային երկրներում, արդեն քաղաքակրթված մարդը, այնուամենայնիվ, լիովին չի հրաժարվում քարանձավներից՝ անհրաժեշտության դեպքում դրանք հարմարեցնելով նոր պայմաններին, օգտագործել է զանազան նպատակներով՝ իբրև բնակարան, ապաստարան, թաքստոց և այլն։ Եվ միանգամայն տրամաբանական է, որ ժամանակի ընթացքում լեռնային երկրներում, բնականից գոյություն ունեցող քարայրներն իրենց կարիքերին հարմարեցնելուց բացի, սկսում են կերտել նաև տարբեր նշանակության ժայռափոր տներ ու ամբողջական բնակավայրեր։ Հայաստանում այդ կարգի բնակավայրերից էին Հին Գորիսը, Խնձորեսկը, Վրաստանում՝ Ուպլիս-ցիխան (Գորի քաղաքի մոտ) և այլն։

Հարյուրավոր այդպիսի քարանձավներ կային Անի մայրաքաղաքի տարածքը երեք կողմերից շրջափակող ձորերի զառիվեր կողերին։ Դրանք չնայած ցրված էին տարբեր տեղերում, բայց իրենց բնույթով իրար նման էին և պայմանականորեն կարելի է խմբավորել մի թաղամասի (ավելի ճիշտ՝ քաղաքամասի) տակ, այն կոչելով **Այրային** կամ **Քարանձավային** Անի, ինչպես գործածել են Անին ուսումնասիրողներից շատերը։ Բնակարաններից բացի, դրանց մեջ կան եկեղեցիներ, խանութներ, ձիթհանքեր, ջրաղացներ, դամբարաններ և այլն, կազմելով մի ամբողջ քաղաքավան, որ գոյություն ուներ տակավին Բագրատունիների թագավորության շրջանում, գուցե մի մասը դրանից էլ վաղ։

Այրային Անին հնագիտական տեսակետից ուսումնասիրվել է 1910, 1911 և 1915 թվականների ընթացքում։ Ուժեղ հողմնահարության և ուժգին երկրաշարժերի հետևանքով քարայրների մեծ մասը ավերվել է և թաղվել փուխր լեռնատեսակների թափվածքների տակ։ Հնագետները հնարավորություն են ունեցել դիտել ու ուսումնասիրել Անիի քարանձավային քաղաքի միայն մի մասը, «մարդկանց կողմից վաղուց լքված մինչև 500 կիսավերված համալիրներ», բայց հաստատապես պնդելով, որ դրանց թիվը ժայռափոր քաղաքամասի կանգուն ժամանակներում 1000-ից պակաս չի եղել, ինչպես եզրակացնում է Այրային Անիի հիմնական ուսումնասիրողը՝ Դ. Ա. Կիպշիձեն։ «Քարտոնները» փորված էին փափուկ ու փուխր լեռնատեսակների մեջ և զարմանալի չէ, որ դրանք վատ են պահպանվել։ Առանձնապես մեծ ավերման են ենթարկվել Ախուրյանի ձորի «քարտոնները»։

Այրային Անին բաղկացած էր մշտական բնակչություն ունեցող թաղամասերից։ Այն իսկական քարանձավային քաղաք էր, նման Վրաստանի Ուպլիս-ցիխային և Վարձիանին։ Անիի ժայռափոր այդ թաղամա-

սերը ստեղծվել են բավական երկար ժամանակամիջոցում, իրենց վերջնական ձևավորումը ստանալով Բագրատունիների օրոք՝ 9—11-րդ դարերում, իսկ հետագայում՝ 13-րդ դարի սկզբներին ծոխացել եկեղեցական, դամբարանային, բնակարանային, առևտրական և այլ համալիրներով:

Այրային Անիի «քարտուղների» մեծագույն մասը կազմում էին բնակարանները: Տարբեր վիճակում մեզ հասած այդպիսի «քարտուղների» թիվը հասնում էր 400-ի: Առանձին հետաքրքրություն էին ներկայացնում հատկապես բնակելի խոշոր համալիրները, որոնք սովորաբար բաղկացած էին 3—5 սենյակից: Սակայն դրանց թիվը անհամեմատ փոքր էր, մեծ մասը մեկ սենյականոց «բնակարաններ» էին, որոնք սովորաբար իրենց պատերին ունեին որմնախորշեր տնտեսական նպատակների համար, իսկ լույսի համար ունեին երդիկներ տանիքում, կամ նույն նպատակով անցք էր փորված դեպի ձորը նայող պատի վրա՝ մուտքի վերևի մասում, յուրաքանչյուրն ունեցել է իր օջախը: Մասնագետները պնդում են, որ եթե այրային թաղամասերի աղքատ բնակիչները մշտապես էին բնակվում այստեղ, ապա ունևորները, որոնք իրենց շքեղ բնակարանները, դղյակներն ու պալատներն ունեին վերգետնյա Անիում, քարանձավային բնակարաններ էին իջնում միայն քաղաքը արտաքին թշնամու կողմից վտանգի ենթարկելու, հատկապես՝ պաշարման ժամանակ:

Ժայռափոր կառուցվածքների մյուս խումբը կազմում էին եկեղեցիները, որոնցից նշմարվողների թիվը հասնում էր մոտ 30-ի: Այդ քարակերտ եկեղեցիները շատ փոքր էին՝ բառիս իսկական իմաստով «եկեղեցիկներ», ինչպես դրանք կոչված են Անիի «քարտուղներն» ուսումնասիրողների մոտ:

Ժայռափոր կառուցվածքների հաջորդ խումբը կազմում էին գերեզմանատները (հանգստարաններ), որոնցից ոմանք, ըստ երևույթին, գոյություն ունեին հնագույն ժամանակներից և ստեղծվել էին մեր ժողովրդի պատմության, այսպես կոչված, ուրարտական ժամանակաշրջանում, երբ բավական տարածված էր ժայռակերտ կառուցումների ավանդույթը: Դ. Ա. Կիպշիձեն ենթադրում է, որ պահպանված ժայռափոր գերեզմանները, որոնք սովորաբար «ուղղանկյուն և կիսաշրջանաձև որմնախորշեր էին» բաց սրահում, հավանաբար ստեղծվել են 10-րդ դարից ոչ վաղ, այսինքն Անիի զարգացմանը զուգընթաց: Եկեղեցիներից բացի, հնագետներն ու ճարտարապետները նկարագրել են նաև եկեղեցական մի բարդ համալիր՝ «վանք»՝ բաղկացած բազմաթիվ սենյակներից և մի քանի եկեղեցիներից, իր բնույթով նման Գեղարդա վանքին (ՀՍՍՀ Աբովյանի շրջանում): Այդ «վանքը» բավական մանրամասնությամբ նկարագրել է Ն. Տոկարսկին Դ. Ա. Կիպշիձեի գրքում կատարած իր ընդարձակ

ծանոթագրության մեջ։ «Վանքի» համալիրը համարվում է Այրային Անիի ամենահայտնի կառուցվածքներից մեկը, չափագրված են նրա բոլոր սենյակները և նկարագրված բավական մանրամասնությամբ։ Գտնվում է ծաղկոցաձորում և ճակատի պատում առաջացած թափվածքի պատճառով սրահը (գավիթը) լավ լուսավորված է եղել։ Ենթադրվում է, որ այն կարող էր լինել ոչ թե վանք, այլ 12—13-րդ դարերի Տիգրան Հոնենցի նման որևէ մեծատունի ամառային ապառանիստը։

Քարանձավային Անիի յուրատեսակ «կառուցվածքներից» են, այսպես կոչված, աղավնատները, որոնցից դիտվել ու նկարագրվել են 15—16 հատ։ Դրանք ցրված են Անիի գրեթե բոլոր քարանձավային թաղամասերում և սովորաբար ուղղանկյուն փորվածքներ էին։ Չափսերով փոքր են, բայց պատրաստելը կապված է եղել մեծ վարպետության հետ։ Մանավանդ դժվար էր կերտել դրանց նուրբ ու բարակ միջնորմները, որոնք ուղղանկյուն բույներ-խորշերն անջատում էին իրարից։ Նույնիսկ ենթադրում են, որ դրանք փորելու համար գործածում էին մեզ համար անծանոթ հատուկ գործիքներ։

Մինչև մեր ժամանակներն այդ բներում ապրում էին աղավնիներ։ Հնում դրանց համար հատուկ բների կառուցումը բացատրվում է գլխավորապես գյուղատնտեսական կարիքներով։ Հին Հունաստանում, Եգիպտոսում և այլ երկրներում հատուկ «տներ» էին կառուցում աղավնիների համար՝ կուտակվող ծերտը իբրև պարարտանյութ օգտագործելու նպատակով։ Աղավնատները նույնպես, քարանձավային մյուս կառուցվածքների նման, կրում էին Անիի ճարտարապետական հուշարձանների ազդեցությունը՝ իրենց կառուցվածքով հիշեցնելով վերգետնյա տաճարների մանրակերտեր։

Այրային Անիում կային զանազան ատիճաններ՝ դարավանդների միջև, անցքեր— «փողոցներ»՝ համալիրների ներսում կամ դրանց միջև, գաղտնի անցքեր՝ վտանգավոր պահերին թշնամու կողմից առանց նըկատվելու վերգետնյա քաղաքից այրայինը մտնելու, զանազան գաղտնարաններ՝ տարբեր նպատակների համար։

Այրային Անիի կառուցվածքների վերջին խումբը, որը նույնպես արժանի է ուշադրության, բաղկացած էր կրպակներից (խանութներից)։ Այդ կրպակ-խանութները բնակելի տներից էապես չէին տարբերվում, միևնույն սենյակը կարող էր ծառայել և՛ բնակության համար, և՛ իբրև կրպակ-խանութ։ Սակայն գոյություն ունեին և երկհարկանի խանութներ։ Հավանական են համարում, որ դրանց առաջին հարկը ծառայել է իբրև պահեստ, իսկ երկրորդը՝ խանութ։

Ըստ էության Ստորերկրյա (կամ Ստորգետնյա) Անին առանձին թա-

ղամաս չի կարելի համարել հենց այն պարզ պատճառով, որ այն սոսկ մի անցք էր, որ ձգվում էր քաղաքի տակով և մշտական բնակության համար միանգամայն անհարմար էր՝ խոնավության, ցրտի, օդի սակավության, լույսի բացակայության պատճառով: Ստորգետնյա Անին մայրաքաղաքի ամենավատ ուսումնասիրված տեղամասն է, եթե չասենք, որ ուղեգրական նյութերից, կիսաավանդական զրույցներից և առանձին անհատների՝ չափազանցված պատմածներից բացի այլ կարգի, գիտության համար ավելի հուսալի, նյութեր քիչ կան: Պատմագիրների ու գրիչների ոչ մի վկայություն կամ հիշատակություն, վիմագիր արձանագրություններում ոչ մի ակնարկ չկա Ստորերկրյա Անիի վերաբերյալ: Թերևս այդ մասամբ բացատրվում է նրանով, որ ունենալով գերազանցապես ռազմական-պաշտպանական նշանակություն, Ստորերկրյա Անին հավանաբար ինչ-որ չափով «գաղտնագրված» էր և գտնվում էր քաղաքի պետական-ռազմական մարմինների անմիջական հսկողության ներքո:

Ստորգետնյա Անիի մասին բավական տեղեկություններ են հաղորդում (բայց ընդգծված չափազանցությամբ) Հ. Գեղամյանցը և ռուսական սպա Ոժևսկին: Հ. Գեղամյանցի ասելով ինքը լուսանկարիչ Քյուրքչյանի վանեցի ծառայի հետ միասին ավելի քան կես ժամ եղել է Ստորերկրյա Անիում և, իր ասելով, որոշ տեղեկություններ էլ իմացել է իրենց ուղեկցող թուրքից: Նա գրում է, որ Ստորերկրյա Անիի գլխավոր մուտքը գտնըվում է Ծաղկոցաձորում, քաղաքի Արտաքին պարսպի մոտ և թափված քարակոշտերը ծածկել են դրա մեծ մասը: Իր ուղեկիցների հետ միասին նրան, այնուամենայնիվ, հաջողվել է մտնել այդ մուտքով և կատարել որոշ դիտումներ: Այնուհետև, նա գրում է, որ ներսում զգացվում է սառը քամի, խոնավ է, անտանելի մութ, օդը սակավ է ու հեղձուցիչ, ճանապարհը ոլորապտույտ է, որոշ տեղերում այնքան նեղ ու ցածր (թափվածքների պատճառով), որ առաջ կարելի է գնալ միայն կռացած կամ, նույնիսկ, սողալով: Վերջապես հասնում են Ստորերկրյա Անի, որը ընդարձակ սրահ է և կարող է ազատ տեղավորել հարյուրավոր մարդիկ:

Ռուս հարյուրապետ Ոժևսկին բավական երկար հուշեր է պատմում 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմին իր մասնակցության մասին: Նա էջեր է նվիրում Անիի ավերակների նկարագրությանը, որտեղ 1877 թ. գարնան վերջերին և ամռանը երկար ժամանակով դիրքավորվել էր իրենց կազակական ջոկատը: Նա նշում է Անիի քաղաքական պատմության բոլոր արժանահիշատակ դեպքերը և ճարտարապետական կոթողները: Սակայն ռուս սպայի հուշերի մեջ մեզ համար կարևորը նրա հաղորդումներն են Ստորերկրյա Անիի մասին, որոնք ինչ-որ չափով լըրացնում են մեր գիտելիքները դրա ժայռափոր գաղտնուղու և նրա վրա

կերտված ընդարձակ սրահի վերաբերյալ։ Նա գրում է, որ ամառվա շոգից ռուսական զորքը պատսպարվում էր այդ ստորերկրյա անցքում և որ այստեղ փորված կանոնավոր քառանկյունի, ընդարձակ ու հով սրահում ջոկատի հրամանատարը տվել է իր համար անմոռանալի ճաշկերույթ, որ Ախուրյանի ափից Բորիսովի ղեկավարությամբ Անի ուղարկված հեծյալ հետախուզական փոքրիկ խումբը մի չերքեզ հեծյալի հետապնդելու ժամանակ մտել է ստորերկրյա մեծ անցքը և մեծ դժվարությամբ ու մի քանի անգամ շփոթվելուց հետո դուրս է եկել իրենց մտած մուտքի հակառակ կողմից։ Ցավով պիտի նշել, որ Ստորերկրյա Անին հնագիտական երկարատև արշավախմբերի կողմից չի արժանացել հատուկ ուշադրության։ Ստորգետնյա Անին ամենայն հավանականությամբ ստեղծվել է Անի մայրաքաղաքի ձևավորման հետ միասին՝ 10—11-րդ դարերում։ Ըստ երևույթին նրա կառուցումը հիմնականում կատարվել է Բագրատունի առաջին թագավորների օրոք և բացառված չէ, որ դրա մի մասը իբրև քարայր գոյություն է ունեցել բնականից։

Անիի շրջակայքում կային մի շարք բնակավայրեր, որոնք բոլոր առումներով կապված էին նրա հետ։ Դրանք Անիից գտնվում էին 4—10 կմ հեռավորության վրա և վարչականորեն, տնտեսական առումով փաստորեն ոչնչով չէին տարբերվում քաղաքի մյուս արվարձաններից։ Թ. Թորամանյանը քաղաքի այս կարգի արվարձանների շարքին է դասում Հոռոմոսի վանքը և Բագնայր (Ղոզլիջա), Առճո Առիճ (Ալաջա) ու ավերակ այլ գյուղերի տեղում եղած բնակավայրերը։

Անին միջնադարի պայմաններում ամենաարագ ծավալված ու խոշորացած քաղաքներից է։ «Քաղաքը (Բագրատունի) թագավորների օրոք աճել է անսովոր արագությամբ»,— գրում է Ն. Մառը։ Մայրաքաղաք հռչակվելուց 2—3 տարի անց՝ 964 թվականին հարկ է լինում քաղաքի համար կառուցել պաշտպանական պարիսպ։ Սակայն արագ աճող քաղաքի համար Աշոտ 3-րդի կառուցած այդ պարիսպը շատ «նեղ» էր։ Նրա թագավորության վերջին տարիներին բուն քաղաքի մեծագույն մասը արդեն Ներքին պարսպից դուրս էր՝ հյուսիսում գտնվող սարահարթի կողմից մշտապես վտանգի ենթակա։ «Հասակ առած» մայրաքաղաքը Սմբատ 2-րդի օրոք, հյուսիսային կողմից արդեն պատվում է նոր, ավելի ընդարձակ պարսպով, որի ընդգրկած տարածքը՝ բուն քաղաքը, ամենահամեստ հաշիվներով հասնում էր 150—170 հա-ի։ Անիի արագ աճը արձանագրված է ոչ միայն պատմագիրների ու գրիչների, այլև դրա պատմության հարցերով զբաղվող բոլոր մասնագետների կողմից։

Անիի աճման ու ծավալման այդպիսի մեծ թափն ամենևին զարմանք չի պատճառում, երբ նկատի ենք ունենում այդ նույն ժամանակներում

ածած ու «հասակ առած» Հայաստանի մյուս խոշոր ու բազմամարդ քաղաքները, հատկապես Արծնը և Կարսը: Կարսը մինչև 10-րդ դարը սովորական բերդ էր, Արծնը՝ նույնքան սովորական բնակավայր, իսկ այդ նույն դարի վերջերին և 11-րդ դարի սկզբներին արդեն վերածվել էին վաճառաշահ խոշոր քաղաքների, որոնց մասին նույնպես այնքան գովեստով է խոսում Արիստակես Լաստիվերտցին: Դա քաղաքային կյանքի թուռն զարգացման շրջան էր, երբ Հայաստանում մեծ վերելք էին ապրում տասնյակ քաղաքներ: Մի խոսքով, Անիում 10-րդ դարի երկրորդ կեսին և 11-րդ դ. սկզբներին ծավալվել էր միջնադարի համար անսովոր մասշտաբի քաղաքաշինություն, որի արդյունքը եղավ կարճ ժամանակամիջոցում մի խոշոր ու գեղեցիկ քաղաքի ստեղծումը:

Այդ ժամանակների Անիում կատարված կառուցումները կարելի է բաժանել երեք խմբի՝ պաշտպանական, եկեղեցական և քաղաքացիական, որոնցից յուրաքանչյուրը թե՛ ճարտարապետական և թե՛ նպատակադրության տեսակետից ուներ իր առանձնահատկությունները: Դրանք իրարից տարբերվում էին նաև կառուցման կարգով: Այսպես, Բագրատունիների թագավորության շրջանում պաշտպանական կառուցումները գրեթե բացառապես կատարվում էին պետության կողմից, պետական միջոցների հաշվին, թեպետ շինարարությանն իրենց աշխատանքով մասնակցում էին հարկատու քաղաքացիները: Հետագա ժամանակներում քաղաքի պաշտպանական կառուցումները կատարվում էին ինչպես նրա տեր ֆեոդալի, այնպես էլ մյուս իշխանների ու մեծատունների կողմից: Իսկ եկեղեցական ու քաղաքացիական կառուցումները սկզբից ևեթ կատարվում էին և՛ պետության, և՛ անհատ մարդկանց կողմից:

Բագրատունիներն իրենց մայրաքաղաքը դարձնելով Անին, ստրատեգիական առումով լավագույն ձևով օգտագործեցին նրա բնական պայմանները. երեք կողմից քաղաքի գրաված տարածքը ակոսող զառիվեր կողերով կիրճերը, քաղաքի բուն տարածքում եղած բլուրները, ստորգետնյա պաշտպանական ժայռափոր զանազան կառուցումներ կատարելու համար եղած պայմանները զուգորդելով իրենց ստեղծած բարձրաբերձ աշտարակներով ու բուրգերով հոյակավոր պարիսպների, պաշտպանական խանդակի, ստորգետնյա գաղտնուղիների ու գաղտնարանների հետ՝ Անին դարձրեցին ամրությունների հուսալի հանգույց, որ կարող էր դիմագրավել ցանկացած թշնամու:

Շատ բնորոշ է, որ արաբական հեղինակ Յակուտն (1179—1229) իր աշխարհագրական բառարանում, նշելով Անիի մասին, առաջին հերթին մատնացույց է անում ոչ թե նրա վաճառաշահ մեծ քաղաք, այլ ամուր բերդ լինելը. «Ամուր բերդ և քաղաք Հայաստանում»,— գրել է նա:

Անիի, առանձնապես նրա միջնաբերդի անմատույց լինելու մասին բազմիցս նշել է նաև Ն. Մառը։ Նա Անիի միջնաբերդն ուղղակի համարել է անառիկ։ Իսկ այդ ամրությունը առաջին հերթին պայմանավորված էր պաշտպանական կառուցվածքներով, որ իրենց նախնական վիճակով գրեթե բոլորը գոյություն ունեին Բագրատունիների թագավորության շրջանից։ Այսպես, 964 թ. կառուցվել էր Աշոտյան պարիսպը, 989 թ.՝ Սմբատյան երկշարք պարիսպը, ապա դրա առջևով, դրսի կողմից ձգվող խանդակը։ Նույն ժամանակներում են կառուցվել նաև Ծաղկոցաձորի, Գլիձորի և Ախուրյանի կիրճերի՝ քաղաք թափանցելու համար համեմատաբար մատչելի հատվածների պարիսպները։ Իսկ արքունական պալատի ու բուն միջնաբերդի պարիսպներն իրենց նախնական վիճակով գոյություն ունեին տակավին Կամսարականների ժամանակներից։

Անիի պաշտպանական համալիրում իր հատուկ տեղն ուներ Սմբատյան պարսպի առջևով, դրսի կողմից դրան զուգահեռ փորված խանդակը, որը լցված ու շատ քիչ նշմարվելու պատճառով հնագիտական առումով վատ է ուսումնասիրված։ Հետաքրքիր է, որ այդ խանդակի մասին առաջին անգամ հիշատակվում է ոչ թե հայկական, այլ մուսուլմանական աղբյուրներում՝ 1064 թ. Անին սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանի կողմից գրավվելու առնչությամբ։ Ենթադրվում է, որ այդ խանդակը կառուցվել է Սմբատյան պարսպի հետ միասին 10-րդ դարի 80-ական թվականների վերջում կամ 90-ականների սկզբում։ Թ. Թորամանյանի կատարած դիտումների համաձայն, խանդակն ունեցել է 500 մ երկարություն և 10—12 մ լայնություն։ Վտանգի ժամանակ ջուրը խանդակում որոշակի մակարդակի վրա պահելու նպատակով, այն ոչ միայն երկու կողմերից ուներ որձաքարի համատարած պատեր, այլև իրարից որոշակի հեռավորության վրա դրանք լայնական, դարձյալ ջրամերժ պատերով միացած էին իրար՝ ամբողջ խանդակը վերածելով գրեթե հավասար մեծություն ունեցող քառանկյունի ջրավազանների շղթայի։ Քանի որ տեղանքն իր կենտրոնական մասում մի փոքր ավելի բարձր էր, քան ծայրերում, ուստի ջրաշինարարները միայն այդ եղանակով կարող էին խանդակի ամբողջ երկայնքով ապահովել ջրի միևնույն հզորությունը. ջուրը խանդակ էր մըտնում դրա կենտրոնի ամենաբարձր մասից և աստիճանաբար լցնում դեպի Գլիձոր և Իգաձոր իջնող բոլոր հատվածները։ Խաղաղ ժամանակ խանդակի ավելացած ջրերը օգտագործվում էին ոռոգման և ջրաղացները գործի դնելու նպատակով։ Խանդակի ջրի խորությունը հավանաբար հասել է մի քանի մետրի. մատենագիրները վկայում են, որ դրա վրայով անցել են նավակներով։

Անիին վերաբերող գիտահանրամատչելի գրականությունից ընթեր-

ցողը երբեմն առաջին հայացքից այն տպավորությունն է ստանում, որ քաղաքը պարսպապատ է եղել միայն մի կողմից՝ Ծաղկոցաձորի և Ախուրյանի կիրճերով կազմված «թերակղզու» հյուսիսային մասից: Մինչդեռ բուն Անին պարսպապատ է եղել բոլոր կողմերից, միայն այն տարբերությամբ, որ նրա հյուսիսային կողմից, որտեղից սպասվում էր հարձակման հիմնական վտանգը, կրկնակի պարսպապատ էր, ընդ որում Արտաքին կամ Սմբատյան պարիսպը կրկնաշարք էր: Իսկ մյուս՝ Ծաղկոցաձորի, Գլիձորի և Ախուրյանի կիրճերի կողմերից պարսպապատվել էին միայն առանձին հատվածները, որտեղից նույնպես համեմատաբար դյուրին էր թափանցել քաղաք: Այլ կերպ ասած, Անին բոլոր կողմերից փաստորեն պարսպապատ էր, իսկ շատ տեղերում ուներ կրկնակի, եռակի և նույնիսկ քառաշարք պարիսպներ: Առանձին հատվածներից բաղկացած նույն կարգի պարիսպներ կային նաև քաղաքի հարավային՝ Ախուրյանի ձորի աջ կողմում, Աղջկաբերդի արևելյան փեշերից մինչև Ախուրյանի և Ծաղկոցաձորի գետախառնուրդը ձգվող զառիվեր ձորալանջի որոշ տեղերում: Քաղաքի այս կողմի պարիսպները կառուցվել էին ավելի վաղ ժամանակներում՝ հավանաբար Կամսարականների օրոք և ամրացված էին բուրգերով: Իսկ անմիջականորեն Աղջկաբերդի բարձունքում համեմատաբար լավ պահպանված պարսպապատերը կառուցվել էին ուշ՝ հավանաբար 13-րդ դ.:

Առանձնապես հոգ են տարել միջնաբերդին հարող մասերն ամրակուռ պարսպով ավելի ամրացնելու մասին՝ չբավականանալով նրա շըրջապարիսպով: Իրենց շարվածքով, հաստությամբ, բարձրությամբ և մյուս առումներով դրանք նման էին գլխավոր պարիսպներին:

Անիի մատույցները պաշտպանում էին Մաղասաբերդ և Տիգնիս ամուր բերդերը, որտեղ նույնպես ստեղծված էին պաշտպանական հուսալի միջոցներ՝ ամրակուռ պատեր բարձրաբերձ աշտարակներով: Բնականից Մաղասաբերդն ավելի ամուր էր, իսկ արհեստական պաշտպանական կառույցներով ավելի հայտնին Տիգնիսն էր. այն պատած էր բոլոր կողմերից բերդն օղակող, սրբատաշ քարերից շարված կրկնակի պարիսպներով, որոնց անկյուններում բարձրանում էին ատամնավոր քիվերով հաստապատ ու բարձր աշտարակները:

Պակաս միջոցներ ու աշխատանք չէին գործադրվել նաև Ստորերկըրյա Անին ստեղծելիս, որի գոյությունը, ինչպես ասվեց, հիմնականում կապված էր մայրաքաղաքի պաշտպանունակությունն ավելի բարձրացնելու հետ: Դրա ստորերկրյա միջանցքները, խորշերը, սրահները, գաղտնարանները, որ հիմնականում ստեղծվել էին արհեստական եղանակով (մարդկային աշխատանքով) նույնպես յուրակերպ պաշտպանական շին-

վածքներ էին, մի փոքր ավելի համարձակ արտահայտությամբ՝ ստորերկրյա ռազմական ամբողջական համալիր:

Պետական շինարարության մեջ քաղաքում իր ծավալով երկրորդ տեղը գրավում էին պաշտամունքային կառուցումները, առաջին հերթին՝ եկեղեցաշինությունը: Դրանք իբրև պաշտամունքային շենքեր ունեին իրենց յուրահատկությունները և տարբերվում էին այդ նույն ժամանակներում կառուցվող քաղաքացիական շինվածքներից և պաշտպանական կառույցներից: Ճարտարապետներն ընդգծում են, որ եկեղեցական հուշարձանները դրանցից տարբերվում էին նախ և առաջ նրանով, որ «տիպիկ» քաղաքային կառուցվածքներ էին: Սակայն դրա հետ միասին արձանագրվում է և Անիի բոլոր կարգի կառուցվածքների ընդհանրությունը, ճարտարապետական մի շարք հատկանիշների ներդաշնակությունը: Առանձնապես մատնացույց են արվում կառուցման համար օգտագործվող շինանյութը, դրա գույնը, ճարտարապետական-գեղարվեստական հնարանքների ընդհանրությունը, շարվածքը և այլն:

Բագրատունիների թագավորության օրոք ծավալված եկեղեցական բուռն շինարարությունը չէր կարող կատարվել պատմականությունից դուրս, նախորդ ժամանակներում ձևավորված հայկական եկեղեցական ճարպարապետությունից կտրված: Եվ իրոք, 10—11-րդ դարերի եկեղեցական հուշարձանները ընդհանուր առմամբ իրենց վրա կրում էին նախարարական շրջանի՝ հատկապես 7-րդ դարի հայկական եկեղեցական ճարտարապետության կնիքը: Այդ առանձնապես ցայտուն կերպով երևվում է եկեղեցաշատ Անիում, որը ժառանգեց նախարարական շրջանի եկեղեցական կառուցվածքների «հատակագծային և ծավալատարածական լուծումները»՝ դրանք ենթարկելով 10—11-րդ դարերի ճարտարապետական-ոճական առանձնահատկություններին և գեղարվեստական ըմբռնումներին: Այսպես, Զվարթնոցի նմանությամբ կառուցված էր Անիի Գագկաշեն տաճարը, Մայր տաճարը նույնպես նախարարական շրջանի գմբեթավոր բազիլիկայի վերարտադրություն էր, Առաքելոց եկեղեցին կառուցված էր Էջմիածնի նմանությամբ, Ապուղամրենց, ս. Փրկիչ և Հովվի եկեղեցիները դարձյալ նման էին 7-րդ դարի բազմաբսիդ տաճարներին: Ընդ որում Զվարթնոցի նմանությամբ 10—11-րդ դարերում եկեղեցիներ էին կառուցված նաև այլ տեղերում, նույնիսկ Եվրոպայում:

Միջնադարյան Հայաստանի ոչ մի քաղաք այնքան բազմաթիվ եկեղեցիներ չի ունեցել, որքան Անին, որին կիսաավանդական պատմությունը վերագրել է 1001 եկեղեցի՝ այն կոչելով «1001 եկեղեցիների քաղաք»: 10—13-րդ դարերում հայկական քաղաքներում ընդհանրապես եկեղեցիները մեծ թիվ էին կազմում: Արծն քաղաքում, ըստ հիշատակություն-

ների, 11-րդ դ. առաջին կեսում իբր կար 800 եկեղեցի, Սեբաստիայում՝ 600 և այլն: Հարյուրավոր եկեղեցիներ է ունեցել նաև Անին, իսկ այդ եկեղեցիների մեծ մասը Բագրատունի թագավորների շրջանում արդեն գոյություն ուներ:

Անիի եկեղեցիները ցրված էին ամբողջ քաղաքով մեկ: Եկեղեցիներ կային և՛ միջնաբերդում ու բուն քաղաքում, և՛ վերգետնյա ու այրային արվարձաններում, և՛ Ներքին պաշտպանական պարիսպների աշտարակներում: Նրա գմբեթավոր շքեղ տաճարները՝ Մայր եկեղեցին, Գագկաշենը, Առաքելոցը և մյուսները զարդարում էին քաղաքը: Դրանք տեղադրված էին որոշակի օրինաչափությամբ՝ հաշվի առնելով տվյալ քաղաքամասի առանձնահատկություններն ու կարևորությունը, տեղանքի պայմանները, քաղաքի հատակագծի ընդհանուր պահանջները և այլն: Եկեղեցիերի մեծ մասը կառուցված էր բարձր վարպետությամբ և իրենց վեհությամբ ու մոնումենտալությամբ առաջին իսկ հայացքից աչքի էին զարնվում քաղաքի ընդհանուր համայնապատկերի վրա:

Անին մի քանի եկեղեցիներ, որոնց թվում և պալատական եկեղեցին, ժառանգություն էր ստացել նախորդ ժամանակներից, իսկ մյուսները կառուցվել էին 10—11-րդ դարերում: Այդ դարերի եկեղեցական կարևոր հուշարձաններից էին Մայր եկեղեցին, որ կառուցվել էր 10-րդ դ. վերջերին և 11-րդ դ. սկզբներին, Գագկաշեն եկեղեցին, կառուցված Գագիկ 1-ինի օրոք, 11-րդ դ. սկզբներին, Ապուղամրենց ս. Գրիգոր եկեղեցին (980 թ.), Առաքելոց եկեղեցին, ս. Փրկիչը (1036 թ.), Հովվի եկեղեցին և այլն:

Պաշտպանական և եկեղեցական շինարարության համեմատությամբ էլ ավելի մեծ մասշտաբներ ուներ քաղաքացիական շինարարությունը: 50—60 տարվա ընթացքում Անիում կառուցվել են հազարավոր տունբնակարաններ, որոնց զգալի մասը՝ ժայռափոր, թագավորական ու իշխանական պալատներ, հյուրանոցներ, խանութներ, բաղնիքներ, քաղաքում ցանցավորված՝ ջրմուղ, կամուրջներ, ճանապարհներ, որոնք լրացնում էին քաղաքի ընդհանուր ճարտարապետական դեմքը:

Պաշտպանական կառուցվածքների, եկեղեցիների և պալատների համեմատությամբ բնակելի տներն անբավարար են պեղված, և դրանց մնացորդներն, ընդհանուր առմամբ, վատ են պահպանվել: Նախ այն պատճառով, որ սովորական բնակելի տները մյուս կառույցների համեմատությամբ ավելի շատ էին ենթակա փլուզման ու ավերման և երկրորդ, ինչպես ենթադրում է Ն. Մ. Տոկարսկին, երկիր ներխուժած նվաճողները առաջին հերթին կողոպտել ու ավերել են բնակելի տները:

Հնագիտական պեղումների ընթացքում, այնուամենայնիվ, վաղեմի

քաղաքի տարբեր հատվածներում՝ և՛ վերգետնյա թաղամասերում (Մանուչեի մզկիթի մոտ, միջնաբերդի երկու կետերում, Գագկաշեն եկեղեցու մոտ և այլ տեղերում), և՛ Այրային Անիում դիտվել ու նկարագրվել են բավական քանակությամբ բնակելի տներ: Անիի բնակելի տների համալիրները բաղկացած էին 3—5 բնակելի ու օժանդակ սենյակներից, որոնք բոլորն իրար հետ կապված էին միջանցքներով: Տները սովորաբար 1,5—2 հարկանի էին. առաջին կամ նկուղային հարկում սովորաբար գտնվում էին օժանդակ սենյակները, իսկ բարձր հարկում՝ բնակելիները: Հարուստ բնակելի տների համալիրների մեջ երբեմն եղել են «փոքրիկ եկեղեցիներ կամ աղոթարաններ»: Սովորական տների պատերը շարված էին անկանոն քարակոշտերով, իսկ հարուստներինը՝ երբեմն սրբատաշ քարերով: Պատերը ներսից կամ ծեփում էին, կամ թողնում էին առանց ծեփի՝ դրանք ծածկելով զանազան գործվածքներով (գորգեր, կարպետներ): Աղքատ բնակիչների խրճիթների հատակը սվաղում էին սովորական ցեխով, իսկ հարուստներինը՝ սալահատակված էին, այն էլ երբեմն սրբատաշ քարերով:

Անիի տարածքը բնակչության քանակության համեմատությամբ փոքր էր և այն օգտագործել են խնայողաբար. բնակելի թաղամասերում տները շատ խիտ էին և կից տներն ունեին ընդհանուր պատեր, դրանք դասավորված էին ոչ թե փողոցների երկայնքով, այլ խորությամբ: Տներն իրար կպած լինելու պատճառով լույսի և օդափոխության համար լուսամուտների փոխարեն սովորաբար տանիքում թողնում էին երդիկ: Իբրև ընդհանուր երևույթ, տներն իրենց շքամուտքով նայում էին ոչ թե դեպի փողոց, այլ բակ. փողոցի կողմի պատը խուլ էր և տունը կամ մի քանի տուն միաժամանակ, փողոցի հետ կապվում էին նեղ միջանցքով:

Թոնիրներից բացի, տների տնտեսական ներքին հարմարություններից էին բուխարիները, խորշերը (պատրիաններ), հորերը, ամբարները և այլն: Մթերքները սովորաբար պահվում էին նկուղներում, կարասների կամ հորերի մեջ, անկողինը և տնային գործածության իրերը՝ պատըրհաններում, որոնք խախտում և ճարտարապետական առումով անկնահաձո էին դարձնում հարթ պատերը:

Նկարագրված բնակելի տները հիմնականում պատկանում էին արհեստավորներին, մանր առևտրականներին, մասամբ, գյուղատնտեսությամբ զբաղվողներին: Բարձրաստիճան ազնվականությունը, մեծատուները և մյուս մեծահարուստներն ապրում էին դղյակներում ու պալատներում:

Անիի քաղաքացիական շինությունների մյուս խումբը իր մեջ ընդգրկում էր պալատներն ու դղյակները:

Տարբեր վիճակում, բայց բոլորն ավերված, Անի մայրաքաղաքի ապարանքներից մեզ հայտնի են 5-ը՝ Բագրատունիների, Պարոնի, Սարգսի, Ապլղարիբի և Վարդապետի պալատները, չհաշված մեծատունների (Տիգրան Հոնենցի և մյուսների) շքեղ տները և մի ամբողջ շարք այնպիսի շինվածքներ, որոնք հիշատակվում են անվանապես, բայց դժվար է կռահել դրանց բնույթը: Անշուշտ, թվարկվածներից բացի, եղել են նաև իշխանական (ու հավանաբար կաթողիկոսական) ուրիշ ապարանքներ ևս, որոնց ոչ հետքերն են հայտնի և ոչ էլ հիշատակվել են որևէ գրավոր աղբյուրում:

Բագրատունիների պալատը, որը հնագիտական առումով բավական խնամքով հետազոտվել է, կներկայացվի քաղաքի հուշարձանները նկարագրելիս: Ինչ վերաբերում է Ապլղարիբի իշխանական պալատին, ապա այն մեզ հայտնի է միայն գրական աղբյուրներից: Ըստ վկայությունների, Ապլղարիբն իր այդ ապարանքը կառուցել է Հովհաննես-Սմբատ թագավորի օրոք (1036 թ.): Այն գտնվում էր ս. Փրկիչ եկեղեցու մոտ: Այդ վկայությունը նկատի ունենալով՝ Անիի հնագիտական 12-րդ արշավախումբը 1913 թ. ջանքեր է գործադրել վաղեմի պալատի ավերակները բացել և հետազոտել: Սակայն պալատի հետքերը գտնելու համար կատարված աշխատանքները որևէ արդյունք չեն տվել, բայց դրա փոխարեն հայտնի է դարձել Գլխավոր փողոցի ուղղությամբ, այդ մասով անցնող ջրմուղի մի հատվածը:

Բնակելի տներից հետո իրենց թվաքանակով քաղաքում հավանաբար երկրորդ տեղը գրավում էին հյուրատները, խանապարները, փնդուկները և կուղպակներն ու արհեստանոցները միասին վերցրած: Դժվար է ասել, թե Անին 10—11-րդ դարերում, կամ հետագայում այդ կարգի ինչքան շինություններ է ունեցել: Անուղղակի աղբյուրների տվյալներից և միջնադարյան խոշոր քաղաքների առևտրի ու արհեստագործության բնույթից ելնելով կարելի է պնդել, որ Անիի արհեստանոց-կրպակների, խանութների, հյուրատների, իջևանատների ընդհանուր թիվը հարյուրների էր հասնում: Դրանց մեծ մասը, անշուշտ, տեղադրված էին արհեստավորների կամ առևտրականների տներում, իսկ մյուսները տարբեր մեծության առանձին շինություններ էին, որոնցից ոմանք իրենց շքեղությամբ, հարմարավետությամբ ու մեծությամբ ոչնչով չէին զիջում քաղաքի նշանակալի հուշարձաններին: Այդ կարգի կառուցվածքներից մեկն էր նաև այն շենքը, որը գոյություն ուներ Բագրատունիների թագավորության օրոք և սելջուկյան առաջին իշխողների ժամանակ վերափոխելով դարձրել էին Մանուչեի անունը կրող մզկիթ:

Հիմնականում Բագրատունիների թագավորության շրջանում էին

«ձևավորվել» Այրային և Ստորերկրյա Անին, որոնցից առաջինը, ինչպես ասվեց, բնակելի թաղամասերից էր, իսկ երկրորդը ուներ ռազմական-պաշտպանական նշանակություն: Այնպես որ Բագրատունիների օրոք հսկայական ծավալի քաղաքաշինություն էր կատարվում նաև վերգետնյա Անիի տակ:

Բագրատունիների ժամանակվա Անին իբրև խոշոր ու բարեկարգ քաղաք ապահովված էր նաև ժամանակի պահանջներին համապատասխան կոմունալ պայմաններով՝ ջրմուղ, բաղնիքներ, կանաչապատում և այլն: Ջգալի ծախսեր էին անում փողոցների ու հրապարակների բարեկարգման, միջնաբերդի ազատ տարածությունները ծաղկանոցների ու պարտեզների վերածելու վրա: Գետնափոր ու ժայռակերտ ճանապարհների հետ միասին, որ քաղաքը կապում էին Ախուրյանի ու Ծաղկոցաձորի կիրճերի և ընդգետնյա թաղամասերի հետ, Անիում և նրա շրջակայքում՝ Ախուրյան գետի վրա, կառուցվել էին մոնումենտալ մի քանի կամուրջներ, որոնցից երկուսը՝ քաղաքի բուն տարածքում: Ենթադրվում է, որ կամրջաշինությունը հենց հիմնականում կատարվել է Բագրատունիների թագավորության օրոք՝ 10—11-րդ դարերում:

Այդպիսին էր քաղաքաշինության բնույթն ու մոտավոր ծավալը 10—11-րդ դարերի Անիում, Բագրատունիների հայտնի մայրաքաղաքում: Թ. Թորամանյանը Անիի ճարտարապետության պատմությունը բաժանում է երեք պատմաշրջանների՝ առաջինը համարելով Կամսարականների ժամանակները: Այդ շրջանից, որոշ վերափոխություններից հետո, պահպանվել են պալատական եկեղեցին, պաշտպանական պատերի մնացորդներ, պալատական կառույցների հիմքերի մասեր, որոնց հիման վրա էլ գաղափար ենք կազմում Կամսարականների ժամանակների Անիի ճարտարապետության մասին: Ճարտարապետական այդ պատմաշրջանի վերջին և հաջորդ ժամանակաշրջանի առաջին, այսպես ասած, «սահմանային» հուշարձանը նա համարել է Ապուղամրենց ս. Գրիգոր եկեղեցին, որը Թ. Թորամանյանի արտահայտությամբ «կկրե իր վրա հին արվեստի վերջին շառավիղները և նոր շրջանի արշալույսի ցոլքերը»: Դրան հաջորդում է մայրաքաղաքի ճարտարապետության զարգացման երկրորդ՝ բուռն զարգացման շրջանը, որն ընդգրկում է 10-րդ դարի երկրորդ կեսից մինչև 1064 թվականը, երբ Անին գրավվեց ու ավերվեց սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանի կողմից: Թ. Թորամանյանի բնութագրմամբ այս նոր ժամանակաշրջանի հուշարձանների վրայից սկսեցին վերանալ «նախկին լուրջ ու ծանր երևույթները» և նոր կառուցվող շենքերը, որոնց հատուկ էր «մի գողտրիկ վայելչություն», պճնում էին «բարակ որմնասյուներն» ու զարդաքանդակ կամարները, ներդաշնակ ուղիղ գծերով

«բազմահյուս մանածոները»: Նա նշում է, որ կարճատև լինելու պատճառով այս շրջանը «դեռ չտված իր վերջին կատարելագործության պըտուղները»՝ 11-րդ դ. կեսերին ենթարկվեց «վաղահաս ճակատագրական անկման»՝ սելջուկյան տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում չտալով ուշադրության արժանի որևէ շինվածք կամ հուշարձան, բացի եղածների այլանդակումից: Անիի ճարտարապետության զարգացման երրորդ ժամանակաշրջանը նա համարում է Զաքարյանների իշխանության շրջանը, երբ քաղաքում մեկը մյուսի հետևից կառուցվում են բազմաթիվ շքեղ տաճարներ, իշխանական ապարանքներ, բնակելի տներ, հյուրանոցներ, իջևանատներ և այլն, որոնք իրեց վրա որոշակիորեն կրում էին վերածննդի դարաշրջանի բնորոշ գծերը:

Անընդունելի է Ն. Մառի՝ Բագրատունիների շրջանի Անիի ճարտարապետության բնույթի մասին արտահայտած կարծիքը: Նա ճարտարապետական առումով Բագրատունիների շրջանն Անիում համարում է լոկ անցյալի կրկնություն. «... Հայոց թագավորների դարաշրջանում, Անիի շինությունները սոսկ կրկնություն էին հին Հայաստանի տարբեր շրջաններում մշակված ճարտարապետական ոճերի: Բագրատունի թագավորները... աշխատում էին զարդարել իրենց մայրաքաղաքը... վերարտադրելով... արդեն գոյություն ունեցող օրինակները, ընդօրինակելով հայրենի արվեստի նշանավոր հուշարձանները»,— գրում է նա:

Սկզբնական շրջանում ուսումնասիրողներից շատերն առանց քննադատության ընդունում էին Ն. Մառի այդ սխալ տեսակետը: Ընդ որում բոլորը, սկսած Ն. Մառից և Չուբինով-Զուբինաշվիլուց այդ ոչ գիտական տեսակետը «հիմնավորելու» համար վկայակոչում են հիմնականում Բագրատունիների օրոք կերտված միայն երկու հուշարձաններ՝ Առաքելոց եկեղեցին, որ համարել են սոսկ Էջմիածնի ընդօրինակությունը (կամ վերարտադրությունը) և Գագկաշենը՝ կառուցված Զվարթնոցի օրինակով: Նախ դրանք մեխանիկական կրկնություն չէին Էջմիածնի ու Զվարթնոցի, մանավանդ որ վերջինս ավերված էր և Տրդատ ճարտարապետը նախ պետք է վերականգներ նրա նախնական օրինակը (որը կապված էր մեծ դժվարությունների հետ), ապա ձեռնամուխ լիներ դրա նման տաճարի կառուցմանը: Բացի դրանից, Գագկաշենի համամասնությունները Զվարթնոցից տարբերվում էին. առաջինի ուղղահայաց առանցքը հորիզոնական հատակագծի համեմատությամբ ավելի բարձր էր, չհաշված դեկորատիվ զարդարանքների և ներքին մանրամասների տարբերությունները: Իսկ Առաքելոց եկեղեցու և Էջմիածնի միօրինակությունն ընդհանրապես բանավեճի առարկա է և դրա մասին առարկություն չհանդուրժող տեսակետ արտահայտելը հազիվ թե հավանություն կարող է գտնել: Բայց միթե

Անիի 10—11-րդ դարերի հուշարձանները սահմանափակվում էին միայն նշված երկու եկեղեցիներով: Իսկ ինչ կասեն մասնագետները Մայր տաճարի, Հովվի եկեղեցու, մյուս տասնյակ եկեղեցիների, արքունական պալատի, պաշտպանական պարիսպների, ժայռափոր կերտվածքների, մոնումենտալ կամուրջների, իշխանական ապարանքների և այլնի մասին, որ մի ամբողջական, ճարտարապետական առումով «տիեզերահռչակ» մայրաքաղաք էին կազմում:

Եթե Բագրատունիների մայրաքաղաքի ճարտարապետության ակունքները կազմում էին մեր ազգային մշակույթի 7-րդ դարի մոնումենտալ հուշարձաններն ու 9-րդ դարի վերջի ու 10-րդ դարի սկզբների հոյակապ շինվածքները՝ Էջմիածինը, Ավանը, Զվարթնոցը, Հռիփսիմեն, Տաթևը, Աղթամարը և մյուս սքանչելի կերտվածքները, ապա Բագրատունիների շրջանի ճարտարապետական գլուխգործոցներն էլ իրենց հերթին հիմք դարձան Զաքարյանների ժամանակաշրջանի մշակույթի նոր զարգացման համար:

Անիում Բագրատունիների թագավորության շրջանում զարգացել են ճարտարապետական արվեստի բոլոր բնագավառները՝ շինարարականը, գեղարվեստականը, պաշտամունքայինը, քաղաքացիականը, ռազմականը և այլն:

Գրիգորիս Պալաքյանը Անիի ճարտարապետական ոճի համար արձանագրում է հետևյալ առանձնահատկությունները՝ հատակագծի պարզություն, ամբողջ շինվածքի ու դրա առանձին մասերի միջև կատարյալ ներդաշնակություն, կամարների, սյուների, քանդակների ու զարդարանքների առատություն, սակայն առանց ավելորդաբանությունների, միօրինակության բացակայություն, բարձր արվեստի քանդակազարդեր, եկեղեցիներում՝ «խորհրդավոր մթություն» ու սրածայր կաթողիկեների առատություն և այլն: Այնուհետև նա նշում է, որ քաղաքի շենքերի քանդակները հարազատ են բնությանը և վերցված են նրանից. դրանցում պատկերված են ծառեր, ծաղիկներ, կենդանիներ և, իբրև կանոն, նրա հուշարձանների վրա մարդկանց պատկերներ չեն քանդակել:

Անիի ճարտարապետության «մանրուքների» մասին խոսելիս անհնար է շրջանցել Թ. Թորամանյանի և Ն. Մառի արած դիտողությունները, որոնք հանգում են հետևյալին. Անին գերազանցապես տուֆակերտ քաղաք էր: Նրա եկեղեցիները, պալատները, պարիսպները և մյուս հուշարձանները շարված էին տուֆից, որի մշակումը հասել էր բարձր վարպետության: Ն. Մառը պնդում է, որ իբրև ընդհանուր օրինաչափություն քաղաքում ինչքան հին է շենքը, այնքան նրա ճակատի շարվածքի համար օգտագործվել են ավելի խոշոր քարեր: Տուֆն այստեղ մշակել են

ըստ նշանակության։ Ընդ որում կարևոր բոլոր հուշարձանների պատերը և՛ ներսից, և՛ դրսից շարված են սրբատաշ քարերով այնպիսի վարպետությամբ, որ դրանց միջև եղած գծերը՝ կարերը, հազիվ են նկատվում։ Անիում, հետագա շրջանում տարածում է գտել նաև երկգույնի՝ սև ու դեղին (կամ սև ու կարմիր) քարերով «շախմատաձև» քարապատումը։ 10—11-րդ դարերում Անիում շինարարության համար բազալտ հազվադեպ էին օգտագործում, չնայած նրա շրջակայքը հավասարապես հարուստ էր նաև բազալտներով։ Աղյուսն Անիում գրեթե բացառապես գործածվել է միայն ջրաշինարարական կառույցներում։

Անիում մեծ վարպետությամբ են կառուցել նաև տանիքները։ 10-րդ դարից ի վեր հայ ճարտարապետներն ու շինարարները տանիքների համար կղմինդրի փոխարեն սկսում են օգտագործել տուֆը՝ բարակ տախտակների ձևով, որոնց եզրերին արված փոսիկներն ու ելուստները հնարավորություն էին տալիս դրանք կղմինդրի նման այնպես շարել կողք-կողքի, որպեսզի արանքներով ջուրը չթափանցի։ Չբավականանալով դրանով, տանիքի տուֆի բոլոր սալիկները շարելուց հետո օծել են ձեթով, որպեսզի վերացնեն տուֆի՝ ջուր ու խոնավություն կլանելու ընդունակությունը։

10—11-րդ դարերում Անիում փայտանյութը ևս լայն չափերով օգտագործվել է շինարարության մեջ։ Բնակարանների առաստաղները, հարկերի միջև եղած ծածկերը, դռներն ու լուսամուտները, որոշ դեպքերում նաև սյուները պատրաստում էին փայտից։ Ավերակներում հայտնաբերված են Բագրատունիների ժամանակների ծածկերի համար օգտագործված քանդակազարդ գերաններ և զանազան կամարներ։ Այդ գտածոները, որ հայտնաբերվել են արքունի պալատի ստորին մասում, հետագայում կառուցված շինությունների վրա, մինչև առաջին համաշխարհային պատերազմը պահպանվում էին Անիի թանգարանում։

Լայն գործածություն է ունեցել կրաշաղախը, որ այնքան կպչուն է և ժամանակի ընթացքում տուֆի, բազալտի կամ քարեղեն այլ շինանյութերի հետ կազմում է միաձույլ զանգված։ Անիի ճարտարապետության համար առանձնապես մեծ հետաքրքրություն է ներկայացնում շինարարական շաղախ պատրաստելու եղանակը, որը վերականգնվել է Գագկաշեն եկեղեցու պեղումների ընթացքում հայտնաբերված «քարեղեն տաշտի» և նրա մեջ գտնված ավազի ու կրի փոշու օգնությամբ։ Անիում Բագրատունիների օրոք ծեփանյութ շատ քիչ է օգտագործվել։ Կարևոր հուշարձանները ներսից և դրսից պատված էին սրբատաշ քարերով և «արատներ ծածկող» ծեփի կարիքը չունեին։ Ծեփն օգտագործվել է մասնավորապես տներում, այն էլ 12—13-րդ դարերից սկսած։



7—2682

Հայկական մշակույթի պատմության մեջ ճարտարապետությունը գրավում է կենտրոնական տեղ, իսկ միջնադարյան հայկական ճարտարապետության մեծագույն կենտրոնն Անին էր, որը դարձել էր ճարտարապետական մշակույթի մեծ «խառնարան», «Հայաստանում ճարտարապետական ուղղության օրենսդիրը», ինչպես գրում են ճարտարապետության պատմության մեր ժամանակների մասնագետները։ Անին այդ դիրքին էր հասել մայրաքաղաք դառնալուց հետո՝ 10—11-րդ դարերում, օգտագործելով մինչ այդ Հայաստանի զարգացած մասերի ճարտարապետական հարուստ ժառանգությունը (Զվարթնոց, Էջմիածին, Տաթև և այլն)։ 10-րդ դարի երկրորդ կեսից և, հատկապես, 11-րդ դարում Բագրատունիների մայրաքաղաքում աշխատում ու ստեղծագործում էին «երկրի ականավոր ճարտարապետները», որոնց կերտած հուշարձանները իրենց ազդեցությունն են թողել երկրի ճարտարապետական մտքի հետագա զարգացման վրա, երկրի տարբեր մասերում աշխատող շինարար և ճարտարապետ վարպետների վրա։ Այլ կերպ ասած, նախորդ ժամանակների հայկական դասական ճարտարապետության հիմքի վրա ձևավորվել էր Անիի ճարտարապետական դպրոցը, որն իր հերթին բարերար ազդեցություն էր թողնում երկրի զարգացող ճարտարապետության վրա ընդհանրապես։ Այսպես, մասնագետները մատնանշում են, որ Վահրամ Պահլավունու կառուցած Մարմաշենի եկեղեցին ճարտարապետական ընդհանուր կառուցվածքով նման է Անիի Մայր տաճարին, Խծկոնքի վանքի գլխավոր տաճարը՝ Անիի Գագկաշեն եկեղեցուն, նմանություններ կան մայրաքաղաքի և երկրի տարբեր մասերի գավիթների միջև և այլն, չնայած բոլոր ճարտարապետ-պատմաբանները վկայում են, թե այդ նմանությունները երբեք չեն ջնջում դրանցից յուրաքանչյուրի ճարտարապետական ինքնուրույնությունը, մանավանդ հարդարանքի տեսակետից։

Անին իբրև ճարտարապետական մի մեծ թանգարան, իբրև հայկական նախարարական շրջանի և հետագայի՝ 13-րդ դարերի ճարտարապետական ոճերի համաձույլ կենտրոն, անիական ճարտարապետական արվեստի օրրան՝ իր ազդեցությունն է թողել և՛ երկրի ներսում, և՛ դրանից դուրս, զգալի ավանդ մտցնելով արվեստի այդ բնագավառի համաշխարհային գանձարանը։

Միջին դարերում Հայաստանում կառուցվել են տասնյակ քաղաքներ ու հարյուրավոր հայտնի հուշարձաններ՝ եկեղեցիներ, բերդեր, կամուրջներ, քարավանատներ, պալատներ և այլն։ Դրանք բոլորը կառուցվում էին ճարտարապետների նախագծով, որոնք հաճախ հենց նույն քարագործ-վարպետներն էին։

Բագրատունիների թագավորության շրջանի Անիի ամենահայտնի

ճարտարապետը Տրդատն էր։ Շատ աղքատիկ են նրա կյանքի մասին եղած տեղեկությունները. հայտնի չէ, թե ե՞րբ է ծնվել և որտեղ, ի՞նչ կրթություն է ստացել (իսկ նրա գործերից եզրակացնում են, որ հատուկ կրթություն պիտի ստացած լիներ, կամ աշակերտած որևէ ականավոր քարագործ վարպետի), ինչքա՞ն է տևել նրա ճարտարապետական գործունեությունը, նրա ստեղծագործությունների ցանկը, գրված դիրքն Անիում (արդյո՞ք գլխավոր ճարտարապետը չէր այդ նոր ձևավորվող մայրաքաղաքի), երբ է մահացել և այլ հարցեր, որոնք այնքան հետաքրքրում են պատմաբանին։ Այդ պատճառով էլ նրա կենսագրությունն ուրվագծվում է միայն շատ ընդհանուր գծերով՝ գերազանցապես կապված ճարտարապետական-շինարարական գործունեության հետ, որի մասին մի քանի տեղեկություններ է հաղորդում ժամանակակից պատմագիրը՝ Ստեփանոս Տարոնացի Ասողիկը։

Տրդատն իր ժամանակաշրջանի Հայաստանի խոշորագույն ճարտարապետն էր, որին ճարտարապետության մեծանուն մասնագետ Ստրժիգովսկին կոչում է «Անիի գլխավոր ճարտարապետ», «ավագ ճարտարապետ», դեպի «գոթական ոճը տանող ճանապարհի հայտնագործող», «պալատական ճարտարապետ»։ Ճարտարապետության պատմաբաններից շատերը նրան ուղղակի համարում են հանճարեղ։ Գ. Լևոնյանը նրան կոչել է Տրդատ Անեցի, նկատի ունենալով, որ նրա գործունեությունը հիմնականում կապված էր Անիի հետ։

Տրդատի գործունեությունը սկսվել էր 10-րդ դարի 80-ական թվականներից, երբ նա, Հայոց կաթողիկոսների այդ ժամանակվա աթոռանիստ Արգինայում, Խաչիկ Արշարունի Ա կաթողիկոսի օրոք, 987—988 թվականներից ոչ ուշ (ըստ Ն. Տոկարսկու 990 թ.) կառուցել է հայրապետական պալատի կաթողիկե եկեղեցին։ Դրա ավերակները, որ հնագիտական առումով չեն ուսումնասիրվել, գտնվում են Ախուրյան գետի աջ կողմում. մինչև օրս դրա մի պատը խարխուլ վիճակում կանգուն է։

Տրդատի գործունեության ամենաբեղմնավոր շրջանը սկսվում է դրանից հետո, երբ նա հաստատվում է Անիում։ Սակայն այստեղ նրա ղեկավարությամբ Սմբատ 2-րդի օրոք սկսված Մայր տաճարի շինարարությունը ընդհատվում է։ Տրդատը ժամանակավորապես թողնում է Անին (989 թ.) և ուղևորվում Կոստանդնուպոլիս, որտեղ նրա նախագծով ու ղեկավարությամբ վերականգնվում է ս. Սոֆիա տաճարի (7-րդ դ.)՝ երկրաշարժից նոր փլված գմբեթը։ Հայ ճարտարապետը դրանով մեծ համբավ է ձեռք բերել ամբողջ կայսրությունում։

Բայց Տրդատի գլուխգործոցը Անիի Մայր տաճարն է, որի շինարարությունը սկսվել էր Սմբատ 2-րդի օրոք 988 կամ 989 թվականին և

ավարտվել 1001 թվականին՝ Գագիկ 1-ինի կին, Կատրամիդե թագուհու հոգացողությամբ: Ճարտարապետության պատմաբանները գտնում են, որ միայն այս տաճարը բավական է Տրդատին հանճարեղ կոչելու համար, մի տաճար, որն իր մեջ պարունակում է գոթական ճարտարապետական ոճի ակնհայտ տարրեր:

Վերջին տասնամյակներում, Ստեփանոս Ասողիկի պատմության մի քանի ձեռագրերի հիշատակության հիման վրա պարզվեցին, որ Գագկաշեն տաճարի գլխավոր ճարտարապետը նույնպես եղել է Տրդատը: Տաճարի կառուցումն ավարտվել է 1110 թվականին: Գագկաշենը կառուցված էր այդ ժամանակներում ավերված Զվարթնոցի օրինակով: Ս. Սոֆիայի գմբեթի վերաշինումը և ավերակների հիման վրա Զվարթնոցի իրական կառուցվածքի վերականգնումը նույնպես մեծ դժվարությունների, քրտնաջան աշխատանքի ու մեծ ունակությունների հետ կապված գործեր էին, որոնք նույնպես փայլ էին տալիս ճարտարապետին:

Տարբեր ժամանակներում, տարբեր ուսումնասիրողներ Տրդատին մասնակից կամ հեղինակ են համարել Սմբատյան պարիսպների որոշ հատվածների, Մարմաշենի մեծ տաճարի, Կեչառուքի մեծ եկեղեցու, Սանահինի ու Հաղպատի վանքերի համալիրների առանձին կառույցների, Անիի ս. Փրկիչ եկեղեցու, Ամբերդի եկեղեցու և այլ հուշարձանների:

Ականավոր երկրաբան Հերման Աբիխը, որ բավական ծանոթացել է Անիի ավերակներին և հատուկ հոդվածով իր ծանրակշիռ խոսքն ասել Հայաստանի երբեմնի մայրաքաղաքի մասին, դրա հատակագծի վերականգնումը համարում է գրեթե անհնար, նկատի ունենալով, որ մնացորդները տեղադրված են անկանոն, փողոցների ու նրբանցքների հետքերը շատ տեղերում անհետանում են, իսկ որոշ տեղերում ընդհանրապես հնարավոր չէ կողմնորոշվել:

Հ. Աբիխը ավերակ քաղաքի հատակագծի առաջին վերականգնողներից է և նրա ասածները միանգամայն ընդունելի են: Ավելին, երկարատև պեղումներից և քաղաքի տարածքում կատարված բազմաթիվ հետազոտություններից հետո կազմած հատակագիծը դարձյալ ունի պակասավոր ու անորոշ շատ կողմեր, դեռևս հայտնի չեն փողոցներից շատերը, նրբանցքները, հրապարակները և հատակագծային այլ տարրեր:

Այդ բոլորով հանդերձ, ճարտարապետության ուսումնասիրության զուգընթաց, հանույթային աշխատանքների շնորհիվ վերականգնվել է վաղուց ավերակների կույտի վերածված քաղաքի մոտավոր հատակագիծը, որը կարող է կողմնորոշիչ դեր խաղալ դրա կանգուն ժամանակվա հատակագծային կառուցվածքի յուրահատուկ կողմերը բնորոշելու համար:

Քաղաքի հատակագծային կառուցվածքը ձևավորվել է ոչ միանգամից, բավական երկար ժամանակաընթացքում: Սկզբնական շրջանում գոյություն ուներ միայն միջնաբերդը իբրև Կամսարականների ֆեոդալական ամրոց: Հետագայում, մայրաքաղաք հռչակվելուց հետո, ամրոցը վերածվում է միջնաբերդի, որի մոտ ծավալվում են բուն քաղաքն ու դրա արվարձանները:

Անիի այդ երեք մասերից յուրաքանչյուրն ուներ հատակագծային առանձնահատկություններ: Փողոցների, նրբանցքների, բակերի ու հրապարակների, տարբեր կարգի կառուցվածքների տեղադրությունը միջնաբերդում ու բուն քաղաքում կատարվում էր ավելի կանոնավոր և տարածքն ու դիրքն օգտագործված էին ավելի կատարյալ ձևով, քան արվարձաններում: Հավանական կարելի է համարել, որ քաղաքի կառուցապատումը կատարվում էր ոչ թե կամայական, ով որտեղ և ինչպես ցանկանում էր, այլ որոշակի հսկողության ներքո: Մի՞թե պատահական էր, որ հայտնի կառույցները՝ Մայր տաճարը, Գագկաշեն եկեղեցին, Մանուչեի մզկիթը, Պարոնի պալատը և այլ հայտնի շենքեր տեղադրված էին այնպիսի տեղերում, որ ավելի էին գեղեցկացնում քաղաքի ընդհանուր համայնապատկերը: Քաղաքաշինական տեսակետից, ինչպես մասնագետները գրում են, շենքերի ճիշտ տեղադրությամբ առանձնապես հայտնի էր Նոր քաղաքը, որը ծավալվել էր հիմնականում հին կառույցներից ազատ տարածությունների վրա, այն կառուցապատվել էր մեծ ու գեղեցիկ քաղաքին սազական շենքերով: Մինչդեռ միջնաբերդը ձևավորելիս պետք է հաշվի նստեին հնից գոյություն ունեցող շինությունների հետ, որոնք միշտ չէ, որ տեղադրված էին կանոնավոր հատակագծի հիման վրա: Իսկ արվարձաններում ընդհանրապես բոլոր ժամանակներում քիչ էին հաշվի առնում հատակագծի շահերը:

Նոր քաղաքը միաժամանակ քաղաքի ամենաշքեղ մասն էր, ճարտարապետական առումով քաղաքի ամենակարևոր մասը: Այն կառուցապատված էր եկեղեցական և քաղաքացիական մոնումենտալ շենքերով (Մայր տաճար, Գագկաշեն եկեղեցի, ս. Փրկիչ, Ապուղամրենց եկեղեցի, իշխանական պալատներ, հյուրանոցներ և այլն): Այստեղ (և ընդհանրապես բուն քաղաքում՝ «շահաստանում») մեծ կառույցները հիմնականում տեղադրված էին Ախուրյանի և Ծաղկոցաձորի ձորեզրերին՝ քաղաքի հարավային մասում, երևում էին քաղաքի տարբեր տեղերից և ավելի էին գեղեցկացնում նրա ընդհանուր համայնապատկերը:

Սովորական բնակելի տները բուն քաղաքում և միջնաբերդում, ինչպես ասվեց, տեղադրված էին մեծ խտությամբ: Դրանք հիմնականում

ոչ թե 10—11-րդ դարի կառուցվածքներ էին, այլ ավելի ուշ ժամանակների և քաղաքին առանձին շուք չէին տալիս: Այդ կարգի տների մեջ շքեղ էին և քաղաքը զգալի չափով գեղեցկացնում էին միայն իշխանական ապարանքներն ու դղյակները: Մյուս մոնումենտալ կառուցվածքներից քաղաքին շուք էին տալիս պաշտպանական պարիսպներն իրենց բուրգերով ու մուտքերով, հյուրանոցները, կամուրջները և այլն:

Անիով զբաղվող գրեթե բոլոր հեղինակները արձանագրում են, որ քաղաքն ընդհանրապես խիտ էր կառուցապատված, ազատ տեղեր քիչ կային, բակերը փոքր էին և թվով քիչ, տները հաճախ ուղղակի կպած էին միմյանց՝ սովորաբար ունենալով մի ընդհանուր պատ, հրապարակներ քիչ կային և եղածներն էլ ընդարձակ չէին: Ի միջի այլոց, տարածքի այս սղությունն էլ հենց համարում են Այրային Անիի ստեղծման հիմնական պատճառներից մեկը:

Փողոցներն ունեին անկանոն դասավորություն: Դրանցից անջատվում և տարբեր ուղղությամբ ձգվում էին մեծ ու փոքր նրբանցքներ: Քաղաքի կարևոր փողոցները հիմնականում սկսվում էին Սմբատյան պարիսպների դարպասներից և ձգվում դեպի հարավ: Համեմատաբար լավ է ուսումնասիրված Գլխավոր փողոցը, որը սկսվում էր Սմբատյան պարսպի գլխավոր դարպասից և ձգվում մինչև քաղաքի հարավային ծայրաշրջանը: Այս փողոցը Ն. Յա. Մառի աշխատակիցները կոչել են նրա անունով:

Գլխավոր փողոցները և կենտրոնական հրապարակները բարեկարգ էին, սալահատակված կամ խճապատված, կառուցապատված անհամեմատ լավ շենքերով: Իսկ պեղումների ընթացքում Գլխավոր փողոցի մոտակայքում եղած անշուք տները ոչ թե Բագրատունիների օրոք են կառուցվել, այլ հետագայում, հավանաբար 12-րդ դարից ոչ շուտ: Քաղաքի փողոցները սովորաբար կոչվում էին արհեստավորական ու առևտրական եղբայրությունների (համքարությունների) անուններով:

Սքանչելի շենքերից բացի, քաղաքին բարեկարգ ու գեղեցիկ տեսք էին տալիս նաև կանաչ զանգվածները՝ բանջարանոցները, ծաղկանոցները և պարտեզները, որոնք ավելի մեծ տարածություն էին գրավում արվարձաններում: Նկատի ունենալով վիմագիր արձանագրությունների մի քանի հիշատակությունները՝ Թ. Թորամանյանը ենթադրում է, որ Սըրենն ու Բագարանը եղել են անեցիների մրգաստաններն ու այգեստանները: Դրանք, շրջակայքի մի քանի վայրերի հետ միասին, կարող էին մայրաքաղաքի բնակիչների համար ծառայել նաև իբրև հանգստավայրեր:

Քաղաքի բարեկարգման հիմնական նախապայմաններից մեկը ջրամատակարարումն էր, որն, անշուշտ, ունեցել է նաև պաշտպանական-ստրատեգիական նշանակություն: Անիում ժամանակի ընթացքում ստեղծ-

վել էր ցանցավորված ու բարեկարգ ջրամատակարարման համակարգ՝ ջրմուղ, պաշտպանական խանդակ, որի ջուրն օգտագործվում էր նաև ոռոգման համար, ջրի պաշարներ կուտակելու նպատակով՝ ջրամբար (միջնաբերդում), գաղտնի ուղի դեպի Ախուրյան (պաշարման և ջրմուղի խափանման ժամանակ ջուր վերցնելու համար) և այլն: Մեզ թվում է, որ Անին պատկանում էր այն քաղաքների թվին, որոնց ջրամատակարարումը համեմատաբար ավելի դյուրին էր և միջնադարյան ջրատեխնիկական տեսակետից իրագործելի. քաղաքը խիտ էր բնակեցված և բնակչության թվի համեմատությամբ քիչ տարածություն էր գրավում, քաղաքի գրաված տարածքն ընդհանուր թեքություն ունի դեպի հարավ-արևմուտք՝ դեպի Ախուրյանի ու Ծաղկոցաձորի գետախառնուրդը (քաղաքի ներսում ջուրն ինքնահոսով կարելի էր հասցնել նրա ամենատարբեր մասերը) և, վերջապես, Անիի շրջակայքում կային և՛ խմելու, և՛ տնտեսական նպատակների համար օգտագործելու ջրի բավական պաշարներ: Ընդ որում, խմելու ջրի բխման վայրերը քաղաքի տարածքի նկատմամբ ավելի բարձրադիր են և այդտեղից ջուրը ինքնահոսով (փակ խողովակներով) հասնում էր նույնիսկ դրա ամենաբարձր կետը՝ միջնաբերդ: Անիի խմելու ջրի հիմնական աղբյուրները գտնվում էին Առճո-Առիճ (Ալաջա) լեռան ստորոտին, Անիից մոտ 12 կմ հարավ-արևմուտք, թուրքական Սյոգությու գյուղի մոտ:

Դրանցով չէին վերջանում Անիի ջրի աղբյուրները: Դրանք բոլորը միասին առավելագույն դեպքում կարող էին բավարարել մեծ քաղաքի բնակչությանը միայն խմելու ջրով: Կենցաղային, տնտեսական ու այլ նպատակների համար քաղաքն օգտագործում էր Գեղիկլեր գյուղի գետակը, որի մի մասը տարված էր Հոռոմոսի վանքի հանդերը, իսկ մյուս մասը հոսում էր դեպի Անի, հատկապես՝ դեպի պաշտպանական խանդակը:

Անիի ջրմուղն ստեղծվել է ոչ միանգամից: Այստեղ տարբեր ժամանակներում կառուցվել են մի քանի ջրմուղներ, որոնց մնացորդները պեղումների ընթացքում հայտնաբերվել են հնագիտական տարբեր շերտերում ու տարբեր խորություններում, երբեմն ուղղակի իրար վրա: Հենց այդ նույն պեղումներն էլ ցույց են տվել, որ Անիի առաջին ջրմուղն ամենայն հավանականությամբ ստեղծվել է մայրաքաղաք հռչակվելուց հետո, Աշոտ Գ-ի օրոք կամ թերևս ավելի վաղ՝ Կամսարականների օրոք: Հավանական են համարում, որ միջնաբերդում հայտնաբերված ջրամբարը կառուցվել էր դեռևս Կամսարականների օրոք: Իսկ ջրամբարի գոյությունը ենթադրում է նաև ջրմուղի առկայությունը, որովհետև ջրամբարը ջրով լցնելու այլ աղբյուր միջնաբերդում (և քաղաքում) գոյություն չուներ:

Հնագիտական պեղումները ցույց են տվել, որ Անիի ջրմուղը կառուցված է եղել այն ժամանակվա ջրաշինարարական տեխնիկային համապատասխան: Խողովակների երկարությունը 51—54 սանտիմետր էր, տրամագիծը՝ 9—18 սանտիմետր: Սովորաբար օգտագործել են կարմիր գույնի կավի թրծած խողովակներ: Այն հատվածներում, որտեղ ճնշումն ավելի մեծ է եղել՝ ջրատար խողովակները մտցրել են քարե սալերի մեջ, որոնք ամրացվել են կրի կամ կավի խճախառն հատուկ շաղախով: Դրանով ջրմուղը զերծ է մնացել նաև բույսերի արմատների քայքայիչ գործունեությունից:

Գլխավոր ջրմուղի և դրա ճյուղավորումների համար ամենատարբեր տեսակի կավե խողովակներից բացի, օգտագործել են նաև երկաթյա խողովակներ: Վերջիններս, ինչքանով հայտնի է, սկսել են օգտագործել 11-րդ դարից: Անիում հայտնաբերված են մոտ 2 սանտիմետր տրամագծով երկաթե խողովակներ, որոնցով ջուր էր մղվում արքունական պալատի զանազան մասերն ու բաղնիքները: Այդ նույն ձևի երկաթե խողովակներ են գտնվել Ամբերդի բաղնիքի պեղումների ժամանակ (1935 թ.), ինչպես նաև Լոռի քաղաքի բաղնիքի շենքում:

Ջրամատակարարման տեսակետից ուշադրության արժանի կառույց է նաև միջնաբերդում հայտնաբերված ջրամբարը: Դրա պատերը շարված են քառակուսի աղյուսներից, իսկ հատակը՝ ծեփված կրով: Ըստ Թ. Թորամանյանի չափագրման, ջրամբարն ունեցել է 7 մ երկարություն և նույնքան էլ լայնություն, իսկ խորությունը հասել է 5 մ-ի (ունենալով մոտ 245 խոր մ տարողություն): Միջնորմով ջրամբարը բաժանված է եղել երկու մասի: Ենթադրվում է, որ ջրամբարը պետք է կառուցված լինի շատ հին ժամանակներում:

Հայաստանում բաղնիքները հնագույն պատմություն ունեն: Իսկ միջնադարյան Հայաստանի շատ թե քիչ նշանակալի ու մարդաշատ բնակավայրերը՝ բերդերը, քաղաքները (Գառնի, Ամբերդ, Լոռի, Վան, Դվին, Անի և այլն) բոլորն ունեին բաղնիքներ, որոնք իրենց ձևերով նման էին արևելյան երկրների բաղնիքներին: Օ. Խ. Ղալփախչյանը հատուկ ուսումնասիրությամբ դրանք բնութագրել է մանրամասնությամբ և տվել դրանց կառուցվածքային առանձնահատկությունները:

Անիում գոյություն ունեին երկու կարգի բաղնիքներ, որոնցից մեկը պալատականն էր, իսկ մյուսները՝ հասարակական օգտագործման բաղնիքները, որոնք գտնվում էին քաղաքի տարբեր մասերում: Քաղաքում հայտնաբերված են տարբեր վիճակում մեզ հասած 6 բաղնիքի մնացորդներ՝ մեկը միջնաբերդի պալատական բաղնիքն էր, մեկը գտնվում էր Արտաքին պարսպից դուրս, իսկ չորսը՝ բուն քաղաքում: Դրանց կա-

ռուցման ժամանակները, չնչին բացառությամբ, չեն ճշտված. հնարավոր չէ 10—11-րդ դարերում գոյություն ունեցած բաղնիքները տարբերել հետագայում կառուցվածներից՝ բացառությամբ պալատական բաղնիքի, որը Բագրատունիների թագավորության շրջանում (թերևս նույնիսկ Կամսարականների օրոք) արդեն գոյություն ուներ, և Տիգրան Հոնենցի 1215 թվականի արձանագրության մեջ հիշատակված բաղնիքի, որը նա նվիրել է իր կառուցած ս. Գրիգոր եղեկեցուն:

Մասնագետներն արձանագրում են, որ հայկական բաղնիքների ներքին կառուցվածքը բավական հաստատուն է եղել և դարեր շարունակ էական փոփոխություն չի կրել: Դրանց համալիրի մեջ պարտադիր կերպով մտնում էին հանդերձարանը, լողասրահը, վառարանի (տաքացման) բաժինը: Որոշ բաղնիքներ ունեցել են նաև երկրորդական հարմարություններ՝ լրացուցիչ լողասրահ, նախասենյակ և այլն:

Պալատական բաղնիքը Անիի մեզ հայտնի ամենահին բաղնիքն էր: Այն կարող էր կառուցված լինել դեռևս Կամսարականների օրոք, որը Բագրատունիների թագավորության շրջանում բարեփոխելով դարձրել էին պալատական բաղնիք: Այն բաղկացած էր 7 սենյակից՝ հանդերձարանից, նախասրահից, երկու լողարաններից ու դրանց միջև ձգվող նեղ սենյակից, որտեղ դրված է եղել ջրի կաթսան, իսկ տակը՝ վառարանը: Երկու մասի բաժանված բուն բաղնիքից բացի, համալիրն ունեցել է նաև մի շատ փոքր, հազիվ մեկ մարդ տեղավորող սենյակ-լողարան, իր առանձին վառարանով ու ծխնելույզով: Ենթադրվում է, որ այս վերջինս հատուկ շինված է եղել կանանց համար: Բաղնիքի հանդերձասրահը բավական ընդարձակ է եղել: Այստեղ հանվելուց ու հագնվելուց բացի, կարող էին հանգստանալ, որի համար դրված էին գորգերով ու օթոցներով ծածկվող 30 սանտիմետր բարձրությամբ «քարե սալիկներով բազմոցներ»: Բուն բաղնիքը բաժանված էր երկու անհավասար սենյակ-լողարանների, որոնցից փոքրն ունեցել է մեկ, իսկ մեծը՝ երկու ավազան: Դրանք երկուսն էլ ծեփված են եղել ջրամերժ շաղախով: Ծուխն անցնում էր հատուկ խողովակով, հատակի տակով, մինչև բաց օդ դուրս գալը՝ տաքացնելով լողարանները, իսկ կեղտաջուրը թեք հատակով հոսում էր դեպի մոտակա լեռնալանջը: Լավ նշմարվում են բաղնիքի տաք և սառը ջրի խողովակների հետքերը. տաք ջրի համար օգտագործել են երկաթե խողովակներ, իսկ սառի համար՝ կավե:

Հյուսիսային թաղամասում նշմարված բաղնիքի ավերակները գտնըվում են Սմբատյան պարսպի Ավագ դռան դեմ առ դեմ, Հովվի եկեղեցուց 200—300 մ հեռավորության վրա: Բաղնիքը երկու շարք սենյակներով արևմուտքից արևելք ձգվող երկար շինություն է եղել, հավանաբար բաղ-

կացած ավելի քան 12 սենյակներից, որոնցից հյուսիսային կողմի արևելյան 2—3 սենյակներն իրենց մի պատով և գմբեթների մի մասով 20-րդ դարի սկզբներին դեռ կանգուն էին:

Նոր քաղաքի հասարակական բաղնիքը, որ ավելի շքեղ ու հարմարավետ էր, քան Հյուսիսային թաղամասի նշված բաղնիքը, գտնվում էր Սմբատյան պարիսպների մոտ: Դրա առաջին նկարագրողը և հատակագիծը կազմողը ակադեմիկոս Հ. Աբիխն է: Ահա թե ականավոր գիտնականը ինչ է հաղորդում հասարակական այդ բաղնիքի մասին. շենքը գեղեցիկ է և կառուցված էր արաբական բաղնիքների նման, կենտրոնում գտնվում էր ընդարձակ սրահը, որի չորս կողմերում կային կամարակապ չորս սենյակներ, դասավորված խաչաձև և յուրաքանչյուրն ուներ դեպի սրահը տանող իր դուռը: Ջրատար կավե խողովակները նկատվում են պատի ամբողջ երկայնքով, դրանք իրար հետ միացրել են այն եղանակով, ինչ որ կավե խողովակները միացնում էին «հին հռոմեական այդ տիպի շենքերում»:

Քաղաքի հյուրանոցները հիշատակվում են նաև այլ ձևերով՝ խանապար (որ արտասանել են խանաբար, և հյուրասենյակներից բացի ունեցել են զանազան հարմարություններ առևտրի ու այլ նպատակների համար), իջևան կամ իջևանատուն, քարավանսարա, փնդուկ (որ միաժամանակ խանութ՝ պանդոկ էր նշանակում) և այլն: Դրանք ունեին տարբեր ծագում և, մեր կարծիքով, այդ տարբեր անվանումները ծագել էին այն բանի հետևանքով, որ վաճառաշահ քաղաքներ էին գալիս ամենատարբեր ազգություններին պատկանող վաճառականներ:

Վիմագիր արձանագրություններից հայտնի է դառնում, որ Անիում գոյություն են ունեցել բազմաթիվ հյուրանոց-խանապարներ, որոնք միաժամանակ առևտրի կետեր էին: Հյուրանոցները համարվում էին եկամտաբեր հիմնարկներ, և դրանք պատկանում էին բարձր ազնվականությանն ու մեծահարուստներին, իսկ նրանք էլ հաճախ իրեց այդ հյուրանոց-խանապարները նվիրում էին եկեղեցիներին: 10—11-րդ դարերում առևտրի, վաշխառության, կապալառության միջոցով հարստացած «մեծատուն» դարձածներ դեռևս քիչ կային և եղածներն էլ համեմատաբար այնքան «աղքատ» էին, որ քաղաքի տնտեսական կյանքում դեռ վճռական դեր չէին խաղում: Մեծատունները կենտրոնական դեմքեր դարձան հատկապես 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարում: Դրանց տիպիկ ներկայացուցիչներից մեկը Տիգրան Հոնենցն էր, որի միայն սեփական հյուրանոցների թիվը չորսից պակաս չէր:

Անիի՝ մեծ թիվ կազմող հյուրանոց-խանապարների կառուցման ժամանակները չեն ճշտվել: Բագրատունիների թագավորության ժամանակ-

ներում դրանց մեծ մասն արդեն գոյություն ուներ: Զաքարյանների օրոք հայտնի դարձած հյուրանոցներից շատերը կառուցվել էին 10—11-րդ դարերում, իսկ 12-րդ դ. վերջին և 13-րդ դ. սկզբներին՝ ենթարկվել ժամանակի համապատասխան վերափոխությունների: Մեր կարծիքով, այդ կարգի հյուրանոցներից էր նաև երկու մասից բաղկացած (Հյուսիսային և Հարավային) այն շքեղ հյուրանոցը, որը վերագրում են 12—13-րդ դարերին: Բագրատունյաց շրջանի բազմաթիվ հյուրանոցներից միայն մեկի մասին կա գրավոր վկայություն, որը գտնվում էր ս. Փրկիչ եկեղեցու պատի վրայի վիմագիր արձանագրություններից մեկում (Ապլղարիբ Պահլավունու արձանագրություն) և վերաբերում է 11-րդ դարի առաջին կեսին: Անիի հետ էր կապված դրա մոտակայքում՝ Չրփլիի (այժմ՝ Ներքին Ջրառբի, գյուղ ՀՍՍՀ Անիի շրջանում) քարավանատունը Ախուրյան գետի ափին, Անիից դեպի Հայաստանի հյուսիսային գավառներն ու Վրաստան տանող գլխավոր ճանապարհի վրա:

Չնայած պատմական համեմատաբար կարճատև գոյությանը, Անիում եղել են հասարակաց մի քանի ընդարձակ գերեզմանոցներ՝ Գլիձորի կողմում, Հյուսիսային արվարձաններում, որի գրաված տարածքը մեկ քառակուսի կմ-ից ավելի էր, Ախուրյանի մեծ կամուրջի դիմաց՝ գետի ձախ կողմում և այլն: Վերգետնյա գերեզմանոցներից բացի, բազմաթիվ դամբարաններ կային Այրային Անիում, առանձնապես Ծաղկոցաձորի ժայռափոր թաղամասերում: Բարձր խավի համար գերեզմանոց կար նաև քաղաքի ներսում: Իսկ միջնաբերդում, ինչպես ենթադրվում է, հատուկ գերեզմանոց կար արքայազն մանկանց համար: Մատենագիրների անուղղակի հիշատակություններից կարելի է եզրակացնել, որ միջնաբերդում էր գտնվում նաև Բագրատունի թագավորների գերեզմանոցը, թեպետ ոմանք պնդում են նաև, որ դրանց գերեզմանոցը գտնվում էր ոչ թե այդտեղ, այլ Հոռոմոսի վանքում, պարզապես նկատի ունենալով այդտեղ գտնված մի անշուք գերեզմանաքար, որի վրա արվեստից իսպառ զուրկ տառերով գրված է եղել «Աշոտ Ողորմած թագավոր Հայոց»: Բուն քաղաքի այդ ժամանակների հանգստարաններից ուշադրության արժանի է հատկապես Գագիկ 1-ինի կնոջ՝ Կատրամիդեի գերեզմանը: Այն գտնըվում էր Մայր տաճարի մոտ, դրա արևելյան կողմում, 1893 թ. պեղումների ընթացքում նկատված մի փոքրիկ մատուռին կից: Թագուհու գերեզմանը բացելով պարզվել է, որ այն արդեն փորփրել էին հարստություն և ոսկի որոնող բախտախնդիրները, բայց կմախքը մնացել էր տեղում:

Քաղաքի բարեկարգման, նրա պաշտպանունակության բարձրացման, կոմունալ պայմանների ու սանիտարական-առողջապահական վիճակի բարելավման վրա կատարվող ծախսերը Եվրոպայի, այսպես կոչված, ա-

զատ քաղաքներում հիմնականում կատարվում էին քաղաքի եկամուտներից: Իսկ քաղաքի եկամուտները ստացվում էին չորս հիմնական աղբյուրերից՝ քաղաքային համայնական սեփականությունից, դատական եկամուտներից և ուղղակի ու անուղղակի հարկերից: Առաջինի մեջ հիմնականում մտնում էին կոմունալ հողերից օգտվելու համար գանձվող հարկը և համայնական արոտավայրերից ու խոտհարքներից օգտվելու համար տրվող տուրքը: Երկրորդը հիմնականում բաղկացած էր քաղաքային դատարանի կողմից վերցվող տուգանքի մի մասից, իսկ երրորդը՝ մաքսից և այլ մուծումներից:

Սակայն Հայաստանի (մանավանդ 10—11-րդ դարերի) միջնադարյան քաղաքները (թերևս բացառյալ մի քանի «ազատ» քաղաքների՝ Արծն, Բերդկունք և այլն, որոնք դարձյալ իրենց վիճակով հեռու էին ազատ կամ անկախ լինելուց) ֆեոդալական քաղաքներ էին, գտնվում էին ֆեոդալական հայրենատիրական հողի վրա և կազմում էին ֆեոդալի սեփականությունը: Այս պատճառով էլ քաղաքի եկամուտի բոլոր աղբյուրները, հատկապես ուղղակի և անուղղակի հարկերից ստացվող եկամուտները, հիմնականում պատկանում էին ֆեոդալին կամ թագավորին, եթե խոսքը վերաբերում է մայրաքաղաքին, ինչպես էր Անին Բագրատունիների օրոք: Այդ պատճառով էլ քաղաքի՝ վերը նշված հոգսերը հիմնականում ընկած էին ոչ թե քաղաքի «երիցանու», այլ քաղաքի տերերի և մեծահարուստների վրա:

Նեղ իմաստով քաղաքի ծախսերը Արևմտյան Եվրոպայի միջնադարյան քաղաքների նման բաղկացած էին երկու գլխավոր հատվածից՝ քաղաքի ամրությունների վրա և ոստիկանության պահպանման համար կատարվող ծախսերից: Ըստ երևույթին 10—11-րդ դդ. Անիում քաղաքային որոշ ծախսումներ էին կատարում նաև ժողովրդական կրթության ու աղքատանոցների վրա:

## 4. ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈԹՈՂՆԵՐԸ

961—1045 թվականներին Անիում կերտվել են տասնյակ ճարտարապետական մոնումենտալ կառույցներ՝ պալատներ, կոթողներ, բուրգավոր պաշտպանական պարիսպներ, սքանչելի կամուրջներ, անկրկնելի տաճարներ ու եկեղեցիներ:

Անիում մեզ հայտնի են տարբեր կարգի հինգ պալատներ, որոնցից մեկը, որ գտնվում էր միջնաբերդում, արքայական պալատն էր, իսկ մյուս չորսը գտնվում էին բուն քաղաքում և իշխանական պալատներ էին: Դըրանք պայմանականորեն կոչվել են Պարոնի (կամ Իշխանի), Սարգսի, Ապլղարիբի և Վարդապետի: Պարոնի, Սարգսի և Վարդապետի պալատները կառուցվել են Բագրատունյաց թագավորության անկումից հետո, իսկ Ապլղարիբի պալատի մասին մեզ հասած արձանագրությունից բացի գրավոր այլ տեղեկություններ կամ ավերակների հետքեր հայտնի չեն:

Անիի միջնաբերդը Բագրատունիների արքայական պալատի հետ միասին պեղվել է 1907 և 1908 թվականներին: Պալատը տեղադրված էր միջնաբերդի ամենաբարձր մասում և գրավում էր նրա մեծ մասը:

**Արքայական պալատը** ստեղծվել էր ոչ միանգամից: Այստեղ հայտնաբերվել են նույնիսկ 5—7-րդ դդ. վերաբերող կառույցների մնացորդներ: Սակայն այն իր հիմնական ձևավորումն էր ստացել Բագրատունիների օրոք՝ 10—11-րդ դարերում, Զաքարյանների ժամանակ ենթարկվելով զգալի վերափոխությունների, ինչպես նաև քաղաքի հետ միասին մի շարք անգամ ավերվել է արտաքին թշնամիների կողմից և նորից վերականգնվել, բայց ոչ նախկին ձևով, այլ տվյալ ժամանակի պահանջներին ու ճաշակին համապատասխան: Այնպես որ, արքայական պալատի համալիրը ոչ միայն բարդ էր իր բովանդակած կառուցվածքների զանազանությամբ, այլև ժամանակի ընթացքում կրած փոփոխություններով, շինարարական-ճարտարապետական տարատեսակ շերտերով: Բուն քաղաքի համեմատությամբ միջնաբերդն ու արքայական պալատը ավելի շատ են ենթարկվել ավերման, ոսկի և հարստություններ որոնող բախտախնդիրների քանդումներին, տարբեր ժամանակներում պալատի տեղում հաստատված հովվական ցեղերի «վերակառուցումներին», որոնք շարունակվում էին մինչև 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմը և Կարսի մարզի միացումը Ռուսաստանին: Այստեղից էլ միանգամայն հասկանալի են դառնում Թ. Թորամանյանի այն խոսքերը, թե՝ «Եթէ կէս դար առաջ ալ Անիի մարդաբնակութիւնը, մենք ապահովաբար չպիտի գտնէինք այն սակաւաթիւ նմուշներն ալ, որոնք հրաշքով պահուած էին իբր ապացոյց Բագրատունիներու մեծութեան և գեղարուեստասէր ոգուն, թեև այս վերջիններն ալ սաստիկ եղծուած ու անհայտանալու նախօրեակին մեջ հազիվ հասած մեզի»: Այդ մասին ավելի խիստ է արտահայտվել պեղումների ղեկավարը՝ Ն. Մառը: Նա գրում է. «Հին պալատից պահպանվել են միայն ողորմելի մնացորդներ, որովհետև այն բազմաթիվ անգամ ավերել ու վերափոխել են, վերջապես, հիմնահատակ

ավերել ու այրել են թշնամիները, իսկ այնուհետև նաև կողոպտել են և՛ բարեկամը, և՛ ոսոխը»:

Այդպիսի պայմաններում գրեթե անհնար է եղել վերականգնել Բագրատունիների ժամանակվա արքայական պալատի շատ թե քիչ արժանահավատ պատկերը: Այնտեղ բնականաբար չպետք է հայտնաբերվեին դրա նախնական վիճակի շքեղությունները՝ պատմագիրների նկարագրած ոսկեզօծ սրահները, որմնանկարներով զարդարված գեղաքանդակ դահլիճները («տաճարները») և արքայավայել մյուս կառուցվածքները: Բայց և այնպես մի կերպ պահպանված հնագիտական մնացորդները, «դրա այլանդակված ու հոշոտված բեկորները» թույլ են տվել արքայական պալատի համալիրը բնութագրել բավարար խորությամբ և վերականգնել հատակագիծն ու նկարագրել համալիրի մեջ մտնող կառույցները՝ բուն ապարանքը, եկեղեցիները, բաղնիքը, ջրամատակարարման համակարգը, պաշտպանական կառուցվածքները և այլն, և այլն:

Արքունի ապարանքը իր օժանդակ շենքերով գրավում էր 3500—4000 քառ մ տարածք, որը պարսպապատ էր և ամենաբարձր կետում գտնվում էր բուն պալատը, որին կից եղած շինություններից ուշադրության արժանի էին 7 մեծ ու փոքր եկեղեցիները: Դրանք բոլորը կառուցվել էին մինչև 11-րդ դարը ներառյալ: Եկեղեցիների թվում էր նաև կանգուն մնացած՝ պալատական կոչված եկեղեցին՝ կառուցված Կամսարականների օրոք (7-րդ դ.):

Պեղումների ընթացքում, միջնաբերդի ամենաբարձր մասում հայտնաբերվել է մաքուր ու շքեղ շարվածքի մի հատված և պարզվել է, որ դա պալատի վերին հարկից պահպանված միակ կտորն է: Ներքին հարկը բաղկացած էր մի շարք սենյակներից, որոնք հիմնականում ունեցել են տնտեսական նշանակություն. դրանք օգտագործվել են որպես պահեստներ, գանձատներ և այլն:

Արևելքից արևմուտք 59 մետր երկարությամբ ձգվող միջանցքը պալատը բաժանում էր երկու մեծ հատվածի՝ հարավայինի և հյուսիսայինի: Հարավայինը, որն անհամեմատ ավելի վատ է պեղված, իր մեջ ընդգրկում էր նաև պալատական եկեղեցին: Պալատի գլխավոր մուտքը գտնվում էր արևմուտքում, որտեղից նշված միջանցքը կարելի էր մտնել երկու ճանապարհով՝ լայն դարպասով, որը հիմնական մուտքն էր, և գաղտնի մուտքով, որտեղով դեպի վերին հարկ բարձրանում էին ժայռակերտ աստիճաններով:

Պալատի հարավային կեսի դահլիճի հատակը պատած էր սրբատաշ քարերով: Նրա արևմտյան կողմի փոքրիկ սենյակում պեղումների ընթացքում հայտնաբերվել են միջնորմի համար օգտագործված զարդանախշ

տախտակներ։ Հատակի տակ հայտնաբերվել է ջրմուղի ցանց՝ կավե և երկաթե խողովակներով, ինչպես նաև աղյուսով շարված ջրավազան։ Այդ նույն տեղում գտնված են 10-րդ դարի վերջերին վերաբերող քարե սյուների մնացորդներ։ Այդ բոլոր գտածոները հիմք են դարձել ենթադրելու, որ հարավի այդ դահլիճը իր սկզբնական վիճակում եղել է շատ շքեղ և ունեցել է ավելի բարդ հատակագիծ։

Արևմուտքից արևելք ձգվող միջանցքից հյուսիս, առաջին հարկում գտնվում էր խաչաձև դահլիճը, որը բաղկացած էր կենտրոնական սրահից և խաչաձև դասավորված չորս թևերից։ Դահլիճի հարավային թևի մոտ հայտնաբերվել են բազմաթիվ սենյակ-պահեստներ, իսկ հյուսիսային և արևելյան կողմերում՝ քանդակազարդ տախտակներ և գերաններ։

Խաչաձև դահլիճը խնամքով երեսպատված է եղել սրբատաշ քարերով։ Հանդիսասրահները գտնվում էին պալատի հյուսիսային կեսի թևերում և թվով երեքն էին։ Դրանցից մեկը տեղադրված էր հյուսիս-արևմըտյան անկյունում, Գագկաշեն եկեղեցու դեմ առ դեմ, երկրորդն արևելքում էր և նայում էր դեպի Մայր տաճարն ու Ախուրյանի ձորը, իսկ երրորդը գտնվում էր պալատի հյուսիս-արևելյան անկյունում և նայում էր դեպի իրենից ցած գտնվող բուն քաղաքը։ Այդ հանդիսասրահներն ունեին տարբեր նշանակություն։ Պալատի վերին հարկերի հատակը ամենուրեք բարձր էր մյուս սենյակների (որոնց թվում և խաչաձև դահլիճի ու բաղնիքի) տափակ կտուրներից։

Հանդիսասրահները կառուցված և կահավորված էին տարբեր ձևով ու ոճով։ Դրանցից մեկը պարզ էր, առանց զարդարանքների, երկրորդը զարդանախշված էր, իսկ երրորդը՝ բազիլիկ դահլիճ էր, ունենալով երկշարք սյուներ, որոնցից պահպանվել էին միայն մեկ շարքի սյուների խարիսխները։ Այստեղ պեղումների ընթացքում նկատվել են հրդեհի հետքեր։ Բազիլիկ դահլիճի պատերը սվաղված էին և նկարազարդ։ Այդ դահլիճը, Ն. Մառի արտահայտությամբ, «ճարտարապետական մանրամասնություններով մեծ հետաքրքրություն» է ներկայացնում։

1908 թ. հնագիտական պեղումների ընթացքում բավական մանրամասնությամբ ուսումնասիրվել են բազիլիկ դահլիճի տակ գտնվող նկուղային սենյակները։ Այստեղ հայտնաբերվել են վերին հարկի բազիլիկ դահլիճի ճարտարապետական ներքին զարդարանքների մնացորդներ, սըվաղի վրա արված նկարների հետքեր, զարդանախշ փայտե մասեր և այլն։ Եվ այդ բոլորից Ն. Մառը եկել է այն եզրակացության, որ Բագրատունիների պալատի շքեղության մասին պատգամների հաղորդումները ոչ թե ավանդություն կամ առասպել է, «այլ իրականության արտացոլում»։ Հյուսիս-արևմտյան դահլիճն ուներ 20 մ երկարություն և 10 մ լայնություն։

Անիի անկումից հետո, դրա ավերակների շրջանում նոր բնակություն հաստատողները նախկին դահլիճը միջնորմով բաժանել էին չորս սենյակի: Դահլիճը միանգամայն զուրկ էր վերադիր զարդերից, որմնանկարներից, գիպսե սալիկներից, բայց ճարտարապետական կառուցվածքով շատ գեղեցիկ էր՝ կամարներով ու որմնասյուներով զարդարված:

Սելջուկ թուրքերը (ինչպես և արաբները) քրիստոնեական եկեղեցիները ավերելու ու կողոպտելու հետ միասին, դրանց մի մասը դարձնում էին մզկիթ, երբեմն առանց դրա ընդհանուր կառուցվածքին ձեռք տալու, այլ պարզապես եկեղեցու վրա խաչի փոխարեն մահիկ դնելով: Այդպիսի դեպքերը սովորական էին դարձել հատկապես Դվինում և Անիում: Այդ եղանակով է «ստեղծվել» նաև Անիի ամենահայտնի մզկիթը՝ Մանուչեի մզկիթը, որը համարվում է քաղաքի լավագույն հուշարձաններից մեկը և բավական բարվոք վիճակում հասել է մինչև մեր օրերը:

Մանուչեի մզկիթը գտնվում է հին քաղաքում, Ախուրյանի ձորի պռունկին, Մայր տաճարից ոչ հեռու, Ախուրյանի մեծ կամուրջի վրայով քաղաք մտնող հայտնի ճանապարհի վրա: Դրա ներքևի մասը՝ առաջին և երկրորդ հարկերը կառուցվել են 10-րդ դարի վերջերին, այլ տեղից բերված կարմիր քարից: Իսկ վերևի մասն ու մինարեն հետագայում ավելացնելով դարձրել են մզկիթ՝ այն կոչելով Անիի իշխողներից մեկի՝ Մանուչեի անունով:

Այդ սյունազարդ, կամարակապ, երկհարկանի շենքը, որի երկրորդ հարկի կենտրոնում գտնվում է նույնքան գեղեցիկ ընդարձակ դահլիճը, ըստ ենթադրությունների, եղել է մաքսատուն, պահակատուն, եկեղեցական-պաշտամունքային շինություն՝ ժամատուն, կաթողիկոսարան, վարչական կամ նման մի շենք: Դժվար է ասել դրանցից որն է ավելի հավանական: Միայն նկատի ունենալով շենքի շքեղությունը, դրա շինարարական քարն ամբողջությամբ դրսից բերելը, քաղաքի ամենաաչքի զարնող կետերից մեկում գտնվելը, ընդարձակությունը և այլ հանգամանքներ, պետք է ենթադրել, որ իրոք այն եղել է քաղաքի կարևոր նշանակություն ունեցող շենքերից:

Շենքի զարդը կազմում էր երկրորդ հարկի 28×33 մ մեծություն ունեցող ընդարձակ դահլիճը, որի երկու կողմերը սյունազարդ է և մասնատված առանձին բաժինների: Ունի դեպի Ախուրյանի գեղատեսիլ ձորը նայող չորս լայն լուսամուտներ: Շատերի կարծիքով, դրա դահլիճները և, ընդհանրապես, մզկիթի նախնական շենքը նմանության շատ գծեր ունի Հոռոմոսի վանքի գավիթի հետ և ավելի հավանականն այն է, որ այն եղել է ոչ թե կաթողիկոսարան կամ ժամատուն, այլ աշխարհիկ նշանակության շենք:

Անիից Հոռոմոս տանող ճանապարհին, քաղաքից 4—5 կմ հեռավորության վրա, իշխող տեղում կառուցված են մի զույգ աշտարակներ, որոնց հիմնադրման ժամանակը և որպիսությունը նյութերի ու վկայությունների բացակայության պատճառով չի պարզաբանված։ Պ. Էժեն-Պոռեն, որ ճանապարհորդել է 1837 թվականին, այն կոչում է զանգակատուն և նշում, որ այդ աշտարակները միացած են եղել կամարով (հաղթական կամար էր), կառուցված քաղաքի մուտքի մոտ՝ Բագրատունի որևէ թագավորի կողմից ի նշան իր տարած հաղթանակի։ Ոմանք էլ առարկում են այդ կարծիքի դեմ, եռահարկ աշտարակները համարելով գմբեթավոր զանգակատներ, որոնք ծառայել են իբրև զինվորական դիտանոցներ։ Ժողովրդական ավանդության համաձայն, երբ Բագրատունի թագավորը Անիից Հոռոմոս էր գնում, այդ աշտարակների վրա գտնվող պահապանները հնչեցնում էին դրանց զանգերը՝ վանքի հոգևորականությանն ազդարարելով թագավորի այցի մասին։

Զույգ աշտարակները մեզ են հասել կիսակործան վիճակում։ Դրանք կառուցված են կարմրավուն քարից, եռահարկ են, հիմքի մասում իրար դեմ առ դեմ ունենալով մեկական դուռ։ Գմբեթավոր են և գմբեթները հանգում են չորսական փոքրիկ սյուների վրա։

Ռուս հայտնի ճանապարհորդ Մուրավյովը, որ այնքան արժեքավոր տեղեկություններ է հաղորդում Անիի ավերակների մասին, մի մութ երեկոյան այդ խորհրդավոր աշտարակներին ու ավերակ քաղաքին նայելով խորհել է, որ քաղաքի մուտքը հանդիսացող զույգ աշտարակների կամարների վրա հարմար կլիներ գրել Դանթեի «Աստվածային կատակերգության»՝

> «Ինձնով են գնում զեհենն ահավոր
> Ինձնով են գնում հոգվոց հարատանջ
> Ինձնով են գնում մարդկանց ուխտավոր»

տողերը հետևյալ ձևափոխմամբ ու հավելումով.

> «Ինձնով է անցնում ճանապարհը դեպի ցավալից քաղաքը,
> Ինձնով է անցնում ճանապարհը դեպի հավիտենական վշտերը,
> Ինձնով է անցնում ճանապարհը դեպի անհետացած մարդկանց ազգը.
> Բոլոր հույսերդ կտրի՛ր դու, որ անցնում ես ինձնով»։

**Բուն քաղաքում ռազմա-ճարտարապետական կարևոր հուշարձանները առաջին հերթին նրա պարիսպներն են՝ Ներքին կամ Աշոտյան, Մեծ, Արտաքին կամ Ամբատյան պարիսպները։**

Աշոտյան կամ **Փոքր** պարիսպը կառուցել է Աշոտ 3-րդը **964** թվականին՝ **Անին մայրաքաղաք հռչակելուց երեք տարի անց։ Նոր ժամա-**

նակներում, մինչև ընդհուպ Անիի պարբերական պեղումների սկսվելը, Աշոտյան պարիսպները մնում էին անհայտ բոլոր ճանապարհորդների ու հեղինակների համար։ Ավելին, շատերը Աշոտյան պարիսպներ էին համարում Սմբատյան կրկնաշարք պարիսպների ներքին շարքը, առանց նըկատի ունենալու Մատթեոս Ուռհայեցու այն վկայությունը, ըստ որի Աշոտյան և Սմբատյան պարիսպների միջև եղած հեռավորությունը հասնում էր մեկ նետընկեցի, մինչդեռ Սմբատյան պարսպի երկու շարքերի միջև եղած հեռավորությունը չնչին էր։

Այդ հարցը միանգամից պարզվեց 1892—1893 թթ. պեղումների ընթացքում։ Հայտնի դարձավ, որ Աշոտյան պարիսպը ձգվում էր միջնաբերդի ստորոտով, Ախուրյանի և Ծաղկոցաձորի կազմած պարանոցի ամենանեղ մասում, հարավ-արևելքից հյուսիս-արևմուտք, Հին քաղաքը անջատելով Նորից, որը փռված էր Աշոտյան և Սմբատյան պարիսպների միջև։ Աշոտյան պարիսպների ավերակներն ամբողջությամբ ծածկված էին հողի հաստ շերտի տակ և ի հայտ եկան միայն պեղումների շնորհիվ։

Աշոտյան պարիսպները շարված էին ամուր կարմիր քարից, որը բերված էր դրսից։ Շարվածքը կատարվել է մեծ վարպետությամբ, չնայած քարերը համեմատաբար վատ են մշակված։ Վարդան Արևելցու վկայության համաձայն, Աշոտը պարիսպների աշտարակներում կառուցել էր եկեղեցիներ (մատուռներ), որ հաստատվեց ուսումնասիրությունների ընթացքում։

Աշոտյան պարիսպներն առանձնահատուկ հետաքրքրություն են ներկայացնում առաջին հերթին հենց նրանով, որ դրանք պահպանել են իրենց նախնական ճարտարապետական ոճն ու տեսքը։ Լիովին ընդունելի է նախորդ ուսումնասիրողների այն կարծիքը, թե Սմբատյան պարիսպները կառուցելուց հետո Աշոտյան պարիսպները կորցրել են իրենց նախկին կարևոր նշանակությունը, իսկ հետագայում, առանց էական փոփոխություններ կրելու, ավերվել ու անցել են հողի տակ։

Իր պաշտպանական նշանակությամբ և ճարտարապետական-տեխնիկական կառուցվածքով Անիի եզակի հուշարձաններից մեկը Մեծ կամ Սմբատյան պարիսպն էր, որի կառուցման մասին վկայություններ ունեն հայ պատմագիրներ Ստեփանոս Ասողիկը, Վարդան Արևելցին, Կիրակոս Գանձակեցին, Սամվել Անեցին և ուրիշներ։

Սմբատյան պարսպի կառուցումը տևել է 8 տարի և ավարտվել է 989 թվականին։ Դրա կառուցումը կապված էր մեծ դժվարությունների հետ։ Այդպիսի մեծ կառույց ստեղծելու համար պահանջվում էին ոչ միայն հըսկայական միջոցներ և աշխատանք, այլև տեղանքի մանրամասն ուսումնասիրություն, ընդարձակվող քաղաքի հատակագծային առանձնահատկությունների ճիշտ օգտագործում։ Մի փոքր առաջ գնալով ասենք, որ

Սմբատ 2-րդի օրոք կերտված ինժեներական այդ բարդ կառուցվածքը իրեղեն ապացույց է Բագրատունիների շրջանի Հայաստանում շինարարական արվեստի բարձր զարգացման, և հետագայի քարապատումները, նոր բուրգերի ավելացումը, առանձին հատվածների պատերի բարձրացումը և քանդակազարդումները, որ հիմնականում կատարվել էին Զաքարյանների իշխանության օրոք, իրենց կատարման բարդությամբ, աշխատանքի ծավալով ու ինժեներական-շինարարական տեխնիկայով, մեր կարծիքով, չեն կարող համեմատվել ընդամենը 8 տարվա ընթացքում ստեղծված այդ երկշարք ու երկար ձգվող, բուրգերով ավելի ամրացված պարսպի հետ: Այդ պարիսպը իրավացիորեն պատմագիրների մոտ մինչև վերջ էլ հիշատակվում է Սմբատի անունով: «Գեղեցկուհին» Սմբատի ժամանակվա էր, որը նոր «հագուստներ» ու «զարդեր» կրեց Զաքարյանների օրոք:

Սմբատյան պարիսպը նոր քաղաքը բաժանում էր Հյուսիսային արվարձաններից: Այն կիսաբոլորակ ձևով, բայց, ընդհանուր առմամբ, ձըգվում էր հարավ-արևելքից հյուսիս-արևմուտք, քաղաքի պաշտպանական տեսակետից ավելի վտանգավոր՝ Գլիձոր-Ծաղկոցաձոր հատվածում ունենալով երկու շարք:

Սմբատյան պարսպի երկարությունը ավելի քան 2500 մ էր: Տեղ-տեղ այն ձգվում էր ուղիղ գծով, տեղ-տեղ էլ՝ ոլորաններով: Պարսպի երկու շարքերի միջև եղած հեռավորությունը տարբեր հեղինակների մոտ տարբեր է՝ ոմանք համարել են 20 քայլ, ոմանք՝ 17 ոտնաչափ, ոմանք՝ 7 մ և այլն: Իսկ իրականությունն այն է, որ տարբեր հատվածներում դրանց միջև եղած հեռավորությունը տարբեր է եղել: Արտաքին շարքը, որն ավելի բարակ ու ցածր է եղել, քան ներքինը, գրեթե չի պահպանվել:

Սմբատյան պրասպի բարձրությունը հասել է առնվազն 8—10 մ-ի, իսկ լայնությունը՝ 1 մ-ի: Պատերը շարված են հրաբխային քարերով՝ մածուցիկ կրաշաղախով, կազմելով միաձույլ զանգված, որը դրսից և ներսից պատած է սրբատաշ քարերով: Տեղում կատարված ուսումնասիրությունների շնորհիվ պարզվել է, որ պարիսպը վերին մասում վերջացել է ատամնաշարով: Այդպիսի ատամնաշարի ավերակներ էին պահպանվել Դվինի, Ավագ և Կարսի դռների մոտակայքում՝ և՛ բուն պարսպի որոշ տեղերում, և՛ մի քանի բուրգերի վրա:

Սմբատյան պարիսպները նույնիսկ մեզ հասած ավերակ վիճակում շատ մեծ տպավորություն են թողնում դիտողի վրա, անկախ նրա մասնագիտությունից: Բանաստեղծական զեղում չի կարելի համարել Լեոյի այն արտահայտությունը, թե՝ «Քաղաքի համար այդ պարիսպը միայն պաշտպանություն չէր, այլև զարդարանք»: Անին պճնող շատ հուշարձաններ կային, բայց մեծ տարածության վրա քաղաքը գոտևորող Սմբատյան

Կրկնաշարք պարիսպներն իրենց կիսաբոլորաձև ու քառանկյունի տասնյակ աշտարակներով ուղղակի այն դարձնում էին իմալիչ։ Պարիսպները երկու կողմերից քարապատված են դեղնավուն, կարմիր, սև, սպիտակ քարերով և այդ տարբեր գույնի քարերով դրա վրա ստեղծել են զանազան զարդեր, շախմատաձև շարվածքներ, խաչեր, բարձրաքանդակներ, ժապավենաձև ձգվող գոտիներ։ Պարիսպներին առանձին շքեղություն են տալիս տասնյակների հասնող բուրգերը, որոնցում կային պարսպի պահակախըմբերի համար ստեղծված զորանոցներ, որոշ բուրգերում՝ մատուռներ, նըման Աշոտյան պարիսպների աշտարակների փոքրիկ եկեղեցիներին։ Բարձրաքանդակներից առանձնապես ուշադրության արժանի է Ավագ դռան մոտ, ներքին պարսպաշարքի վրա քանդակված վազող առյուծի (ըստ ոմանց՝ վագրի կամ հովազի) բարձրաքանդակը, որը սովորաբար համարում են Անի քաղաքի զինանշանը։ Աշտարակներից մեկի վրա պահպանվել են ցուլի և բացված երախով վիշապների բարձրաքանդակներ։ 19-րդ դ. ճանապարհորդները վկայում են, որ Սմբատյան պարիսպների վրա քանդակված է եղել մի մարդ, ինչ որ կառուցվածքի մանրաքանդակ ձեռքին։ Հավանական է համարվում, որ այդ քանդակը պատկերել է պարիսպները կառուցող Սմբատ 2-րդին։ Հետագայում այն անհետացել է և անհնար է դարձել պարզել իսկությունը։

Անի այցելող բոլոր գիտնականները, ճանապարհորդները, պաշտոնական անձինք, հետաքրքրասերներն ու զբոսաշրջիկները առանց բացառության հիացել են Սմբատյան հոյակապ պարիսպներով։Ականավոր գիտնական Հ. Աբիխը, որը աշխարհի տեսած անձնավորություն էր, Սըմբատյան պարիսպներն իրենց մեծությամբ ու ամրությամբ համազոր է համարում Հռոմի հայտնի պարիսպներին, նշելով նաև առաջինների (և ընդհանրապես Անիի բոլոր կառուցվածքների) շարվածքի անգերազանցելի վարպետությունը։ Սմբատյան պարիսպների շարվածքի մեծ վարպետությամբ հիացել է նաև Լինչը։ Իսկ Ա. Անդրեևը պարիսպն ուղղակի կոչում է «արտիստական կառույց»։

19-րդ դ. հեղինակներն Անիում նշում են 10 դուռ, որից միայն Սըմբատյան պարիսպներում՝ 7 դուռ՝ Ավագ, Գլիձորի, Ծաղկոցաձորի, Դվինի (կամ Երևանի), Կարսի («Կարաց դուռն») և այլն։ Ընդ որում, Սմբատյան պարիսպների ներքին և արտաքին շարքերի դռները գտնվում էին ոչ թե ուղղակի դեմ առ դեմ, այլ շեղ վիճակում, որ եփնում էր ռազմական պաշտպանական նպատակներից։ Դրանով քաղաքի պաշտպանները հնարավորություն էին ստանում քաղաքի վրա հարձակվող թշնամուն կաշկանդել երկու պարսպաշարքերի նեղ «միջանցքում» և հասցնել կործանիչ հարվածներ։ Դռները կամարակապ էին, պարզ ու անզարդ։ Սովորաբար

դրանցից յուրաքանչյուրի երկու կողմերում բարձրանում էին եռահարկ աշտարակները՝ ավելի ուժեղացնելով դռների պաշտպանությունը:

Սմբատյան պարիսպները մեզ են հասել մի շարք անգամ վերակառուցված, վերանորոգված, նոր աշտարակներով համալրված տեսքով՝ ավերված վիճակում: Ուսումնասիրողները միահամուռ նշում են, որ Անիի Արտաքին պարսպում նկատվում է տարբեր ժամանակների 3—4 շերտ: Սակայն այդ կարող է վերաբերել ոչ թե ամբողջ պարսպին, այլ նրա առանձին հատվածներին ու բուրգերին, որոնք ժամանակի ընթացքում կարիք են զգացել այդպիսի նորոգումների, վերակառուցումների ու նոր կառուցումների:

Ճիշտ է նկատում ճարտարապետ Վ. Հարությունյանը, որ Անիի գրաված տարածքի երեք կողմերը ձորերով ու կիրճերով կտրտված լինելու հետևանքով անհրաժեշտություն էր առաջացել կառուցել մեծ ու փոքր մի շարք կամուրջներ, որոնք քաղաքը կապում էին շրջակայքի ու հեռավոր վայրերի հետ: Ախուրյան գետի վրա կառուցված էին հինգ միակամար քարաշեն մեծ կամուրջներ, որոնցից երկուսը՝ Անիի տարածքում:

Անին ուներ հարյուրավոր մեծ ու փոքր եկեղեցիներ, որոնց մեծ մասը արդեն գոյություն ուներ 10—11-րդ դարերում: Դրանցից էին Մայր եկեղեցին, Գագկաշեն ս. Գրիգորը, Առաքելոց եկեղեցին, ս. Փրկիչը, Ապուղամրենց ս. Գրիգորը, Հովվի եկեղեցին և այլն, որոնք զարդարում էին Բագրատունիների շքեղ մայրաքաղաքը:

Մայր տաճարը Անիի յուրատեսակ խորհրդանիշն էր: Իբրև այդպիսին Մայր տաճարը տեղադրված էր մայրաքաղաքի բոլոր կողմերից երևացող տեղում, որտեղից իր հերթին դիտողի առջև բացվում էր մինչև հորիզոն ընդգրկող Անիի ընդհանուր համայնապատկերը: Այն գտնվում էր Աշոտյան և Սմբատյան պարիսպների միջև, Ախուրյանի ձորից ոչ հեռու, գեղատեսիլ սարահարթում, միջնաբերդի հետ միասին իշխող դիրք ունենալով ամբողջ քաղաքի վրա: Տաճարը կառուցվել է 11—12 տարվա ընթացքում՝ 989—1001 թվականներին, այդ են հուշում մեզ և՛ նրա վրայի վիմագիր արձանագրությունը, և՛ պատմագիրների (Ստեփանոս Ասողիկ, Վարդան Արևելցի, Սամվել Անեցի և ուրիշներ) վկայությունները: Այնպես որ տաճարի կառուցումը սկսվելով Սմբատ 2-րդի թագավորության վերջին տարում, ավարտվել էր Գագիկ 1-ինի ժամանակ, նրա կին՝ Կատրամիդե թագուհու անմիջական հոգացողությամբ, որը դրա կառուցման մասին հարավային պատի վրա թողել է մի ընդարձակ արձանագրություն:

Անիի այդ տաճարը նվիրված էր ս. Աստվածածնին:

Իր մեծությամբ Անիի Մայր տաճարը զիջում էր միայն արքայական պալատի համալիրին: Այն ավելի մեծ է, քան Էջմիածնի տաճարը: Պա-

տերի դրսից հաշված երկարությունը 34,3 մ է, լայնությունը՝ 21,7 մ, իսկ ներսից՝ 19,7×32 մ: Կարող էր տեղավորել հսկայական թվով մարդկանց, մանավանդ որ դրա գմբեթակիր չորս հաստահեղույս սյուները գրեթե կցված էին պատերին և չէին խախտում եկեղեցու ընդարձակությունը:

Տաճարը կառուցված է դեղին, սև, կարմիր և գորշ գույնի, ամբողջապես սրբատաշ տուֆից: Տիրապետող գույնը դեղինն է:

Տեղի ճիշտ ընտրությունը, մեծությունն ու վեհությունը, պարզությունն ու ակնահաճո գեղեցկությունը, հատակագծային ու կառուցողական կատարելությունը, ճարտարապետական հնարանքների նորություններն ու անպաճույճ լինելը, շարվածքի ոսկերչական վարպետությունը, գմբեթակիր սյուներն ու մյուս սյունաշարքերը, պատերն արտաքինից զարդարող նազելի կիսասյուներն ու դրանց իրար միացնող նյունքան նրբին կամարները, քիվերի սքանչելի զարդերը, եռանկյունաձև որմնախորշերը, որոնք իրարից հավասար հեռավորությամբ ձգվում են վարից վեր, գմբեթի յուրահատուկ կառուցվածքը, տաճարի ներսի բնական, համեմատաբար թույլ լուսավորությունը, որ նրան տալիս է այնքան խորհրդավորություն, այդ բոլորը Անիի Կաթողիկե Մայր տաճարը դարձնում են ճարտարապետական մի այնպիսի գլուխգործոց, որի նշանակությունը դուրս է գալիս ազգային ճարտարապետության սահմաններից. այն իր ազդեցությունն է թողել հետագայում Եվրոպայում ձևավորված գոթական ճարտարապետության ոճի վրա: Եվ իզուր չէ, որ Անի այցելած հեղինակներից մեկը Մայր տաճարը համարել է «Կովկասի լավագույն զարդը»:

Տաճարն ունի երեք դուռ, որոնցից գլխավորը գտնվում է արևմտյան կողմում, իսկ մյուսները բացվում են դեպի հարավ ու հյուսիս և ավելի գեղեցիկ ու նախշազարդ են: Պատուհանները փոքր են՝ նեղ ու երկար, ունենալով զարդաքանդակ շրջանակներ: Ունի նաև 8 ավելի փոքր ու կլոր պատուհաններ, որոնք գտնվում են շինության ավելի բարձր մասում և գեղազարդ են:

Պատմագիրների հաղորդման և վիմագիր արձանագրությունների համաձայն տաճարն ունեցել է ոսկե և արծաթե շատ սպասքներ, մարդաhասակի մեծության արծաթի խաչ, որ ամրացված էր գմբեթի ծայրին, Հնդկաստանից բերված շքեղ ու թանկարժեք բյուրեղյա ջահ, որ կախված է եղել տաճարի ներսից և այլն:

Մայր տաճարի վրա կան մի շարք արձանագրություններ, որոնք հիմնականում վերաբերում են 11—13-րդ դարերին: Ենթադրվում է, որ այստեղ էին ձեռնադրվում Հայոց հայրապետներն ու Շիրակի Բագրատունի թագավորները:

Անիի Մայր տաճարը մեր օրերն է հասել կանգուն, բայց գմբեթը

փլված վիճակում: Նրա գմբեթը մինչև 19-րդ դ. 30-ական թվականները գոյություն ուներ և փլվել է 1840 թ. երկրաշարժից: Սակայն այդ վիճակում էլ Մայր տաճարը Ն. Մառի կատարած պեղումների ժամանակ պիտանի էր իբրև կանգուն շենք: Այստեղ որոշ վերանորոգման աշխատանքներ կատարելուց հետո ստեղծվեց Անիի հնագիտական թանգարանի մի ընդարձակ բաժինը, որտեղ հավաքված էին քաղաքի տարածքում հայտնաբերված այն բոլոր քարաբեկորները, որոնք արվեստի ու ճարտարապետության առումով ուշադրության արժանի էին:

Անիի երկրորդ հայտնի տաճարը **Գագկաշեն եկեղեցին** էր, որ կրում էր ս. Գրիգոր անունը և կառուցվել էր 1001—1010 թվականների ընթացքում:

Ստեփանոս Ասողիկը, Սամվել Անեցին և մյուս պատմագիրներն իրենց վկայություններում բավական համակողմանիորեն բնութագրել են Գագկաշեն տաճարը՝ նշելով դրա կառուցողին, դիրքը, Զվարթնոցից կատարված ընդօրինակությունը, ընդարձակությունը, շքեղությունը, կառուցվածքային որոշ մանրամասներ:

Մեր գիտելիքներն ավելի հարստացան հնագիտական պեղումների շնորհիվ: Դրանց ընթացքում բացվել է տաճարի ամբողջ հատակագիծը, պարզվել է, որ դրա արտաքին կողմն ունեցել է ավելի հարուստ զարդաքանդակներ, քան ներսինը: Առանձնապես լավ են զարդանախշված եղել դռների շրջանակները, հայտնաբերվել են գեղեցիկ ու նուրբ քանդակներով մի շարք խոշոր քարակոշտեր և դրանց առանձին բեկորները, ճշտվել է (Թ. Թորամանյանի վերանորոգմամբ) արևմտյան ավագ դռան տեղը, լուսանկարվել են տաճարի ներքին հարկը և գմբեթը գոտևորող զարդաքանդակները, լուսամուտների շրջանակների կեղծ սյուների նախշերը և այլն, հայտնաբերվել են առաջին կործանման ժամանակ տապալված հսկայական շենքի ամբողջական զանգվածները, առանձնապես մանրամասն ուսումնասիրվել են հարավային կողմի սյունաշարքը, դուռը, հանդիսասրահը: Այդ բոլորը հիմք են դարձել վաղուց փլատակների վերածված Գագկաշեն ս. Գրիգոր տաճարը բնութագրել բավական մանրամասնությամբ:

Գագկաշեն տաճարը կառուցված էր Զվարթնոցի օրինակով, որն այն ժամանակ ավերված էր: Այն խաչաձև հատակագծով, բոլորակ, կենտրոնագմբեթ եռհարկ հսկա տաճար էր, Անիի Մայր տաճարի հետ միասին կազմելով հայկական ճարտարապետության գլուխգործոցներից մեկը: Գագիկ 1-ինը մեծ ծախսումների գնով ցանկացել է իր մայրաքաղաքը զարդարել Զվարթնոցի ճարտարապետական լավագույն հատկանիշներն ամփոփող հոյակապ տաճարով: Բայց այն Զվարթնոցի մեխանիկական կրկնօրինակը չէր: Հայկական ճարտարապետության պատմության մի

խումբ մասնագետներ Զվարթնոցի և Գագկաշենի միջև տեսնում են ծավալային, հատակագծային և այլ կարգի տարբերություններ: Այսպես, իր ժամանակի ոգուն համապատասխան, որ այնքան ընդգծված արտահայտություն է գտել Մայր տաճարի մեջ, Գագկաշենի կենտրոնական գմբեթակիր տարածությունը նույնպես զգալիորեն մեծացվում է, Զվարթնոցի ծանր ու հաստահեղույս սյուներն այստեղ փոխարինված են նրբագեղ, համաչափ ու վերսլաց սյուներով, եթե Զվարթնոցի ներքին որմնասյուները թվով 64 հատ էին, իսկ արտաքինը կազմում են 32 զույգ, ապա Գագկաշենի ներքին սյուների թիվը 72 էր, իսկ արտաքինը՝ 36 զույգ, որոնք, ի տարբերություն Զվարթնոցի՝ կամարներով իրար հետ միացած սյուների, «ընդհատ ընդհատ» էին: Գագկաշենում պարզեցված են եղել Զվարթնոցի որոշ մանրամասներ, միանգամայն ինքնուրույն էին լուծված դռների ու լուսամուտների շրջանակների ձևերն ու քանդակազարդերը և այլն: Այնպես որ զվարթնոցյան հիմնական ոգին պահպանելով հանդերձ, Գագկաշեն կառուցողները աշխատել են այն ամեն կերպ հարազատ դարձնել անիական ճարտարապետական ոճին և կարծում ենք սխալված չենք լինի, եթե Գագկաշեն ս. Գրիգոր տաճարը կոչենք «11-րդ դարի Զվարթնոց» կամ «անիական շրջանի Զվարթնոց»:

Զվարթնոցի նման 48 մ բարձրությամբ և 37,5 մ տրամագծով այս հսկա ու հոյակապ տաճարը իրոք որ Անի մայրաքաղաքի ամենահայտնի կառույցներից էր, այն Զվարթնոցից ավելի վերասլաց էր և իշխող դիրք է ունեցել ամբողջ քաղաքի նկատմամբ:

Տաճարի պեղման ժամանակ հայտնաբերվել է Գագիկ 1-ինի քարակերտ արձանը՝ իր կառուցած տաճարի մանրակերտը ձեռքին: Առանձին բեկորների մասնատված այդ արձանը մեծ վարպետությամբ իրար միացնելով վերականգնել է նկարիչ Պոլտորացկին, վերականգնելով նաև արձանի գույները և եկեղեցու մանրակերտի վերևի մասը: Արձանի բարձրությունը 2,26 մ էր: Բագրատունի թագավորը գլխին փաթաթած ուներ չալմա, որն անցել էր արաբներից և մոտավորապես համազոր է եղել թագավորական թագին:

Երկար կյանք չի ունեցել Անիի Գագկաշեն ս. Գրիգոր տաճարը: Շինարարությունն ավարտելուց 3—4 (ըստ Թ. Թորամանյանի 10—12) տարի անց՝ 1013 թվականին տաճարը ճեղքվում է և ենթարկվում իսպառ կործանման վտանգին: Տաճարը պահպանելու համար տարբեր տեղերում կանգնեցնում են մույթեր, կառուցում ներքին կրկնակի շրջակամարներ, շենքն առնում պաշտպանական օղակի մեջ: Սակայն դրանք միայն ժամանակավորապես փրկեցին ճարտարապետական հրաշալիքի կյանքը: Շուտով այն, հավանաբար կործանիչ երկրաշարժից, վերածվում է փլատակ-

ների։ Թե երբ է այդ տեղի ունեցել, հայտնի չէ, միայն հավանական է համարվում, որ Ալփ-Արսլանի 1064 թ. արշավանքի ժամանակ տաճարն արդեն շարքից դուրս էր եկել։

Երկար ժամանակ Գագկաշենի ճարտարապետ հեղինակի հարցը իր վերջնական լուծումը չէր ստացել։ Սովորաբար ենթադրում էին, որ դրա հեղինակը եղել է Տրդատը, բայց առանց հիմնավոր փաստերի և վկայությունների, իսկ ոմանք էլ այդ ենթադրությունը հերքում էին։ 50-ական թվականներին Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում Ստեփանոս Ասողիկի «Պատմութիւն տիեզերական» երեք հին ձեռագրերում նկատվել է, որ տաճարի շինությանը նվիրված գլխի վերնագրում ուղղակի ասված է, թե դրա ճարտարապետը («վարդպետը»՝ վարպետը) եղել է Տրդատը, և դրանով միանգամից վերջ տրվեց կասկածանքին, հայտնի դարձավ, որ Գագկաշենի ճարտարապետը Տրդատն է։

Քանի որ տաճարը կործանվել է ոչ միանգամից, այլ աստիճանաբար, տարիների ընթացքում և, նույնիսկ տասնյակ տարիների ընթացքում, ապա հասցրել են տեղափոխել դրա հարստությունները, սպասքը, զարդերը, ձեռագրերը և մյուս ունեցվածքը։ Այդ է եղել պատճառը, որ պեղումների ընթացքում տաճարի ներսում նյութական մշակույթի էական մնացորդներ չեն հայտնաբերվել, իսկ հայտնաբերվածներն էլ, ըստ երևույթին, վերաբերում են ավելի ուշ շրջանին։

Հնագիտական ուսումնասիրությունները ցույց են տվել, որ Գագկաշեն ս. Գրիգոր եկեղեցին փլվելուց հետո դրա ավերակները դարձել են յուրովի «քարահանք», որտեղից քշել-տարել են դրա սրբատաշ ու նախշազարդ քարերը։ Վաղեմի տաճարի տեղում և դրա շրջակայքում բնակություն են հաստատել հայեր և ուրիշ ազգություններին պատկանող բնակիչներ՝ իրենց կոպիտ ու անշուք խրճիթներով, որոնք տեղադրվել են առանց որոշակի հատակագծի՝ խառնիխուռն։ Եվ տաճարի ավերակների շրջանում հայտնաբերված կուլտուրայի երեք շերտերից վերևի երկու շերտը պատկանում է հենց այդ ժամանակներին։

**Առաքելոց եկեղեցին** (ս. Առաքելոց տաճար) նույնպես գտնվում է Ծաղկոցաձորի կողմում, Գագկաշեն տաճարից հյուսիս-արևմուտք, տափարակ տեղում։ Այն համարվում է Անիի ամենահայտնի կառուցվածքներից մեկը և մեզ է հասել կիսաքանդ, Լեոյի արտահայտությամբ՝ «մաշված, տրորված...» վիճակում։

Առաքելոց եկեղեցու կառուցման մասին մեզ վկայություններ ու հիշատակություններ չեն հասել՝ ո՛չ մատենագրական, ո՛չ էլ վիմագրական։ Դրա վրա, ներսի կողմից եղած ամենահին արձանագրությունը, որ գրել է տվել Վահրամ Պահլավունու որդի Ապուղամրը, վերաբերում է 1031

թվականին։ Տիրող կարծիքի համաձայն տաճարը կառուցվել է 10-րդ դարում՝ ամենայն հավանականությամբ դրա վերջերին կամ 11-րդ դ. սկզբներին։

Հետագայում, 12—13-րդ դարերում Առաքելոց եկեղեցուն կից կառուցվել են այլ շինություններ՝ երկու գավիթ և, դրանցից ոչ հեռու գտնըվող, մի փոքրիկ եկեղեցի, ինչպես նաև գաղտնարաններ՝ եկեղեցու թանկարժեք իրերը, սպասքը և գանձերը պահելու համար։ Այսպիսով ժամանակի ընթացքում Առաքելոց եկեղեցին վերածվել էր ճարտարապետական ամբողջական համալիրի, որի մեջ բուն տաճարից բացի իր ճարտարապետությամբ ու շքեղությամբ հայտնի էր ընդարձակ գավիթը։

Ճանապարհորդներից ոմանք Առաքելոց եկեղեցու համալիրը շփոթել են քաղաքի այլ շենքերի հետ, իսկ երբեմն էլ այն համարել Պահլավունիների իշխանական կամ Բագրատունիների արքունական պալատը։ Այդ շփոթությունը պարզապես հետևանք էր այն բանի, որ մեզ հասած վիճակում եկեղեցին քիչ է նման եկեղեցու, իսկ գավիթն իր ընդարձակությամբ ու շքեղությամբ կարող է մրցել ցանկացած արքունական պալատի հետ։

Ճարտարապետության պատմության մասնագետները միահամուռ պնդում են, որ Առաքելոց եկեղեցու մեջ արտահայտված են 6—7-րդ դարերի հայկական կենտրոնագմբեթ տաճարների ճարտարապետության շատ ավանդույթներ։ Առանձնապես հատակագծային ու կառուցողական առնչություններ են արձանագրվում մի կողմից Էջմիածնի ու Հռիփսիմեի տաճարների, իսկ մյուս կողմից՝ Առաքելոց եկեղեցու միջև։

Առաքելոց եկեղեցին համարվում է Հայաստանի 6—7-րդ դարերի խաչաձև գմբեթավոր տաճարների ուշ ժամանակների կառույցներից։ Այն Ավանի եկեղեցու նման (որը կանգուն վիճակում նկարել է Գ. Հովսեփյանը) քառաբսիդ տաճար էր, ունեցել է 5 գմբեթ, որոնցից չորսը գտնըվում էին չորս խորանների վրա՝ կազմելով մի տեսակ առանձին-առանձին չորս եկեղեցիներ, իսկ կենտրոնի մեծ գմբեթը հանգում էր բավական հզոր որմնասյուների վրա, դարձյալ ներկայացնելով մի առանձին եկեղեցի։ 12—13-րդ դդ. եկեղեցու հարավային և հյուսիսային կողմերում կառուցվել էր երկու գավիթ, որոնք նախշազարդված էին այդ ժամանակներին հատուկ խորշերով, քանդակներով, ստալակտիտային առաստաղով, նուրբ սյուներով։ Եկեղեցին զարդաքանդակ շրջանակներով ու շքեղ դռներով կապված էր հյուսիսային և հարավային գավիթների հետ։ Բուն եկեղեցու ճակատը զարդարում էին կիսասյուներն ու կամարիկները, եռանկյունաձև խորշերը։ Եկեղեցու վերին մասերի զանգվածները թեթևացնելու համար տարբեր տեղերում դրվել են կարասներ։ Են-

թադրվում է, որ տաճարի բոլոր հինգ գմբեթների թմբուկները եղել են կամ բազմաբսիդ կամ սովորական բրգաձև: Տաճարի լուսամուտները, դռների օրինակով, ունեցել են լայն ու զարդաքանդակ շրջանակներ: Ականատեսներից շատերը առանձնապես մեծ հիացմունքով են խոսում նրա նրբագույն, ոսկերչական վարպետության հասնող զարդաքանդակների, սյուների, կամարների, աղեղնաձև շքեղ առաստաղի մասին: Հարկ ենք համարում մեջ բերել մի հատված Ա. Անդրեևի ճանապարհորդական նոթերից. «Զարմանքից ես ուղղակի ախ քաշեցի— այդպիսի շքեղություն, այդպիսի պերճություն ու նրբագեղություն անիական ավերակներից ոչ մեկը չունի: Նկարիչի վրձին է պետք, որպեսզի նկարի գեղարվեստական սյուները, վաղուց խաչաձևված կամարները, կամարաձև շքեղ առաստաղը և անհամեմատելի, անզուգական զարքանդակը: Իմ ուժերից վեր է նկարագրել այդ ավերակի զմայլելի պատկերը»:

Առաքելոց եկեղեցուն մի առանձին հմայք էին տալիս գավիթները, որոնք, ինչպես ասվեց, կառուցվել էին հետագայում՝ 12—13-րդ դարերում:

Նկատի ունենալով եկեղեցու պատերին կանոնադրական արձանագրությունների առկայությունը՝ այն համարել են եպիսկոպոսանիստ, «վարչական պաշտոնատեղի», ժողովարան և այլն:

Առաքելոց եկեղեցում Ն. Մառը հնագիտական պեղումներ է կատարել հիմնականում 1909 թ.: Պեղումների ընթացքում գտնվել են շենքի վերին մասերը թեթևացնող կարասներ, քիվի մեծ թվով զարդաքանդակ բեկորներ, գտնվել են խաղողի ողկույզներով ու նռով զարդանախշված ամբողջական սալիկներ ու բուսական պատկերներով քանդակազարդ այլ քարեր: Ճարտարապետական հարուստ նյութեր են ձեռք բերվել հատկապես հարավային գավթի ուսումնասիրության ընթացքում: Պեղումներին զուգահեռ այստեղ 1909 թ. հուշարձանը հնարավորին չափով պահպանելու համար կատարվել են որոշ աշխատանքներ:

Առաքելոց եկեղեցին Անիի վիմագիր արձանագրություններով ամենահարուստ հուշարձաններից է: Այդ արձանագրությունները վերաբերում են 11—14-րդ դարերին և ունեն տարբեր բովանդակություն, դրանք հիմնականում նվիրված են քաղաքի հարկերին ու տուրքերին, և տեղ են գտել Անիի վիմագիր արձանագրությունների գրեթե բոլոր ժողովածուներում:

Անիի համեմատաբար փոքր, բայց ոչ պակաս հայտնի հուշարձաններից մեկը համարվում է ս. **Փրկիչ եկեղեցին**, որը գտնվում է Մայր տաճարից հազիվ 60—70 մ հյուսիս-արևելք, Գլիձորի ափին: Թե երբ է սկսվել ս. Փրկիչ եկեղեցու շինարարությունը դժվար է ասել: Սակայն որո-

չակի հայտնի է (վիմագիր արձանագրության շնորհիվ), որ դրա կառուցողը՝ Ապուղամրի թոռ Ապլղարիբ մարզպանը, Գրիգոր իշխանի որդին, զորավար Վահրամի և Վասակի եղբայրը, 1035 թ. Կոստանդնուպոլսից գալով (ուր նա գնացել էր Բագրատունի Հովհաննես-Սմբատ թագավորի կամքով) 1036 թ. ավարտում է եկեղեցու շինարարությունը: Եվ ս. Փըրկիչն իր կառուցողի անունով սովորաբար կոչել են նաև Ապլղարիբ Պահլավունու եկեղեցի:

Ճարտարապետական ոճով ու կառուցողական հնարանքներով ս. Փրկիչի արտաքին մասը հար ու նման է 10—11-րդ դարերի բրգաձև, բազմանիստ տաճարներին, գտնվելով առաջին հերթին Գագկաշեն եկեղեցու ոճական ազդեցության տակ, որի հիման վրա է կառուցվել նաև Խծկոնքի համալիրի բրգաձև եկեղեցին: Ներսի կողմից եկեղեցին հիշեցնում է 7-րդ դարի տաճարների հատակագծերը:

Տաճարը բրգաձև է՝ 15,2 մ տրամագծով, ներսից ութանիստ է, իսկ արտաքինից՝ բազմանիստ, պատերը շարված են սրբատաշ գորշ մեծամեծ քարերից, հաստապատ է, որի շնորհիվ պահպանվել է դարեր շարունակ: Գմբեթը փլվելուց հետո վերականգնել են 1173 թվականին՝ պահպանելով նախնական ձևը: Սյունազարդ է, զույգ կիսասյուների վրա գտնվում են զարդանախշ կամարներ, որոնց և քիվի միջև ձգվում է մանրաքանդակներով նախշված համատարած գոտի: Եկեղեցու դուռն առնըված է քարակերտ լայն շրջանակի մեջ, որն իր վրա կրում է զանազան զարդանախշեր: Նախշազարդ են և նրա 12 լուսամուտները:

Ս. Փրկիչը պատկանում է Անիի այն փոքրաթիվ եկեղեցիներին, որոնք նկարազարդ են եղել: Սակայն այդ նկարազարդումները վերաբերում են ավելի ուշ ժամանակներին՝ 12-րդ և 13-րդ դարերին: Եկեղեցին ընդհանրապես վերանորոգվել է 12-րդ դարի 70-ական թվականներին, երբ վերանորոգվել է նաև գմբեթը (1173 թ.), իսկ ամբողջ վերին յարուսը՝ 14-րդ դարում: 1201 թ. եկեղեցու հարավային կողմում կառուցվել են զանգակատուն և գավիթ: Եկեղեցին կանգուն, բայց «մաշված» վիճակում հասել է մինչև մեր օրերը:

**Ապուղամրենց ս. Գրիգոր** եկեղեցին գտնվում է Ծաղկոցաձորի կողմում, արքայական պալատից հարավ, Մայր եկեղեցուց ոչ հեռու: Մինչև օրս էլ իր կանգուն վիճակով գրավում է բոլոր այցելուների ուշադրությունը: Կառուցման ճշգրիտ թվականը հայտնի չէ. այդ մասին չեն պահպանվել ո՛չ մատենագրական տեղեկություններ և ո՛չ էլ վիմագրական արձանագրություններ: Ոմանք նրա կառուցման ժամանակը համարում են 980 թվականը, ոմանք 996—997 թթ.: Հայտնի չէ նաև Ապուղամրենցը կառուցող ճարտարապետի անունը:

Ապուղամրենց ս. Գրիգորը փոքրության պատճառով հաճախ ուղղակի համարվում է մատուռ: Այն Պահլավունիների ծլուղերից մեկի տոհմական եկեղեցին էր, որին կից գտնվում էին նաև երկու մատուռներ՝ ս. Ստեփանոս և ս. Քրիստափոր՝ կառուցված 1040 թ. Պահլավունի Ապըլղարիբ մարզպանի կողմից: Իր կառուցվածքով Ապուղամրենց փոքրիկ եկեղեցին կատարյալ վերարտադրությունն էր դեռևս 7-րդ դարում մշակված հայկական կոնաձև, բազմաբսիդ տաճարների: Արտաքինից ունի ծոխ կառուցվածք. ներքին ու վերին յարուսները բաժանված են 12 նիստերի և կողերին ունի խոր որմնախորշեր, վերին մասում սյունազարդ և կամարազարդ թմբուկն է, որի վրա հանգում է հովհարաձև գմբեթն իր 12 փոքրիկ լուսամուտներով: Ներսի մասը պարզ է, բայց շքեղ: Այստեղ առկա են 8 խոր աբսիդներ, որոնք իրարից բաժանվում են գեղեցիկ սյուներով: Եկեղեցին շարված է սրբատաշ քարերից, մեծ խնամքով: եկեղեցու հյուսիսային կողմում գտնվում է Ապուղամրենց ընտանիքի հանգստարանը, որ դիպվածով հայտնաբերել է Միքայել արքեպիսկոպոսը:

Եկեղեցու պատերը հետագայում ներսից սվաղել են կրով, որ հավանաբար ծածկում է նրա որմնանկարները: Առանձնահատուկ գեղեցկություն ունեն եկեղեցու նեղ ու երկար լուսամուտները և թվով երեք դռները: Թե՛ լուսամուտները և թե՛ դռներն առնված էին կիսասյուներով ու կամարներով զարդարված շրջանակների մեջ: Ականատեսները վկայում են, որ այս եկեղեցի-մատուռը հազիվ կարող էր տեղավորել 40—60 հավատացյալներ, բայց ճարտարապետական լավագույն լուծումների շնորհիվ բավական ընդարձակ է երևում: Եվ պատահական չէ, որ եվրոպական ճանապարհորդներն առանց բացառության գովում են Ապուղամրենց եկեղեցու գեղեցկությունը՝ հատկապես նրա անպաճույճ, պարզ, բայց վեհաշուք կառուցվածքը: Նրա մասին առանձնապես մեծ գովեստով է խոսում Համիլտոնը:

Մի քանի կարևոր արձանագրություններ կան Ապուղամրենց ս. Գրիգոր եկեղեցու վրա: Նրա առաջին արձանագրությունը վերաբերում է 994 թվականին: Բագրատունիների ժամանակաշրջանի երկրորդ, բավական ընդարձակ արձանագրությունը թողել է արդեն Ապլղարիբ մարզպանը և վերաբերում է 1040 թվականին: Հետագայի արձանագրություններն իրենց բովանդակությամբ հետաքրքրություն չեն ներկայացնում, դրանք սոսկ հիշատակարան-կտակներ են:

Անիի 11-րդ դարի եկեղեցիների մեջ իր ուրույն տեղն ունի **Հովվի եկեղեցին**, որը գտնվում է քաղաքի պարիսպներից դուրս, Հյուսիսային արվարձաններում, Սմբատյան պարսպի գլխավոր մուտքից մոտ 1,5—2 կմ հեռավորության վրա: Հովվի եկեղեցին նույնպես պատկանում է Հա-

յաստանի վաղեմի մայրաքաղաքի այն կառույցների թվին, որոնց շինարարության ճշգրիտ ժամանակը չի որոշված։ Սակայն հաշվի առնելով ճարտարապետական ու կառուցողական լուծումները՝ այն համարվում է 11-րդ դարի (իսկ ըստ Ն. Մ. Տոկարսկու 11-րդ դ. առաջին կեսի) եկեղեցի։ Հովվի եկեղեցին, ինչպես արձանագրում են ճարտարապետության պատմության մասնագետներից շատերը, ճարտարապետությամբ միանգամայն հարազատ է դեռևս 7-րդ դարում մշակված հայկական գմբեթավոր այն եկեղեցիներին, որոնք 10—11-րդ դարերում վերարտադրվել են այդ նոր ժամանակներին հատուկ ձևերով։ Այն նմանության շատ գըծեր ունի Զվարթնոցի, Իրինդի, Գագկաշենի, Ապուղամրենց ս. Գրիգորի, Վահանավանքի փոքր եկեղեցու, Ցախացքարի և նույն կարգի մի քանի այլ եկեղեցիների ու տաճարների հետ։

Հովվի եկեղեցու կառուցման շուրջը մինչև նորագույն ժամանակները պահպանվել է մի ավանդություն, որը չնչին տարբերություններով տեղ է գտել և մեր ազգային, և օտար պատմիչների մոտ։ Առանձնապես ուշագրավ է Կովկասի նոր պատմության հայտնի հեղինակներից մեկի՝ գեներալ Պոտտոյի պատումը։ Ավանդության բովանդակությունը հանգում է հետևյալին. եկեղեցին իբր կառուցել է մի ծեր հովիվ, որը զատկի օրը, ուշացած լինելով, աղոթելու համար չի կարողանում մտնել մայրաքաղաքի որևէ եկեղեցի, դրանք՝ աղոթող հավատացյալներով լեփլեցուն լինելու պատճառով։ Ավանդության իրական հիմքն այն է, որ Անին մարդաշատ էր և նրա եկեղեցիները կրոնական տոներին իրոք կարող էին լցվել աղոթողներով։ Հովվի եկեղեցու գոյությունը, բուն քաղաքի մյուս փոքր, բայց նույնպես շքեղ եկեղեցիների հետ միասին ցույց է տալիս, որ Անիի եկեղեցական կառուցվածքները՝ սկսած փոքրիկ մատուռներից և վերջացրած ավելի խոշոր եկեղեցիներով ու տաճարներով մեկ-մեկ ճարտարապետական հրաշալի հուշարձաններ էին, ուշադրության արժանի կոթողներ։

Թ. Թորամանյանը հիացմունքով է խոսում Հովվի եկեղեցու մասին. «Ոչ ոք թող չզարմանա,— գրում է նա,— երբ այս խեղճ ու ողորմելի մնացորդը (Հովվի եկեղեցու ավերակները— Թ. Հ.) մեր հիացումը գրավող Մայր եկեղեցիի, Գագկաշեն մեծագործ ս. Գրիգորի և մեզ ապշություն պատճառող վիթխարի պարիսպներու հավասար կդասեմ», իսկ այլ տեղերում ուղղակի որակավորում որպես մի «ճարտարապետական գոհար», որպես «Անիի ճարտարապետության պսակ», որպես «անեցի ճարտարապետի պայծառ ու բեղմնավոր ուղեղի մարմնացում» և այլն։

Չափերով շատ փոքր այս եկեղեցին (ներքին տրամագիծը 4,65 մ է, իսկ արտաքինը՝ 6,35 մ), որի չափագրությունը կատարել և վերա-

կազմման հատակագիծը կազմել է Թ. Թորամանյանը, պատկանում է սյունաձև եկեղեցիների թվին, արտաքինից եռահարկ, իսկ ներսից երկհարկ էր: Առաջին հարկը (յարուսը) ունի աստղաձև հատակագիծ, որի վրա բարձրանում են ավելի քիչ մասնատված երկրորդ ու երրորդ հարկերը: Առաջին հարկի պատերի արտաքին կողմը մասնատված է եղել 12 եռանկյուն և 6 կիսաշրջան որմնախորշերով, որոնք թեթևացրել և ակնահաճո են դարձրել նրա պատերը: Երկրորդ հարկի պատերն ունեցել են 6 որմնախորշեր, իսկ երրորդ հարկինը՝ ավելի պարզ կառուցվածք: Թ. Թորամանյանի արտահայտությամբ Հովվի եկեղեցին «իր մեջ հրաշալի կերպով մարմնացնում է թե խաչաձևող կամարներ, թե կամարաշիլեր և թե սյունախուրձեր»: Այս փոքրիկ եկեղեցի-դամբարանում կատարելություն է հասցված հայ քարագործ վարպետի արվեստը: Ճարտարապետական առումով հրաշք են համարվում մանավանդ եկեղեցու առանց հենասյուների, թվով վեց «կախված կամարները», որոնց մի ծայրը հանգում էր որմնասյուների վրա, իսկ «մյուս ծայրերը հավաքված դեպի կենտրոն, հրաշքով կախ ընկած են ձեր գլխի վերև», որտեղից մի ժամանակ կախված է եղել մատուռը լուսավորող ջահը:

Հովվի եկեղեցին լրիվ կործանման ու անհետացման եզրին էր գտնըվում դեռևս անցյալ դարի վերջերին:

Բագրատունիների թագավորության ժամանակների եկեղեցիներից էր նաև ս. **Աստվածածին** կոչված **Խամբուշենց տոհմական եկեղեցին**, որը կառուցվել է հավանաբար 11-րդ դարի սկզբներին, համենայն դեպս, 1042 թվականից առաջ: Տոհմական այդ մատուռի մոտ, նրա հարավային կողմում գտնվում է Խամբուշենց գերեզմանատունը: Եկեղեցին նոր ժամանակներում արդեն միանգամայն ավերված էր և դրա մասին գաղափար ենք կազմում 1893 թ. Ն. Մառի կողմից այդտեղ կատարված պեղումներով գտնված մնացորդների շնորհիվ: Եկեղեցին գտնվում էր քաղաքի կենտրոնական մասում, Աշոտյան պարիսպների մոտ: Ունեցել է շատ խիստ ու զուսպ, բայց ճարտարապետական գեղեցիկ կառուցվածք՝ նույնքան զուսպ քանդակներով զարդարված:

Հիմնահատակ ավերված վիճակում է մեզ հասել նաև Գրիգոր իշխանի կնոջ՝ **Ծուշիկի եկեղեցին**, որը գտնվում էր Աշոտյան պարիսպներից ներս, Ծաղկոցաձորի բարձրադիր ափին: Այս եկեղեցին նույնպես կառուցվել է 11-րդ դ. առաջին կեսին, ամենայն հավանականությամբ 1037 թվականին: Եկեղեցու ավերակները պեղվել են 1916 թ.: Ավերվելուց հետո հետագայում դրա շուրջը կառուցել էին բնակելի մի շարք տներ: Բուն եկեղեցին կառուցված էր ժայռի վրա, ունենալով 13,3 մ երկարություն և 8,1 մ լայնություն: Պատերը շարված էին սև սրբատաշ

քարից և ունեցել է դեպի հարավ բացվող միայն մի դուռ: Դժվար է ասել, թե երբ է վերջնականապես այդ եկեղեցին ավերվել, քաղաքի հետ միասի՞ն, թե՞ դրանից հետո:

Նշվածներն, անշուշտ, Անիի՝ Բագրատունիների շրջանի եկեղեցիների միայն մի փոքրիկ մասն էր: 10—11-րդ դդ. է կառուցվել նաև **միջնաբերդի եկեղեցին,** որն իր ճարտարապետական լուծումներով կրում է ավելի հին ժամանակների՝ հատկապես պալատական եկեղեցու կնիքը: Եկեղեցին կանգուն վիճակում հասել է մինչև մեր օրերը: Այն տեղադրված է թեք լանջի վրա: Առանձնապես հիշատակության արժանի են արևմտյան գլխավոր մուտքի շրջանակի և քիվի զարդաքանդակները: Դրանցից բացի, ինչպես ասվեց այլ առիթով, միջնաբերդում կային նաև մի քանի այլ եկեղեցիներ, իսկ պալատական եկեղեցին արդեն պատկանում էր ավելի վաղ ժամանակներին:

## 5. ՄՇԱԿՈՒՅԹԸ ԵՎ ՆՐԱ ՆՇԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԸ

10—13-րդ դարերի առաջադիմությունը տնտեսական կյանքին հավասար վերաբերում է նաև մշակույթին՝ դպրոցներին, գիտությանը, մատենագրությանը, արվեստին, գրականությանը: Մշակույթի հայտնի կենտրոններ էին դարձել Տաթևը, Աղթամարը, Նարեկավանքը, Հաղպատը, Սանահինը: Մշակույթի մեծ կենտրոններ են դառնում երկրի խոշոր ու մարդաշատ քաղաքները, հատկապես՝ Անին:

Մոտավոր հաշվումներով Հայաստանում և Կիլիկիայի հայկական պետությունում 10—11-րդ դարերում գործել են մոտ 50 դպրոցներ, որոնց մի մասը՝ Տաթև, Սանահին, Հաղպատ, Բջնի և այլն եղել են բարձր տիպի՝ վարդապետարաններ կամ ճեմարաններ: Ցավով պիտի նշել, որ Անիի դպրոցների մասին տեղեկություններն աղքատիկ են ու կցկտուր: Մատենագիրներն ու գրիչները ցածր տիպի դպրոցների մասին ընդհանրապես տեղեկություններ շատ սակավ են հաղորդել, կամ ուղղակի դրանք ամենևին ուշադրության առարկա չեն դարձրել: Դպրոցների մասին խոսելիս նրանք գերազանցապես նկատի են ունեցել միայն բարձր տիպի դպրոցները՝ վարդապետարանները: Այնպես որ Անիի ցածր տիպի դպրոցների վերաբերյալ, որոնք հավանաբար բավական թիվ էին կազմում, կարելի է դատողություններ անել միայն անուղղակի տվյալներից

հիման վրա, այն էլ ենթադրությունների ու հավանականության սահմաններում:

Կասկածից վեր է, որ Գագիկ 2-րդն իր կրթությունը (համենայն դեպս նախնական կրթությունը) ստացել էր Անիում, հավանաբար հենց արքայական պալատում: Իսկ ժամանակակիցներն ու հետագայի պատմիչները՝ Սամվել Անեցին, Մատթեոս Ուռհայեցին, Սմբատ Գունդստաբլը և ուրիշներ նրան որակում են որպես իմաստուն և մանկությունից ուսյալ անձնավորություն: Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի ամենաականավոր ու բազմակողմանի զարգացած անձնավորություններից էր Գրիգոր Պահլավունին: Հավանական է համարվում, որ ապագա մեծ փիլիսոփայի մանկությունն ու պատանեկությունն անցել է Անիում և այստեղ էլ նա, իրենց իշխանական պալատում, Պահլավունի մյուս իշխանազուների հետ միասին հայոց լեզվով ստացել է իր նախնական կրթությունը:

Միանգամայն իրավացի է բազմավաստակ Ղ. Ալիշանը. Անիում մեծ թվով վարդապետների գոյությունը (Պետրոս կաթողիկոսի Կոնստանդնուպոլիս գնալու ժամանակ նրան ուղեկցողների թվում կային 12 կամ 16 վարդապետներ, որոնց մեծ մասը Անիից էր), եկեղեցիներում կուտակված բավական թվով ձեռագրերը, որոնց թվում և այնպիսիները («տոնականք» և այլն), որոնք ավելի շուտ ուսման ձեռնարկներ ու դասագրքեր էին, նույնպես գալիս են հաստատելու, որ Անիում գոյություն ունեին տարբեր կարգի բավական թվով դպրոցներ:

Մեր դարի 50-ական թվականներին հայտնաբերված մի հիշատակարանի շնորհիվ ակնհայտ դարձավ, որ Անիում ցածր կարգի դպրոցներից բացի գոյություն է ունեցել նաև ավելի բարձր կրթություն տվող ուսումնական հաստատություն: Հիշատակարանի ասելով, այդ դպրոցի գլուխ 12-րդ դ. սկզբներից անցել է մինչ այդ Հաղպատի նույնատիպ դըպրոցում պաշտոնավարող Հովհաննես Սարկավագը: Մինչև տնօրինողի դերում Հովհաննես Սարկավագի հանդես գալը՝ Անիի բարձր կարգի դըպրոցի մասին որևէ հիշատակություն կամ ակնարկ չկա և դժվար է իմանալ, թե երբ է այն հիմնադրվել: Միայն հաստատ կարելի է պնդել, որ Անիի բարձր տիպի դպրոցը 11-րդ դ. սկզբներից արդեն գոյություն ուներ և Գրիգոր Մագիստրոսի՝ Անիում կարդացած դասախոսությունների մի զգալի մասը տեղի էր ունենում այդ դպրոցում:

Կասկած չկա, որ Անիի դպրոցներն իրենց ծրագրերով, ձեռնարկներով, ուսման գործի դրվածքով, ավանդվող առարկաներով հար ու նման էին միջնադարյան Հայաստանի տարբեր մասերում գործող համապատասխան վարժարաններին և ուսումնարաններին: Անուղղակի հիշատակություններից երևում է, որ ժամանակի պայմաններին համապա-



9—2682

տասխան հոգ են տարել այդ դպրոցները մայրենի լեզվով դասագրքերով ու ուսումնական ձեռնարկներով ապահովելու համար, որովհետև ուսումը տարվում էր հայերեն: Հայկական այդ դպրոցներում կային և՛ թարգմանական, և՛ ինքնուրույն դասագրքեր ու ձեռնարկներ: Օրինակ՝ այդ նպատակին էին ծառայում Անանիա Շիրակացու մի քանի աշխատությունները, Գր. Մագիստրոսի քերականության մեկնությունը, ինչպես և Էվկլիդեսի «Երկրաչափությունը», Օլիմպիանոսի առակները և հունական, ասորական ու, մասամբ, արաբական հեղինակներից թարգմանված այլ գործեր:

Ցածր կարգի դպրոցները հիմնականում տալիս էին գրաճանաչություն, իսկ բարձր կարգի ուսումնարաններում ավանդվում էին քերականություն, ճարտասանություն, իմաստասիրություն, առասպելաբանություն, համարողական արվեստ (մաթեմատիկա), աստղաբաշխություն, աշխարհագրություն, մատենագրություն և այլ առարկաներ:

Բարձր տիպի դպրոցի գոյությունը, Գրիգոր Մագիստրոսի ծավալած գիտամանկավարժական գործունեությունը, բազմաթիվ վարդապետների առկայությունը, Բագրատունի թագավորներից ոմանց (Գագիկ 1-ին, Հովհաննես-Սմբատ, Գագիկ 2-րդ) գիտության նկատմամբ ցուցաբերած հակումներն ու բարեհաճությունը, 11-րդ դարի առաջին կեսին մեծ հեղինակություն վայելող Հովհաննես Կոզեռնի գիտական գործունեությանը տեղյակ լինելը և անհրաժեշտության դեպքում նրան այս կամ այն հարցով դիմելը, այդ բոլոր հայտնի փաստերն անուղղակիորեն գալիս են ասելու, որ մայրաքաղաք Անին 10-րդ դ. վերջերին և 11-րդ դ. առաջին կեսում դարձել էր գիտության զգալի կենտրոն: Գրիգոր Մագիստրոսը, Անիի նրա ունկնդիրները, վարդապետները, որոնց թվում և նրա բարեկամներից մեկը՝ Սարգիս վարդապետը, զբաղվում էին գիտական զանազան հարցերով՝ բնագիտությամբ, փիլիսոփայությամբ ու աստվածաբանությամբ, մատենագրությամբ, բժշկագիտությամբ, առասպելաբանությամբ, մաթեմատիկայով և այլն: Առանձնապես նշելի են Գր. Մագիստրոսի քերականությունը և իր հայտնի նամակներում զանազան գիտությունների ու գիտության ամենատարբեր հարցերի վերաբերյալ արած դիտողությունները և արտահայտած մտքերը: Գիտության առաջընթացի մասին են վկայում օտար հեղինակներից կատարված թարգմանությունները: Հայտնի է, որ Գրիգոր Մագիստրոսը թարգմանել է Պլատոնի «Տիմեոս» ու «Փեդովնա» և Էվկլիդեսի «Երկրաչափություն» աշխատությունները:

Ինչպես երևում է, որոշ գրքերի թարգմանությամբ շահագրգռված են եղել նաև Բագրատունի թագավորները: Մեզ թվում է այդ կարգի աշխատություններից էր նաև 11-րդ դ. առաջին կեսին արաբերենից հայե-

րեն թարգմանված մի բժշկարան, որը կրում է «Բժշկարան, թարգմանված յունարէնից, ի հայերէն Գագիկ անհաղթելի թագաւորի օրոք», վերնագիրը: Դժվար է ասել, թե հատկապես Հայաստանի ո՞ր վանքում կամ քաղաքում է կատարվել այդ թարգմանությունը և ո՞ւմ ձեռքով: Սակայն բժշկարանի վերնագրից երևում է, որ թարգմանությունն ամենայն հավանականությամբ կատարվել է հայոց թագավորի միջամտությամբ: 1294 թ. այդ ձեռագիրը խմբագրվել է Կիլիկյան Հայաստանում՝ Հեթումի հրամանով: Այդ պատճառով էլ պայմանականորեն կոչվել է «Գագիկ-Հեթումյան բժշկարան»:

Գրավոր աղբյուրների վկայություններից և պեղումների ընթացքում հայտնաբերված նյութական մշակույթի մնացորդներից ակնհայտ է դառնում, որ Անին ունեցել է իր գրադարան-ձեռագրատունը: Մեզ է հասել Գրիգոր Մագիստրոսի ժամանակներից Սարգիս վարդապետ Սևանեցու հիշատակարանը, որը տեղ է գտել 999 թվականի մի ձեռագրի վերջում: Հիշատակարանում հեղինակը գրում է, որ ինքն այդ ձեռագիրը գտել է արքունական գրադարանում («ի գրանոցին») անխնամ ընկած և այն վերցրել ու իր հետ տարել է՝ «հանեալ ի բանտէն»: Վերջում հիշատակագիրը մաղթում է այդ ձեռագիրը տեսնող ու վերծանողներին հիշել իրեն:

Բագրատունիների արքայական գրադարանի գոյության մասին այդ ուղղակի հիշատակություններից բացի կարևոր են նաև «գրադարանային» այն իրերը, որոնք հայտնաբերվել են Ն. Մառի հնագիտական պեղումների ընթացքում: Դեռևս 19-րդ դ. 90-ական թվականներին Ն. Մառը ենթադրում էր, որ քաղաքի միջնաբերդում արքայական պալատի, պալատական եկեղեցու և այլ շինությունների հետ միասին պետք է գտնվի նաև թագավորական գրադարանը: Եվ ահա պեղումների ընթացքում լիովին հաստատվում է նրա ենթադրությունը: Միջնաբերդում հայտնաբերվում են բավական թվով շքեղ գրքակալներ, որոնցից մի քանիսը ներկայումս պահպանվում են ՀՍՍՀ պետական պատմական թանգարանում:

Ըստ երևույթին արքայականը Անիի միակ գրադարանը չէր: Սովորաբար հատուկ գրադարան գոյություն ուներ նաև կաթողիկոսական աթոռին կից: 10-րդ դ. մինչև կաթողիկոսական աթոռը Անի փոխադրվելը, Խաչիկ կաթողիկոսը հայրապետական նստավայրում ստեղծել էր, Զարպհանալանյանի արտահայտությամբ, «փառաւոր գրատուն մը...»: Միանգամայն տրամաբանական է, որ Անիի կաթողիկոսարանում (կամ եպիսկոպոսի նստավայրում) նույնպես ստեղծվել էր գրադարան: Չէ՞ որ դարերի ընթացքում այդ նույն կերպ է ստեղծվել նաև Էջմիածնի կաթողիկոսարանի ձեռագրատունն ու գրադարանը, որոնցից առաջինը դարձավ

մեր օրերում ստեղծված Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան հայտնի ձեռագրատան՝ Մատենադարանի հիմքը:

Վիմագիր արձանագրությունների հաղորդած տեղեկություններից հայտնի է դառնում, որ նշված պաշտոնական գրադարաններից բացի տարբեր բովանդակության ձեռագրերի հավաքածուներ ունեին Անիի մի շարք եկեղեցիներ: Այդ հավաքածուները հիմնականում ստեղծվել էին նվիրատվությունների միջոցով: Պահպանվել են այս կամ այն անձնավորության կողմից եկեղեցիներին ձեռագրեր նվիրելու մասին վիմագիր արձանագրություններ: Այսպես, օրինակ, ս. Փրկիչ եկեղեցու վրա թողած իր 1035 և 1036 թվականների երկու արձանագրությունների մեջ, դրա կառուցող մարզպան Աբլղարիբ Պահլավունին գանձերի ու սպասքի հետ միասին զանազան ձեռագրեր է նվիրել եկեղեցուն: Եկեղեցիներին ձեռագրեր նվիրելու մասին կան նաև այլ արձանագրություններ, որոնք վերաբերում են մի փոքր ավելի ուշ ժամանակներին:

Միջնադարյան Հայաստանում և Կիլիկիայի հայկական պետությունում գոյություն են ունեցել մի քանի տասնյակ գրչության դպրոցներ՝ Տաթևի, Հաղպատ-Սանահինի, Գլաձորի, Մեծոփա, Հռոմկլայի, Սկևռայի և այլն: Իր գրչության դպրոցն ուներ նաև Անի մայրաքաղաքը: Անիի դպրոցը, սակայն, ձևավորվել է մեզ հետաքրքրող ժամանակներից մի փոքր ուշ և հիմնականում գործել է 12—13-րդ դարերում:

Անիի դպրոցում գրված կամ ընդօրինակված ձեռագրերից մեզ շատ քիչ բան է հասել: Իսկ պեղումների ընթացքում ընդհանրապես ձեռագրեր չեն գտնվել: Դրանք հավանաբար զանգվածորեն ոչնչացել են թշնամական հարձակումների հետևանքով, կամ «գերեվարվել», տարվել են այլ երկրներ: Այնուամենայնիվ, պահպանվել է Անիի 13-րդ դարի մի ձեռագիր, որի հիշատակարանի համաձայն այն 1347 թ. նվիրվել էր Հոռոմոսի վանքին:

Անիում գոյություն են ունեցել հարյուրավոր վիմագիր արձանագրություններ: Քաղաքի ավերակներում հայտնաբերված ամբողջական արձանագրությունների և առանձին բառերի ու հատվածների թիվը անցնում էր երկուս ու կես հարյուրից: Դրանք կարևոր տեղեկություններ են պարունակում քաղաքաշինության, քաղաքի տնտեսական կյանքի, կոմունալ պայմանների, հարկերի ու հարկային քաղաքականության և բազմաթիվ այլ հարցերի վերաբերյալ: Այդ արձանագրությունները փաստորեն կազմում են Անիի պատմության քարագիր ժամանակագրությունը, առանց որի միջնադարյան Հայաստանի մայրաքաղաքի անցած ուղու մի շարք կողմեր անհնար կլիներ լուսաբանել:

Հայկական արվեստի զարգացման պատմության մեջ Անին թողել է մնայուն և լուսավոր հետք: Այստեղ առանձնապես զարգացած է եղել ճարտարապետության հետ միահյուսված՝ քանդակագործությունը, որը կարելի է կոչել կիրառական քանդակագործություն: Արքայական և իշխանական պալատները, տաճարները, եկեղեցիներն ու մատուռները, խաչքարերը, պաշտպանական պարիսպների որոշ հատվածները ծածկված էին ամենատարբեր բովանդակության զարդաքանդակներով՝ կենդանիների և բույսերի պատկերաքանդակներով, քարե հյուսվածքներով: Այդ բոլորով հանդերձ, համեմատաբար թույլ էր զարգացած քանդակագործության կարևոր ճյուղերից մեկը՝ արձանագործությունը: Անիում մեզ հետաքրքրող ժամանակների հայտնի արձաններից շատ թե քիչ ուշադրության արժանի գործը Գագիկ 1-ինի արձանն էր, որը, ինչպես ասվեց, տեղադրված էր իր կառուցած Գագկաշեն ս. Գրիգոր տաճարի պատի վրա: Սակայն Գագիկի բարձրաքանդակ արձանը Անիում հայտնաբերված այդ կարգի միակ արձանը չէր: Նույն ձևի մի արձան էլ գտնվելիս է եղել Պարոնի պալատի պատի վրա, և այդտեղից հանվել ու Պետերբուրգ տարվել 1843 կամ 1844 թվականին: Այդ բարձրաքանդակը սովորաբար համարել են զինվորականի կամ, ըստ ավանդության, Սմբատ 2-րդի արձանը: Այն քանդակվել է ուշ, Պարոնի պալատի հետ միասին: Ղ. Ալիշանի ասելով, անգլիացի մի ճանապարհորդ, որ Անիում եղել է 1837 թվականին, հիշատակել է մի հեծյալի քանդակ՝ ինչ-որ գնդաձև իր ձեռքին: Նույն ձևի մի գունդ էլ քանդակված էր քաղաքի Սմբատյան պարսպի գլխավոր մուտքի վրա՝ պատկերված Բագրատունիների զինանշան առյուծի ճանկերում: Գրեթե դրանցով էլ սահմանափակվում էին Անիի Բագրատունիների շրջանի արձանագործական աշխատանքները: Նույն բնույթի և զարգացման միևնույն աստիճանի վրա էին գտնվում նաև Հայաստանի մյուս տեղերում՝ Աղթամարում, Մրենում, Հոռոմոսում, Սանահինում, Հաղպատում և այլ տեղերում նույն ժամանակներում կերտած արձանագործական աշխատանքները:

Անիի գեղանկարչությունը նույնպես հիմնականում կապված էր ճարտարապետության հետ: Քաղաքի ավերակներում հայտնաբերված նմուշները, պատմագիրների վկայությունները, ուշ ժամանակների ճանապարհորդների նկարագրությունները ցույց են տալիս, որ Անիի ճարտարապետական գլուխգործոցներից շատերը զարդարել են նաև գեղանկարներով: Սակայն, ամենայն հավանականությամբ, գեղանկարչության զարգացած ճյուղը եղել է մանրանկարչությունը, որն առաջին հերթին կապված էր գրչության արվեստի հետ:

Անիի Մայր տաճարը, ս. Փրկիչը և մի քանի այլ եկեղեցիներ զար-

դարված էին նկարներով, որոնք ունեին կրոնական բովանդակություն. դրանք հիմնականում Քրիստոսի և առաքյալների պատկերներն էին, նըկարված գմբեթների ներսի կողմում: Այդ նկարները մեծամասամբ արված էին մի փոքր ուշ՝ 12-րդ դարի վերջերին և 13-րդի սկզբներին: Պահպանվել է Անիի ս. Փրկիչ եկեղեցին զարդարող նկարչի անունը: Սարգիս անունը կրող այդ «փարշկանի» (=նկարիչ) պատկերը կրոնավորի հագուստով, ավետարանի առաջ ծունկ չոքած աղոթելու տեսքով գտնվում էր եկեղեցու վրա և չնայած կրոնավորի արտաքինին, աշխարհական էր:

Իր հիմքում ունենալով բազմադարյան ավանդույթներ՝ հայկական թատրոնը 10—14-րդ դդ. ապրում է վերելքի շրջան: Գուսանները, ողբերգակներն ու խեղկատակները տալիս էին ոչ միայն սիրերգային ու պատմական բնույթի ներկայացումներ, այլ նաև երգիծական ստեղծագործություններ, որոնք ունեին ընդգծված դասակարգային բովանդակություն և այլաբանորեն արտահայտում էին հասարակության ցածր շերտերի շահերն ընդդեմ աշխարհիկ ու հոգևոր վերնախավերի: Եվ պատահական չէ, որ հայկական եկեղեցին առաջվա նման թատրոնը դիտում էր «հեթանոսության մնացուկ», իբրև շահագործվող զանգվածների ամբիոն և անհաշտ պայքար էր մղում դրա դեմ: Տարածված «ներկայացումներից» էին նաև երկրի քաղաքային կյանքի զանազան դրվագներ արտահայտող մենախոսություններն ու երկխոսությունները: Այս վերջին կարգի, բայց մի փոքր ուշ ժամանակներին վերաբերող գործերից էին Հովհ. Թլկուրանցու «Քաջ Լիպարիտը», Տկար Մովսեսի «Անին» և այլն: Ներկայացնում էին նաև թարգմանական զանազան գործեր:

Մեզ հետաքրքրող ժամանակների հայկական թատրոնի և նրա դեմ եկեղեցու մղած պայքարի մասին հիշատակություններ ունեն մի քանի հեղինակներ՝ Խոսրով Անձևացին (10-րդ դ.), Դավիթ Մաշկևորը, Սարգիս Շնորհալին (12-րդ դ.) և ուրիշներ, որոնք ատելությամբ են խոսում «հեթանոսական» ներկայացումների մասին: Իսկ Գրիգոր Պահլավունի Մագիստրոսը, որ 11-րդ դարի ամենաազդեցիկ հեղինակն էր, ընդհակառակը, թատրոնը պաշտպանում էր՝ կատակերգությունը դիտելով ընտանեկան արատները ծաղրելու և դրանք վերացնելու լավագույն միջոց: Նրա կարծիքով, կատակերգության նպատակը հենց դրանով էլ պիտի սահմանափակվի և քաղաքականությանը չպետք է դիպչի:

Անի քաղաքի հասարակական շքահանդեսների վերաբերյալ (որոնց մեջ, անշուշտ, մտնում են նաև թատերական ներկայացումները) չափազանցված, բայց ըստ էության իրականությունն ընդհանուր գծերով արտահայտող նկարագրություն ունի 11-րդ դ. մատենագիր Արիստակես Լաստիվերտցին: Այդ հանդեսների ու ներկայացումների մի մասը տեղի էր

ունենում քաղաքի հրապարակներում ու փողոցներում: Սակայն Անին ուներ նաև թատրոնի հատուկ շենք (կամ թերևս մի քանի շենքեր): Մինչև մեր ժամանակներն են հասել Անիի թատերական շենքերից մեկի մնացորդները:

Անիի թագավորության մեջ Պահլավունի իշխանական տունը խաղացել է շատ կարևոր դեր: Այն առաջին անգամ երևան է եկել 10-րդ դ. սկզբներին և մոտ 300 տարի գործուն մասնակցություն ունեցել երկրի քաղաքական, սոցիալական, տնտեսական ու մշակութային կյանքի ամենատարբեր բնագավառներում: Պահլավունի հայտնի տան ամենահայտնի ներկայացուցիչներից էր **Գրիգոր Մագիստրոսը**, իր ապրած ժամանակաշրջանի լուսավորական գործիչը, փիլիսոփան, հայ վաղ վերածննդի փայլուն ներկայացուցիչներից մեկը: Գր. Մագիստրոսը ծնվել է մոտ 990 թ. Անիում, Պահլավունիների ընտանիքում: Նա Վահրամ Պահլավունու նահատակ եղբոր՝ Վասակի որդին էր: Սկզբնական կրթությունը ստացել էր Անիում, իսկ հետագայում բարձր կրթությունը հավանաբար ստացել էր Բյուզանդիայում: Մասամբ դրանով է բացատրվում նրա չափից ավելի հունասիրությունը:

Գրիգոր Մագիստրոսն աշխարհիկ անձնավորություն էր, բազմակողմանի զարգացած՝ ազդեցիկ մտավորական: Նրա կյանքի ու գործունեության զգալի մասը բաժին է ընկնում Անի քաղաքին: Անիում նա եռանդուն մասնակցություն ուներ կրթության, գիտության ու մատենագրության զարգացման, երկրի ներքին քաղաքական գործում: Նա այն ազդեցիկ իշխանների շարքում էր, որոնք Հովհաննես-Սմբատ թագավորի մահից հետո խափանեցին Բյուզանդիայի խարդախ դիվանագիտության բոլոր կամայականությունները և Բագրատունիների գահի վրա հաստատեցին պատանի Գագիկ 2-րդին:

Գրիգոր Մագիստրոսի ջանքերով են կառուցվել Հավուց թառի ու Կեչառիսի վանքերը, որոնք դարձել էին մշակույթի զգալի կենտրոններ, և Բջնիի հոյակապ եկեղեցին: Այս վերջինը նա կառուցել է տվել 1031 թվականին՝ եկեղեցուն տալով հսկայական կալվածքներ և կառուցման ու այդ նվիրատվությունների մասին թողնելով ընդարձակ արձանագրություն: Պահլավունիների իշխանանիստ Բջնիի անունով Մագիստրոսը կոչվել է նաև Գրիգոր Բջնեցի:

Պահլավունիները Բջնիում երկար չեն մնացել: Նրանք 11-րդ դ. կեսերից Բյուզանդիային հանձնած Բջնիի կալվածքների փոխարեն ընդարձակ հողեր են ստանում Հարավային Հայաստանում և տեղափոխվում այնտեղ: Հենց այդ ժամանակներում՝ 1048 թվականին Գրիգոր Մագիստրոսը կայսրության կողմից նշանակվում է Միջագետքի կառավարիչ՝ կա-

տապան: Հետագայում բուն Հայաստանից նրա կառավարչության ներքո են անցնում նաև Վասպուրականն ու Տուրուբերանը: Բյուզանդիան հույս ուներ նրա միջոցով կանգնեցնել սելջուկ թուրքերի առաջխաղացումը, բայց արդեն ուշ էր. հայերը հազիվ թե թուրք սելջուկների հետ կենաց ու մահու կռվի բռնվեին հանուն մյուս հափշտակչի, որը ընդամենը մի քանի տարի առաջ խլել էր իրենց երկիրը և կիրառում էր հայահալած քաղաքականություն: Կայսրությանը հաջողվեց միայն Գր. Մագիստրոսի կատապանական զորքերի միջոցով վերջնականապես ճնշել Հայաստանում 11-րդ դարի կեսերին նոր ուժով բռնկված թոնդրակեցիների շարժումը, որը սոցիալականի հետ միասին, ըստ երևույթին, ուներ նաև ազատագրական բնույթ և ուղղված էր Բյուզանդիայի նվաճողական քաղաքականության դեմ, ինչպիսին դրան նախորդած պավլիկյան շարժումն էր:

Սակայն Գր. Մագիստրոսի հակումներն այլ էին: Նրան գրավում էին ոչ թե վարչական բարձր պաշտոնները կամ զորավարությունը, այլ գիտությունն ու լուսավորական գործը: Նա Միջագետքի և Հարավային Հայաստանի կառավարիչ եղած ժամանակ էլ շարունակում էր իր լուսավորական գործունեությունը: Մուշի ս. Կարապետ վանքում նրա համար կառուցել էին մի ապարանք և դպրոց: Կյանքի վերջին տարիներին նա իրեն ամբողջովին նվիրում է գիտությանն ու լուսավորական գործին: Գրիգոր Մագիստրոսը մահացել է 1058 կամ 1059 թվականին՝ 68 կամ 69 տարեկան հասակում:

Մագիստրոսի գիտական հետաքրքրությունների շրջանակները լայն էին ու համակողմանի: Նա թողել է մի քանի ինքնուրույն և թարգմանական աշխատություններ, որոնք վերաբերում են գիտության ամենատարբեր բնագավառներին՝ փիլիսոփայությանը, բժշկական գիտությանը, կենդանաբանությանն ու բնագիտությանն առհասարակ, մանկավարժությանը, լեզվաբանությանը և այլն: Նրա գիտական ժառանգության պսակը կազմում են «Թղթերը», որոնցով, Մ. Աբեղյանի արտահայտությամբ, «մեր գրականության մեջ մտել է մի նոր գրական տեսակ— նամականի ասածը»:

Մագիստրոսի գիտական ժառանգության մեջ փիլիսոփայությունը գրավում է կենտրոնական տեղ: Նրա փիլիսոփայական հայացքները, որ զարգացրել է իր նամակներում, ընդհանուր առմամբ առաջադիմական են և կարևոր դեր են խաղացել հայ փիլիսոփայական մտքի զարգացման գործում: Նա փիլիսոփայական քննախոսություններում պաշտպանում է հին հունական փիլիսոփայության առաջադիմական որոշ սկզբունքները,

կարևոր տեղ տալով բանականությանն ու հասարակական կյանքում մարդու խաղացած դերին։

Հին հունական փիլիսոփաների նման՝ Մագիստրոսը ևս բավական հանգամանորեն զբաղվել է կենդանիների օրգանիզմների ուսումասիրությամբ և բնագիտության այլ հարցերով։ Նա մեծ գիտակ էր բժշկական գիտության ասպարեզում։ Մագիստրոսին հավասարապես հետաքրքրել են և՛ տեսական, և՛ գործնական բժշկությունը, և՛ հիվանդությունների առաջացման դրդապատճառները, իր «Թղթերում» տարբեր առիթներով անդրադառնալով այդ խնդիրներին։

Բանասիրության բնագավառում Գր. Մագիստրոսը առանձնապես մեծ հետաքրքրություն է ցուցաբերել հին հունական առասպելաբանության և քերականության նկատմամբ։ Նրա գրչին պատկանող քերականության գլխավոր և միակ աշխատությունը կոչվում է «Մեկնութիւն քերականի», որտեղ ընդհանրապես քերականության խնդիրների, էության ու ուսուցման մասին խոսելուց բացի, մի առանձին գլխով համառոտակի ներկայացնում է տարբեր ժողովուրդների գրերի գյուտի պատմությունը։

Գրիգոր Մագիստրոսը թեպետ բանաստեղծ չէ, բայց ունի չափածո մի քանի գործեր, որոնց մեջ հայտնի է «Հազարտողեան» կոչված ոտանավորը (բաղկացած 1016 տողից), որը նա գրել է Կոստանդնուպոլսում, 1045 թվականին, չորս օրվա ընթացքում։ Այդ ոտանավորը գրված է արաբական հեղինակ Մանուչեի խնդրանքով, որը որոշ չափով գիտակ էր նաև հայոց լեզվի մեջ։ Ոտանավորի բովանդակությունը վերցված է Ս. Գրքից, իսկ վերջին մասի մեջ խոսվում է նաև հայոց եկեղեցու պատմության մասին՝ սկսած Գրիգոր Լուսավորիչից, մինչև գրերի գյուտն ու մեր առաջին թարգմանիչները։

Մագիստրոսը, ինչպես ասվեց, նաև ուսուցչապետ էր և տարբեր ժամանակներում ավանդել է Անիում, Սանահինում, Հաղպատում, Կեչառիսում, Մուշի ս. Կարապետի դպրոցում և այլուր։ Նա լուսավորական գործիչ էր և խրախուսում էր կրթության ու գիտության տարածման գործի յուրաքանչյուր ձեռնարկում։ Փիլիսոփայությունից, երկրաչափությունից և գիտության այլ ճյուղերից կատարած նրա թարգմանությունները (հիմնականում հունարենից) մասամբ ծառայում էին նաև իբրև ձեռնարկներ Հայաստանի բարձր տիպի դպրոցների համար։

Գրիգոր Մագիստրոսի ժամանակակիցներից է Պետրոս 1-ին կաթողիկոսը, որը կրում է Գետադարձ տիտղոսը։ Մագիստրոսի «Թղթերի» մի զգալի մասը հասցեագրված է դավաճան կաթողիկոսին, որը սակայն մեր մատենագրության կողմից չի արգահատվել իր հայրենադավ արարքի համար։ Հայտնի չէ, թե երբ և որտեղ է նա ստացել նախնական կրթությու-

նը՝ Արգինայի կաթողիկոսարանում իր եղբոր՝ Խաչիկ Ա-ի հսկողության ներքո", ինչպես գրում է Կ. Կոստանյանցը, թե՞ Տրապիզոնում: Աղբյուրների մանրազնին ուսումնասիրությունը ցույց է տվել, որ Պետրոսը Բյուզանդիայի կողմից Անիի գրավումից հետո, երբ գտնվում էր տարագրության մեջ, հորինել է զանազան շարականներ, որոնք հասել են մինչև մեր օրերը: Մատենագրական որոշ վկայություններ և ավանդություններ կան այն մասին, որ Պետրոս կաթողիկոսը շարականներից ու աստվածաբանական երկերից (որոնք մեզ չեն հասել) բացի հայտնի է եղել նաև արտաքին գիտությունների և տաղաչափության մեջ:

Բագրատունիների ժամանակաշրջանի Անիի հետ է կապված նաև Գրիգոր Մագիստրոսի որդու՝ **Վահրամի** գործունեությունը: Նրա ծննդյան թիվն ու տեղը մեզ հայտնի չէ: Իր որդուն ուղղած՝ Գրիգոր Մագիստրոսի մի ոտանավորից հայտնի է դառնում միայն, որ նա ձգտել է պատանի Վահրամի մեջ սեր առաջացնել դեպի գիտությունը, պոեզիան, և նրան տվել էր համապատասխան կրթություն: Հոր մահից հետո Վահրամը նշանակվում է Միջագետքի և Հարավային Հայաստանի կուսակալ: Սակայն վարչական գործն անհարիր էր նրա հակումներին և, թողնելով այդ բարձր պաշտոնը ու բաժանվելով կնոջից, դառնում է կրոնավոր՝ ստանալով **Գրիգոր** անունը: Շուտով (1065 թ.) հակառակ իր կամքի Գրիգորին ձեռնադրում են կաթողիկոս:

Գրիգորից ինքնուրույն գործեր ու քերթվածքներ չեն պահպանվել: Նա հիմնականում զբաղվել է հունարենից և ասորերենից զանազան գործեր հայերեն թարգմանելով կամ թարգմանել տալով: Թարգմանության ենթակա աշխատանքները նա ձեռք էր բերել անձնապես այցելելով Եգիպտոս, Պաղեստին և Կոստանդնուպոլիս: Նրա թարգմանած կամ թարգմանել տված գործերը հիմնականում վկայաբանություններ էին, դրա համար էլ կրել է Գրիգոր Վկայասեր անունը: Վկայաբանություններից բացի նա թարգմանել է (կամ թարգմանել է տվել) նաև ճառեր ու մեկնություն:

Հովհաննես-Սմբատ թագավորի և Գրիգոր Մագիստրոսի օրոք Անիում իր գիտությամբ հայտնի էր **Սարգիս վարդապետը**, որին կոչում են նաև **Սևանեցի**, հիմնականում Սևանա վանքում լինելու համար: Այդ գիտնական վարդապետը Մագիստրոսի բարեկամներից էր և անուն հանած մտածող: Ցավով պիտի ասել, սակայն, որ նրա աշխատություններից (եթե այդպիսիք իրոք եղել են) չեն պահպանվել:

Սրանք էին հիմնականում մեզ հետաքրքրող ժամանակների Անիի գիտության, գրականության և ընդհանրապես մշակույթի մեզ հայտնի գործիչները:

# ԱՆԻՆ 1045—1199 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 1. ԱՆԻՆ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅԻ ԳԵՐԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ (1045—1064)

Անիի թագավորությունն իր հզորության գագաթնակետին է հասնում Գագիկ 1-ինի օրոք (989—1020)։ Նրա մահից հետո անմիջապես սկըսվում է քաղաքական անկման, ներքին երկպառակությունների և արտաքին թշնամիների ոտնձգությունների շրջանը։

Ներքին անհամաձայնությունները, որոնք երբեմն վերածվում էին ռազմական ընդհարումների, սկսվեցին Գագիկ 1-ինի մահից անմիջապես հետո։ Բանը նրանումն էր, որ օրինական թագաժառանգը Սմբատն էր (որ սովորաբար կոչել են նաև Հովհաննես-Սմբատ), բայց գահին տիրանալու մեծ հավակնություններ ուներ նաև կրտսերը՝ Աշոտը։ Եվ ահա Բագրատունի այդ երկու եղբայրների միջև ծայր են առնում գահակալական կռիվներ, որոնք Վրաց թագավորի, Հայոց Պետրոս կաթողիկոսի, իշխանների և Կարսի թագավորի եռանդուն միջամտությամբ 1022 թ. կանխվում են, բայց Անի-Շիրակի թագավորության բաժանման գնով։ Երկու եղբայրների միջև կնքված հաշտության համաձայն Հովհաննես-Սմբատը թագավորելու էր Անի մայրաքաղաքի և դրա շրջակայքի գավառներում, իսկ կրտսեր եղբայրը՝ Աշոտը՝ ծայրաշրջաններում։

Երկրի մասնատումը ֆեոդալական մանր թագավորությունների, որոնց թիվն արդեն հասնում էր 6-ի, չհաշված հայկական ու օտար կիսանկախ իշխանությունները, թուրքական ցեղերի հարձակման ուրվագծվող վտանգը, ներքին երկպառակություններն ու Անդրկովկասի նկատմամբ 10-րդ դ. երկրորդ կեսից Բյուզանդիայի վարած բացահայտ նվաճողական քաղաքականությունը չէին կարող իրենց անդրադարձումը չունենալ երկրի ներքին կյանքի, հատկապես՝ հասարակական խմբավորումների ու սոցիալական հարաբերությունների վրա։

Երկրի անկախությանը սպառնացող բյուզանդական ագրեսիայի հե-

տևանքով մայրաքաղաք Անիում որոշակիորեն ձևավորվում է երկու խումբ՝ կուսակցություն, ինչպես դրանք սովորաբար որակավորվում են: Խմբերից մեկը հունասիրական-բյուզանդասիրականն էր, որի պարագլուխը սկզբնական շրջանում միայն Վեստ Սարգիս իշխանն էր, ինչ-ինչ եղանակով Բագրատունիների արքունիքում խնամակալի բարձր պաշտոնը ձեռք բերած և դրա օգնությամբ գահակալության ձգտող մի տարր, որն իր նպատակին հասնելու համար միջոցների մեջ խտրություն չէր դնում: Հունասերների մյուս հայտնի պարագլուխներից էին ժամանակի Պետրոս Գետադարձ կաթողիկոսը և Գրիգոր Մագիստրոսը: Իսկ հարենասերների գլուխ կանգնած էր Անիի թագավորության նշանավոր սպարապետ Վահրամ Պահլավունին՝ Գրիգոր Մագիստրոսի հորեղբայրը: Երկու կուսակցությունների միջև պայքարը սրվեց հատկապես Անիի թագավորությունը զավթելու համար Բյուզանդիայի ձեռնարկած արշավանքների ժամանակ:

Կարծես ժամանակը և դեպքերը գործում էին հօգուտ օտարամոլների: Բյուզանդական կայսրությունը գրավելով Հայաստանի զանազան մասերը՝ աստիճանաբար մոտենում էր Անիին:

Անիի գլխին ամպեր էին կուտակվում: Վրաց Գեորգի թագավորի ապստամբության ճնշումը, որի հետ Հովհաննես-Սմբատն ուներ դաշնակցային կապեր, Բյուզանդիայի խարդախ ու նենգ քաղաքականությունը, թուրքական ցեղերի արշավանքների աճող վտանգը, թագավորության մասնատումը երկու եղբայրների միջև, հունասերների և լիակատար անկախության կողմնակիցների միջև աստիճանաբար խորացող հակասություններն ու երկպառակությունները, այդ բոլորը Անիի թագավորությունը դնում էին ծանր կացության մեջ:

Ժամանակի Հովհաննես-Սմբատ թագավորը, որին մեր պատմագիրները որակում են որպես գրասեր ու իմաստուն, բայց միաժամանակ՝ «ծանրաշարժ», «թանձրամարմին», «վախկոտ» և ռազմական գործում անպիտանի, ելքը տեսնում էր Անին Բյուզանդիային կտակելու մեջ:

Վրաստանում բռնկված ապստամբության ճնշման հետ միաժամանակ Բյուզանդիայի կայսր Վասիլը Հովհաննես-Սմբատից պահանջում է իրեն տալ Անի և Կարս քաղաքները: Ապստամբության ճնշումից հետո, երբ նա վերադարձել էր Տրապիզոն, Հովհաննես-Սմբատը ժամանակի կաթողիկոս Պետրոս Գետադարձի գլխավորությամբ 1021 թ. վերջերին պատվիրակություն է ուղարկում Վասիլի մոտ բանակցության համար: Դրա արդյունքը լինում է այն, որ կաթողիկոսը Հովհաննես-Սմբատի անունից Անին կտակում է Բյուզանդիային:

1040 թ. մահանում է Հովհաննես-Սմբատի եղբայր Աշոտը: Առիթից

օգտվելով, Տաշիր-Ձորագետի թագավոր Դավիթ Անհողինը գրավում է նրա իշխանության տակ եղած գավառների մի մասը։ Հաջորդ տարվա սկզբներին մահանում է նաև Անիի թագավորը՝ Հովհաննես-Սմբատը, և եթե Աշոտի մահը, ինչպես Մատթեոս Ուռհայեցին է վկայում, ընդհանուր հուսալքություն է առաջացնում զորքի մեջ, ապա Անիի անժառանգ թագավորի մահվամբ Բագրատունիների մայրաքաղաքում ստեղծվում է ծայր աստիճան լարված դրություն. մի կողմից Բյուզանդիան իր ձեռքին ունենալով 1022 թվականի չարաբաստիկ կտակը պահանջում էր «իբրև օրինական ժառանգորդ» իրեն հանձնել Անին, մյուս կողմից՝ Վեստ Սարգիս իշխանը օգտվելով արքունիքում գրաված իր բարձր պաշտոնից, ամեն հնարավոր միջոցի դիմում է Բագրատունիների գահին տիրանալու համար։ Նույնպիսի հավակնություններ ուներ նաև Դավիթ Անհողինը։

Թափուր մնացած գահին տիրելու համար առաջինը գլուխ է բարձրացնում Բագրատունի թագավորների դավաճան խնամակալը՝ Վեստ Սարգիսը։ Օգտվելով խառնակ դրությունից, նա հափշտակում է արքունական գանձերը և ամրանում մայրաքաղաքի միջնաբերդում, հույսը դընելով դեպի Անի արշավող բյուզանդական զորքի վրա։

Հենց այդ նույն 1041 թվականին բյուզանդական հարձակման հետ միաժամանակ, նախքան կայսերական զորքն Անիին մոտենալը և դրա ու հայոց գնդերի միջև տեղի ունեցած արյունահեղ մարտերը, իր զորքերի գլուխ անցած դեպի Բագրատունիների մայրաքաղաք է շտապում նաև Դավիթ Անհողինը (նույնպես Բագրատունի), որն իրեն համարում էր առայժմ թափուր մնացած գահի իսկական ժառանգորդը։ Նա այդ արշավանքի ընթացքում գրավում և ավերում է բազմաթիվ գավառներ, բայց հակահարված ստանալով հրաժարվում է հետագա գործողություններից և վերադառնում է Տաշիր-Ձորագետ։

Այսպիսով, Անիի թագավորության ներսում հրապարակի վրա փաստորեն մնում էին երկու ուժեր՝ անկախության ջերմ պաշտպանները և դավաճանների կուսակցությունը, որը հայագիտության մեջ, ավանդույթի ուժով, ներողամտաբար կոչվել է «հունասեր»՝ երկիրը Բյուզանդիային զոհելու աշխարհիկ ու հոգևոր ազգադավ ֆեոդալների կուսակցությունը, որը հիմնվում էր բյուզանդական զորքի և ագրեսիվ ու նենգ քաղաքականության վրա, սակայն գրեթե միշտ, զանազան պատրվակներով, ժողովրդից խնամքով թաքցնելով իր դավաճանական հրեշավոր գործունեությունը։

Սակայն այդպիսի բարդ պայմաններում նախ պետք է հակահարված տրվեր Անին գրավելու համար Հայաստան ներխուժած Միխայիլ կայսրի ահռելի բանակին և խափանելով ներքին կենտրոնախույս ու օտարամոլ

ուժերի նենգությունները՝ Բագրատունիների գահի վրա հաստատել հրապարակի վրա եղած միակ թեկնածուին՝ Աշոտ 4-րդի որդուն՝ պատանի Գագիկին։

Մեծ հերոսություն և գերմարդկային ճիգեր էին պետք զգալի չափով ջլատված Անի-Շիրակի թագավորության փոքր ուժերով բյուզանդական մեծաթիվ բանակին պարտության մատնելու և երկրի սահմաններից դուրս շպրտելու համար։ Արիստակես Լաստիվերտցու վկայությամբ, Անին հանձնելու մասին Միխայիլ կայսեր առաջարկը մերժելուց հետո, 1041 թվականի վերջերին և հաջորդ տարվա սկզբներին այն զենքի ուժով գրավելու համար, բյուզանդական բանակը կատարում է մի քանի արշավանք։ Իսկ Մ. Ուռհայեցին նշում է այդպիսի երկու արշավանքի մասին։ Նրա ասելով վերջին արշավանքը կատարվել է 100-հազարանոց մի ահռելի բանակով, որն ավերելով իր առաջխաղացման ճանապարհի վրա ընկած գավառներն ու բնակավայրերը՝ հասել է Անիի պաշտպանական պարիսպներին։ Կայսերական հսկայական բանակի դեմ Անին հայտնի զորավար Վահրամ Պահլավունու գլխավորությամբ դուրս է բերում 30-հազարանոց զորագնդեր։ Ուժերի անհավասարությունը նկատի ունենալով, Վահրամ Պահլավունին դիմում է սրամիտ, բայց համարձակություն ու հերոսություն պահանջող մարտավարության։ Պահլավունի մեծ սպարապետը առանց ժամանակ կորցնելու, Բյուզանդիայի համար անսպասելի կերպով, իր բանակի գլուխ անցած շուտափույթ դուրս է գալիս քաղաքի արևմտյան մասում գտնվող Ծաղկոցաձորի դարպասից և մխրճվում թշնամու մարտակարգերի մեջ։ Հանկարծակիի եկած կայսերական բանակը կատաղի դիմադրություն է ցույց տալիս՝ մեծամտորեն լուտանք թափելով հայ զինվորների հասցեին։ Այդ ահեղ մարտում հայկական զորքը ջարդում է թշնամուն և հետապնդելով նահանջողներին՝ շարունակում է կոտորածն այնքան ժամանակ, քանի դեռ Վահրամ Պահլավունին հրաման չի արձակում ջախջախված թշնամու մնացորդներին խնայելու և նահանջի հնարավորություն տալու մասին։ Զգալի չափազանցությամբ, սակայն պատկերավոր ոճով է նկարագրել Մատթեոս Ուռհայեցին այդ ճակատամարտը։

Բյուզանդական զորքերի այդ խայտառակ պարտությունից հետո Անին առայժմ զերծ է մնում հարձակումներից։ Վահրամ Պահլավունին և նրա համախոհները հնարավորություն են ստանում զբաղվելու Բագրատունիների թափուր մնացած գահի համար թեկնածու գտնելու հարցով։ Անիի վերնախավի ճնշող մեծամասնության համաձայնությամբ Ծերունի սպարապետը Հայոց կաթողիկոս Պետրոսի ձեռքով (որը բյուզանդական զորքի կրած պարտությունից հետո մյուս բյուզանդասերների հետ միա-

սին առայժմ հաշտվել էր ստեղծված դրության հետ) Մայր եղեկեցում Աշոտ 4-րդի որդի, 17—18 տարեկան Գագիկին մեծ հանդիսավորությամբ կարգել է տալիս Հայոց թագավոր Գագիկ 2-րդ անունով:

Պատմագիրները պատանի Գագիկին միահամուռ բնութագրում են որպես գրասեր, ուսումնասեր, քաջ և «աստուածասեր» անձնավորություն: Երկրի միասնությունը և մայրաքաղաքի անվտանգությունն ապահովելու համար եռանդուն թագավորը դիմում է վճռական միջոցների: Նա նախ և առաջ վնասազերծում է առայժմ Բյուզանդիայի օգտին գործող Վեստ Սարգիս իշխանին, ապա բանակի օգնությամբ կարճ ժամանակամիջոցում իրեն ենթարկում մյուս պառակտիչներին:

Հենց այդ ժամանակ, 1042 թ. վերջերին (կամ թերևս 1043-ի սկզբներին) սելջուկյան հորդաները Պարսկաստանի կողմից մտնելով Այրարատյան աշխարհ՝ սկսում են ավերել նրա գավառներն ու բնակավայրերը: Գագիկ 2-րդն ու Բջնիի տեր Գրիգոր Մագիստրոսը իրենց միացյալ զորքերով, Հրազդանի ափին, Բջնի բերդի մոտակայքում ջարդում են թուրքական ավարառու զորքերին, գերում նրանց իշխաններին, իսկ զորքի մնացորդներին դուրս շպրտում մեր երկրի սահմաններից:

Այդ բոլորի հետևանքով վերականգնվում է, գոնե առերես, երկրի միասնությունը և վերացվում է արևելքից եկող վտանգը: Սակայն չէր վերացվել Անիի անկախությանը սպառնացող հիմնական վտանգը, որ գալիս էր արևմուտքից՝ ագրեսիվ Բյուզանդիայից:

1042 թ. կայսերական գահին տիրացած Կոստանդին Մոնոմախը տեղեկանալով 1022 թվականի Տրապիզոնի գործարքի մասին, Գագիկ 2-րդից համառորեն պահանջում էր իրեն հանձնել Անին համանուն թագավորության հետ միասին: Նորաթուխ կայսրը փոխանակ հաշվի առնելու արևելքից եկող թուրք-սելջուկյան նվաճումների վտանգը, և, զիջումներ անելով, հայերին իր դաշնակիցը դարձնելու, կամ ուղղակի նրանց ուժերն օգտագործելու այդ ընդհանուր թշնամու դեմ, Հայաստանի նկատմամբ բռնում է ավելի մարտնչող զավթիչի դիրք: Նա Անին իր իշխանությանը ենթարկելու համար գործի է դնում կայսրության զավթողական քաղաքականության ամբողջ զինանոցը՝ մեծ բանակները, նենգությունն ու խաբեությունը, երկաբնակ եկեղեցին, տեղում գործակալներ ու ուժեր ստեղծելու իր արգահատելի միջոցները՝ նվիրատվություններ, կաշառք, սուտ խոստումներ ու երդումներ և այլն, և այլն: Ականավոր շատ պատմաբաններ սելջուկյան ավերիչ արշավանքների ու առաջխաղացման նախօրյակին Բյուզանդիայի կառավարող շրջանների և կայսրության պաշտոնական եկեղեցու այդ հայատյաց քաղաքականությունը իրավացիորեն համարում են անհեռատես ու վնասակար:

Կոստանդին Մոնոմախը կայսերական պաշտոնական երկաբնակ եկեղեցու միջոցով ֆանատիկոսության հասնող հալածանքներ է սկսում հայկական միաբնակ եկեղեցու դեմ, բորբոքում է ներքին երկպառակությունները՝ Անիի ներսում ստեղծելով իր դաշնակիցները, հանձինս Վեստ Սարգսի, որը ոչ միայն կարողացել էր ազատվել կալանքից, այլև իր շողոքորթությամբ ու խաբեությամբ շահել էր Գագիկ 2-րդի համակրանքը՝ նրան թշնամացնելով նախկին բարեկամի՝ երկրում մեծ ազդեցություն ունեցող Գրիգոր Մագիստրոսի հետ, որը դավաճան իշխանի աներն էր: Դրանցից բացի, բյուզանդական կայսրին հաջողվում է Անիի դեմ դուրս բերել Տաշիր-Ձորագետի թագավոր Դավիթ Անհողինին՝ իրեն Բագրատունիների գահի «օրինական» ժառանգորդ համարող մի սովորական ծախու անձնավորության, որն ուներ զինվորական շոշափելի ուժեր և կարող էր մեծ վնասներ պատճառել Անիի հերոս պաշտպաններին: Վերջապես, կայսրն իր տրամադրության տակ ուներ մեծաթիվ, լավ զինված բանակ, որը կարող էր ցանկացած պահին ուղարկել Անիի դեմ:

Ներքին ու արտաքին այդպիսի աննպաստ պայմաններում էր, որ Բյուզանդիայի կայսրը համառորեն պահանջում էր Անին: Հայոց թագավորն, անշուշտ, չէր կարող և ցանկություն էլ չուներ իր թագավորությունն ու մայրաքաղաքը Բյուզանդիային տալու: Նա կայսրի կտրուկ նամակին տալիս է ավելի մեղմ, բայց մերժողական պատասխան, նշելով, որ ինքը միշտ կարող է հավատարիմ մնալ կայսրությանը, բայց առանց հայրենի քաղաքը նրան տալու: Կոստանդին Մոնոմախը դիմում է ռազմական ուժի և 1043—1044 թթ. երկու արշավանք է կազմակերպում Անին գրավելու համար:

Առաջին արշավանքը կատարվում է Բյուզանդիային ենթակա Վրաստանի դուքս Իասիտեսի հրամանատարությամբ: Այդ արշավանքին մասնակցած զորքի քանակի, ընթացքի և հետևանքների մասին պատմագրական երկերում շատ թե քիչ արժանահավատ տեղեկություններ չեն պահպանվել: Սակայն նույն նպատակի համար շուտով երկրորդ արշավանքի կազմակերպումը ցույց է տալիս, որ առաջինը բյուզանդացիների համար ավարտվել էր պարտությամբ:

Երկրորդ արշավանքը կազմակերպվում է ավելի մեծ ուժերով՝ ավելի հայտնի զորավար Նիկողայոսի հրամանատարությամբ: Ըստ երևույթին անցյալի փորձը նկատի ունենալով, կայսրն այս արշավանքի հաջողությունը նույնպես կասկածելի է համարել: Այդ պատճառով էլ, նախօրոք, ստորաքար, դաշնակցության մեջ է մտնում Դվինի Աբուսվար քուրդ էմիրի հետ և վերջինիս առաջարկում Անիի վրա հարձակվել արևելքից, բյուզանդական զորքերի արևմուտքից կատարվելիք արշավանքի հետ միա-

սին։ Պայմանի համաձայն, Աբուսվարին էին անցնելու այն բոլոր գավառներն ու բերդերը, որ նա կգրավեր Գագիկ 2-րդի թիկունքից հարձակվելու ժամանակ։ Երկկողմանի արշավանքները փոքրիկ թագավորությունում ստեղծում են ծանր կացություն։ Կենաց ու մահու կռիվ էր բորբոքվել։ Էմիրական զորքերը մեկը մյուսի հետևից գրավում ու ավերում էին Անիի թագավորության գավառներն ու բերդերը, բնաջնջում կամ բռնությամբ կրոնափոխ անում բնակչությանը։ Երիտասարդ թագավորն, այնուամենայնիվ, հիմնական վտանգը համարում է բյուզանդականը. նա մեծ քանակությամբ գանձեր տալու միջոցով հաշտություն է կնքում Աբուսվարի հետ և իր ամբողջ զորքով դուրս գալիս կայսերական մեծ բանակի դեմ։ Անի արշաված բյուզանդական բանակն այս անգամ ևս պարտություն է կրում և նահանջում։ Քուրդ էմիրի դաշնակցությունն ու ավարառական արշավանքը նույնպես ոչնչով չկարողացավ հաջողություն բերել բյուզանդական ·զավթիչներին։ Նրանք այս անգամ էլ պարտվեցին Անիի քաջարի պաշտպաններից։

Այսպիսով, Անին գրավելու համար բյուզանդական զորքը չորս անգամ արշավանքի է դուրս եկել (երկուսը Միխայիլ կայսեր, երկուսը՝ Կոստանդին Մոնոմախի ժամանակ) և չորս անգամ էլ պարտություն կրելով՝ հարկադրված է եղել նահանջել ձեռնունայն։ Կայսերական բանակի հարձակումներն իրենց թողած հետևանքներով արևելյան վաչկատուն ցեղերի արշավանքներից քիչ էին տարբերվում, դրանք վերջիններիս նման երկրին բերում էին ավերածություն, կոտորած, գերեվարություն։

Նիկողայոս զորավարի վերը նշված արշավանքից հետո, որը թվով չորրորդն էր և հավանաբար կատարվել էր 1044 թվականի սկզբներին, Բյուզանդիան Անին գրավելու համար զենքի փոխարեն կամ, ավելի ճիշտ, զենքից բացի գործի է դնում իր նենգ ու խարդախ քաղաքականության բոլոր օղակներն ու միջոցները։ Եվ այդ պահից ի վեր մինչև Բագրատունիների մայրաքաղաքի գրավումը ու նրա վերջին թագավորի գահազրկումը, Անիի պատմությունը Բյուզանդիայի և նրա գործակալների հարուցած ողբերգական դեպքերի մի տխուր ժամանակագրություն է, արաբական խալիֆայության դեմ ուղղված ազատագրական պատերազմներով ձեռքբերված քաղաքական անկախության կորստի մի մռայլ շրջան, երբ կայսերական իշխանությունները բացահայտ պայքարը փոխարինել էին խարդախ դիվանագիտությամբ, բանսարկություններով՝ իրենց այդ ստոր գործարքների մեջ ներգրավելով երկրի ներսի փողամոլ, ընչաքաղց, դավաճան ուժերն ու առանձին դեմքեր՝ սկսած Կիրակոս տերտերից մինչև Հայոց Պետրոս կաթողիկոսն ու վերջին Բագրատունիների խնամակալ Վեստ Սարգիս իշխանը ներառյալ։

Զենքով չկարողանալով գրավել Անին, բյուզանդական Կոստանդին Մոնոմախ կայսրը դիմում է խորամանկության: Վեստ Սարգսի խորհրդով նա բանակցություններ վարելու և բարեկամություն հաստատելու պատրվակով սիրալիր նամակ է գրում Գագիկ 2-րդին և նրան հրավիրում Կոստանդնուպոլիս: Հեռատես թագավորը, սակայն, անցյալի դառը փորձով գիտեր բյուզանդական կայսրերի ուխտադրժությունն ու նենգությունը և երկար ժամանակ հրաժարվում է Կոստանդին Մոնոմախի ցանկությունը կատարելուց: Վեստ Սարգիսը և նրա կողմնակից ազատները բոլոր միջոցներով հորդորում ու համոզում էին թագավորին ընդունել կայսերական «խաղաղասիրական» և «բարեկամական» հրավերը՝ մատնացույց անելով կայսեր «անկեղծությունը»: Թագավորի նման սպարապետ Վահրամ Պահլավունին նույնպես Կոստանդնուպոլիս գնալը համարում էր կործանարար: Սակայն դավադիր ուժերին այնուամենայնիվ հաջողվում է կոտրել Գագիկ 2-րդի համառությունը, և Պետրոս կաթողիկոսի ղեկավարությամբ կեղծ երդումներով մի հավատարմագիր տալով՝ նրան ուղևորել Կոստանդին կայսեր մոտ: Մեզ թվում է, որ Հայոց թագավորն այդ վտանգավոր քայլին է դիմել առաջին հերթին նկատի ունենալով երկրի արտաքին քաղաքական և ներքին անկայուն դրությունը՝ թուրք սելջուկների արշավանքների վտանգը, Աբուսվար էմիրի թշնամական դիրքը, երկրի ներքին ուժերի անմիաբանությունը և այլ հանգամանքներ:

Այսպես թե այնպես, Հայոց թագավորը, Արիստակես Լաստիվերտցու արտահայտությամբ, «չոգաւ ի Յոյնս զանդարձ ուղևորութիւն»: Կոստանդին Մոնոմախը նրան արքայավայել ընդունելուց և որոշ ժամանակ մեծարելուց հետո, կտրուկ փոխում է իր վերաբերմունքը: Հայոց թագավորը գերված ու ծուղակն էր գցված ամենաստոր միջոցներով: Մատթեոս Ուռհայեցին պատմական իրողությանը դրամատիկ ձև տալով վկայում է, որ Գագիկի Կոստանդնուպոլիս գնալուց որոշ ժամանակ անց՝ Անին պաշտպանելու համար նրան հավատարմագիր տված նենգավորները, Պետրոս կաթողիկոսի և Վեստ Սարգսի գլխավորությամբ, կայսրին են ուղարկում մայրաքաղաքի քառասուն բանալիները և մի նամակ՝ «թէ Անի քաղաքն և ամենայն արեւելքն քեզ եղեւ»:

Պատմագիտական տեսակետից այդ պահին Արիստակես Լաստիվերտցին նկարագրում է ավելի արժանահավատ ձևով, առանց դրամատիկական զեղումների: Նա վկայում է, որ կայսրը Հայոց թագավորին տեսնելուն պես մոռանում է իր տված բոլոր երդումները և նրան արգելափակելով՝ պահանջում է իրեն հանձնել Անին, փոխարենը խոստանալով կալվածքներ տալ պատմական Փոքր Հայքում: Հայոց թագավորը կտրականապես մերժում է կայսեր առաջարկ-վերջնագիրը և մեկ ամիս պայ-

քար է մղում իր իրավունքների և Անիի ճակատագրի համար։ Նա մերկացնում է Կոստանդին կայսեր ուխտադրժությունն ու ստորությունները, Պետրոս Գետադարձ կաթողիկոսի, Վեստ Սարգսի և բյուզանդամոլ մյուս իշխանների օրինազանցությունն ու դավաճանությունը, Տրապիզոնի 1022 թվականի զազրելի գործարքը։

Սակայն կորուստն անդառնալի էր։ Իրավունքը իրադրության տիրոջ կողմն էր։ Կայսերն իր ձեռքի տակ ունենալով 1022 թվականի կտակը, Անիի քառասուն բանալիներն ու դավաճանների երդումնագրերը, որ ուղարկել էր Պետրոս կաթողիկոսը, վերջիվերջո Գագիկ 2-րդին հարկադրում է հրաժարվել Անի վերադառնալու և իր թագավորությանը տեր դառնալու մտքից, Հայոց մայրաքաղաքն ու Բագրատունիների թագավորությունը համարելով Բյուզանդիայի «օրինական ժառանգությունը», դրանց փոխարեն, Հայոց թագավորին տալով Կոլոն-Պեղատ ու Պիզա քաղաքները և դրանց շրջակայքը։

Անիում դեռևս անտեղյակ էին Բյուզանդիայի մայրաքաղաքում տեղի ունեցած դեպքերին, երբ Կոստանդին Մոնոմախը Գագիկին գահազրկելուց հետո, ըստ Մ. Ուռհայեցու 1044 թ., ներքինի Պառակամանոս զորավարի հրամանատարությամբ մի հսկա բանակ է ուղարկում Անին գրավելու համար։ Բյուզանդական զորքերը մոտենում են ընդհուպ Անիի դռներին։ Այս էլ ո՞րերորդ անգամ կայսերական զորքերն ուղղակի սպառնում են գրավել Հայոց մայրաքաղաքը։ Ոտքի են կանգնում Հայոց զորքերը և քաղաքի ամբողջ բնակչությունը։ Գագիկ 2-րդի կողմից բերդապահ նշանակված Ապիրատ իշխանի գլխավորությամբ քաղաքապաշտպան զորքն ու աշխարհազորը հենց Անիի դռների մոտ տեղի ունեցած արյունահեղ մարտում պարտության են մատնում ներքինու բանակին և հետ շպրտում դեպի արևմուտք։

Շուտով հայտնի է դառնում տեղի ունեցած ողբերգությունը։ Լուր է ստացվում, որ Բագրատունի երիտասարդ թագավորն այլևս չի վերադառնալու, որ նա իր թագավորության ու մայրաքաղաքի դիմաց կալվածքներ է ստացել կայսրության տարածքում և այնտեղ էլ հաստատվել։ Հայոց մայրաքաղաքի կորստյան գույժը համընդհանուր մեծ սուգ է առաջացնում։ Դրա հետ միաժամանակ միջոցներ են որոնում Անիի ճակատագիրն ընդունելի ձևով տնօրինելու։ Բյուզանդական խարդախություններից զայրացած՝ անեցիների մեծ մասը կայսերական տիրապետությունից գերադասում է հարևաններից որևէ մեկի՝ Վրաց կամ Աբխազաց թագավորի, կամ նույնիսկ Դվինի էմիրի իշխանությունը։ Սակայն այդպիսի պայմաններում բյուզանդասերների համար դժվար չէր կչեռքի նժարը առանց մեծ դժվարության թեքել իրենց կողմը և օգտվելով հասարակու-

թյան մեջ մայրաքաղաքի ճակատագրի շուրջն առաջացած խմբավորումների տարակարծիքներից, քաղաքի «գլխավորներին» համոզել այն համանուն թագավորության հետ միասին հանձնելու Բյուզանդիային:

Բյուզանդիան հասնում է իր ստոր նպատակին: 1045 թվականին նրա զորքերն առանց կռվի մտնում են Անի: Ավելի քան 160 տարի տևած Բագրատունիների թագավորությունը վերանում է պատմական ասպարեզից և դրանով Անին դադարում ինքնուրույն պետության մայրաքաղաք լինելուց: Բյուզանդիան, Արիստակես Լաստիվերտցու արտահայտությամբ, դրան հասավ ոչ թե պատերազմի կարգով, այլ՝ խաբեությամբ: Հայրենասեր պատմիչը սրտի կսկիծով ողբում է Բագրատունիների թագավորության և նրա մայրաքաղաքի անկումը:

Անի-Շիրակի թագավորությունը գրավելով՝ բյուզանդացիները ձեռնամուխ եղան հայերին հալածելու իրենց վաղեմի քաղաքականությանը: Այդ քաղաքականությունը բացահայտ էր և արտահայտվում էր կրոնական-դավանաբանական խտրականությամբ, ծանր հարկային քաղաքականությամբ, երկրի սեփական ռազմական ուժերի վերացմամբ, բնիկ բնակիչներին տեղահան անելով:

Բյուզանդական երկաբնակ եկեղեցին ամենուրեք ամենաստոր միջոցներով հալածում էր հայկական միաբնակ եկեղեցուն: Հատկանշական է, որ ժամանակի կայսրերից մեկը՝ Ռոմանոս Դիոգենեսը նույնիսկ երդվել էր «ջնջել հայ դաւանութիւնը»: «Եթե կային մարդիկ Հայաստանում, որոնք կարծում էին, թէ Յունաց կառավարութիւնը զօրեղ պաշտպանութիւն ցոյց կտայ Հայոց քրիստոնէական կրօնին, հիմնովին զգացին իրենց սխալը: Մի խումբ Յոյն սովալլուկ հոգևորականներ Հայոց հարուստ վիճակների և վանահայրութիւնների գլուխն անցան: Ուղղահավատ մոնոֆիզիտների կրօնական հալածանքներին վերջ չկար: Պետրոս կաթուղիկոսին կանչեցին մայրաքաղաք. երբ սրա յաջորդը մեռաւ, արգելք դարձան նոր կաթուղիկոսի ընտրութեանը…»,— գրում է ականավոր բյուզանդագետ Հ. Գելցերը:

Բյուզանդական կայսրերն ու կառավարները, մեղմ ասած, անհեռատես գտնվեցին մանավանդ նվաճված մարզերում կիրառած քաղաքականության մեջ: Նրանք փոխանակ հայկական ու վրացական տեղական զորքերն ավելի կազմակերպելու, վերազինելու և սելջուկների դեմ միասնական ուժերով հանդես գալու, ցրեցին տասնյակ հազարների հասնող այդ զորքերը և, ընդհանրապես, վերացվեց տեղական մշտական զորք պահելու իրավունքը, այն փոխարինելով դրամական տուրքով: Դրա հետևանքով կայսրությունը զրկվեց մոտ 50 հազար հայ ու վրացի զինվորներից բաղկացած մի պատկառելի բանակից, որը կարող էր զգալի դեր

խաղալ սելջուկյան հորդաների դեմ մղվող մարտերում: Իսկ կայսերական զորքերն ի վիճակի չեղան նույնիսկ նվազագույն չափով կատարել այդ «նոր ծանր պարտավորությունը»,— գրում է բյուզանդագետ Գ. Գերցբերգը:

Բնակչության վրա ծանր էր նստում հատկապես հարկային քաղաքականությունը: Սովորական հարկերից բացի, բնակչությունը ծանրաբեռնված էր ռազմական զանազան տուրքերով ու հարկադիր աշխատանքով:

Հայաստանի համար ճակատագրական նշանակություն ունեցավ նրա բուն բնակիչներին իրենց հայրենի երկրից տեղահան անելու և ավելի արևմուտք բնակեցնելու կայսրության քաղաքականությունը: Բյուզանդացիները Անիի բնակիչներին լարում էին իրար դեմ, ամենուրեք զբաղվում քանսարկություններով և ահաբեկելով սելջուկների հարձակումներով՝ նրանց տեղահան էին անում իրենց բուն բնակության շրջաններից, իսկ տեղում մնացածները սարսափի մեջ էին բյուզանդական տիրապետության 19 տարիների ընթացքում:

Բյուզանդական տիրապետության տարիների գնահատականը դիպուկ է տվել Մատթեոս Ուռհայեցին: Նա գրում է, որ հունաց թագավորներն իրենց դավանակից քրիստոնյաներին ոչ միայն ոչնչով չփրկեցին, այլև նրանց գավառների ու քաղաքների գրավմամբ պատճառ դարձան հայերի արտագաղթի համար:

Կրոնական հալածանքներից ու դավանափոխության վտանգից, հույն աստիճանավորների ու հոգևորականների բանսարկություններից, ծանր հարկային քաղաքականությունից, հայկական բանակի ցրումից և հայ իշխաններին պաշտոնազրկումից բացի բյուզանդացիների տիրապետության շրջանում հայ բնակչության արտագաղթի հիմնական պատճառներից մեկը եղել է երկրի անհանգիստ վիճակը՝ 1047 թվականին Դվինի էմիրի հետ տեղի ունեցած պատերազմը և սելջուկյան արշավանքները, որ պարբերաբար կրկնվում էին սկսած 1048 թվականից:

Արտագաղթի էին դիմում հասարակության տարբեր խավերի ներկայացուցիչները, առաջին հերթին՝ իշխաններն ու նրանց զորքերը: Բյուզանդական կայսրերը դժգոհություններից, ապստամբություններից ու ազատագրական շարժումներից խուսափելու համար՝ բոլոր միջոցները ձեռնարկում էին նոր նվաճած երկիրը սեփական զինվորական ուժերից զրկելու: Նրանց հետ միասին զանգվածներով դեպի արևմուտք էին դիմում նաև հասարակության ցածր խավի ներկայացուցիչները:

Արտագաղթող բնակիչների փոխարեն աստիճանաբար գալիս ու Հա-

յաստանի տարբեր գավառներում հաստատվում են օտար տարրերը, ինչպես ասված է Մատթեոս Ուռհայեցու վերը նշված վկայության մեջ։

Բյուզանդական կայսրությունը չխնայեց նույնիսկ դավաճան Պետրոս Գետադարձ կաթողիկոսին՝ Անին կայսրությանը ենթարկելու ստոր գործարքի հայտնի ներկայացուցչին։ Նրան մեծ շքախմբով Կոստանդնուպոլսում ընդունելուց և պատիվներ ու պարգևներ տալուց հետո՝ արգելեցին նորից Անի վերադառնալ։ Դավաճան կաթողիկոսը Բյուզանդիայի մայրաքաղաքից վերադարձավ Սեբաստիա՝ Արծրունյաց իշխանների մոտ և այնտեղ էլ (1058 թ.) կնքեց իր մահկանացուն։ Իսկ Պետրոսին փոխարինած Խաչիկ կաթողիկոսի մահից հետո արգելվեց նոր կաթողիկոսի ընտրությունը՝ հատուկ հրամանով վաճառքի հանելով հայոց կաթողիկոսության ամբողջ ունեցվածքը։ Դրանով փաստորեն վերացվում էր Հայոց կաթողիկոսությունը և հանդուգն փորձ էր կատարվում հայկական եկեղեցին ամբողջապես բյուզանդականին ենթարկելու։

Մի՞թե հասկանալի չէ, որ նման պայմաններում կայսրությունն իր արևելյան պրովինցիաներում որևէ հաջողություն չպետք է ունենար, իսկ երկրի քաղաքական կյանքը ենթակա էր վտանգի։ Մի կողմից բյուզանդական կայսրության նկատմամբ թշնամական էին տրամադրված նրա նոր հարևանները՝ հատկապես Դվինի էմիրությունը, իսկ մյուս կողմից արդեն սկսվում էին սելջուկյան ավերիչ արշավանքները։ Ծատ թե քիչ տևական խաղաղության մասին խոսք լինել չէր կարող։ Երկիրն ապրում էր տագնապալի շրջան։ Սելջուկյան հորդաները 1048 և 1049 թվականներին Վասպուրականի կողմից մտնելով Հայաստան՝ ավերում են նրա տասնյակ գավառները և արևմուտքում ու հյուսիսում հասնում մինչև Եփրատ և Ճորոխի վերնագավառը, սրի քաշում բազմահազար բնակիչների, ավերում ու հողին հավասարեցնում վաճառաշահ, մարդաշատ ու ծաղկուն Արծն քաղաքը և հսկայական ավարով վերադառնում իրենց ելման կետը։ Սելջուկների դեմ Բյուզանդիայի ուղարկած մեծ բանակը և տեղական հայկական ու վրացական զորքերը Բասենի դաշտում տեղի ունեցած ճակատամարտում, բյուզանդացիների դավաճանության հետևանքով, խայտառակ պարտություն են կրում և ցրվում։ Դրանից հետո երկիրը փաստորեն մնում էր անպաշտպան, իսկ սելջուկյան նոր արշավանքների վըտանգը՝ անխուսափելի։

Նույն դարի 50-ական թվականների սկզբներին Տուղրիլի գլխավորությամբ սելջուկները դարձյալ ավարառուական ասպատակություններ են կատարել Հայաստանում։ Այդ խառը տարիներին 1054 կամ 1055 թթ. մի արշավանք էլ կատարվում է դեպի Անի։

Արիստակես Լաստիվերտցու վկայությունից ակնհայտ է դառնում, որ

այդ արշավանքի ընթացքում գերազանցապես ավերվել են Այրարատյան աշխարհի գավառները, սրի են քաշվել մեծ թվով անօգնական բնակիչներ, որոնք մութն ընկնելու պատճառով հնարավորություն չեն ունեցել մտնել Անիի պարիսպներից ներս և գիշերով ենթարկվել են ավարառու բանակի դաժան հարձակմանը: Այնուհետև, պատմագիրը գրում է, որ վերցնելով ավար ու գերիներ՝ նրանք «գնացին յաշխարհին իւրանց»:

Անիում (և Հայաստանում) կայսերական հարկային քաղաքականության մասին խոսելիս իրարից պետք է տարբերել քաղաքի գրավումից (1045) մինչև սելջուկյան առաջին արշավանքները՝ մինչև 50-ական թվականների սկիզբը, կիրառվող հարկադրույքները հետագա տարիների հարկային քաղաքականությունից: Անին գրավելուց հետո նրա բնակիչների վրա կայսրությունը բարդում է շատ ծանր հարկեր: Բյուզանդական կայսր Կոստանդին Մոնոմախը ձգտում էր «ամեն ինչից փող» հանել: Նա արևելքում գրաված գավառների ու քաղաքների (որոնց թվում և Անիի) բնակիչների վրա, տեղական հարկերից բացի, դնում է նոր հարկեր, մըշտական զորք պահելու պարտավորությունից ազատելով՝ ծանր տուրքեր ու պարհակներ դնելով նաև հայ իշխանների վրա:

Հարկային ծանր քաղաքականությունը, բնակչությանը, երկրի զինված ուժերին տեղահան անելը, կրոնական հալածանքները մյուս բռնությունների հետ միասին պատճառ են դառնում դժգոհությունների ու անբավականությունների: Իսկ սելջուկյան արշավանքներն ուղղակի վտանգ էին սպառնում ոչ միայն նվաճված երկրներին, այլ նաև բուն կայսրությանը: Ահա այդպիսի պայմաններում էր, որ բյուզանդական կայսրությունը հարկադրված եղավ որոշ չափով մեղմացնել իր քաղաքականությունը արևելյան սահմանակից պրովինցիաներում ու քաղաքներում, որոնց թվում և Անիում: Թե չէ բանն անորոշ ձևով այնպես ներկայացնել, որ իբր բյուզանդական կատապանները ընդհանրապես միջնորդում էին կայսեր առաջ Անիում հարկերը թեթևացնելու համար, ինչպես գրում է Ն. Մառը, անընդունելի է և աղաղակող հակասության մեջ է գտնվում պատմական երևույթների նկատմամբ:

Բյուզանդական կայսրերի և կատապանների զիջումները Անիի բնակիչներին էական նշանակություն չունեին: Օտարի տիրապետությունը ծանր էր: «Բյուզանդական կատապանները, քաղաքի նյութական հաջողությունների մասին հոգալու հետ միասին, հալածանք էին հրահրում այն բոլորի դեմ, որ կարող էր երկրամասում պահպանել ազգային ոգին»,— գրում է Ն. Մառը:

Բյուզանդական տիրապետության տարիներին Անիում շատ թե քիչ նշանակալի շինարարական աշխատանքներ չեն կատարվել: Բյուզան-

դական կառավարիչներն ամենևին շահագրգռված չէին իրենց աթոռանիստը նոր շենքերով ու կառույցներով զարդարելու: Նրանք նույնիսկ հիշատակության արժանի շինարարական աշխատանքներ չեն կատարել արքունական պալատում, որ դարձրել էին իրենց նստավայրը: Միջնաբերդի պեղումների ժամանակ 1059 թվականին վերաբերող շինարարական բովանդակություն ունեցող հունարեն մի արձանագրության մնացորդների հիման վրա միայն ենթադրվում է, որ այդտեղ բյուզանդացիների օրոք վերականգնվել է ինչ-որ շենք՝ «թերևս պալատի» ինչ-որ մասը: Եվ առանց որևէ հիմքի ու փաստի, լոկ նկատի ունենալով բյուզանդական որոշ կառավարիչների կողմից Անիի բնակչությունից գանձվող հարկերի թեթևացման փաստը հայտարարել, թե «Հույների երկու տասնյակ տարվա տիրապետությունը Հայաստանում ըստ իր իրական նշանակության քաղաքի համար ներկայացնում է հայկական թագավորական շինարարության շարունակությունը կամ զարգացումը», «թե բյուզանդացիների կարճատև տիրապետությունն Անիում առհասարակ շինարար և բարեկարգչական էր»,— ինչպես փորձում են հաստատել Ն. Մառը և Լեոն, հակասում է պատմական իրականությանը: Բյուզանդական կառավարիչները, եթե ցանկանային էլ, հնարավորություն չունեին լայն իմաստով քաղաքաշինությամբ զբաղվելու: Նրանց տիրապետության 20 տարիները ոչ թե խաղաղության, այլ խռովահույզ տարիներ էին. բյուզանդական զորավարների միջև եղած հակասությունները, Գանձակի ու Դվինի էմիրի արշավանքները, սելջուկյան ասպատակությունները և նոր, ավելի ավերիչ հարձակումների հասունացող վտանգը ստեղծում էին լարված դրություն՝ բացառելով քաղաքաշինության հնարավորությունը: Այն չնչին քանակությամբ շինարարական աշխատանքները, որ կատարվել են Ահարոն մագիստրոսի օրոք (հավանաբար 1052—1053 թթ.), բացառապես պաշտպանական նշանակություն ունեին և կատարվել էին քաղաքի պաշտպանունակությունը ավելի հուսալի դարձնելու համար:

Այսպիսով, բյուզանդական տիրապետության կարճատև շրջանը նոր ոչինչ չբերեց Անի մայրաքաղաքին: Կրոնական հալածանքները, արտագաղթերը, երկրից ազգային զորամասերի հեռացումը, սկզբնական շրջանի ծանր հարկային քաղաքականությունը, Գանձակի ու Դվինի էմիրի և սելջուկյան հարձակումները Բագրատունիների մայրաքաղաքը դնում էին ծանր կացության մեջ: Քաղաքի բնակչությունից գանձվող հարկերի թեթևացումը ու որոշ հարկերի վերացումը, նեղ ռազմական նշանակության որոշ կառուցումները էական նշանակություն չունեին և շատ քիչ կարող էին ազդել ընդհանուր դրության վրա: Սելջուկյան նվաճումը դարձել էր անխուսափելի:

## 2. ԱՆԻՆ ՍԵԼՋՈՒԿՆԵՐԻ ԵՎ ՇԱԴԱԴՅԱՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԱԿ (1064—1199)

Սելջուկ թուրքերի առաջին ջոկատները Հայաստանում երևացել են դեռևս 11-րդ դարի առաջին քառորդի վերջերին: Նույն դարի 40-ական թվականների վերջերին և 50-ականի սկզբներին նրանք մի քանի արշավանքներ են կատարում դեպի երկրի տարբեր գավառները՝ ավերելով ու կողոպտելով տասնյակ բնակավայրեր, ոչնչացնելով և գերեվարելով հազարավոր բնակիչների:

Սելջուկյան արշավանքները Տուղրիլ սուլթանի մահից հետո մոտ տասը տարի ընդհատվում են և նորից են վերսկսվում նրան փոխարինած Ալփ-Արսլանի օրոք, 11-րդ դարի 60-ական թվականներին:

Սելջուկյան նոր սուլթան Ալփ-Արսլանը (1063—1072) դեպի Աղվանք, Վիրք և Հայաստան իր արշավանքն սկսում է 1064 թվականին: Առանց լուրջ դիմադրության հանդիպելու նա իր մեծաթիվ բանակով նախ գրավում է Աղվանքն ու Վիրքը, ապա Գուգարքի վրայով մտնում Անի-Շիրակի թագավորության բուն տարածքը, իր հիմնական նպատակը համարելով ծաղկած Անի մայրաքաղաքի գրավումն ու ավերումը:

Սելջուկյան այդ արշավանքն Անի մայրաքաղաքի համար ունեցել է ճակատագրական նշանակություն: Դրանով պետք է բացատրել այն իրողությունը, որ սելջուկյան սուլթանի ավերիչ արշավանքի մասին տեղեկություններ են հաղորդել և՛ բոլոր ժամանակակից հեղինակները, և՛ հետագայի տասնյակ պատմագիրներ, ժամանակագիրներ, գրիչներ, արաբական և բյուզանդական մատենագիրներ: Դրանցից ավելի մանրամասն վկայություններ ունեն Արիստակես Լաստիվերտցին, Մատթեոս Ուռհայեցին, Սմբատ Գունդստաբլը, Վարդան Արևելցին և արաբական պատմագիրներ Ահմեդ բեն-Մուհամեդ ալ-Ջաֆարին ու Իբն ալ-Ասիրը: Որոշ մատենագիրներ՝ Արիստակես Լաստիվերտցին, Մատթեոս Ուռհայեցին և ուրիշներ Անիի գրավումն ու ավերումը համարել են աստվածային նախախնամություն, «հղփացած» քաղաքի բնակիչների գործած մեղքերի համար սահմանված ճակատագրական պատիժ:

Գույների այդ խտացումները, պատմական դեպքերի ընթացքին որոշ դրամատիկական բնույթ տալը և դրա մեջ «տիրոջ« միջնորդությունն ու կանխասահմանումը տեսնելը նույնիսկ նվազագույն չափով չեն ստվերավորում նշված և մյուս հեղինակների հաղորդած՝ իրար լրացնող և, ընդհանուր առմամբ, արժանահավատ տեղեկությունները: Դրանց հիման վրա ըստ ամենայնի վերականգնվում է սելջուկյան սուլթանի արշավանքի




Պարոնի պալատի չքամուտքը

ընթացքը, Անիի պաշարումը, գրավումը, ավերումը, բնակչության կոտորածները, գերեվարումները և զանգվածային արտագաղթը:

Իսկ այդ վկայությունները հանգում են հետևյալին. սելջուկյան զորքերը Ալփ-Արսլան սուլթանի գլխավորությամբ Աղվանքի, Արևելյան Վրաստանի և Հյուսիսային Հայաստանի վրայով մտնում են նախկին Անի-Շիրակի թագավորության տարածքը ու գալիս պաշարում Անին: Զննելով քաղաքի ամուր դիրքը, պարիսպներն ու դրանց առջևով ձգվող՝ ջրով լցված խանդակը, Ալփ-Արսլանը (ըստ Աիմեդ բեն-Մուհամեդ ալ-Ջաֆարի՝ նրա որդի, թագաժառանգ Մելիք-շահը) գալիս է այն համոզման, որ այդ քաղաքը գրավելը կապված է մեծ դժվարությունների հետ. սելջուկյան ձիավոր զորքը չի կարող շատ մոտենալ պաշտպանական պարիսպներին, հետիոտն զինվորներն էլ անզոր էին ամրացված աշտարակների հանդեպ, իսկ Ախուրյանի և Ծաղկոցաձորի կողմերից քաղաքի վրա հարձակումն ընդհանրապես անհնար էր. դրանց զառիվեր կողերով ձորերը, որոնք թույլ հատվածներում ամրացված էին պռունգների ուղղությամբ ձգվող պարիսպներով, ռազմական տեսակետից անմատչելի էին: Ուստի հարձակման համար շատ թե քիչ հարմար տեղը համարում են քաղաքի հյուսիս-արևելյան կողմը, այն պարանոցը, որի վրայով ձըգվում էին Սմբատյան կրկնաշարք պարիսպները և դրանց դրսի կողմից՝ պաշտպանական խանդակը: Քաղաքը գրավելու համար սելջուկյան բազմահազարանոց զորքը պետք է հաղթահարեր այդ ամրության գծերը: Պատմագիրների նկարագրություններից կարելի է եզրակացնել, որ Անիի վրա Ալփ-Արսլանի զորքը գրոհել է քաղաքի հյուսիս-արևելյան անկյունից, որտեղ Սմբատյան պարիսպը միաշարք էր: Այդ հատվածում հարձակվող թշնամին պետք է հաղթահարեր պաշտպանական խանդակը և Սմբատյան միաշարք պարիսպը, որ, պատմագիրների վկայությամբ, դարձյալ մեծ մտահոգություն է պատճառում սելջուկյան զորավարին: Նա հույս չուներ, թե կարող է հաջողություն ունենալ: Այնուամենայնիվ վճռում է հարձակվել: Պարիսպներից տեղացող նետերի տարափի տակ, նավակներով պաշտպանական խանդակի վրայով նա դեպի պարիսպներն է անցկացնում բավական թվով հետիոտն և հեծյալ զորքեր, որոնք սակայն տալիս են մեծ թվով զոհեր, և ի վիճակի չեն լինում հաղթահարել հաջորդ արգելքը կամ որևէ չափով թուլացնել պաշտպանների դիմադրողական ուժը: Ավելին, տեսնելով քաղաքի ամրությունն ու անմատույց լինելը, սելջուկյան սուլթանը հուսահատվում է և՝ նույնիսկ մտադրվում է իր զորքերով թողնել-հեռանալ: Այդ անվիճելիորեն երևում է գրեթե բոլոր պատմագիրների հաղորդած տեղեկություններից:

Անին գրեթե մեկ ամիս հաջողությամբ պաշտպանվում է սելջուկ-

յան բազմահազարանոց զորքի անկանոն հարձակումներից։ Սակայն շուտով երկպառակություն է ծագում բյուզանդական կառավարիչների ու իշխանների միջև, որը և պատճառ է դառնում դավաճանության. նրանք լքում են քաղաքի արտաքին պարիսպները և քաշվում միջնաբերդ։ Դավաճանության պատճառով անմատույց Անին սելջուկյան հորդաների դեմ մնում է անպաշտպան։ Լեոյի պատկերավոր արտահայտությամբ՝ «Սըմբատյան պարիսպները դիմացան, դիմացան, բայց հո նրանք չէին կարող պատերազմող բանակ էլ դառնալ», կնաբարո պաշտպանները դրանք լքել և թաքնվել էին միջնաբերդում։

Ալփ-Արսլանի ավարառու զորքը հյուսիս-արևելյան կողմից մուտք է գործում քաղաք և սկսում զանգվածորեն ոչնչացնել նրա բնակիչներին ու ամայացնել ամբողջական թաղամասեր։ Սելջուկյան սուլթանի գործադրած դաժանությունների և քաղաքի հազարավոր բնակչության ոչնչացման մասին մանրամասն պատմում են Արիստակես Լաստիվերտցին, Մատթեոս Ուռհայեցին, արաբ պատմիչ Իբն ալ-Ասիրը և ուրիշներ։ Պատմագիրները արշավող բանակի թիվը հասցնում են մինչև 100 հազարի։ Պատմագրական աղբյուրների հաղորդած տեղեկություններից պարզվում է, որ սելջուկներն Անին գրավել են 1064 թ. օգոստոսի 10-ին, ավելի քան մեկ ամիս պաշարելուց հետո։

Սելջուկյան նվաճումը անչափ ծանր, մեր ազգային դասական շատ հեղինակների արտահայտությամբ՝ ճակատագրական հետևանքներ է ունեցել համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ծաղկուն վիճակի հասած մարդաշատ ու բարեկարգ Անիի համար։ Սելջուկ թուրքերի արշավանքի պահին բնիկ քաղաքացիներից բացի, Անիի ամրակուռ պարիսպների մեջ ապաստան էին գտել շրջակայքի գավառների ու բնակավայրերի տասնյակ հազարավոր բնակիչներ։ Ավազակաբարո սելջուկ թուրքերը մտնելով քաղաք, նախ և առաջ զանգվածային բնաջնջման են ենթարկում բնակիչներին՝ ծերերին, երիտասարդներին ու մանուկներին, կանանց ու հոգևորականներին։ Քաղաքի բնակչությանն ավելի ահաբեկելու նպատակով սելջուկյան զորքը և նրա զորավար սուլթան Ալփ-Արսլանը կազմակերպում էին քստմնելի տեսարաններ։

Սելջուկյան սուլթանի ձեռնարկած զանգվածային կոտորածին և քրիստոնյա բնակչությանը իսլամացնելուն ուղեկցում էր գերեվարությունը։ Իբն ալ-Ասիրը հաղորդում է, որ սելջուկները «գերի վերցրին գրեթե նույնքան, ինչքան որ սպանել էին»։ Գերվեցին հայ իշխանները, ազատանի դասի շատ ներկայացուցիչներ, գեղեցիկ տիկնայք, «անհամարք և անթիւք մանկունս լուսատեսիլս և աղջկունս վայելուչս տարան գերի մարցն»։ Սամվել Անեցու և Սմբատ Սպարապետի հիշատակությունից

հստակ երևում է, որ գերիների հիմնական զանգվածները բաղկացած էին կանանցից ու մանուկներից:

Մատենագրական տեղեկություններից պարզվում է, որ Ալփ-Արսլանի արշավանքի ժամանակ Հայաստանում ծայր է առել հարկադիր արտագաղթը:

1064 թվականին Անին գրավելու ժամանակ սելջուկների կատարած ավերումները իրենց ծավալով ու բնույթով քիչ էին տարբերվում դրանից 15 տարի առաջ, 1049 թվականին վաճառաշահ և բազմամարդ Արծն քաղաքում նույն սելջուկ թուրքերի ձեռքով տեղի ունեցած ավերումներից, որոնց հետևանքով փլատակների կույտի վերածվեց այդ մեծահռչակ քաղաքը:

Միանգամայն ճիշտ են արձանագրում հետագա և նոր ու նորագույն ժամանակների հեղինակները. սելջուկ թուրքերը «կործանեցին գվայելչագեղ և չքնաղակերտ» քաղաքը, նրանք «սոված» «շների» նման կողոպտեցին Բագրատունյաց երբեմնի մայրաքաղաքի «գեղեցկաշեն վանքերը», «հոյակապ պալատները», «շքեղ տները»: Իրավացի է Ն. Մ. Տոկարսկին, սելջուկյան հարձակման ժամանակ Անիում կատարված ավերումներն այնքան շատ էին ու մեծ մասշտաբի, որ հետագայում «բազմաթիվ տասնամյակների ընթացքում» քաղաքը ուշքի չէր եկել և նոր կառուցումները կատարվում էին հին ճարտարապետական կոթողների ավերակների վրա: Իսկ Ն. Յա. Մառի բնութագրմամբ սելջուկյան այդ հարձակման հետևանքով Անին ավերվեց, նրա բնակչությունը ենթարկվեց զանգվածային բնաջնջման և «քաղաքն ամայացավ»:

Ալփ-Արսլանի 1064 թվականի արշավանքով Հայաստանի հյուսիսային «աշխարհ»-ներն ու տակավին իրենց գոյությունը պահպանած՝ Կապանի, Տաշիր-Ձորագետի և Կարսի թագավորությունները նույնպես ենթարկվեցին սելջուկյան սուլթանի իշխանությանը:

Սելջուկյան արշավանքների շրջանում Հայաստանում և հարևան երկրներում, արաբական խալիֆայության մասնատման հետևանքով կազմավորվել էին մի շարք իշխանություններ, էմիրություններ՝ որոնք Բագրատունյաց թագավորության անկումից հետո ձեռք էին բերել ներքին բավական լայն իրավունքներ և, օգտվելով երկրի նոր տիրակալների՝ սելջուկ թուրքերի բարյացակամությունից, ավելի էին ընդարձակել իրենց իշխանությունների սահմանները՝ տարբեր միջոցներով տեր դառնալով նորանոր գավառների ու քաղաքների: Դրանցից Անիի հետ անմիջապես առնչվողը Գանձակի աթաբեկությունն էր, որը գտնվում էր քրդական ծագումի Փահլեվանյան կամ Փատլունյան էմիրների իշխանության ներ-

քո և այլ տարածքների հետ միասին իր մեջ ընդգրկում էր նաև Հայաստանի հյուսիս-արևելյան գավառները:

Տակավին մինչև սելջուկ թուրքերի արշավանքները Գանձակի էմիր Փատլունը Բագրատունի Հովհաննես-Սմբատ թագավորի օրոք գրավելով Դվինը, հանձնել էր իր որդուն՝ Աբուսվարին, որը Բագրատունի Աշոտ 4-րդ թագավորի փեսան էր: Աբուսվարը այդպիսով դառնում է քրդական մի նոր իշխանության՝ Դվինի էմիրության հիմնադիրը և, բարեկամական կապերով կապված լինելով Բագրատունիների հետ, սելջուկյան արշավանքների ժամանակ հավակնում է տեր դառնալ վերջիններիս նախկին թագավորության տարածքին:

Աբուսվարը պատկանում էր Շադադյանների քրդական տոհմին: Մեզ հասած տեղեկությունների համաձայն Դվինի այդ էմիրը Ալփ-Արսլանից 1072 թվականին գնելով ավերված Անի քաղաքը՝ տալիս է իր որդուն՝ Մանուչեին: Դրանով Անիից ու դրա շրջակայքից ձևավորվում է Շադադյան մի նոր էմիրություն, որն իր գոյությունը պահպանում է մինչև 1199 թվականը և այդ ամբողջ ժամանակաընթացքում, փոքր ընդհատումներով, իր իշխանությանն է ենթարկում Բագրատունիների մայրաքաղաքը:

Անիի Շադադյանները չնայած համարվում էին սելջուկյան պետության ներկայացուցիչները, սակայն նրանց կախումը կենտրոնական կառավարությունից սոսկ անվանական էր և միայն արտահայտվում էր հարկեր ու տուրքեր տալով, այն էլ ոչ կանոնավոր և որոշակի գումարի հասնող: Նրանք Անիում իրենց պահում էին իբրև «թագավորներ» և Բագրատունիների հետ ունեցած բարեկամական ու խնամիական կապերը բավական էին, որպեսզի Անիի Շադադյան էմիրները նույնպես իրենց «իշխանությունը» «պսակեին» «շահնշահի տիտղոսով»:

Սելջուկյան և Շադադյան տիրապետության 135 տարվա հասնող այդ ժամանակաշրջանն Անիի համար եղել է փոթորկալից մի այնպիսի պատմաշրջան, երբ այն մեծապես կորցրել էր անցյալի փառքը, զգալի չափով մնում էր ավերված վիճակում և, մի շարք անգամ ձեռքից-ձեռք անցնելու հետևանքով ենթարկվում էր նոր ավերումների: Քաղաքում շատ թե քիչ վերականգնման ու շինարարական աշխատանքներ են կատարվել գրեթե միայն առաջին էմիրի՝ Մանուչեի օրոք, որի անձնական հատկությունները այնքան գունազարդվել են Ն. Մառի կողմից, նրան վերագրելով մեծ «մարդասիրություն» և «իմաստություն»: Մինչդեռ Մանուչեն արևելյան սովորական բռնակալ էր և նրա հոգածությունը ավերված քաղաքի նկատմամբ պարզապես ելնում էր շահադիտական նպատակներից: Նա իր գործունեությամբ մոտավորապես նման էր Երևանի վերջին խան Հուսեյնին, որը նույնպես խանական գանձարանը հարստացնելու համար

իր աթոռանիստ քաղաքում կատարել է հիշատակության արժանի որոշ աշխատանքներ:

Այդ բոլորով հանդերձ, անժխտելի է, որ Անիի էմիրության հիմնադիրի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ Հայոց նախկին մայրաքաղաքը որոշ չափով վերականգնվում է, վերացվում է Ալփ-Արսլանի հարձակման ժամանակ կատարված աhռելի ավերածությունների մի մասը: Մանուչեն, ինչպես նշում է Ն. Յա. Մառը, առանձնապես ջանքեր է գործադրել թշնամական արշավանքների ժամանակ Անիից փախած բնակչության մի մասին իր հայրենի քաղաքը վերադարձնելու համար:

Մանուչեի որդու ու հաջորդի՝ Աբուսվարի օրոք ի չիք է դառնում Անիում նկատվող այդ մասնակի աշխուժացումը: Վերջինս իր թույլ բնավորությամբ և տեղացիների նկատմամբ վարած թշնամական քաղաքականությամբ քաղաքի կյանքը հասցնում է լարվածության: Սակայն Անիի խաղաղ ու բնականոն կյանքի ընդհատումը վերագրել միայն Մանուչեի որդու բնավորությանն ու անձնական հատկություններին, ինչպես գրեթե առանց բացառության արձանագրել են մասնագետները, կարիք ունի լրացման և որոշ պարզաբանման: Հարցը նրանում է, որ Մելիք-շահի օրոք (1072—1092) սելջուկյան հսկա կայսրությունը միացյալ, բավական կենտրոնաձիգ պետություն էր և դրա մեջ մտնող հին ու նոր իշխանությունները, էմիրություններն ու թագավորությունները լիովին ենթակա էին սելջուկյան սուլթանի գերագույն իշխանությանը: Սակայն նրա մահից հետո այդ «հսկա... պետությունը ճեղքվածքներ» է տալիս»: Պետության տարածքի տարբեր մասերում ձևավորվում և կենտրոնից անջատվում են մի ամբողջ շարք իշխանություններ՝ էմիրություններ, որոնք իրենց համարում են անկախ իշխանություններ և նոր տերիտորիաներ ու քաղաքներ խլելու համար հարատև պայքարի մեջ են մտնում իրար հետ: Այդպիսի էմիրությունները կազմավորվել էին նաև Հայաստանում ու հարևան շրջաններում և Մելիք-շահի մահից հետո դրանք նույնպես սկսեցին վարել ինքնուրույն քաղաքականություն: Եվ ահա 12-րդ դարի սկզբներից Անիի էմիրությունը՝ հատկապես նրա կենտրոն Անի քաղաքը, կռվածաղիկ է դառնում մի կողմից դրա էմիրների, իսկ մյուս կողմից՝ Շահարմենների, վրացական թագավորների և Գանձակի աթաբեկների միջև: Այդ երկարատև պայքարի ընթացքում Անին մի քանի անգամ պաշարվել է, անցել ձեռքից-ձեռք, ենթարկվել ավերման, տնտեսապես քայքայվել, տվել բնակչության նոր արտագաղթեր:

Արդ մեզ հասած աղբյուրների հիման վրա փորձենք ներկայացնել Անիի 11-րդ դարի վերջերի և 12-րդ դարի քաղաքական կարևոր դեպ-

քերն ու պահերը, Այրարատյան աշխարհի և մասամբ հարևան երկրների համանման իրադարձությունների հետ առնչված:

Մելիք-շահ սուլթանի կողմից Մանուչե էմիրին իր պաշտոնում նորից հաստատելու և Բարսեղ կաթողիկոսին ընդունելուց և նրան մի շարք իրավունքներ տալուց 7—8 տարի անց՝ 1093 կամ 1094 թվականին Անիում և շրջակայքում երաշտի և մորեխի պատճառով բռնկում է սաստիկ սով, որը պատճառ է դառնում մեծ թվով մարդկային զոհերի:

Բնական այս աղետն անցնելուց հետո Անին ենթարկվում է մի նոր արհավիրքի: Վրկանաց (Կասպից) ծովի առափնյա շրջանում վաղ ժամանակներից պահպանված թուրքական ծագման ինչ-որ ցեղի յոթ հազարանոց բանակը ոմն Ելխազի գլխավորությամբ արշավում է դեպի արևմուտք և հասնում մինչև Անի, նպատակ ունենալով առաջին հերթին գրավել, ավերել և կողոպտել այդ հարուստ քաղաքը:

Անին Շադդադյաններին անցնելուց և Շադադյան առաջին էմիր Մանուչեի մահից հետո ակնհայտ դարձավ, որ էմիրները ի վիճակի չէին Անին պաշտպանել մյուս էմիրությունների հարձակումներից: Նրանք առաջին հերթին շահագրգռված էին ոչ թե իրենց աթոռանիստի պաշտպանությամբ, այլ դրա տված եկամուտներով: Անիի էմիրները, բացառությամբ միայն Մանուչեի, քրիստոնյաների նկատմամբ կիրառում էին կրոնական հալածանքներ: Իսկ Մանուչեի սիրաշահող քաղաքականությունը և քաղաքում ձեռնարկած վերանորոգիչ աշխատանքները, որ այնքան խտացված գույներով են ներկայացվում որոշ պատմագիրների և նրանց հետևող հեղինակների կողմից, պարզապես նպատակ ունեին ամրապնդել քուրդ էմիրի նորահաստատ իշխանությունը Հայոց նախկին մայրաքաղաքում:

Մանուչեին հաջորդած նրա որդին՝ Աբուսվարը, իր իշխանության առաջին իսկ տարիներից քաղաքում հայ բնակչության նկատմամբ սկըսում է կրոնական հալածանքներ: Նա Անիի Մայր եկեղեցին դարձնում է մզկիթ՝ դրա գմբեթի վրայի խաչը փոխարինելով Շահարմենների մայրաքաղաք Խլաթից բերված ոսկե «ծանրագին» «նալ»-ով: Միանգամայն հասկանալի է, որ էմիրի այդ քայլը մեծ թշնամության պատճառ պիտի դառնար: Ավելին, նա պարբերաբար հարձակումների ենթակա քաղաքի պաշտպանության մասին հոգ տանելու փոխարեն մտադրվում է կատարել նոր, հրեշավոր քայլ՝ Անին 60 հազար դինարով վաճառել Կարսի էմիրին: Անիի և շրջակայքի հայ բնակչության ցասումը անարի ու նենգամիտ տիրապետողի նկատմամբ հասնում է իր գագաթնակետին և քաղաքի գլխավորները ստեղծված անտանելի դրությունից դուրս գալու միակ ելքը համարում են Անին ազատագրելու խնդրով Վրաց Դավիթ Շի-



11—2682

նարար թագավորին (1089—1125) օգնության կանչելը և քաղաքը նրան հանձնելը: Անիի գլխավորները 1123 (ըստ ոմանց 1124) թվականի օգոստոսի 20-ին դիմում են իր հերթական հաղթական արշավանքից հետո Բորժոմում գտնվող Դավիթ թագավորին, խնդրելով նրան, որ գա ու գրավի Անի քաղաքը՝ խոստանալով բացել պաշտպանական պարիսպների դարպասները և օգնել քաղաք մտնող զորքերին: Դավիթը 1123 թ. 60 հազարանոց բանակով (որի շարքերում անշուշտ կային նաև հայկական ջոկատներ) շտապում է Անի և էմիրի դեմ ապստամբած ու քաղաքի դըռները բացած հայ բնակչության օգնությամբ, առանց զոհեր տալու, ընդամենը երեք օրվա ընթացքում գրավում Անին: Նա ոչնչացնում է էմիրի կայազորի մի մասը, իսկ իրեն ութ որդիների, կանանց ու հարսների հետ միասին գերելով տանում է Վրաստան, որտեղ և նրանք գտնում են իրենց մահը:

Քաղաքը գրավելուց հետո՝ Վրաց թագավորը մզկիթի վերածված Մայր եկեղեցին նորից է բերում իր նախկին տեսքին, վերանորոգում և հոգևորականների ներկայությամբ, հանդիսավոր պայմաններում նորից օծել տալիս իբրև քրիստոնեական տաճար:

Թփխիս վերադառնալուց առաջ՝ Դավիթ թագավորը Անիում կառավարիչ է նշանակում Աբուլեթ իշխանին (Օրբելյան տոհմից) և նրա որդի Իվանեին:

Անին Վրաց թագավորի կողմից գրավվել էր քաղաքի գլխավորների խնդրանքով, քաղաքի և դրա շրջակայքի ամբողջ բնակչության ցանկությամբ: Անիում Վրաց թագավորի կարգադրություններն ու բարեփոխությունները ողջ բնակչության կողմից ընդունվում են ջերմությամբ: Սակայն այդ ընդհանուր ուրախությունը վաղ էր: Դավթի մահից հետո (1125 թ.) Անին երկար ժամանակով դառնում է պայքարի ու գրավման առարկա:

Անիի վրա առաջինը հարձակվում է Տփխիս գերի տարված Աբուսվար էմիրի ավագ եղբայրը՝ Փատլունը: Նա Խորասանում սելջուկյան սուլթանի օգնությամբ գումարում է հիմնականում վարձկաններից բաղկացած մի խոշոր բանակ և դրա գլուխն անցած 1125 թ. գալիս ու պաշարում է Անին: Փատլունի զորքերը ավելի քան մեկ տարի Անին պահում են պաշարված դրության մեջ և կատաղի հարձակումներ են կատարում այն գրավելու համար: Քաղաքի կայազորը նրա կառավարիչ՝ վրաց իշխան Իվանեի գլխավորությամբ քաջաբար կռվում է թվական գերակշռություն ունեցող համառ թշնամու դեմ: Սակայն կայազորը, այնուամենայնիվ, մենակ չէր կարող աիեղ թշնամուն գամել մայրաքաղաքի պարիսպների տակ և պարտության մատնել նրան, եթե չլիներ աշխար-

հազորը. իրադարձությունների նկարագրություններից ակնհայտ է դառնում, որ հայրենի քաղաքը պաշտպանելու համար զենքի են դիմել հազարավոր քաղաքացիներ՝ տղամարդիկ և կանայք, դառնալով զինվորական ջոկատների իսկական «մարտակիցները», ինչպես դրանց դիպուկ բնութագրել է պատմագիրը, առանձնապես նշելով հազարավորներից մեկի՝ Այծեմնիկ անունը կրող կնոջ սխրագործության մասին:

Հայ-վրացական միացյալ կայազորի և քաղաքի աշխարհազորի հակառակորդի դեմ մղած դաժան մարտերն այնքան հաջողակ էին, որ Վրաց պատմագիրները դրանք ուղղակի նշում են իբրև կատարյալ հաղթական կռիվներ՝ վերագրելով Դեմետրե թագավորին, իսկ Փատլունի փոխարեն հիշատակելով Սալդուխ անունը:

Այո, Անիի պաշտպանությունը հաղթական էր: Հակառակորդը մի ամբողջ տարի դաժան մարտերով ապարդյուն փորձեր էր կատարում ծնկի բերել նրա քաջարի պաշտպաններին և գրավել քաղաքը, բայց բոլոր դեպքերում ստանում է հակահարված և հարկադրված է լինում դոփել իր դիրքերում:

Այդ կռիվների ընթացքում կոտորվում են հազարավոր մարդիկ, իրենց «արեամբ և ոսկերօք» ծածկելով երկիրը, օրավուր սաստկանում են «հարուածք սովոյն», քաղաքի բնակիչներից շատերը, որ գիշերվա պահին փորձում են հեռանալ զանազան կողմեր, ոչնչացվում են դարանակալ հակառակորդի կողմից, երկրում նոր բռնկված՝ «մարդակերության» հասնող սովը և անհանգիստ վիճակը, որ սրտի կսկիծով նկարագրված են պատմագրի մոտ, այդ բոլորը հարկադրում են պատերազմն ավարտել փոխադարձ համաձայնությամբ: Փատլունը բանակցությունների մեջ է մտնում պաշարվածների հետ և խոստանում կամովին հանձնըվելու դեպքում ներողամիտ լինել նրանց նկատմամբ, քաղաքում հաստատել խաղաղություն, չդիմել վրիժառության և վերականգնել քաղաքի բնականոն կյանքը: Նկատի ունենալով ստեղծված ծանր վիճակը՝ Դեմետրե թագավորը էմիրի խոստացած պայմանները համարում է ընդունելի և 1126 թ. Անին հանձնում է Աբուսվարի եղբայր Փատլուն 2-րդին, որը իշխում է մինչև իր մահը՝ 1132 թվականը: Սակայն հակառակ իր տված խոստման և համաձայնության, վերջինս ամենատարբեր եղանակներով վրեժ է լուծում անցյալի համար: Շադադյանների վերահաստատված իշխանությունը դժվարին կացության մեջ է դնում Անիի ողջ բնակչությանը, և նեղությունները, ծանր հարկերը ու քրիստոնյաների նկատմամբ վարվող դաժան քաղաքականությունը բնակչությանը դատապարտել էին աղքատության ու տառապանքների: Ճիշտ է, քանի դեռ կենդանի էր Դեմետրե թագավորը, Փատլուն 2-րդը համարվում էր նրա ենթական ու

հարկատուն: Սակայն, ինչպես ցույց է տալիս դեպքերի հետագա ընթացքը, այդ ձևական բնույթ ուներ և ամենևին չէր սահմանափակում քուրդ էմիրի իշխանապետական իրավունքները:

Փատլուն 2-րդի մահից հետո էմիրության աթոռին նախ տիրանում է նրա եղբայրը՝ Մահմուդը, ապա վերջինիս որդին՝ Փատլուն 3-րդը՝ սկըսած 1155—1156 թվականներից: Արաբական պատմագիրների հաղորդած տեղեկությունների համաձայն, դրանք իրար հաջորդել են ոչ թե ընդունված կարգով, այլ Անիի բնակիչների ու ավագանու գործուն միջամտությամբ: Նրանք վկայում են, որ քաղաքի բնակիչները մերժել են նախկին էմիրի իշխանությունը և երիցանու միջոցով իշխանությունը տվել նորին՝ Շադադյան Փատլուն 3-րդին:

Թվում է, թե նախկին էմիրի նկատմամբ քաղաքացիների և քաղաքի երիցանու այդ դժգոհությունն ու ըմբոստացումը առաջին հերթին պետք է բացատրել նրա անձարակությամբ, քաղաքի պաշտպանության գործում ցուցաբերած անտարբերությամբ կամ ուղղակի անհոգությամբ: Այսպես, նրա էմիրության վերջին տարիներին՝ 12-րդ դ. 50-ական թվականների սկզբին Կարինի էմիր Սալդուխը անարգել կերպով ասպատակում է Անիի էմիրության ամբողջ տարածքը և հասնում քաղաքի դռներին: Եվ դժվար է ասել, թե ինչով կավարտվեր հարևան էմիրների այդ հերթական արշավանքը, եթե վրացական-հայկական զորքերը Վրաց Դեմետրե թագավորի գլխավորությամբ պարտության չմատնեին և Անիի սահմաններից չհալածեին էմիրի ոհմակներին:

Գեորգի 3-րդի օրոք վրացական պետությունը, ընդհանուր առմամբ, շարունակում է ամրապնդվել ու ընդարձակվել: Նրա թագավորության շըրջանում հայերի ու վրացիների պայքարը սելջուկ թուրքերի և դրանց տեղական վասալ իշխանությունների՝ էմիրությունների դեմ թևակոխում է մի նոր շրջան: Նրա բանակը 1161 թ. ջախջախում է Շադադյանների զորքը և գրավում Անին՝ վերցնելով մեծ քանակությամբ գերիներ ու ռազմական ավար:

Գեորգիի արշավանքը, սակայն, միայն Անիի ու Շիրակի գրավմամբ չի ավարտվում: Վրաց թագավորը շարունակում է հարձակումը դեպի Այրարատյան աշխարհի արևելյան շրջանները և հաջորդ տարում՝ 1162 թվականին գրավում է նաև Դվինը: Նրա արշավանքի առիթը եղել է Անիի Շադադյանների անհնազանդությունը: Դեպքերի ընթացքից ակնհայտ է դառնում, որ Դեմետրեի մահից հետո Անիի քուրդ կառավարիչները իրենց կապերը իսպառ կտրել էին Վրաստանից և դադարել էին նրան ենթարկվելուց:

Գեորգի 3-րդը Անին գրավելուց հետո այստեղ կառավարիչ է նշանակում Իվանե Օրբելուն, Սարգիս Զաքարյանին (Մխարգրձելի) և ուրիշ մի շարք ազնվականների հանձնելով գավառների կառավարչությունը:

Թվում է, թե արդեն հզորացած Վրացական պետության այդ հարվածներից հետո էմիրները պետք է հաշտվեին ստեղծված դրության հետ՝ Անին ու Դվինն իրենց շրջակայքով համարելով ընդմիշտ կորցրած: Սակայն դեպքերն ստանում են հակառակ ընթացք:

Հայաստանի հարավային մարզերն իրենց իշխանությանը ենթարկած և Խլաթ ու Մանազկերտ քաղաքներն աթոռանիստ դարձրած Շահարմեն էմիրները, որոնք իրենց հորջորջում էին ինքնուրույն սուլթաններ, չէին հաշտվում ստեղծված դրության հետ: Եվ ահա Շահարմեն Սուքման 2-րդը համալրում ստանալով Հյուսիսային Միջագետքի էմիրներից և ծառայության հրավիրելով սելջուկ-թուրքական վարձկան զորքերը, կազմում է 80-հազարանոց մի հսկայական բանակ և դրա գլուխն անցած 1161 թ. օգոստոսի սկզբին գալիս ու պաշարում է Անի քաղաքը: Լսելով այդ մասին՝ Գեորգի 3-րդը 7-հազարանոց բանակով օգնության է գալիս պաշարվածներին: Հայերից և վրացիներից բաղկացած այդ փոքրաթիվ բանակը նույն թվականի հունիսին Անիում թողած կայազորի հետ միասին (որ իր կազմում ուներ 2000 մարդ) պարտության է մատնում Շահարմեն սուլթանի ահռելի բանակին՝ ոչնչացնելով դրա զգալի մասը, վերցնելով հազարավոր գերիներ, որոնց թվում նաև բարձրաստիճան էմիրներ:

1161 կամ 1163 թվականին, Շահարմենների բանակը պարտության մատնելուց և Դվինը գրավելուց հետո՝ էմիրությունները, Խորասանի սուլթանը և Գանձակի աթաբեկությունը միացյալ ուժերով հանդես են գալիս վրացական պետության դեմ: Խորասանի սուլթանը 1163 թ. մեծաթիվ զորքով գալիս հասնում է Անիի դռներին: Սակայն նրան, այնուամենայնիվ, չի հաջողվում գրավել Անին և վերջինիս պարիսպների տակ 30 օր մնալուց հետո՝ «գաղտագողի աղուէսաբար» հարձակվում է Գեորգիի զորքերի վրա և մեծ ավար վերցնելով նորից վերադառնում է իր տեղը:

Վրաց թագավորի դեմ ձեռնարկված միացյալ արշավանքի մեջ գըլխավորողը, այնուամենայնիվ, Գանձակի աթաբեկն էր՝ Ելտկուզը, որը նախ գրավում է Դվինը, ապա Մրենի ամրոցը և գալիս բանակ է դնում Գագի դաշտում: Այդտեղ տեղի ունեցած կռիվներում աթաբեկը Վրաց թագավորի զորքի կողմից կրում է պարտություն և թողնելով իր վերցրած ավարն ու գերիներին, դիմում է փախուստի: Ելտկուզը հարձակվել էր 100-հազարանոց բանակով, և Գագում կրած այդ պարտությունը նա չհամարեց իր ձեռնարկած արշավանքի վերջը: Նա հորդորում և օգնում է Մահմուդի որդի Ասլան սուլթանին քաղաք մտնելու ու այն տիրելու հա-

մար: էմիրություններից ու Գանձակի աթաբեկությունից համալրումներ ստացած սելջուկյան սուլթան Ասլանը չորս տարի շարունակ Անին պահում է լարված ու տագնապալից դրության մեջ: Վրաց թագավորը առայժմ հնարավորություն չուներ այդ վտանգը վերջնականապես վերացնելու և քաղաքի շատ թե քիչ բնականոն կյանքը վերականգնելու համար: Նա Անին 1165 թվականին նորից վերադարձնում է իր նախկին տերերին՝ Շադդադյաններին: Այսպիսով Անիի 1161 թվականի ազատագրումը Շադդադյան և սելջուկյան տիրապետությունից նույնպես վերջնական չի լինում:

Անիի համար մղվող պայքարը շարունակվում է: Դրան 1165 թվականին նորից տեր դարձած Շադդադյանները՝ սելջուկյան սուլթանների ու Գանձակի աթաբեկության օգնությամբ ձգտում են ամրացնել իրենց դիրքերը, իսկ Վրաց Գեորգի 3-րդ թագավորը չէր հրաժարվել Անին նորից գրավելու մտադրությունից և սպասում էր հարմար պահի: 1170-ական թվականների առաջին կեսում Վրաց թագավորի այդ մտադրությունը իրականացնելու համար ստեղծվում են համեմատաբար հարմար պայմաններ և նա արդեն կարող էր երկրորդ անգամ վերագրավել Անին: Նա 1174 թվականին երկրորդ անգամ գրավում է Անին և այնտեղ կառավարիչ նշանակում Իվանե Օրբելուն, իսկ Շահնշահ էմիրին (որին ենթադրաբար համարում են Շադդադյան Փատլուն էմիրի որդին), իբրև գերի իր հետ անվերադարձ տանում է Վրաստան: Իվանե Օրբելու հետ միասին քաղաքում կառավարիչ է նշանակվում նաև Սարգիս Զաքարյանը:

1174 թվականից հետո Անիի համար մղվող պատերազմները շարունակվում են որոշ ընդհատումներով և այդ ընթացքում Բագրատունիների երբեմնի մայրաքաղաքը մերթ անցնում է Շադդադյաններին կամ սելջուկներին, մերթ էլ՝ Վրաց պետությանը, յուրաքանչյուր հարձակման, պաշարման ու գրավման ժամանակ ենթարկվելով նորանոր ավերումների, որոնց սովորաբար հաջորդել են նրա բնակչության արտագաղթերը: Պարզվում է, որ Վրաց Գեորգի 3-րդ թագավորը երկրորդ անգամ 1174 թվականին գրավելով Անին, հազիվ է կարողացել այն իր ձեռքում պահել մեկ-մեկ ու կես տարի և սելջուկյան էմիրությունների ու Գանձակի աթաբեկության չդադարող հարձակումների հետևանքով հարկադրված է եղել նորից վերադարձնել իր նախկին տերերին՝ Շադդադյաններին:

էմիրների ու Գանձակի աթաբեկի հարձակումները Շիրակի և Անիի վրա շարունակվում են նաև 12-րդ դարի 80-ական թվականներին: Հիշատակությունների համաձայն, Շիրակում գտնվող Ծառաքար բերդաքաղաքը 1185 թվականին գրավվում է ոմն Խարաչա էմիրի կողմից, ապա հաջորդ տարում՝ 1186 թվականին դրան տեր է դառնում աթաբեկ Ելտ-

կուզի որդի Խզըլ Ասլանը՝ «ընդ բազում ոսկւոյ» այն գնելով Խարաչա էմիրից: Աթաբեկ Խզըլ Ասլանի նշանակած սելջուկ կառավարիչը իր գործադրած բռնություններով ու չարագործություններով ծայրաստիճան լարում է դրությունը: Անեցիները լսելով ու ականատես լինելով այդ բոլորին՝ նույն թվականին միահամուռ ուժերով հարձակվում են Ծառաքարում գտնվող հափշտակիչների կայազորի վրա և ոչնչացնում այն:

Այս դեպքերը ցույց էին տալիս, որ անեցիները, ակնկալելով հզորացող Վրաստանի, հայ-վրացական զորքի և Զաքարյան իշխանների օգնությունը, արդեն միահամուռ ուժերով մարտի էին նետվում իրենց գավառի ու հայրենի քաղաքի ազատագրման համար: Զաքարյան իշխանները Հյուսիսային Հայաստանի և նրա նշանավոր քաղաք Անիի կյանքում սկսեցին կարևոր դեր խաղալ տակավին 12-րդ դարի 80-ական թվականների սկզբներին, երբ Գեորգի 3-րդի դեմ 1177—1178 թթ. ապստամբած վրաց Օրբելյանները 1183—1184 թթ. սրի քաշվեցին և նրանց կալվածքներն էլ տրվեցին Զաքարյաններին: Ապստամբության ղեկավարները վերը նշված Իվանե Օրբելին էր և նրա եղբայրը՝ Լիպարիտը: Այդ ժամանակից Անիի կառավարիչ է նշանակվում Սարգիս Զաքարյանը, որը նախկինում սոսկ Իվանե Օրբելու տեղակալն էր: Շադդադյան և սելջուկյան լծից Անիի վերջնական ազատագրումը կապված է առաջին հերթին Զաքարյան եղբայրների գործունեության հետ, որին կանդրադառնանք իր տեղում:

Որոշ ընդհատումներով 135 տարի տևած (1064—1199) սելջուկյան և Շադդադյան տիրապետության շրջանը հայագիտության մեջ ընդհանուր առմամբ գնահատվել է տրամագծորեն իրար հակառակ երկու ձևով: Անցյալի հեղինակներից շատ-շատերը սելջուկյան տիրապետության ժամանակներից ի վեր Անիի և Հայաստանի մյուս խոշորագույն քաղաքների պատմական կյանքը դիտում են իբրև սոսկ նահանջի ու վայրէջքի շրջան: Այդ վարկածը եթե սելջուկյան տիրապետության ժամանակների համար կարելի է ընդհանուր առմամբ ընդունելի համարել, ապա Հյուսիսային Հայաստանում դրան հաջորդած Զաքարյան իշխանության պատմաշրջանի համար, երբ այնքան մեծ առաջադիմություն էր կատարվել տնտեսական, սոցիալական ու մշակութային կյանքում, ենթակա է մերժման:

Մյուս տեսակետի հեղինակը Ն. Մառն է, որը հակառակ իր իսկ հետազոտությունների արդյունքների, զարգացնում է այն թեզը, ըստ որի սելջուկյան և Շադդադյան տիրապետության պատմաշրջանը իբր Անիի կյանքում զարգացման ժամանակներ էին, իսկ Զաքարյանների իշխանության օրոք իբր նա հասել է իր զարգացման գագաթնակետին:

Ն. Մառի այդ սխալ եզրահանգմանը կարելի էր այդքան մեծ նշանակություն չտալ, եթե այն իր հետևանքները չթողներ անիագիտության վրա, եթե այն ստեղծելու համար մեծ անիագետը չխտացներ վաղեմի մայրաքաղաքում սելջուկյան տիրապետության ժամանակներում կատարված շինարարական աշխատանքների ծավալն ու բնույթը, եթե իր սխալ տեսակետը ընդունելի դարձնելու համար ծուռ հայելու մեջ չդիտվեին սկզբնաղբյուրների հաղորդած տեղեկությունները, եթե Բագրատունիների ժամանակաշրջանի Անիի բուռն զարգացումը հետագա ժամանակների համեմատությամբ չդիտվեր ավելի ցածր աստիճան և այլն, և այլն:

Ինչպես իրավացիորեն ընդգծում է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Աշ. Հովհաննիսյանը, Ն. Մառի այդ «հակապատմական... տեսությունից» է գալիս Հ. Օրբելու (և ուրիշների) այն սխալ վարկածը, որ իբր «սելջուկների տիրապետության շնորհիվ» «ցեղակից ու հավատակից ֆեոդալի ծանր ձեռքի տակից ազատագրված ֆեոդալական քաղաքը» «մտնում էր զարգացման նոր բուրժուական շրջան»:

Ն. Մառը ուռճացնում է սելջուկյան տիրապետության շրջանում կատարված շինարարական աշխատանքները՝ մզկիթների և Առաքելոց եկեղեցու գավթի կառուցմանը և ս. Սարգիս եկեղեցու ու ս. Փրկիչ տաճարի վերակառուցմանը, պաշտպանական պարսպի որոշ տեղերում կատարված չնչին աշխատանքներին տալով չափից ավելի մեծ նշանակություն: Դրա հետ միաժամանակ նա թերագնահատում է հայկական որոշ սկզբնաղբյուրների հաղորդած տեղեկությունների կարևորությունը, դրանք համարելով ամբողջապես կրոնավորների մենաշնորհը, ներծծված «հոգևորականությամբ», որը, նրա արտահայտությամբ, «միանգամայն խուլ է մնացել նոր քաղաքացիական սկզբունքների վրա անեցիների ինքնագործունեության նկատմամբ»: Ն. Մառը այդ անտարբերության բնորոշ օրինակ է համարում Ներսես Շնորհալու 1145—1146 թթ. գրած «Ողբ Եդեսիոյ» պոեմը, որտեղ կաթողիկոս-բանաստեղծը ողբում է Եդեսիա (կամ Ուռհա) քաղաքի գրավումն ու ավերումը Հալեպի Ջանգի էմիրի կողմից 1144 թվականին՝ դրան բախտակից համարելով Անին, որին միասնաբար սուգ անելու հրավեր է անում առաջինը:

Ներսես Շնորհալին ոչ միայն անտարբեր չէր իր ժամանակի նկատմամբ, այլ հակառակը՝ չափածո երկով ծանրաչափական զգայությամբ արձանագրել է 12-րդ դարի Հայաստանի քաղաքական վիճակը, Անին ձեռքից-ձեռք անցնելը և անշուքացումը՝ այն բախտակից համարելով Ջանգի էմիրի կողմից ավերված Եդեսիային: Մինչդեռ Ն. Մառը պնդում էր, թե Շնորհալու պոեմը գրվել է իբր «անիական արվեստի ամենաբարձր զարգացման դարաշրջան»-ի նախօրյակին և իբր այդ ցույց է տալիս, որ

բանաստեղծը ամենևին չի զգացել կյանքի երևույթները, նրան իբր «խորթ» է եղել «անիական նոր» կյանքը: Հանուն իր այդ սխալ թեզի Ն. Մառը քննադատում է նաև Ղ. Ալիշանին, գտնելով, որ վերջինս իբր սխալ է վերլուծել «Ողբ Եդեսիոյ» պոեմի Անիին վերաբերող հատվածը և չի նկատել բանաստեղծի կյանքից կտրված լինելը: Ներսես Շնորհալու այդ ստեղծագործության հայրենասիրական, ժամանակը ճիշտ արտացոլելու աղբյուրագիտական և մյուս առումները վերլուծված են անվանի գրականագետ-պատմաբանների կողմից և լրացուցիչ բացատրությունների կարիքը չունի: Իսկ նրանք բոլորը այդ երկը միանգամայն իրավացիորեն համարում են բանաստեղծի ապրած ժամանակների՝ սելջուկյան ծանր տիրապետության պատմաշրջանի հայելային անդրադարձումը սրտի կսկիծով գրված ողբի ձևով:

Շադադյանների և սելջուկյան տիրապետության շրջանը առաջադիմական համարելու Ն. Մառի այդ սխալ տեսակետը, որ առանց էական փոփոխության ընդունել է նաև Հ. Օրբելին, քննադատվել է ականավոր շատ հայագետների կողմից*: Նրա սխալական լինելը ցույց տալու համար վերջիններս մատնացույց են անում սելջուկյան արշավանքների, էմիրների հարձակումների և Անին ձեռքից-ձեռք անցնելու ընթացքում Հայաստանի ու մասնավորապես նրա վաղեմի մայրաքաղաքի ավերումները, բնակչության գերեվարությունը, կրոնական հալածանքները, ծանր հարկերը, Հյուսիսային Հայաստանով անցնող ճանապարհների նշանակության մասնակի անկումը, տիրապետողների խաշնարած լինելը և զարգացման ցածր մակարդակը, պատմագիրների կողմից 12-րդ դարը «դա-

* Ի միջի այլոց, Ն. Մառի այդ սխալ տեսակետն են վկայակոչում ժամանակակից թուրք պատմաբաններից շատերը (Մ. Իլնալ, Մ. Ֆահրեդդի, Կիրզ-օղլի և ուրիշներ), որոնք կեղծելով պատմական արժանահավատ բոլոր փաստերը, հայտարարում են, թե Անիում Ալփ-Արսլանի կատարած դաժանությունների մասին հայ պատմագիրների հաղորդած տեղեկությունները իբր ամբողջովին կեղծ են, թե իբր Անին իր զարգացման գագաթնակետին է հասել սելջուկների ու նրանց Շադադյան վասալների օրոք և այլն: Այլ կերպ ասած, թուրք-սելջուկներից սերած այդ «գիտնականները» ճգնում են տեր դառնալ այն մշակույթին, որ ստեղծված է երկրի բնիկ բնակիչների կողմից և փառաբանել սելջուկյան ու թուրքական կործանարար լուծը ու դրա բռնակալների՝ տուղրիլների, ալփարսլանների, մուրադների, համիդների, էնվերների և այլոց մարդաջինջ քաղաքականությունը:

Ցավով պետք է արձանագրել, որ թուրքական կեղծարար պատմաբանների հակագիտական դրույթներից էապես չեն տարբերվում Զ. Մ. Բունիաթովի աշխատություններում, մասնավորապես «Государство атабеков Азербайджана (1136—1225)» (Բաքու, 1978) մենագրության մեջ տեղ գտած հակագիտական և քաղաքական առումով վնասակար պնդումները, որոնք իսպառ զուրկ են պատմական հիմքից:

ոը», «չար» ժամանակներ ներկայացնելը, քաղաքաշինության ողորմելի վիճակը և այլն, և այլն:

Ն. Մառի տեսակետի սխալական լինելը երևում է հատկապես Թ. Թորամանյանի կողմից Շադադյան և սելջուկյան տիրապետության շրջանի բնութագրումից: Նա գրում է, որ «Շետատյաններու շրջանին մեջ ճարտարապետության և գեղարվեստներու զարգացման տեսակետով առանձնապես աչքի ընկնող ոչինչ չեմ գտներ, ընդհակառակը, ողբերգակ բանաստեղծ լինել հարկ է՝ հունաց տիրապետություններն և Արփասլանի կոտորածեն սկսած՝ մինչև մեծն Զաքարեի տիրապետության փրկարար շրջանը բովանդակ Շիրակի սուգն ու շիվանը ողբալու համար: Ես այստեղ Շետատյաններու անունով առառավելն արձանագրել կարող եմ քանի մը արվեստագիտական այլանդակությունները և պատմական վշտաոիթ անցքեր, որոնք պարզ կերպով ցույց կուտան Շետատյան ըսված ցեղի վարչական արժանավորությունը և հոգեկան նկարագիրը...»: Իսկ այդ եզրակացությունը հենվում է տեղում կատարված ուսումնասիրությունների, պատմաճարտարապետական և հնագիտական առարկություն չհանդուրժող, փաստական նյութի վրա: Ուստի նրա այդ խոսքերը մեջ բերեցինք իբրև Շադադյան և սելջուկյան տիրապետության շրջանի մասին մեր ասածների ամփոփում:

Այժմ մի փոքր ավելի մանրամասն անդրադառնանք Շադադյան և սելջուկյան տիրապետության ժամանակաշրջանի տնտեսական կյանքին:

1064 թվականի գրավմամբ, մարդաշատ ու բարեկարգ Անին ստանում է այնպիսի հարված, որ հետագայում, նույնիսկ Զաքարյանների իշխանության տասնամյակներում լիովին չի ստանում իր նախկին տեսքը:

Այնուամենայնիվ, 1072 թվականին Անիում հաստատված Շադադյանները, հանձինս առաջին էմիր Մանուչեի, որոշ հոգ են տանում ավերումների հետևանքները վերացնելու և քաղաքի տնտեսական, կոմունալ ու ներքին բնականոն կյանքը վերականգնելու ուղղությամբ: Մանուչեի վարած այդ քաղաքականությունն իր արձագանքներ է գտել հայ պատմագրության մեջ: Մեր պատմագիրները Շադադյան առաջին էմիրին ներկայացնում են որպես «խաղաղասեր», հայ բնակչության նկատմամբ «սիրալիր», Անին վերականգնելու համար հոգացող իշխանավոր, որը, բարեկամական կապերով կապված լինելով Բագրատունիների հետ, իրեն համարել է վերջիններիս ժառանգորդը:

Մեզ թվում է, որ Մանուչեի ընդհանուր առմամբ խաղաղասիրական և տեղական բնակչության նկատմամբ սիրալիր քաղաքականությունը հատկապես պետք է բացատրել նրանով, որ նրա իշխանության տարիներին համեմատաբար խաղաղ վիճակ էր նաև սելջուկյան պետության

մեջ։ Հայտնի է, որ Ալփ-Արսլանին փոխարինած նրա որդի Մելիք-շահի (1072—1092) օրոք նվաճված երկրների՝ դրանց թվում նաև Հայաստանի նկատմամբ վարվում էր հանդուրժողական քաղաքականություն։ Սելջուկյան այդ սուլթանը իր հայտնի վեզիր Նիզամ-Ուլ-Մուլքի խորհրդով նվաճված երկրներում կատարում էր բարեփոխություններ, վերականգնելով և իրենց դիրքերում հաստատելով տեղական իշխանավորներին ու հոգևոր առաջնորդներին։

Մելիք-շահի օրոք, 1086 թվականին Մանուչեն կրկնակի անգամ վերահաստատվում է իբրև Անիի էմիր։ Այդ ժամանակներում Մելիք-շահի մոտ է գնում նաև Բարսեղ կաթողիկոսը, որին հաջողվում է սուլթանից ստանալ որոշ արտոնություններ՝ հատկապես բնակչությունից գանձվող ծանր հարկերը թեթևացնելու համար։

Սակայն նպաստավոր այդ պայմանների հետ միասին Մանուչեի ժամանակ առկա էին նաև այնպիսի հանգամանքներ, որոնք խոչընդոտում էին Անիի տնտեսական կյանքի վերականգնմանն ու առաջընթացին։ Իր տեղում նշվեց, որ 1094 թվականին «սկյութական»-թուրքական հարձակման ժամանակ (որը հետ է մղվել Գրիգոր իշխանի ջոկատներով) քաղաքը ենթարկվում է զգալի ավերածությունների։ Անիի տնտեսական կյանքը, նրա բնակչությունը մեծ հարված է ստանում նաև նույն 90-ական թվականներին երաշտի ու մորեխի հետևանքով բռնկված սովից, որը խլել էր բազմաթիվ կյանքեր։

Այնպես որ սելջուկյան տիրապետության ծանր պայմաններում, թշնամական հարձակումների և բնական աղետների հետևանքով գրեթե անհնար էր Անին վերականգնել իր նախկին՝ Բագրատունյաց թագավորության ժամանակի վիճակով, ինչքան էլ առաջին էմիր Մանուչեն դրան ձգտում էր։ Անիի կացությունը, ինչպես տեսանք, ավելի է վատթարանում Մանուչեից հետո և այն երկար ժամանակով դառնում է կռվածաղիկ ու մի քանի անգամ անցնում ձեռքից-ձեռք։ Դրա վրա գումարվում էր նաև այն, որ Մանուչեին փոխարինած նույն Շադդադյան էմիրները ոչ միայն հոգ չէին տանում իրենց աթոռանիստ քաղաքի առաջադիմության համար, այլև նրա անմիջական հաջորդը նույնիսկ մտադրվում է Անին վաճառել Կարսի էմիրին։

Տեղական արգելակիչ պայմաններից բացի, եթե կարելի է այդպես որակել նշված հանգամանքները, Անին 11-րդ դարի երկրորդ կեսին և 12-րդ դարում նախկին ժամանակների համեմատությամբ, միջազգային առևտրատնտեսական առումով ընկնում է աննպաստ դրության մեջ։ Ակադեմիկոս Հ. Մանանդյանը, որ այնքան խորությամբ ուսումնասիրել է միջնադարյան Հայաստանի առևտուրն ու քաղաքները՝ դրանց զարգա-

ցումը հիմնականում կապելով արտաքին և տարանցիկ աշխույժ ու ծավալուն առևտրի հետ, եկել է այն ընդունելի եզրակացության, թե սելջուկյան ու խաչակիրների արշավանքներից հետո Մերձավոր Արևելքում ստեղծված նոր պայմանների հետևանքով Հայաստանն ու նրա քաղաքները առևտրատնտեսական տեսակետից կորցնում են Բագրատունիների շրջանում ունեցած իրենց արտակարգ նշանակությունը: Խաչակիրների կողմից սիրիական ծովափնյա շրջանները գրավելու, իսկ Մերձավոր Արևելքի հյուսիսում գրեթե հարատև ռազմական դրություն լինելու պատճառով միջազգային առևտրի մեջ սկսում են կարևորագույն դեր խաղալ Մերձավոր Արևելքի հարավով՝ Միջագետքով, Սիրիայով ու Փոքր Ասիայով ձգվող ճանապարհները, իսկ Հայաստանով անցնողներն աստիճանաբար մղվում են երկրորդ պլան: 11-րդ դարի երկրորդ կեսում և 12-րդ դարում տիրող այդ դրությունը բացասաբար էր ազդում նաև Անիի վրա:

Սելջուկները և Շադդադյանները Անիի ու դրա շրջակայքի բնակչությանը ծանրաբեռնել էին բազմատեսակ հարկերով՝ աթոռի հարկ, բաժ (մաքս), դռնագիր, թաղար, շարիատ, չար մեծ, չար փոքր, մրուր և այլն: Պետք է նկատի ունենալ, որ սույն հարկերի ցուցակը, դրանց քանակը դեռևս բավական չէ սելջուկներին, Անիի էմիրներին, հայ իշխաններին և հոգևորականությանն ու եկեղեցիներին տրվող հարկերի ու տուրքերի ամբողջ ծանրությունը լուսաբանելու համար: Անիի վիմագիր արձանագրություններից մեկում, որ փորագրված է Սմբատյան պարսպի գլխավոր դարպասի արտաքին պատի վրա, ասված է այն մասին, թե Անին դարձրել են խասինջու և քաղաքի Գրիգոր աղա ու Հովհաննես պատրոնները հարկապահանջությունը թեթևացնելու նպատակով վերացրել են ներքին մի ամբողջ շարք հարկեր՝ թաղար, հեծել, ղափչու, բաժ, դամղա և այլն: Արձանագրությունը առանց թվականի է, բայց վերաբերում է 11-րդ դարի վերջին կամ 12-րդ դարի առաջին կեսին: Դրանից մենք իմանում ենք նաև, որ քաղաքի տնտեսական պայմանները դժվար էին և նշված պատրոններն ամբողջությամբ փոփոխել են հարկապահանջության կարգը՝ վերականգնելով նախկին, մինչև սելջուկյան շրջանը եղած հարկային համակարգը:

Քաղաքի տնտեսական կյանքի վրա խիստ բացասական ազդեցություն էին թողնում ոչ միայն քաղաքական դեպքերը, օտարի լուծը, անբերրիությունը, սովը, բնական մյուս աղետները, այլև գերեվարությունները, առաջին հերթին՝ արհեստավորների ու առևտրականների գերեվարությունները, որ այնքան սովորական էին դարձրել արևելյան բռնակալները: Միանգամայն տրամաբանական է, որ այդպիսի պայմաններում Անին ոչ միայն չէր կարող առաջընթաց ունենալ, այլև նրա արհեստները, ներքին

ու արտաքին առևտուրը նախորդ ժամանակների համեմատությամբ ապրում էին վայրէջքի շրջան։

Ներքին ու արտաքին առևտրի վրա խիստ բացասական ազդեցություն ուներ դրամական միավորների բազմազանությունը։ Առաջավոր Ասիայում 11—12-րդ դարերում շրջանառության մեջ եղած դրամական միավորների ուսումնասիրողներից մեկը՝ Ռ. Ա. Հուսեյնովը արձանագրում է, որ սելջուկյան տիրապետության մեջ հայտնի են եղել մոտավորապես մինչև 50 դրամահատարան, որ սելջուկյան սուլթանները՝ սկսած Տուղրիլից դրամ են հատել Միջին Ասիայի, Անդրկովկասի, Փոքր Ասիայի, Իրանի, Սիրիայի և Իրաքի շատ քաղաքներում, որ նրանք մշտական դրամահատարաններից բացի ունեցել են նաև շարժական դրամահատարաններ և դրամ են հատել նույնիսկ ռազմական ճամբարներում։ Նույն հեղինակի ասելով, Հայաստանի տարածքում՝ Անիում, Երևանում, Գառնիում, Դվինում և մյուս քաղաքներում ու շրջաններում հայտնաբերված 11—12-րդ դարերի դրամները շատ բազմազան են։ Դրանցում կան սելջուկյան սուլթանների, արաբական էմիրների ու Շահարմենների, վրացական թագավորների, բյուզանդական կայսրերի, սելջուկյան էմիրների հատած ամենատարբեր դրամներ, տարբեր քաշ, հորջորջում և տարբեր մետաղներից հատած դրամներ, որոնց մեջ գերակշռող մեծամասնությունը կազմում են պղնձյա դրամները։ Անիի Շադադյանները սեփական դրամ ամենայն հավանականությամբ չեն ունեցել, համենայն դեպս այդ մասին չկա որևէ հիշատակություն և հայտնաբերված բազմաթիվ ու բազմատեսակ դրամների մեջ այդպիսիները հայտնի չեն։ Իսկ քաղաքում ու դրա շրջակայքում կատարված հայտնաբերումները ցույց են տալիս, որ այստեղ շրջանառության մեջ են եղել 11—12-րդ դարերի Առաջավոր Ասիայի վերը նշված մեծ ու փոքր իշխողների հատած դրամները։

Սակայն այդ ամեննին չի նշանակում, թե Անիի Շադադյան տերերն ամեննին չեն մտահոգվել քաղաքի առևտրով, որը կարող էր հսկայական եկամուտներ տալ էմիրական գանձարանին։ Շադադյան վերջին էմիրի՝ Քեյ-Սուլթանի իշխանության վերջին շրջանին՝ 1198 կամ 1199 թվականին վերաբերող մի վիմագիր արձանագրությունից իմանում ենք, որ Անիում, դրա կենտրոնական մասում կար բամբակի և բամբակեղենի գործվածքների հատուկ շուկա և այդ ապրանքներով կատարվող առևտուրը պետք է ենթարկվեր էմիրի արձանագրության մեջ նշված կարգին։ Իսկ էմիրական այդ պարսկերեն վիմագիր արձանագրությունում ասված է, որ ինքը՝ Մահմուդի որդի Քեյ-Սուլթանը (Մանուչեի թոռը) թույլատրում է բամբակի և բամբակեղեն գործվածքների առևտուրը կատարել Աբու-

Սամրանի մզկիթի մոտից մինչև Սաքիլ(՞) փողոցի վրա գտնվող կուղ-պակն ընկած շրջանում:

Պատմագիտական տեսակետից ուշագրավ հարցերի թվին են պատ-կանում սելջուկյան և Շադադյան տիրապետության շրջանում Անիից կա-տարված գերեվարումներն ու արտագաղթերը, վերջիններիս ուղղություն-ները, արտագաղթողների քանակը, քաղաքի բնակչության ազգային կազ-մի փոփոխությունները, մոտակա շրջաններն ու հարևան երկրները գաղ-թած բնակիչների մասնակի վերադարձն Անի և այլն:

Արտագաղթերի պատմության լուսաբանումը առանձնապես անհրա-ժեշտ է մայրաքաղաք Անիի համար: Հետբագրատունյան շրջանում, բա-ցառյալ Զաքարյանների տիրապետության տասնամյակների, օտար նվա-ճումների և ծանր լծի հետևանքով Անիից պարբերաբար հարկադիր ար-տագաղթ են կատարել բազմահազար բնակիչներ և բնակություն հաս-տատել ամենատարբեր տեղերում:

Պատմական հստակ աղբյուրների բացակայության պատճառով գրե-թե անհնար է պարզաբանել այն հարցը, թե Անիից ե՞րբ է սկսվել բնակ-չության զանգվածային արտագաղթը: Այնուամենայնիվ, հավանական կա-րելի է համարել, որ Անիից զանգվածային արտագաղթերը սկսվել են Բագրատունիների թագավորության անկման ժամանակներից՝ 11-րդ դա-րի 40-ական թվականներից: Օրինակ, հայտնի է, որ հայերը Ռուսիայում հանդես են եկել 10—11-րդ դարերից: «Հայերը Ռուսիայում շատ վաղ երե-վեցան»,— գրում է Ի. Ա. Լիննիչենկոն, նշելով, որ «Հայերի ներկայու-թյունը Ռուսիայում 11-րդ դարում անկասկածելի է»: Սակայն նա միա-ժամանակ մերժում է պատմագրական գրականության մեջ տարածում գտած այն վարկածը, ըստ որի տակավին մինչ Ալփ-Արսլանի կողմից Անիի գրավումը, անեցի 20 հազար զինվորներ կային Կիևում, որոնք հրավիրված էին մեծ իշխանի կողմից՝ պոլովցիների դեմ մղվող կռիվնե-րին մասնակցելու համար և այդ կռիվներից հետո չեն վերադարձել իրենց հայրենի քաղաքը, այլ ըստ նույն մեծ իշխանի արտոնագրի, երեք տարի իշխանական ծառայության մեջ գտնվելուց հետո բնակություն են հաս-տատել «անոր երկրին մեջ իրենց ուզած տեղը»:

Անիից և Հայաստանից 11-րդ դարում կատարված գաղթի մասին անկարելի է ամբողջական գաղափար կազմել առանց այն փաստերի ու նյութերի, որոնք վերաբերում են գաղթողների (կամ ուղղակի տեղափոխ-վողների) բնակության նոր շրջաններին ու քաղաքներին՝ հայ գաղթավայ-րերին ընդհանրապես: Բյուզանդական կայսրության արևելյան պրովին-ցիաների զգալի մասը վաղուց արդեն՝ 9—10-րդ դարերից հայաբնակ էր, իսկ 11-րդ դարում Սև ծովի առափնյա շրջանից մինչև Կիլիկիա հայա-

քնակ շրջանները կազմում էին գրեթե համատարած գոտի և Արևելյան Հայաստանից եկող գաղթականական նոր հոսանքների շնորհիվ հայերն այդ մեծ տարածքում պարզապես ավելի բազմամարդ էին դառնում։ Գերազանցապես դրա շնորհիվ է, որ նաև պայմաններ ստեղծվեցին Կիլիկիայում հայկական պետություն կազմավորելու համար։ Այդ համատարած հայաբնակ շրջանները մասամբ կազմում են Արևմտյան Հայաստանի բաղկացուցիչ մասերը, մասամբ էլ վերջինիս անմիջական հարևաններն էին և չի կարելի գաղթավայր ասել բառիս նեղ իմաստով։ Արևելյան Հայաստանից՝ մասնավորապես Անիից դեպի այդ մասերը գաղթականական զանգվածային հոսանքը սկսվել էր 11-րդ դարում՝ սելջուկյան արշավանքների հետևանքով։ Եվ այդ նոր եկող հայ բնակչությունը հիմնականում բնակություն է հաստատում Մալաթիայում, Ուռհայում, Անտիոքում, Մարաշում և Կիլիկիայի այլ շրջաններում, Փիլարտոսի իշխանության տարբեր մասերում և այլուր։ Գաղթողների թվում կային և՛ հասարակ ժողովրդի ներկայացուցիչներ, և՛ զինվորականներ ու իշխաններ, որոնցից շատերը ծառայության մեջ են մտնում այդ մասերում առաջացած հայկական իշխանություններում, հատկապես Փիլարտոս Վարաժնունու իշխանությունում։ Եկվոր զինվորականներից ոմանք իրենց հերթին ստեղծում են հայկական նոր իշխանություններ։

Սակայն գաղթողների զգալի մասը սելջուկյան նվաճումների ու ծանր տիրապետության հետևանքով դիմում է այլ երկրներ ու մարզեր՝ դեպի Մոլդավիա, Վալախիա, Լեհաստան, Հունգարիա, Կիևյան Ռուսիա, Ղրիմ, Հյուսիսային Կովկաս, Ստորին Վոլգա և այլ տեղեր։ Նշված այդ բոլոր գաղթավայրերը ձևավորվել են տակավին 11-րդ դարում, իսկ դրանից առաջ շատ տեղերում արդեն հաստատվել էին հայ առևտրականներ և զգալի դեր էին խաղում նշված երկրների առևտրատնտեսական կյանքում։ Արտագաղթն Անիից շարունակվում է նաև հետագայում՝ ամբողջ 12-րդ դարի ընթացքում, բայց 1064—1065 թվականների արտագաղթի համեմատությամբ այն ուներ համեստ չափեր։

Միանգամայն հասկանալի է, որ արտագաղթի հետևանքով Անիի բնակչության թիվը Բագրատունիների թագավորության շրջանի համեմատությամբ մեծապես նվազում է։ Սելջուկյան տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում այն նորից բազմամարդ դառնալու պայմաններ չուներ և արտագաղթը քաղաքի բնակչության թվի նվազման միակ պատճառը չէր. թշնամական հարձակումները, քաղաքը մի քանի անգամ ձեռքից-ձեռք անցնելը, որոնք ուղեկցվում էին կոտորածներով, մեծ թվով զոհեր խլող անբերրիություններն ու սովը, որ կրկնվել է մի քանի անգամ, այս բոլորը, գումարած օտարի տիրապետության հետևանքով քա-

ղաքում ստեղծված սոցիալ-տնտեսական ծանր պայմանները, քաղաքի առաջընթացը խափանելու հետ միասին պատճառ էին դառնում նրա բնակչության թվի կրճատմանը:

Սակայն չպետք է կարծել, որ Անին 11—12-րդ դարերում միայն արտագաղթ է տվել: Այդ ժամանակներում կար և հակառակ հոսանք՝ «դառը ժամանակներում» տարբեր պատճառներով ոչ հեռու մարզերում և հարևան երկրներում ցրված անեցիները իրենց քաղաքում համեմատաբար ապահով պայմաններ ստեղծելու պահերին նորից են վերադարձել ու բնակվել այնտեղ:

Շադադյաններն ու նրանց շրջապատող բարձրաստիճան զինվորականները, քաղաքի էմիրական կայազորը ու մահմեդական հասարակ բնակչությունը և վրացի բնակչությունը միասին վերցրած փոքրաթիվ էին և 11—12-րդ դարերում շատ քիչ չափով էին խախտում Անիի բնակչության ազգային միատարրությունը. քաղաքի բնակչության մեծագույն մասը կազմում էին հայերը: Ճիշտ է, Անին այդ դարերում ենթարկված էր օտարի իշխանությանը, բայց բնույթով մնում էր իբրև տիպիկ հայկական քաղաք՝ իր բոլոր կողմերով: Ավելին, քաղաքի պաշտպանությունն ու նրա ներքին կառավարումը, քաղաքական բարդ իրադրությունների պայմաններում դրա ճակատագրի տնօրինումը, քաղաքաշինությունը, բարեկարգման գործը, մշակույթը և այլն ամբողջապես գտնվում էր հայերի ձեռքին, դրանցով զբաղվում էին քաղաքի «ավագ»-ները, հայ իշխաններն ու մեծատունների խավը, եկեղեցին, համքարությունները, հասարակ ժողովուրդը: Իշխողներն իրենց ձեռքում պահելով քաղաքական իշխանությունը և Անին համարելով իրենց սեփականությունը՝ հրապարակում էին օրենքներ, ամեն կերպ նեղում էին նրա բուն բնակչությանը հատկապես կողոպտիչ հարկային քաղաքականությամբ և ցանկացած դեպքում պատրաստ էին Անին վաճառել այս կամ այն տիրակալին, սերմանում կրոնական ատելություն ու հալածանքներ, եկեղեցիները վերածում մզկիթների և այլն: Այո, սելջուկյան տիրապետության ժամանակաշրջանը մեր պատմագիրների արտահայտությամբ «դառը», «նեղ» ժամանակներ էին:

Միայն զարմանալ կարելի է ճարտարապետական արվեստի, շինարարական-քաղաքաշինության առումով մեղմ ասած այդ ամուլ ժամանակաշրջանը վերածննդի սկիզբ համարելը, կիսաքոչվորական սելջուկներին ու Շադադյան քրդերին վերագրելով ճարտարապետական արվեստի նոր, բարձր տարրերի կրողներ: Եվ ցավով պիտի ասել, որ այդ հակապատմական վարկածի հիմնադիրը մեծ անիագետ Ն. Մառն է:

Փաստական նյութերը և հայ ճարտարապետության պատմության երախտավորների ու հայոց պատմության դասական մասնագետների ու-

ումնասիրությունների արդյունքները գալիս են ժխտելու Ն. Մառի և նրա հետևորդների նշված հակապատմական տեսակետը։ Այս առումով գույների խտացում ու չափազանցություն չի կարելի համարել Լեոյի այն արտահայտությունը, թե սելջուկյան ժամանակաշրջանից Անիում «երկու մզկիթներից» ու «Ավագ դռների մոտ» կատարված որոշ կառուցումներից բացի «Ուրիշ հիշատակներ չենք գտնում» և վկայակոչելով օտար հեղինակների ասույթները, հանգում է այն եզրակացության, որ սելջուկներն իրենք են շինարարական արվեստ սովորել հայերից և բյուզանդացիներից։ Շինարարական-ճարտարապետական տեսակետից սելջուկյան-շադդադյան դարաշրջանը գրեթե ամուլ է համարել նաև Թ. Թորամանյանը, նշելով, որ Անիում «Շետտադյաններու անունով առաջվելն արձանագրել» կարող է «քանի մը արվեստագիտական այլանդակություններ և պատմական վշտառիթ անցքեր» միայն։ Նա մատնացույց է անում այն իրողությունը, որ Շադդադյաններն ու սելջուկները նույնիսկ սեփական պաշտամունքային կառույցներ չկատարեցին, այլ բավարարվեցին հայկական շենքերը՝ Կաթողիկե տաճարը և դրանից ոչ հեռու գտնվող մի վարչական շենք մզկիթների վերածելով։ Օգտվելով Անիում կատարված պեղումների արդյունքներից՝ հնագիտական այդ ուսումնասիրությունների մասնակից ճարտարապետ Ն. Մ. Տոկարսկին նշում է, որ սելջուկների կողմից ավերված Անին երկար ժամանակ ուշքի չի եկել և նրա փլված շենքերը ընդհանրապես չվերականգնվեցին ու նույնիսկ չմաքրվեցին դրանց ավերակները, այլ պարզապես հարթեցվեցին և դրանց վրա կառուցվեցին բնակելի այն խղճուկ տները, որոնց հետքերը մնացել էին մինչև նորագույն ժամանակները։ Քաղաքի կենտրոնական մասում՝ միջնաբերդում և դրա պարսպագծի մոտակայքում կառուցված այդ անշուք ու ճարտարապետական առումով ոչինչ չասող բնակելի տները ամենայն հավանականությամբ պատկանում էին սելջուկների տիրապետության հետևանքով Անի մուտք գործած մուսուլմաններին։ Նախկինում շատ շքեղ քաղաքի այդ մասը սելջուկյան ավերումների և տիրապետության հետևանքով հետագայում բուն քաղաքի՝ շահաստանի նկատմամբ իր կառուցվածքներով, չհաշված եկեղեցիներն ու մզկիթները, ողորմելի պատկեր էր ներկայացնում։ Սելջուկյան-շադդադյան տիրապետության շրջանում Անիում կատարված այս կամ այն չափով նշանակալի կառուցումները կարելի է հաշվել մատների վրա։ Դրանք կարելի է բաժանել երեք խմբի՝ մուսուլմանական պաշտամունքային կառույցների, պաշտպանական կառուցվածքների և եկեղեցական շինությունների։

Ինչպես ասվեց, սելջուկյան և Շադդադյան տիրակալները Անիում հաստատված մուսուլմանների համար սկզբնական շրջանում մզկիթներ էին

ստեղծում հայ ճարտարապետության որոշ կոթողների վերափոխմամբ: Մզկիթներ «կառուցելու» այդ հեշտ եղանակը նորություն չէր: Օրինակ՝ Դվինում 10-րդ դարի սկզբներին, երբ դրա շուրջը կատաղի կռիվներ էին տեղի ունենում Սմբատ 1-ին Բագրատունի թագավորի և Ատրպատականի Աֆշին ու նրան հաջորդած Յուսուֆ էմիրների միջև, երբ կաթողիկոսը հարկադրված էր հեռանալ այդտեղից, Դվինում գտնվող նրա պալատը վերածել էին մզկիթի: Այդ նույն ձևով Անիի Շադդադյան էմիրները մըզկիթի էին վերածել հռչակավոր Կաթողիկե տաճարը: Անիի Մայր եկեղեցին մզկիթի էր վերածվել տակավին Ալփ-Արսլանի ժամանակ, երբ ժանվել էին նրա գմբեթի վրայի մեծ խաչը և ներսի թանկարժեք ջահը: Թե՛ Շադդադյան առաջին էմիր Մանուչեի և թե՛ դրան հաջորդած Աբուսվարի ժամանակ Կաթողիկեն մնում էր մուսուլմանների ձեռքին: Կաթողիկեի և ուրիշ կառույցների մզկիթի վերածվելը դարձավ Շադդադյան Աբուսվարի դեմ անեցիների ըմբոստության և Անին Վրաց Դավիթ թագավորին տալու հիմնական պատճառներից մեկը, ինչպես և նրանց ընդվըզումները Աբուսվարին փոխարինած Փատլուն էմիրի դեմ, որը հանդգնել էր ձեռք մեկնել տաճարի հարստություններին:

Եթե իրերի բերումով Մայր եկեղեցին իբրև մզկիթ երկար չմնաց, ապա ընդմիշտ մզկիթի էր վերածվել մի այլ կառուցվածք, որը նախկինում եղել է Անիի քաղաքացիական ճարտարապետական կոթողներից մեկը: Այդ մոնումենտալ շենքը, որ գտնվում էր Մայր եկեղեցուց ոչ հեռու, Ախուրյանի աջակողմյան զառիթափ կողմի պռնգին, Աշոտյան պարսպի մոտ, մզկիթի էր վերածվել Անիի Շադդադյան առաջին էմիր Մանուչեի օրոք՝ 11-րդ դարի 70-ական թվականների սկզբներին, և հետագայում կոչվել է նրա անունով: 10-րդ դարում կառուցված այդ շենքը ոմանք ենթադրաբար համարում են պահականետ, ոմանք՝ կաթողիկոսարան, ոմանք էլ՝ ժամատուն, ոմանք՝ Աշոտ թագավորի պալատը, ոմանք՝ մաքսատուն, ոմանք էլ՝ այլ կարգի վարչական շենք: Կարծում ենք, որ ամենից հավանականն այն է, որ այդ շենքը իր նախնական վիճակով, ինչպես Հ. Օրբելին է ենթադրում, եղել է կամ մաքսատուն կամ պահականետ, որովհետև այն իր տեղադրությամբ մոտ է և կապված է եղել բուն Անիում Ախուրյանի վրա ձգված մեծ կամուրջի հետ:

Մասնագետների միահամուռ կարծիքով Մանուչեի մզկիթը կառուցվել է երկու տարբեր ժամանակներում, ճարտարապետական երկու տարբեր ոճերով: Բագրատունիների թագավորության օրոք կառուցվել են դրա առաջին և երկրորդ հարկերը: Շադդադյանները 11-րդ դարի 70-ական թվականների սկզբներին այն վերափոխել են մզկիթի՝ լրացնելով վերջին հարկը, նորից կառուցելով դրա առաստաղը և ութանկյունի մինարեն, որ

ունի 85 աստիճան։ Մանուչեի մզկիթը համարվում է Անիի ճարտարապետական գլուխգործոցներից մեկը։ Շենքի ներսը մի ընդարձակ դահլիճ է, զարդարված երկշարք որմնասյուներով։ Առաստաղը նույնպես շքեղ է՝ զարդարված ստալակտիտներով և սև ու կարմիր քարերով շարված խճանկարով, որի մեջ ընդգծվում է կապույտ գույնը։ Դահլիճը լուսավորվում էր դեպի Ախուրյան ու Մայր տաճար նայող լուսամուտներով և առաստաղում ունեցած երդիկի շնորհիվ։ Շենքի առաջին հարկը բաղկացած է չորս սենյակներից, որոնք իրենց տակ ունեն ընդարձակ նըկուղներ։

Շքեղ է նաև մզկիթի մինարեն, որ կառուցված է սև ու կարմիր քարերից։ Այն Անիի ամենաբարձր կառույցներից է, որի կատարից ազանչին յուրաքանչյուր օր մզկիթ էր հրավիրում հավատացյալ մուսուլմաններին։

Թե՛ մզկիթի պատերին և թե՛ մինարեի վրա կային արաբերեն ու հայերեն արձանագրություններ։ Ամբողջովին արձանագրություններով է ծածկված եղել շենքի հյուսիսային, պեղումների ժամանակ արդեն գոյություն չունեցող պատը։

Մանուչեի մզկիթը Անիի համեմատաբար լավ պահպանված շենքերից է։ Պահպանվել է նաև նրա մինարեն։ Անցյալ դարում, մինչև 90-ական թվականները, երբ այն միջնորմային պատերով հարմարեցվեց թանգարանի համար, լրացուցիչ կառուցումներով ամրացվեց, շենքի դահլիճը ավելի մեծ տպավորություն է թողել, քան դրան հաջորդած տասնամյակներում։

Անիի երկրորդ մզկիթը կոչվել է Աբուլ-Մամրանի մզկիթ։ Այս մըզկիթը ևս գտնվում էր քաղաքի կենտրոնական մասում՝ Մայր եկեղեցուց մի փոքր արևմուտք։ Որոշակի հայտնի չէ Աբուլ-Մամրանի մզկիթի կառուցման ժամանակը։ Ոմանք ենթադրում են, որ այն կառուցված պետք է լինի վերջին Շադադյանների օրոք՝ 12-րդ դարի վերջին տարիներին, ամենայն հավանականությամբ 1198—1199 թվականներին։ Մզկիթի հիմնական շենքը վաղուց փլատակների էր վերածված, իսկ մինարեն, ինչպես վկայում են ականատեսները, կանգուն է եղել մինչև 1880—1881 թվականները և կործանվել է երկրաշարժի հետևանքով։

Աբուլ-Մամրանի մզկիթի մինարեն, ինչքանով մեզ հայտնի է, եղել է Անիի ամենաբարձր կառուցվածքը՝ իր ոլորապտույտ սանդուղքի վրա ունենալով 90 աստիճան։ Ականատեսների վկայությամբ այդ մինարեն իր գեղեցկությամբ մեծ տպավորություն է թողել այցելուների վրա։ 1848 թվականին արտագրվել է դրա պատի վրայի Շադադյան Քեյ-Սուլթանի

1198—1199 թվականին թողած արձանագրությունը, որի մասին նշվեց վերևում:

Սովորաբար ընդունված է ասել, որ Շադադյանները Ալփ-Արսլանի ավերիչ արշավանքից հետո առանձին հոգ են տարել Անիի պաշտպանական պարիսպները վերանորոգելու և վերակառուցելու համար: Անիի պաշտպանական կառույցները պարբերաբար հարվածներ էին կրում նաև սելջուկյան սուլթանի արշավանքից հետո մի շարք անգամ Անիի վրա էմիրների և Վրաց թագավորների կատարած հարձակումների ժամանակ: Սակայն սելջուկներն ու Շադադյանները քաղաքի Սմբատյան պարիսպների նորոգման և ավելի ամրացման համար նշանակալի գործ չեն կատարել: Մասնագետներն ու հնագիտական պեղումներին մասնակցողները Շադադյան ժամանակաշրջանից մատնացույց են անում քաղաքի պաշտպանական պարսպի աշտարակներից միայն մեկը՝ Մանուչեի աշտարակը, որը կառուցվել է 1072 թվականին: Մանուչեի աշտարակը գտնվում էր քաղաքի Արտաքին պարսպի գլխավոր դարպասի մոտ: Նրա պատին, սև քարի վրա պահպանվել է 12-րդ դարի սկզբին վերաբերող քուֆի արաբական մի արձանագրություն և առյուծի բարձրաքանդակ: Ն. Մառը նշում է նաև, որ Շադադյանների ժամանակ որոշ շինարարական, բայց ոչ էական աշխատանքներ են կատարվել նաև միջնաբերդի պաշտպանական պարիսպների վրա:

Սելջուկյան և Շադադյանների տիրապետության ժամանակներից Անիում օտարերկրյա տիրողների կողմից կատարված շատ թե քիչ նշանակալի կառույցները սահմանափակվում էին միայն նշվածներով: Համենայն դեպս, ո՛չ գրավոր աղբյուրները և ո՛չ էլ հնագիտական պեղումները սելջուկների ու Շադադյանների կատարած այլ կառուցումների մասին տեղեկություններ չեն հաղորդում:

Չնայած ժամանակները տագնապալից էին և քաղաքի հայ բնակչությունը գտնվում էր վատթարագույն պայմաններում, այնուամենայնիվ սելջուկյան և Շադադյան տիրապետության շրջանում Անիի՝ հիշատակության արժանի շինարարական աշխատանքների մեծագույն մասը կատարվել է նրա միջոցներով ու ձեռքով: Ավելին, Անիի մզկիթների, էմիրների նախաձեռնությամբ կատարված մյուս կառուցումների ճարտարապետներն ու շինարար վարպետները նույնպես հայեր էին: Ն. Մ. Տոկարսկին խոսելով 12—13-րդ դարերի հայկական ճարտարապետության և դրա ու մուսուլմանական շինարարական արվեստների առնչությունների մասին, գրում է. «Նույն վարպետները (հայ վարպետները— Թ. Հ.) տարբեր պատվիրատուների (քրիստոնյաների և մուսուլմանների) համար կառուցում» էին «պալատներ, մզկիթներ և վանական շենքեր...»:

Եվ այդ ոչ միայն հատուկ էր Անիին, այլև սելջուկյան տիրապետության տակ գտնվող բովանդակ Հայաստանին և դրան հարակից հայաբնակ շրջաններին։ Բայց Անիում օտար տիրողների կատարած կառուցումներն այնքան չնչին մասշտաբներ ունեին, որ մինչև վերջ գրեթե չէին խախտում Հայոց վաղեմի մայրաքաղաքի «հայկական» ընդհանուր տեսքը, նույնիսկ եթե մեր խոսքը մասնավորեցնենք դրա պաշտպանական պարիսպների վերաբերյալ, որոնց ավելի ամրացման և վերանորոգման համար բավական շահագրգռված էին հենց իրենք՝ էմիրները։

Սելջուկյան և Շադդադյանների տիրապետության ժամանակներում տեղացիների կատարած կառուցումները կարելի է բաժանել երեք խմբի՝ պաշտպանական, եկեղեցական և քաղաքացիական։ Դրանցից առաջին և երկրորդ խմբի մասին կան շատ թե քիչ գրավոր աղբյուրներ՝ վիմագիր արձանագրություններ, իսկ քաղաքացիական շինարարության մասին մեր ձեռքի տակ գրավոր գրեթե ոչինչ չկա։ Միայն տրամաբանական և արժանահավատ կարելի է համարել Ն. Մառի այն ենթադրությունը, ըստ որի քաղաքն Ալփ-Արսլանի կողմից ավերվելուց հետո, Շադդադյան առաջին էմիր Մանուչեի օրոք, երբ ստեղծվեցին համեմատաբար խաղաղ պայմաններ և քաղաքի բուն բնակիչները, որոնց թվում և ձեռներեց ու շինարար տարրը, նորից կենտրոնացան այդտեղ, բնակելի շենքերի կառուցումից հետո անմիջապես, իրենց «ամբողջ ուժերը պետք է ուղղեին դեպի առևտրական գործերը և դրանց հետ կապված շինությունները»։

Անիի պաշտպանությունը, անկախ նրանից, թե քաղաքը ում իշխանությանն էր ենթակա, մշտապես եղել է ավագանու, քաղաքացիների և առանձին անձնավորությունների մտահոգության առարկան։ Վիմագիր արձանագրությունները ցույց են տալիս, որ առանձին անձնավորությունների կողմից պաշտպանական բնույթի կառուցումներ կատարել են նաև Շադդադյանների տիրապետության շրջանում։ Այդ կարգի կառուցումներից մեզ հայտնի են երկուսը, որոնցից մեկը վերաբերում է 1131 թվականին, իսկ մյուսը՝ 1160-ին։

Նախորդ ժամանակաշրջանի համեմատությամբ անչափ փոքր մասշտաբներ ուներ նաև եկեղեցաշինությունը։ Հավանական կարելի է համարել, որ Ալփ-Արսլանի ավերած եկեղեցիների մի մասն ընդհանրապես չի վերականգնվել և դրանց փլատակների վրա, նույն քարերով կառուցվել են այլ և այլ շենքեր։ Ականատեսները վկայում են, որ մի այդպիսի ավերված եկեղեցու քարերով է կառուցված նաև Մանուչեի մզկիթի մինարեն։ Բայց և այնպես, Շադդադյանների իշխանության օրոք հայերի ձեռքով կառուցվել կամ վերականգնվել են հիշատակության արժանի եկեղեցական մի քանի շենքեր։ Ըստ ժամանակագրական կարգի դրանցից

են ս. Սարգիս եկեղեցու վերականգնումը, Առաքելոց եկեղեցու վերականգնումը և գավթի կառուցումը և ս. Փրկիչ եկեղեցու վերանորոգումն ու վերափոխությունը։

Անիում մեզ հայտնի է վրացական (իմա՝ քաղկեդոնական, որ կարող է լինել նաև հայ քաղկեդոնականների) միայն մի փոքրիկ եկեղեցի։ Դրա կառուցման ժամանակը տակավին մնում է անհայտ, որովհետև այդ մասին հիշատակություններ չկան ո՛չ պատմագիրների մոտ և ո՛չ էլ վիմագիր արձանագրություններում (եկեղեցու վրա արձանագրություններ չկան)։ Սակայն կարելի է ենթադրել, որ այն կառուցված պետք է լինի 12-րդ դարում, այսինքն այն ժամանակներում, երբ Անին մի քանի անգամ անցել է Վրաց իշխանության ներքո։ Իր ժամանակին նույնպիսի ենթադրություն է արել նաև Անիի ավերակների նկարագրողներից մեկը՝ Պալաքյան Գրիգորիսը, որը, սակայն, դրա կառուցման ժամանակը 12-րդ դարի հետ միասին հնարավոր է համարել նաև 11-րդ դարը։ Պատմական դեպքերի ընթացքից դժվար չէ կռահել, որ վրացիները Անիում 11-րդ դարում մշտապես չէին բնակվում, դրա ներքին կյանքում որևէ դեր չէին խաղում և այնքան փոքրաթիվ էին, որ հազիվ թե հատուկ եկեղեցու կարիք ունենային, իսկ հայ քաղկեդոնականները նշանակալի թիվ կազմեցին միայն 12-րդ դարի վերջին և 13-րդ դարի սկզբներին։ Այնպես որ անուղղակի բոլոր փաստերը գալիս են հաստատելու, որ վրացական (քաղկեդոնական) եկեղեցին կառուցված պետք է լինի 12-րդ դարում։

Վրացական եկեղեցին գտնվում էր Գագկաշեն ս. Գրիգոր եկեղեցու մոտակայքում։ Մինչև մեր ժամանակները կանգուն էր մնացել այդ փոքրիկ եկեղեցու միայն մի պատը։ Եկեղեցին ունի քառանկյունի հատակագիծ և կառուցված է եղել ամբողջապես սրբատաշ քարերով։ Ներքին մասը սյունազարդ և կամարակապ է, ունի կամարակապ նկուղ, որը ոմանք համարում են եկեղեցու գանձատունը, իսկ ոմանք կոչում են «նշխարատուն»։

Խաչքարերը, չնայած իրենց փոքրությանը, համարվում են հայկական ճարտարապետության նշանակալի կերտվածքներ։ Հայտնի է, որ դրանց հազարավոր նախշերը իրենց նրբությամբ, բազմազանությամբ, կատարման տեխնիկայով ամենևին չեն զիջում ոսկերչական արվեստին։ Դրանց բարձր արվեստի մասին հայ ճարտարապետներից բացի հիացմունքով են խոսել տարբեր ազգությունների պատկանող տասնյակ մասնագետներ։ Հայկական խաչքարերի արվեստի զարգացման բնագավառում իր անվիճելի տեղն ունի նաև միջնադարյան Հայաստանի մայրաքաղաքը՝ Անին։ Այստեղ կանգնեցված խաչքարերը, համենայն դեպս դրանցից նշանավորները, սովորաբար կոչվել են նաև «արձան» կամ «հուշ-

արձան»։ Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Անիում հավանաբար կանգնեցվել էին տասնյակ խաչքարեր-հուշարձաններ, որոնցից երեքը նկարագրվել և նկարահանվել են տարբեր հեղինակների կողմից։

Ահա ճարտարապետական առումով շատ թե քիչ նշանակալի մեծ ու փոքր այն պաշտպանական, պաշտամունքային և գերեզմանոցային կառույցները, վերականգնումները և փոփոխությունները, որոնք մեզ հայտնի են սելջուկյան և Շադդադյանների տիրապետության 135 տարվա (1064—1199) պատմաշրջանից։

Սելջուկյան և Շադդադյանների տիրապետության ժամանակաշրջանի Անիի մշակութային կյանքի մասին մեզ հասած տեղեկությունները, ընդհանուր առմամբ, կցկտուր են և անորոշ։ Այդ մասամբ կարելի է բացատրել նրանով, որ նախորդ ժամանակաշրջանի համեմատությամբ այստեղ մշակութային կյանքը ոչ միայն չէր առաջադիմել, այլև շատ բնագավառներում անկում էր ապրում։ Բայց և այնպես Անին 11—12-րդ դարերում շարունակում էր մնալ որպես մշակույթի մեծ կենտրոն։ Այո, որոշ վերապահությամբ ընդունելի է Ն. Մառի այն ընդհանրացումը, թե՝ «էմիրների օրոք, անընդհատ պատերազմների տագնապալից ժամանակը չկանգնեցրեց հայերի կուլտուրական աշխատանքը մտքի և գրականության բնագավառում»։

Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի Անիի մշակութային երևույթներից կարևորագույնը, մեր կարծիքով, նրա բարձրագույն դպրոցի գործունեությունն էր, միջնադարյան մի համալսարան, որը գոյություն ուներ Բագրատունիների թագավորության շրջանից և սկզբում սերտորեն առնչվում էր մեծ ուսուցչապետ Գրիգոր Մագիստրոսի անվան հետ։ Այնպես որ **Հովհաննես Սարկավագը** (Իմաստասերը), որ այդ դպրոցի տնօրինողն էր 12-րդ դարի սկզբներից, չէր կարող լինել դրա հիմնադիրը, ինչպես ենթադրել են որոշ հեղինակներ։

Անկախ հիմնադիր լինելու կամ չլինելու հանգամանքից, Հովհաննես Սարկավագը խոշոր դեր է խաղացել Անիի բարձրագույն դպրոցի պատմության մեջ։ Համեմատաբար նորահայտ մի հիշատակարանի շնորհիվ, որն ըստ բովանդակության վերաբերում է 1129 թվականին և գրվել է «ի գեղաքաղաքս» Անգեղակոթ Մաթեոս գրչի ձեռքով, բավական որոշակիորեն ստվերագծում է այդ մեծահռչակ մտավորականի անցած ուղին։ Պարզվում է, որ նա ծնվել է կամ Փառիսոս գավառում, կամ Անի քաղաքում (հավանաբար 1045—1050 թվականներին), կրթությունն ստացել է Հաղպատում, որտեղ և որոշ ժամանակ տեղի բարձրագույն դըպրոցում ավանդելուց հետո, տեղափոխվել է Անի՝ դառնալով վերջինիս նորակարգ համալսարանի ղեկավարը և հռչակված դասախոսը։ Նա իր

կյանքի վերջին տարիները անցկացրել է դարձյալ Հաղպատում, որտեղ էլ մահացել է 1129 թվականին:

Հովհաննես Սարկավագը բազմաշնորհ անձնավորություն էր, որը բեղմնավոր գործունեության շնորհիվ դարձել էր իր ապրած ժամանակաշրջանի ամենահամբավավոր ու հարգված մտավորականը: Մ. Աբեղյանը նրան բնութագրում է որպես «բազմակողմանի հմտությունների տեր, մեծ գիտնական, փիլիսոփա մատենագիր, տոմարագետ, պատմագիր, ճարտասան, հեղինակ կրոնական ներբողների, միաժամանակ և բնական գիտություններով պարապող ու բանաստեղծ», որի «իմաստության համբավը» դարձել է զրույցների նյութ: Իմաստասերի ուսուցչական գործունեությունը գերազանցապես կապված էր երկու բարձրագույն դպրոցների՝ Հաղպատի և Անիի համալսարանների հետ: Նրա կենսագրի խոսքերից երևում է, որ Սարկավագն առանձին եռանդով է կապված եղել Անիի բարձրագույն դպրոցի հետ՝ իր ձեռք բերած բազմակողմանի գիտելիքները սիրով հաղորդելով երկրի տարբեր կողմերից այստեղ եկող ուսումնատենչ մանուկներին, որոնք ձեռք բերելով հարուստ գիտելիքներ, նորից վերադառնում էին իրենց տեղերը ու իրենց հերթին զբաղվում կրթության գործով:

Անիի բարձրագույն դպրոցը վանքերին կից եղած նույնակարգ դըպրոցներից զգալի չափով տարբերվում էր: Այն ի տարբերություն վերջիններին, իր բնույթով հիմնականում աշխարհիկ էր, իմաստասիրական: Միջնադարյան մյուս համալսարանների նման, Անիի դպրոցում ևս դասավանդվում էին քերականություն, մաթեմատիկա, փիլիսոփայություն, ճարտասանություն, մարդակազմություն, աստղաբաշխություն, երաժշտություն և այլ առարկաներ: Եվ դրանց մի զգալի մասն ավանդում էր հենց ինքը՝ Հովհաննես Իմաստասերը: Նա իր աշակերտներին «ախորժելի սիրով ուսուցաներ զխրթին և զխորին իրս»:

Սակայն Իմաստասերը նաև գիտնական էր, պատմագիր, տոմարագետ, մեկնիչ, բանաստեղծ ու եկեղեցական գործիչ: Մ. Աբեղյանի արտահայտությամբ. «Մեր վերածնության նոր մտավոր հոսանքի առաջին արտահայտիչներից մեկը»:

Հովհաննես Իմաստասերի թողած գիտական ժառանգությունը ուսումնասիրվել է մի շարք հեղինակների կողմից: Սակայն առայժմ նրա գիտական գործունեության ոչ բոլոր կողմերն են ուսումնասիրվել ու ըստ արժանվույն գնահատվել: Համեմատաբար լավ են ուսումնասիրված ու լուսաբանված տոմարի, աստղագիտության, մատենագրության, մաթեմատիկայի և փիլիսոփայության ասպարեզում նրա թողած աշխատանքները: Նա հայկական անշարժ տոմարի հիմնադիրն է, 15 տարբեր ազգերի ամս-

անունների և դրանց համեմատական ցանկի («Խառնախորան») հեղինակը (դրա շնորհիվ հեշտությամբ կարելի է մեկ ազգի օրացույցից անցնել այլ ազգի օրացույցին), նա է հայկական տարեսկիզբը՝ նավասարդի 1-ը 1084 թվականի մարտի 1-ից տեղափոխել օգոստոսի 11-ը՝ վկայակոչելով հայ և օտար մատենագիրների հիշատակությունները: Հովհաննես Սարկավագը դեմ էր ամեն տեսակի սնոտիապաշտություններին: Նա ընդհանրապես առաջադիմական ուսմունքների կողմնակիցն էր և այդ մռայլ ժամանակներում, երբ Արևմուտքում գիտությունն ամբողջապես գտնվում էր եկեղեցու ազդեցության տակ, ընդունում էր երկրի գնդաձևության գաղափարը:

Միանգամայն հասկանալի է, որ համակողմանիորեն զարգացած այդպիսի ուսուցիչն ու գիտնականը պետք է ունենար իր արժանի աշակերտներն ու գործի շարունակողները: Մատենագրական փաստերից երևում է, որ նրա աշակերտներից ոմանք դարձել էին ուսուցիչներ, ոմանք՝ պատմագիրներ ու գիտնականներ, ոմանք՝ ընդհանրապես հայ մշակույթի նշանակալի ներկայացուցիչներ:

Հովհաննես Սարկավագի ժամանակներում են ապրել ու գործել նաև ուրիշ գիտնական վարդապետներ: Նրա այդ կարգի ընկերներից հիշատակվում են Ալավկա որդի Դավիթը և Թոքակերի որդի Գրիգորը, որոնք, անշուշտ, Սարկավագի համեմատությամբ գիտության ու ուսուցչապետության ասպարեզում խաղացել են ավելի համեստ դեր: Նրա աշակերտներից հայտնի են Երեմիա Անձրևիկը, որը նույնպես Անիում զբաղվել է ուսուցչությամբ, Խաչատուրը, Գրիգորը, պատմագիր Սամվել Անեցին և ուրիշներ:

Բարձրագույն դպրոցի գոյությունը, դրանում կենտրոնացած գիտնական վարդապետների եռանդուն գործունեությունը հիմք են եղել նաև մատենագրության զարգացման համար: Մենք տեսանք, որ Անիի մատենագրական դպրոցը ձևավորվել էր տակավին Բագրատունիների թագավորության շրջանում և սերտորեն առնչված էր հայկական մշակույթի ընդհանուր առաջադիմության հետ: Անիում այդ ժամանակներում գրվել են և ինքնուրույն գործեր և կատարվել թարգմանություններ: Այդ նույն ժամանակներում է գործել Գրիգոր Մագիստրոսի որդի Վահրամը (Գրիգոր Վկայասերը), Հովհաննես Սարկավագի աշակերտ Սամվել Անեցին, ինչպես և Մխիթար Անեցին:

Սամվել Անեցու մասին կենսագրական տեղեկություններ մեզ չեն հասել: Բայց հայտնի է, որ նա անեցի էր, Հովհաննես Իմաստասերի աշակերտը, ապրել է 12-րդ դարում և իր իսկ վկայությամբ ականատես է եղել Վրաց թագավորի կողմից 1161 թվականի հունիսին Անի քաղաքի

գրավման և նույն թվականի օգոստոսին Շահարմենների մեծաթիվ զորքին պարտության մատնելու անցքերին։ Սամվել Անեցին եղել է քահանա։ Նա Պահլավունի Գրիգոր կաթողիկոսի պատվերով գրել է մի ընդարձակ ժամանակագրություն, որ հրատարակվել է «Հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս գիւտի ժամանակաց մինչև ի ներկայս ծայրաքաղ արարեալ» վերնագրով։ Հայոց պատմության մասին ընդարձակ հատվածներ պարունակելու հետ միասին ժամանակագիրն իր գրքում համառոտ տեղեկություններ է հաղորդել նաև այլ ժողովուրդների վերաբերյալ։ Նա իր ժամանակագրությունը հասցրել է մինչև 1180 թվականը։ Հետագայում Սամվել Անեցու այդ ժամանակագրությունն ուրիշ հեղինակներ շարունակել են մինչև 1336 թվականը։ Կան նաև ժամանակագրության այնպիսի ձեռագրեր, որոնցում հավելումներ են կատարվել մինչև 1665 թվականը։

Մխիթար Անեցին Սամվել Անեցու համեմատաբար կրտսեր ժամանակակիցն է, ապրել է 12-րդ դարի երկրորդ կեսում։ Նա եղել է Անիի Մայր տաճարի ավագերեցը։ Հառիճի վանքի Գրիգոր վարդապետի խնդրանքով գրել է մի ընդարձակ «Պատմութիւն Հայոց» աշխատություն՝ բաղկացած երեք գրքերից («պրակից»), որոնցից մեզ է հասել միայն առաջինը։ Իսկ այս վերջինն իր մեջ ընդգրկում է Բագրատունիների պատմությունն սկըսած Պարույր Ա թագավորից մինչև Հովհաննես-Սմբատը։ Ընդհանուր առմամբ նրա գիրքն իր մեջ ժամանակագրական առումով ընդգրկել է մինչև 1193 թվականը։ Նա զբաղվել է նաև թարգմանությամբ։ Հայտնի է պարսկերենից նրա կատարած մի թարգմանությունը՝ «Պատճառ խաւարման արեգական և լուսնի», որը սակայն նույնպես մեզ չի հասել։

Մշակույթի մյուս բնագավառներում սելջուկների ու Շադդադյանների տիրապետության շրջանում Անիում, թեկուզև հայերի կողմից հիշատակության արժանի գործեր չեն կատարվել։ Համենայն դեպս մայրաքաղաքի այդ ժամանակահատվածի թատրոնի, արվեստի մյուս ճյուղերի վերաբերյալ արժանահավատ փաստեր մեզ չեն հասել, թեպետև դրանց գոյությունն անառարկելի է։

Հատուկ հետաքրքրություն է ներկայացնում Անիի 11—12-րդ դարերի վարչական վիճակը, դրա կառավարման կարգը, քաղաքի իշխանների, մեծատունների, հոգևորականների, մի խոսքով ավագանու մասնակցությունը դրա ներքին գործերին, կառավարմանը, իշխողների՝ սելջուկների, Շադդադյանների, Վրաց թագավորների տիրապետական իրավունքները և այլն։

Իբրև ընդհանուր օրինաչափություն կարելի է արձանագրել, որ անկախ արտաքին տիրողների մեկը մյուսին փոխարինելուն, Անիում այդ

135 տարի տևած պատմաշրջանում ներքին կյանքի տեր ու տնօրենը մնում էին հայերը, հանձինս քաղաքի ավագանու։ Այլապես ինչպես կարելի է բացատրել, որ նույն ավագանին, ինչպես տեսանք, հակառակ Շադդադյան էմիրի ցանկության, որոշում է քաղաքը հանձնել Վրաց Դավիթ թագավորին և իր այդ մտադրությունը գործի է վերածում հատուկ դեսպանության միջոցով նրա զորքերը հրավիրելով Անի։ Մի այլ անգամ հակառակ Վրաց Գեորգի թագավորի կամքի, որ (1174 թ.) ցանկանում էր Անին վերադարձնել նախկին տերերին, քաղաքի ավագանին ու բնակչությունը կազմակերպում են նրա պաշտպանության գործը և թշնամուն մատնում պարտության, իսկ սելջուկյան 1126 թ. մի աhեղ արշավանքի դեմ մարտնչել են քաղաքի բնիկ բնակիչները, որոնց թվում էր հերոսուհի Այծեմնիկը։ Մի խոսքով Անին ուներ բավական լայն իրավունքներ և հանձինս իր ավագանու օգտվում էր մի տեսակ ազատ քաղաքի իրավունքներից։ Իշխողներն այնքան էլ չէին անհանգստանում Հայոց մայրաքաղաքի վիճակի համար։ Նրանց առաջին հերթին միայն հետաքրքրում էր այդ վաճառաշահ քաղաքից սպասվող եկամուտները, հարուստ եկեղեցիների ու տաճարների հարստությունների կողոպուտը և այլն։ Նրանք Անիի ներքին բոլոր հոգսերը թողնում էին ավագանու և տեղական բնակչության վրա։ Իսկ Անիի այդ ժամանակաշրջանի համար իբրև յուրահատկություն Ն. Մառը նշում է նաև կանանց ու տղամարդկանց իրավահավասարությունը՝ հատկապես քաղաքի պաշտպանության, քաղաքաշինության, հարկերի ու տուրքերի կանոնավորման բնագավառներում։

Սակայն չպետք է այն տպավորությունը ստանալ, որ սելջուկյան և Շադդադյան տիրողները լիովին հանդուրժում էին Անիի ներքին ինքնավարության գոյությունը և անտարբեր էին նրա գործունեության նկատմամբ։ Քաղաքի հայ տանուտերերը և ինքնավարական գլխավոր օրգանը՝ «երիցանին» (ավագանին) ենթարկված էին Շադդադյան էմիրների կամ Վրաց թագավորների նշանակած քաղաքապետերին՝ քաղաքի կառավարիչին, նայած թե Անին դրանցից որի իշխանությանն էր ենթակա։ Վրաց թագավորները քաղաքը իբրև տիրույթ տալիս էին «հայերին մոտիկ» այս կամ այն իշխանին, իսկ երբեմն էլ «ամբողջովին տրվում էր տեղական քաղաքային իշխանությանը»։ Անին վրացական թագավորությանը ենթակա ժամանակներում՝ Զաքարյանների օրոք, գտնվում էր հայ իշխանների տնօրինության ներքո և «քաղաքացի հայերը իրենք են կառավարել՝ քաղաքի ավագների օգնությամբ»։ Վերջինիս տակ Ն. Մառը հասկանում էր քաղաքի «հայ արքեպիսկոպոսին, հայ քաղաքապետին և մյուս հայ պաշտոնական անձիք»։

# ԱՆԻՆ ԶԱՔԱՐՅԱՆՆԵՐԻ ՕՐՈՔ
# (1199—1236)

## 1. ԱՆԻԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ: ԶԱՔԱՐՅԱՆՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Սելջուկյան պետության մասնատման ժամանակներից ի վեր Վրաստանը բռնում է իր հզորացման ուղին: Արաբական և սելջուկյան էմիրների միջև մղվող հարատև պայքարի հետևանքով 11-րդ դարի առաջին քառորդից արդեն նպաստավոր պայմաններ էին ստեղծված Վրաստանի միավորման և լայնածավալ պետության վերածման համար: Վրաց թագավորները՝ սկսած Դավիթ Շինարարից (1089—1125) և վերջացրած Թամար թագուհով (1184—1213) համառ պայքար էին մղում և՛ ներքին ֆեոդալական կենտրոնախույս ուժերի, և՛ արտաքին թշնամիների՝ մեծ ու փոքր էմիրների ու դրանց միավորումների դեմ: Հենց այդ պայքարի ընթացքում էլ, նոր պայմաններին համապատասխան, ձևավորվում ու ամրանում է հայ-վրացական դաշնակցությունը, որ փաստորեն արդեն դարերի պատմություն ուներ: Պատմական ակնհայտ փաստ է, որ հայերն ու վրացիները միասնաբար հանդես էին եկել դեռևս 5—6-րդ դարերում ընդդեմ Սասանյան զավթիչների, 7—9-րդ դարերում՝ մարտնչել արաբական ծանր լծից ազատագրվելու համար: Սակայն այս նոր դաշնակցությունը, որ թելադրված էր պատմական նոր պայմանների բերումով, ուներ իր յուրահատուկ կողմը: Երկրի անկախությունն ապահովելու և պետության տարածքը ընդարձակելու համար թշնամական իշխանություններով շրջապատված Վրաստանին անհրաժեշտ էր հուսալի և ռազմական ու տնտեսական առումներով մեծ հնարավորություններ ունեցող դաշնակից, որպիսին կարող էին լինել միայն անմիջական հարևանները՝ հայերը: Այդ դաշնակցության կարիքը հայերն ավելի շատ էին զգում: Նրանք իրենց ինքնուրույնության համար սելջուկների դեմ մղվող պայքարում հաջողության կարող էին հասնել անկախ Վրաստանի օգնության շնորհիվ:

Հայ-վրացական դաշնակցությունն իր կատարյալ ձևավորումն է ըստանում Վրացական պետության հզորագույն ժամանակաշրջանում՝ Թամար թագուհու օրոք, երբ ստեղծվում են նաև բարենպաստ պայմաններ վրացա-հայկական միացյալ զորքերի օգնությամբ Հայաստանի՝ Վրաստանին հարող նահանգները (Հյուսիսային Հայաստանը, ինչպես սովորաբար դրանք կոչվում են պատմագիտական գրականության մեջ) և Անին ազատագրելու համար։

Հյուսիսային Հայաստանի և Անի մայրաքաղաքի ազատագրումը կատարվել է Թամար թագուհու օրոք, հայ-վրացական միացյալ բանակով՝ Զաքարյան հայ իշխանների անմիջական ղեկավարությամբ ու հրամանատարությամբ։

Զաքարյանները հանդես են եկել 11-րդ դարում։ Նրանց հայրերը կարևոր դեր էին խաղում Վրաց թագավորների դեպի Հայաստան ձեռնարկած ռազմական արշավանքների և վերջինիս ժամանակավոր ազատագրված շրջաններն ու քաղաքները կառավարելու գործում։ Այսպես, Օրբելյանների 1178 թվականի ապստամբությունը ճնշելուց և այդ իշխանական տունը սրի քաշելուց հետո, Գեորգի 3-րդ թագավորն իր կողմն անցած Սարգիս Զաքարյանին է տալիս Օրբելյանների նախկին կալվածքներն ու հայրենական գավառները, ինչպես նաև նշանակում ժամանակավորապես ազատագրված Անիի կառավարիչ, իսկ Թամար թագուհին 1186 թվականին նրան նշանակում է «Հայոց և Վրաց» զորքերի ամիրսպասալար, շնորհելով նախկինում Օրբելյաններին պատկանող Լոռի քաղաքն իր շրջակայքով։ Վրաց արքունիքում, սակայն, Զաքարյաններն իրենց փառքի գագաթնակետին հասան հաջորդ սերնդի՝ Սարգիս Զաքարյանի երկու որդիների՝ Զաքարեի և Իվանեի օրոք, որոնք նույն Թամար թագուհու հովանավորությամբ դարձել էին Վրաց արքունիքի ամենահայտնի դեմքերից։ Եվ իզուր չէ, որ մեր մատենագիրները մեծ գովեստով են խոսում Զաքարյան եղբայրների մասին, նրանց որակելով որպես «փառատր» քաջեր, խոհուն ու հեռատես իշխաններ։

Թամարը Զաքարեին է տալիս երկրի զորքերի ընդհանուր հրամանատարությունը, իսկ կրտսեր եղբորը՝ սկզբում մեծ վեզիրի, ապա պետության խնամակալի պաշտոնը։

Ընդ որում Զաքարյանների զորավարական բարձր ունակությունները և իշխանական բարեմասնություններն ընդգծելու համար հայ միջնադարյան հեղինակները նրանց համարում են ազգակից Լոռու թագավորներին և Բագրատունիներից սերած։

Հայ-վրացական միացյալ բանակը Զաքարեի և Իվանեի գլխավորությամբ ընդամենը 7—8 տարվա ընթացքում՝ 1196—1204 թվականներին

նախ, ջախջախում է Գանձակի աթաբեկությունը՝ դրա ծանր լծից ազատագրելով Արցախը և Սյունիքը, ապա Շադադյանների էմիրությունը՝ գրավելով ու օտար զավթիչներից ազատագրելով ամբողջ Այրարատյան աշխարհը, որի թվում և Շիրակը, Դվին քաղաքն իր շրջակայքով, Բջնին և այլն: Զաքարյանների այդ ազատագրական հաղթական պատերազմների մասին մեծ համակրանքով և ժամանակագրական առումով ճշգրիտ հերթականությամբ են հաղորդում մեր պատմագիրները, որոշ տեղերում լրացնելով ու ճշգրտելով մեկը մյուսի հիշատակությունը:

Նեղ առումով ոչ մատենագիտական որոշ ուսումնասիրությունները չհաշված, Անիի պատմությանը վերաբերող գրեթե բոլոր աշխատություններում դրա վերջնական ազատագրումը Շադադյան էմիրների իշխանությունից համարվում է 1199 թվականը:

Եթե մեր ձեռքի տակ եղած մատենագրական տեղեկությունները հնարավորություն են տալիս հստակորեն ճշգրտել Անիի ազատագրման թվականը, ապա նույնը չի կարելի ասել քաղաքական այդ կարևոր իրադարձության մյուս կողմերի՝ ազատագրման ընթացքի, տեղի ունեցած մարտերի ու դրանց մասնակցող զորամիավորումների, Շադադյանների դիմադրության և քաղաքի քաղաքական պատմության համար կարևոր նշանակություն ունեցող մյուս հանգամանքների մասին: Սակայն կարելի է ենթադրել, որ էմիրները հավանաբար թույլ դիմադրություն են ցույց տըվել Զաքարյաններին: Նրանք արագորեն պարտություն են կրել հայ-վրացական միացյալ բանակից և հարկադրված են եղել մեկը մյուսի հետևից կորցնել բազմաթիվ շրջաններ ու քաղաքներ:

Խոսքը եթե մասնավորեցնենք Անիի ազատագրման վերաբերյալ, ապա պատմագիրների, հատկապես Վարդան Արևելցու վկայության հիման վրա կարելի է հավանականությանը մոտ որոշ կռահում անել: Ժամանակակից պատմագիրը գրում է, որ «... երկիրն Շիրակայ», որտեղ գտնըվում էր Անին, գրավեցին «վեցհարիւր քառասուն թուին» (640+551=1191), իսկ Անին գրավում են դրանից 8—9 տարի անց՝ «ի վեցհարիւր քառասուն և ութ թուին»: Թվում է, թե դրանից կարելի է եզրակացնել, որ Անին լինելով էմիրանիստ և ամուր բերդաքաղաք երկար ժամանակ չի հանձնվել Զաքարյաններին: Հնարավոր է նաև, որ վերջիններս 1191 թ. գրավելով ամբողջ Շիրակը, որի կենտրոնն էր Անին, մի քանի տարի չեն անհանգստացել վերջինիս գրավմամբ, որովհետև այն գտնվում էր նրանց գրաված տարածքի խորքում և վաղ թե ուշ պետք է հանձնվեր հաղթարշավի ելած Զաքարյաններին:

Այսպես թե այնպես, Անին գրավելուց հետո՝ Զաքարեի ու Իվանեի մղած պատերազմները շարունակվում են և դրանց հետևանքով էմիրու-

թյունների տիրապետությունից ազատագրված Հյուսիսային Հայաստանում 10—15 տարվա ընթացքում կազմակերպվում է Զաքարյանների իշխանությունը: 13-րդ դարի սկզբներին այդ իշխանությունն իր մեջ ընդգրկում էր նախկին Անի-Շիրակի, Սյունիքի, Լոռու թագավորություններն ամբողջությամբ և Կարսի թագավորության տարածքի մի մասը, բաժանվելով երկու մեծ հատվածի, որոնցից արևմտյանը, որի գլխավոր կենտրոնը Անի մայրաքաղաքն էր, անմիջապես ենթակա էր ավագ եղբորը՝ ամիրսպասալար Զաքարեին, իսկ արևելյանը՝ Իվանեին: Զաքարյանների իշխանությունը իրավական տեսակետից ենթակա էր Վրաց թագավորությանը, սակայն օժտված էր ներքին այնպիսի լայն իրավունքներով, որ այն սկզբնաղբյուրներում հաճախ համարվում է ուղղակի «պետութիւն», «թագավորութիւն», «աշխարհակալ տէրութիւն», իսկ Զաքարյանները իրենք «թագաւոր», «արքա», «շահնշահ», «կեսար», «մեծ իշխան» և այլն: Չկա որևէ այնպիսի հիշատակություն, վկայություն կամ ակնարկ այն մասին, որ Վրաց թագավորը որևէ կերպ խառնված լիներ Զաքարյանների իշխանության ներքին գործերին:

Զաքարյանների իշխանության գոյության տասնամյակները Հյուսիսային Հայաստանի քաղաքական, տնտեսական, մշակութային կյանքի բուռն զարգացման պատմաշրջան էր: Այդ իշխանությունն իր հերթին մասնատված էր ֆեոդալական մի ամբողջ շարք տիրույթների՝ մանր իշխանությունների, որոնց իշխաններն անմիջականորեն ենթակա էին Զաքարյաններին՝ երկրի տերերին:

## 2. ԹՇՆԱՄԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ԵՎ ԱՆԻՆ

Զաքարյանների իշխանության տասնամյակներում Հյուսիսային Հայաստանում ընդհանուր առմամբ տիրում էր խաղաղություն: Սակայն երկու անգամ երկիրը ենթարկվում է արտաքին թշնամիների կողոպտիչ ու ավերիչ արշավանքների, որոնք հսկայական վնասներ են հասցնում նաև Անի քաղաքին: Դրանցից մեկը Արդաբիլի սուլթանի անակնկալ հարձակումն էր, իսկ մյուսը՝ Ջալալէդդինի մի քանի տարի տևած ավարառուական արշավանքները:

Արդաբիլի սուլթանի՝ Անիի վրա կատարած հանկարծակի հարձակման մասին մանրամասն հաղորդում է վրացական 13-րդ դարի Անանուն պատմագիրը՝ «Թամարի թագավորությունը» պատմագրական երկի հե-

դինակը, որից համառոտաբար ընդօրինակել է նաև Վախուշտի Բագրատիոնը:

Սուլթանն իր արշավանքը կատարել է 1208 կամ 1209 թվականին միանգամայն անակնկալ և նպատակ է ունեցել հատկապես ավերել ու կողոպտել Անի մայրաքաղաքը: Սուլթանն Անիի վրա հարձակվելու համար պահ է համարել զատկի նախօրեն, երբ Զաքարյանները Թամար թագուհու հետ գտնվում էին Գեգութում և նրանց կենտրոնը արտաքին որևէ հարձակում չէր սպասում:

Իր զորքերի գլուխն անցած՝ Արդաբիլի սուլթանը մեծ արագությամբ կտրում անցնում է Արաքսի եզրերին ընկած շրջանները և անակնկալ հարձակվում Անիի վրա, երբ քաղաքացիները նույնիսկ չեն հասցնում քաղաքի դարպասները փակել: Թշնամական զորքերը մտնելով քաղաք՝ սկսում են կոտորել և գերել բնակիչներին, ավարի ենթարկել նրանց հարստությունները: Փրկվել են միայն նրանք, որոնք հասցրել են ամրանալ միջնաբերդում և այրերում ու «քարտուն»-ներում (Ստորգետնյա և Այրային Անիում): Քաղաքացիներին անխնա կոտորում էին ամենուրեք՝ փողոցներում, հրապարակներում: Սակայն ամենամեծ կոտորածները կատարվել են եկեղեցիներում, որտեղ զատկի տոնի առթիվ հավաքվել էին բազմաթիվ հավատացյալներ: Միայն սպանվածների թիվը հասնում էր 12 հազարի: Անին ենթարկվում է մեծ մասշտաբների հասնող ավերման: Սուլթանի ավազակաբարո զորքերը զգալով իրենց այդ բախտախնդրության վտանգավոր հետևանքները՝ վերցնում են մեծ քանակությամբ ավար և բազմաթիվ գերիներ, հապճեպորեն դիմում են հետ՝ դեպի Արդաբիլ:

Սուլթանի արշավանքի մասին լուրը Գեգութ է հասնում այն ժամանակ, երբ նա արդեն վերադարձել էր Արդաբիլ: Այնուամենայնիվ, Զաքարյան եղբայրները վճռում են սուլթանին պատժել նրա սանձարձակության համար: Զաքարեն և Իվանեն հայ-վրացական միացյալ մի մեծ բանակի գլուխ անցած դուրս գալով Անիից՝ Գեղարքունիքի, բուն Սյունիքի վրայով և Արաքսի ափերով հարձակվում են Արդաբիլի վրա: Նրանք պաշարում են սուլթանի աթոռանիստը, գերի վերցնում նրա կանանց ու զավակներին և Անիում զոհված 12 հազար մարդկանց փոխարեն՝ 12 հազար «ընտրյալ մարդիկ» սպանում այնտեղ, չհաշված մյուս «հասարակ» մարդկանց: Դրանով համարելով վրեժը լուծված՝ Զաքարյաններն իրենց զորքերով հաջողությամբ վերադառնում են Անի:

Արդաբիլի սուլթանին պատժելուց 15—16 տարի անց, 1225 թվականին Ատրպատական, Հայաստան և Վրաստան է արշավում Խորեզմի թագաժառանգ Ջալալէդդինը, որը մոնղոլների կողմից միջինասիական երկրների նվաճման ժամանակ նախ փորձեր էր կատարել վերականգնել Խորեզմի պետությունը, բայց հաջողություններ չէր ունեցել և այդ նպատակի համար կազմած իր բանակով, որի թիվը պատմագրի ասելով հասնում էր 140 հազարի, խույս տալով մոնղոլներից, ձեռնարկել էր ասպատակիչ արշավանքը: Ջալալէդդինի դեմ դուրս եկած հայ-վրացական զորքը, որի հրամանատարն Իվանեն էր, Գառնիի մոտ 1225 թ. տեղի ունեցած ճակատամարտում պարտություն է կրում և նահանջում: Դրանից հետո Ջալալէդդինի հրոսակները 1226 թվականին գրավում, ավերում և կողոպտում են Վրաց պետության մայրաքաղաք Տփղիսը, ապա ասպատակություններ սփռում երկրի տարբեր կողմերում: Նրա ավարառու բանակին առանձնապես գրավում էին փարթամ քաղաքները՝ Կարինը, Անին, Կարսը, Խլաթը, Դվինը և այլն: Սակայն բացառյալ Դվինի, նշված քաղաքները մնում են աննված: Դրանք գրավելու ու կողոպտելու համար Ջալալէդդինի գործադրած բոլոր ջանքերն ապարդյուն են անցնում: Միջին Ասիայից եկած այդ ընդհանուր արհավիրքի դեմ հայ-վրացական զորքերից բացի մարտի են նետվում նաև Խլաթի էմիրի, ինչպես և Իկոնիայի ու Էյուբյան սուլթանությունների զորքերը: Քայլ առ քայլ արյունաքամ է արվում անկոչ բռնակալը և դուրս վռնդվում գրաված քաղաքներից ու գավառներից: Այսպես, 1227 թ. (կամ 1226) Անիից, Կարսից և այլ քաղաքներից ու բերդերից հավաքված բանակը ազատագրում է Տփղիսը, 1228 թվականին Պռոշ իշխանը իր փոքրաթիվ զորքով թշնամուց մաքրում է Դվինը, ապա Խլաթի էմիրի և Իկոնիայի ու Էյուբյան սուլթանությունների զորքերը, որոնց օգնում էր Կիլիկիայի հայկական թագավորությունը, Երզնկայի մոտ տեղի ունեցած ճակատամարտում պարտության են մատնում Ջալալէդդինի զորքերին և հարկադրում նահանջել դեպի Ատրպատական: Նա 1231 թվականին Ամիդ (Դիարբեքիր) քաղաքի մոտ տեղի ունեցած ճակատամարտում վերջնականապես ջախջախվում է, և նրա բանակի մնացորդները ամբողջապես ցաք ու ցրիվ են լինում: Սպանվում է նաև ինքը՝ Ջալալէդդինը:

Շուրջ յոթ տարի տևած Ջալալէդդինի արշավանքի հետևանքով Հայաստանում ավերվում են շատ շրջաններ ու քաղաքներ: Սակայն նույնը չի կարելի ասել Անիի վերաբերյալ: Ամրակուռ պարիսպներով պատած Անին մնում էր աննված:



13—2682

## 3. ՔԱՂԱՔԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ

Զաքարյանների ինքնուրույնության շրջանը կարճատև էր՝ շուրջ 36—37 տարի: Սակայն այդ մի քանի տասնյակ տարին էլ բավական էր, որ Շադադյաններից ազատագրված Անին նորից հասակ առնի և բարձրանա որպես մարդաշատ, բարեկարգ քաղաք, որպես արհեստագործության ու առևտրի խոշոր կենտրոն, որպես մշակույթի ու երկրի հասարակական կյանքի նշանակալի օրրան:

12-րդ դարի վերջում և 13-րդ դարի սկզբում Զաքարյանների և դըրանց ենթակա մյուս իշխանների տիրապետության ներքո գտնվող Հյուսիսային Հայաստանում բարենպաստ պայմաններ են ստեղծվում ընդհանրապես տնտեսության բոլոր ճյուղերի բուռն զարգացման համար: Այդ հավասար չափով վերաբերում է նաև Անիին: Հայոց վաղեմի մայրաքաղաքը ավելի քան երեք և կես տասնամյակ հիմնականում ապրում էր խաղաղ ժամանակաշրջան ու նրա տնտեսական կյանքն ընթանում էր իր բնականոն ընթացքով: Անին նախորդ ժամանակներից արհեստագործության գծով ստացել էր հարուստ ժառանգություն՝ տասնյակների հասնող քաղաքային այնպիսի արհեստներ, որոնք սոցիալ-տնտեսական նոր, բարենպաստ պայմաններում շարունակում էին իրենց առաջադիմությունը:

Արհեստագործության և բնակչության արտադրական այլ գործունեության բնութագրման համար կարևոր նշանակություն ունեն հնագիտական պեղումների ընթացքում հայտնաբերված առանձին արհեստանոցները, արհեստանոցների ամբողջ շարքերը և մյուս, տասնյակների հասնող արտադրական ձեռնարկությունները, որոնք զանգվածորեն վերագրվում են նաև Զաքարյանների իշխանության ժամանակներին:

Արհեստանոցները քաղաքում հիմնականում տեղաբաշխված էին ըստ տեսակների շարքերով, կամ դրանցից յուրաքանչյուրը զբաղեցնում էր որևէ թաղամաս: Անշուշտ ոչ բոլոր արհեստներն ունեին հատուկ արհեստանոցներ: Արհեստավորներից շատերը գործը կատարում էին ոտքի վրա և իրենց գործիքները վերցրած շրջում էին քաղաքում՝ համապատասխան գործ գտնելու համար: Անիում հայտնաբերված արհեստանոցների մեծ մասը վերաբերում է մեզ հետաքրքրող ժամանակներին: Առանձին հետաքրքրություն են ներկայացնում 1911 թվականի պեղումների ընթացքում Անիի Գլխավոր փողոցում հայտնաբերված կրպակները:

Եթե ոտքի վրա աշխատող արհեստավորների արհեստանոցների մասին խոսք լինել չի կարող, մյուս արհեստավորների արհեստանոցների բնույթն իմանալու համար անհրաժեշտ է հնագիտական ու աղբյուրների

քանասիրական բծախնդրությամբ հատուկ ուսումնասիրություն, ապա շինարարական արհեստների վերաբերյալ ավելի դյուրին է խոսել, մանավանդ Անիի պես քաղաքի շինարարների մասին, որոնց աշխատանքի արդյունքները՝ տաճարները, մզկիթները, պաշտպանական պարիսպները, կամուրջները, պալատները, բնակելի շենքերը, ստորգետնյա զանազան կառուցվածքները, ջրմուղը, ժայռափոր ճանապարհները տարբեր վիճակում հասել են մինչև նոր ժամանակների հնագետներին, ճարտարապետներին ու պատմաբաններին: Իսկ այդ ավերակ ու ամայի քաղաքի հուշարձաններն ու հնություններն առաջին իսկ հայացքից ցույց են տալիս շեն ժամանակ այդտեղ եղած ու գործող շինարարական տարատեսակ արհեստների՝ քարտաշության, որմնադրության, ատաղձագործության, հյուսնության, ծեփագործության, ներկարարության գոյությունն ու արվեստի հասնող վարպետությունը:

Անեցիների արտադրական գործունեությունը չէր սահմանափակվում միայն տասնյակների հասնող արհեստներով: Նախորդ ժամանակների նման, 12-րդ դարի վերջում և 13-րդ դարի սկզբներում Անիում գոյություն ունեին բազմաթիվ ձիթհանքեր ու ջրաղացներ:

Արտադրության կազմակերպման, վերամշակվող հումքի, տեխնիկական առանձնահատկությունների առումով ձիթհանքերը (ինչպես և ջրաղացները) դարեր շարունակ էական փոփոխություններ չէին կրել, մնացել էին ավանդական մակարդակի վրա: Այնպես որ Բագրատունիների և Զաքարյանների օրոք եղած Անիի ձիթհանքերն իրարից ոչնչով չէին տարբերվում: Անիի այդ ժամանակներին վերագրվող ամենախոշոր ձիթհանքերից մեկը պեղվել ու բավական մանրամասնությամբ ուսումնասիրվել է Ն. Մառի հնագիտական արշավախմբի կողմից 1913 թվականին: Ձիթհանքը գտնվում էր ս. Սարգիս եկեղեցու մոտ և պահպանվել էին դրա հիմնական մասերը՝ գերանի ծայրերի համար սարքված փոսերը, ստացվող ձեթի կարասը, կտավատի (կամ քնջութի) տաքացման համար դրըված վառարանը, քառանկյունի անցք ունեցող շրջանաձև հսկայական քարը, ամբարը և այլ պարագաներ, որոնք միասին վերցրած որոշակի գաղափար են տալիս անիական ձիթհանքերի վերաբերյալ: Ն. Մառի կատարած նկարագրություններից որոշակիորեն երևում է, որ Անիի այդ ձիթհանքն իր կառուցվածքով հար ու նման է եղել Տաթևի վանքին կից եղած ձիթհանքին, որը բավական լավ վիճակում հասել է մինչև մեր օրերը:

Հանրահայտնի է, որ ձիթհանքերի համեմատությամբ ջրաղացների կառուցվածքն ավելի պարզունակ էր: Ակնարկներից և կցկտուր տեղեկություններից կարելի է կռահել, որ Անիում ջրաղացները նույնպես տաս-

նյակների էին հասնում: Միջին դարերում սովորաբար ալյուրը երկար տարածության վրա չեն փոխադրել: Յուրաքանչյուր շատ թե քիչ նշանակալի բնակավայր՝ գյուղ, ավան, գյուղաքաղաք, քաղաք ուներ իր ջրաղացը (կամ ջրաղացները): Միանգամայն հասկանալի է, որ բազմամարդ Անին իր առօրյա պահանջների և անակնկալ հարձակումների ժամանակ ալյուրի անհրաժեշտ պաշարներ ունենալու համար ունեցել է բավական թվով ջրաղացներ, որոնք հիմնականում տեղադրված էին Գլիձորի ուղղությամբ, Ծաղկոցաձորում և Ախուրյանի ափերին:

Անեցիների արտադրական գործունեության հետ են կապված նաև այն բազմաթիվ մառանները, պահեստները, հնձանները, որոնց ավերակներն ու հետքերը նկարագրվել են տարբեր հեղինակների կողմից: Այդպիսիները նշմարված են և իշխանական պալատներում ու դղյակներում, և եկեղեցիներին կից եղած օժանդակ շենքերում, և Այրային Անիում ու բուն քաղաքի տարբեր թաղամասերում: Առանձնահատուկ ուշադրության արժանի է մեզ հետաքրքրող ժամանակաշրջանին վերագրվող հավանաբար հացահատիկի մի պահեստ, որը գտնվում էր ս. Սարգիս եկեղեցու համալիրում և նկարագրվել է 1913 թվականի հնագիտական արշավախմբի կողմից:

Անիում հայտնաբերված արհեստավորական արտադրանքների մեծ մասը բաժին է ընկնում կավագործությանը լայն առումով վերցրած: Կավագործությունը մի ամբողջ շարք արհեստներ ընդգրկող արհեստավորական ճյուղ էր, որի արտադրանքի տեսակները տասնյակների էր հասնում: Այդ պատճառով էլ հայտնաբերված արհեստավորական արտադրանքների մասին մեր շարադրանքն սկսում ենք կավագործական իրերի նկարագրությամբ:

Հայաստանի կավագործական արտադրանքները հայտնի էին «ամբողջ մուսուլմանական աշխարհում»: Իսկ երկրի կավագործության ամենահայտնի կենտրոններից մեկն Անին էր: Ն. Մառը գրում է, որ իրեն «հայտնի չէ այնպիսի վայր», որը հասարակ և գունավոր «կավե իրերով» կարողանար «մրցել Անիի հետ»: Նա խոսելով միայն 1910 թվականի հնագիտական պեղումների ժամանակ հայտնաբերված կավե իրերի առատության և բազմազանության մասին, գրում է. «1910 թվականի պեղումները, սովորականի նման, հարուստ էին հասարակ և ազնիվ կավից, կարմիր և սպիտակ, փայլեցված և չփայլեցված, ջնարակած և առանց ջնարակման, ընդ որում հատուկ ջնարակով և առանց դրա, հասարակ և ներկված, միագույն և բազմագույն, նախշավոր և նկարազարդված, հարթ և ուռուցիկ խեցե իրերի բեկորներով», որոնց զգալի մասը արտադրվել էր տեղական արհեստավորների կողմից: Անիի խեցեղեն ի-

քերն այնքան բազմազան են, որ դժվար է նույնիսկ հասարակ թվարկությունը: Վաղեմի քաղաքի ավերակներում հայտնաբերված են տարբեր ծավալի ու տարբեր որակի բազմաթիվ կարասներ, կժեր, ամաններն, կավե խողովակներ, հասարակ և դեկորատիվ աղյուսներ, հախճապակե և ճենապակե տարբեր նշանակության իրեր, սնդկամաններ և այլն, և այլն:

Վերջին տասնամյակում ՀՍՍՀ Սպիտակ քաղաքից մոտ 10 կմ արևմուտք, Փամբակ գետի վերին հոսանքում, ճանապարհաշինական աշխատանքների ժամանակ բացվել է քարանձավային մի մեծ բնակավայր, որի պահպանված 30 քարանձավ-բնակարաններից յուրաքանչյուրը բաղկացած է մեկ-երկու և ավելի սենյակներից: Միջնադարյան այդ բնակավայրում ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի արշավախումբը պեղումների շնորհիվ զանազան հնությունների, քարանձավ-ապաստանի (Նման Անիի Տիգրան Հոնենցի տոհմական գերեզմանոցին) և իրերի հետ միասին հայտնաբերել է նաև Անիից բերված (ամենայն հավանականությամբ այնտեղ արտադրված) «բարձրարվեստ, նկարազարդ» անոթներ, որոնք արտադրվել են 12—13-րդ դարերում՝ քարանձավային բնակավայրի շեն ժամանակներում:

Անիի խեցեգործությունը զարգացել է ոչ մեկուսացած: Այն իր ազդեցությունն է թողել Հայաստանի քաղաքների նույն կարգի զբաղմունքների վրա: Սակայն դրանով չի սահմանափակվում միջազգային մշտական ու ամուր կապեր ունեցող մեծահռչակ քաղաքի արտադրական առընչությունները: Այսպես, օրինակ, ուսումնասիրությունները ցույց են տվել, որ միջնադարյան Ղրիմի խեցեղենը՝ հասարակ և ջնարակած անոթները, նմանության շատ գծեր ունեին մասնավորապես Դվինում և Անիում արտադրված խեցանոթների հետ, մի երևույթ, որ Ա. Լ. Յակոբսոնը բացատրում է Անդրկովկասի ու Ղրիմի միջև այդ ժամանակներում Սև ծովի վրայով հաստատված քաղաքական, տնտեսական ու մշակութային կապերով:

Այդ բոլորով հանդերձ, մեզ թվում է շատ հավանական Բ. Ա. Շելկովնիկովի այն կարծիքը, ըստ որի Զաքարյանների օրոք Անիի խեցեգործությունն այնուամենայնիվ չի հասել Բագրատունիների ժամանակաշրջանի զարգացման մակարդակին ու փայլին: Ստեղծված այդ նոր պայմաններում, ինչպես եզրակացնում է նա, Իրանի մրցակցությունն այդ ասպարեզում խանգարիչ դեր էր խաղում Հայոց մայրաքաղաքի խեցեգործության առավել զարգացման ճանապարհին: Մեզ թվում է, որ Անիի խեցեղենի որակական ցուցանիշների այդ անկման պրոցեսը անմիջական կապի մեջ էր նախորդ ժամանակաշրջանի համեմատությամբ Զաքարյան-

ների օրոք տեղական հախճապակու և ճենապակու պահանջարկի կըրճատման հետ: Անիի ամենաընտիր խեցեղենի նմուշները բավական քանակությամբ հայտնաբերվել են հատկապես Բագրատունիների արքայական պալատի նկուղներում: Իսկ այդ ցույց է տալիս, որ Բագրատունի թագավորները և նրանց շրջապատող պալատականներն ու հասարակության բարձր խավի մյուս ներկայացուցիչները մեծապես օգտագործում էին տեղում արտադրված և ներմուծովի ընտիր հախճապակյա, ճենապակյա և նման այլ խեցեղեն:

Անիում հայտնաբերված ամբողջ խեցեղենը՝ ելնելով դրանց պատրաստման տեխնիկայից, ամրության աստիճանից, գույնից, զարդանախշերից, տեսակներից և այլ յուրահատկություններից, Բ. Ա. Շելկովնիկովը ենթարկել է դասակարգման՝ դրանք բաժանելով 14 խմբի, տալով դրանց ընդհանուր բնութագիրը:

Անիում հայտնաբերված արհեստավորական արտադրանքների մյուս խումբը տարբեր կարգի գործվածքներն են և պատրաստի հագուստների մնացորդները: Նկատի ունենալով մեր պատմագիրների հիշատակություններն ու մյուս գրավոր տեղեկությունները, կարելի է պնդել, որ Անիում և՛ Բագրատունիների թագավորության ժամանակներում, և՛ Զաքարյանների իշխանության օրոք իշխող խավի մոտ մեծ պահանաջրկ կար ընտիր գործվածքների ու հագուստի: Կարծում ենք, որ հենց այդ իրողության ազդեցության տակ է Ստեփանոս Ասողիկը գրում, թե նույնիսկ հովիվները հագնում էին մետաքսե հագուստներ, բացահայտորեն խըտացնելով գույները:

Պեղումների ընթացքում, ըստ Վ. Աբրահամյանի հավաքած տվյալների, Անիում հայտնաբերվել է 12 զանազան չափսի ու որակի կտորներ, որոնցից մի մասի վրա կատարված է «նուրբ ասեղնագործություն»: Հայտնաբերված կտորները գործված են մետաքսից, վուշից, բրդից: Գտնըված են երեխայի պատրաստի երկու հագուստ, որոնցից մեկը պակասավոր վիճակում, իսկ մյուսը, որ ի հայտ է եկել իշխանական դամբարանում, մետաքսե վերնազգեստ է և ավելի լավ է պահպանվել: Նույն իշխանական դամբարանից հայտնաբերվել է նաև 46×32 սմ չափսի մետաքսե կտոր, որի հյուսվածքում կան նաև վուշի թել, բամբակյա թելից հյուսված շղթա և այլն, որոնց մի մասն այժմ պահպանվում է Հայաստանի պետական պատմական թանգարանում:

Անիի և Հայաստանի բարձր վարպետության հասած մանածագործության, ջուլհակության, դերձակության և տեքստիլ մյուս արհեստների (եթե հարմար է այդպես կոչել) մասին որոշ տեղեկություններ են հաղորդում նաև գրավոր աղբյուրները: Դրանց հիման վրա է, որ Ն. Մառը նշում է,

թե «հայկական գորգերը» ամենուրեք ունեին մեծ համբավ: Իսկ գորգագործությունը Անիի հայտնի արհեստներից մեկն էր: Պակաս գորավոր չեն փաստերը Հայաստանում արտադրվող «ոսկեհուռ ասեղնագործ կերպասե» կտորների վերաբերյալ:

Անիի պեղումների ընթացքում, արհեստավորական զանազան գործիքների հետ միասին հայտնաբերվել են նաև մետաղյա իրեր ու տարբեր նշանակության անոթներ: Մետաղյա իրերն ու առարկաները, արհեստավորական գործիքները, զարդերը և մյուս ապրանքները արտադրում էին մետաղամշակման հետ կապված արհեստավորները՝ զինագործները, պղնձագործները, ոսկերիչներն ու արծաթագործները, փականագործները, դարբինները և այլք:

Հնագիտական ուսումնասիրությունները ցույց են տվել, որ Անին կավագործական արհեստների շարքում ուներ նաև իր զարգացած ապակեգործությունը: Պեղումների ընթացքում հայտնաբերվել են մեծ քանակությամբ բազմատեսակ ապակյա իրեր և զարդեր: Գտածո իրերի մեջ մեծ տեղ են գրավում հատկապես ապարանջանները: Դրանք տարբեր գույների են՝ կանաչ, կապույտ, սև և դեղին, ինչպիսիները հայտնի են նաև Խերսոնեսում: Բացառված չէ, որ Խերսոնեսում այդ ապրանքները նույնպես պատրաստված լինեն Ալփ-Արսլանի արշավանքի հետևանքով դեպի Ղրիմ գաղթած անեցի ապակեգործ վարպետների ձեռքով:

Անհրաժեշտ ենք համարում նորից անդրադառնալ շինարարական արհեստների խմբին պատկանող այն մեկ-երկու զբաղմունքներին, որոնք շփման շատ կետեր ունեին ճարտարվեստի հետ և, մեր կարծիքով, առաջացել էին շենքերի պատերի ներսը քարապատումից ծեփին անցնելու (որ տեղի է ունեցել 12-րդ դարից ոչ շուտ) և շենքերը նախշազարդելու համար մասնակիորեն նաև աղյուս օգտագործելու հետևանքով: Շենքերի այդ կարգի նախշազարդումներին և դրանց ոճերի ուսումնասիրությունը մասնագետներին բերել են այն համոզման, որ դրանք Անիի շինարարական արվեստի մեջ մտել են հատկապես Զաքարյանների օրոք: Բանը նրանում է, որ 12—13-րդ դարերում Անիի շենքերի ներսի պատերը գաջապատելու (կամ կրով ծեփելու) հետևանքով զարգանում և մեծ վարպետության է հասնում ոչ միայն ծեփագործությունը, այլև ի լրումն դրա, առաջանում են նոր մեկ-երկու արհեստներ: Դրանցից առաջինը զբաղվում էր գիպսե ձուլածո որմնազարդերի արտադրությամբ: Գիպսից կամ գաջից ձուլված այդ որմնազարդերը օգտագործվում էին շենքի ներսի քիվերն ու պատերի անկյունները գոտիկաձև զարդարելու համար: Դրանք իրենց վրա ունեին զանազան կենդանիների ու բույսերի պատկերներ, երկրաչափական ձևեր՝ հարթաքանդակի, բարձրաքանդակի

և խորաքանդակի ձևով, որոնք սերտորեն առնչվում են այդ ժամանակաշրջանի հայ արվեստի հետ։ Ոմանք գտնում են, որ Անիում և Դվինում տարածված այդ ձուլածո որմնազարդերը պատրաստում էին հենց իրենք՝ շենքերի պատերը հարդարողները, իսկ ոմանք էլ հակված են կարծելու, որ դրանք արտադրվում և վաճառվում էին հատուկ արհեստավորների կողմից։ Այս վերջին տեսակետը, որ որոշակիորեն արտահայտել է Ն. Տոկարսկին, շատ հավանական է, քանի որ քաղաքի տարբեր շենքերում և ամենատարբեր տեղերում հայտնաբերված այդ որմնազարդերը թե չափսերով և թե նախշերով հար ու նման են իրար, միևնույն կաղապարով հանված։

Շենքերի հարդարման նպատակով էին պատրաստվում նաև, այսպես կոչված, շքաղյուսները, որոնք նույնպես արտադրվում էին հատուկ արհեստավորների կողմից նոր տուն կառուցողներին կամ հները վերանորոգողներին վաճառելու նպատակով։ Այդ կարգի աղյուսները նույնպես սկսել են զանգվածորեն արտադրել ու օգտագործել 12-րդ դարից։

Արհեստավորներն իրենց վարձը նախորդ և հաջորդ ժամանակների նման ստանում էին կամ դրամով (որ ավելի տարածված ձև էր), կամ «հատվածով», այսինքն՝ աշխատավարձի դիմաց ստացել են պատվիրատուի տված նյութի՝ մորթու, կաշվի, թելի և այլնի մի մասը։ Արհեստավորը արտադրել է ոչ միայն պատվիրատուի համար նրա տված նյութով, այլև դրամով կարող էր գնել համապատասխան նյութեր և իր աշխատանքով համապատասխան ապրանքի վերածելով՝ այն վաճառել այլևայլ մարդկանց։ Այլապես ինչպե՞ս կարելի է բացատրել Հայաստանից 10—13-րդ դարերում արհեստավորական զանազան արտադրանքների արտահանության այն ժամանակների համար այնքան լայն մասշտաբները։

Հայաստանի միջնադարյան քաղաքներում բավական թիվ էին կազմում օրավարձով աշխատողները, որոնք մատենագրական հիշատակություններում ստացել են «վարձկանք», «մշակ» անունը։ Դրանք սովորաբար ծայր աստիճանի աղքատ մարդիկ էին և «փորահացով» կատարում էին ֆիզիկական ամենածանր աշխատանքներ։ Օրավարձով աշխատողներից ոմանք զանազան սև աշխատանք էին կատարում (բեռների փոխադրում և այլն) նաև արհեստավորների ու առևտրականների համար, առանց սակայն անմիջական արտադրությանը մասնակցելու։ Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» երկու հոդվածները (83 և 113) ուղղակի վերաբերում են օրավարձով մշակներին։ Դրանցից մեկում (113) սահմանված է վարձակալողի և օրավարձով աշխատողի միջև գոյություն ունեցող հարաբերությունների կարգը։ Ավելի մեծ հետաքրքրություն է ներկայացնում 83-րդ հոդվածը։ Այդ հոդվածից պարզ երևում է, որ վարձ-

կանները զանգվածորեն ծայրահեղ աղքատ էին՝ տնանկ, օրվա հացի կարոտ և իրենց գոյությունը մի կերպ պահպանում էին ծանր աշխատանքով, որի վարձը հազիվ էր բավականացնում մի կտոր հացի համար։

Կարելի է ասել, որ հայկական համքարությունները բավական լավ են ուսումնասիրված։ Այդ բնագավառի ուսումնասիրություններից ուշադրության արժանի են Յու. Հախվերդովի, Ս. Ա. Եղիազարովի, Վ. Աբրահամյանի, Բ. Առաքելյանի, Լ. Խաչիկյանի, մի շարք տնտեսագետների և այլոց աշխատությունները։ Դրանցում ի մի են բերված միջնադարյան ու նոր ժամանակների Հայաստանի համքարություններին վերաբերող մատենագրական, հնագիտական, լեզվաբանական, օրենսդրական և մյուս կարգի նյութերը՝ լուսաբանելով համքարական կազմակերպության հիմնական գրեթե բոլոր հարցերը՝ համքարությունների ծագումը, կառուցվածքը, արհեստավորական ու առևտրական համքարությունների, համքարությունների և վարչական օրգանների փոխհարաբերությունները, արտադրական և ոչ արտադրական սովորությունները, վարպետների, վարպետացուների և աշակերտների իրավական ու տնտեսական վիճակի տարբերությունները և այլն։ Համքարությունների հետ կապված հարցերի լուսաբանությունը զգալի չափով հեշտանում է նրանով, որ դրանք պահպանողական են և համքարական շատ սովորություններ ու օրենքներ պահպանվել են դարերով՝ հասնելով ընդհուպ մինչև համքարությունների վերացումը՝ 19-րդ դարի վերջերը։ Սակայն այդ ամենևին չի նշանակում, թե արհեստները չեն զարգացել, նոր արհեստներ չեն առաջացել, աշխատանքի բաժանումը չի խորացել։ Այդ բոլորը տեղի են ունեցել, բայց համքարային կազմակերպությունն իր արտադրական ու ոչ արտադրական սովորություններով մնացել էր նույնը, առանց տարբեր արհեստները միևնույն արհեստանոցում միավորելու, առանց արտադրության մանուֆակտուրային ձևին անցնելու, առանց այս վերջինիս հատուկ աշխատանքային բաժանման անցնելուն։

Նախորդ ժամանակաշրջանի մասին խոսելիս Անիի համքարությունների ներքին կյանքին մենք հատկացրեցինք զգալի տեղ, բնութագրելով դրանց ներքին կյանքի որոշ կողմերը, որոնք առանց էական փոփոխություններ կրելու գոյություն ունեին նաև մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում՝ 12—13-րդ դարերում։ Ի լրումն այդ բոլորի, անհրաժեշտ ենք համարում համառոտակի կանգ առնել համքարությունները բնութագրող նաև մի քանի այլ հանգամանքների վրա, որոնք կնպաստեն ավելի համակողմանիորեն ընդգրկելու Անիի տնտեսության այդ կարևոր ճյուղը՝ արհեստագործությունը, խուսափելով անցանկալի կրկնություններից։

Նախ և առաջ պետք է նշել, որ Բագրատունիների ժամանակաշրջանի համեմատությամբ Անիում Զաքարյանների իշխանության ժամանակներում նորահաստատ համքարություններ չեն հիշատակվում, թեպետև բացառված չէր այդպիսիների առաջացումը՝ արհեստների ներսում աշխատանքի բաժանման խորացման, նոր արհեստների առաջացման հետևանքով:

Միջնադարյան համքարությունների կարգ ու կանոնի (որոնք մեծ մասամբ բանավոր էին՝ ըստ սովորության՝ «ադաթի», ինչպես այն հետագայում կոչվեց) մասին ամենահստակ ու արժանահավատ աղբյուրներից մեկը Մխիթար Գոշի «Դատաստանագիրքն» է, որտեղ մի քանի հոդվածներ վերաբերում են արհեստագործությանը և արհեստագործական եղբայրություններին՝ համքարություններին:

Դրանցից մեկի համաձայն պատվիրատուից ստացած նյութը հափշտակելու դեպքում, արհեստավորը պարտավոր էր հատուցել քառապատիկ, կամ ենթակա էր ապաշխարանքի: Իսկ պատվիրատուի և վարպետի միջև գոյություն ունեցող հարաբերություններին (ավելի ճիշտ՝ արտադրական գույքային հարաբերություններին) նվիրված ավելի ընդարձակ հոդվածում խոսվում է արհեստավորների վարձատրման ձևի (դրամով և բնամթերքով), վերամշակման ենթակա նյութը վարպետի կողմից փչացնելու և դրա փոխարեն վերջինիս կողմից վնասը հատուցելու, կամ որևէ մեկի կողմից գողացվելու, կամ ցեցն ու մուկը փչացնելու և այլ, չնախատեսված դեպքերի համար սահմանված հատուցման և պարտքի ձևերի ու նորմերի մասին:

Նույն կարգի երկու հոդված էլ (№ № 54 և 127) վերաբերում են ջրաղացներին, ջրաղացպաններին և աղուն աղացողներին՝ աղուն աղալու համար տրվող վարձին, ըստ գավառների և բերքի քանակի դրա տարբեր չափերին, ջրաղացը կանոնավոր վիճակում պահելուն և այլն: Ջրաղացների մասին այդ հոդվածները հետաքրքրություն են ներկայացնում նաև Անիի պատմության համար, որովհետև վերջինս իր շրջափակող ձորերում ուներ բազմաթիվ ջրաղացներ:

Միջնադարում սովորաբար արհեստը անցնում էր հորից որդուն: Յուրաքանչյուր արհեստավոր ծնող առաջին հերթին շահագրգռված էր իր արհեստը սովորեցնել որդուն: Դրա հետևանքով առաջացել էին տոհմիկ արհեստավորների շատ ընտանիքներ: Սակայն դրա հետ միասին արհեստ էին սովորում նաև արհեստավորների հետ արյունակցական կապեր չունեցողները: Հայաստանում համքարությունները երբեք կաստայի բնույթ չեն ունեցել, նրանց անդամները ազատորեն կարող էին դուրս գալ համքարական կազմակերպությունից, ինչպես և վերջիններս ազա-

տորեն համալրվում էին նույն զբաղմունքի տեր նոր արհեստավորներով: Արհեստ սովորելու համար դարերով առաջացել էին օրենքի ուժ ունեցած սովորույթներ, որոնք որոշ տարբերակներով կիրառվում էին տարբեր համքարություններում: Տարբեր արհեստների գծով ենթավարպետներ կամ վարպետներ պատրաստելու համար, նայած արհեստի բարդությանը և տեխնիկական առանձնահատկություններին, սահմանվում էին տարբեր ժամկետներ: Աշակերտը համարվում էր վարպետի «տան տղան» և չնայած վարպետին հատուկ վարձ չէր տալիս իրեն արհեստ սովորեցնելու համար, սակայն վարպետի տանը կատարում էր զանազան աշխատանքներ և ավարտելուց հետո՝ վերջինիս համար, ավանդույթի ուժով, գնում էր որևէ նվեր: Համքարության բարձրագույն պաշտոնյան ավագ վարպետն էր («ուստաբաշին»), որին ենթակա էին մյուս բոլոր պաշտոնյաները:

Համքարությունների լիիրավ անդամները համարվում էին միայն վարպետները: Հաջորդ աստիճանի վրա գտնվում էին վարպետացուները, իսկ ամենացածր դիրքը գրավում էին աշակերտները, որոնք համքարական աշխատանքներին ոչ մի մասնակցություն չունեին և իրավա-տնտեսական առումով գտնվում էին ողորմելի վիճակում: Արհեստագործությունն էլ երկրի բնակչության մյուս զբաղմունքների նման ենթակա էր հարկման: Հիմնական հարկը արհեստով զբաղվելու համար գանձվող հարկն էր: Ըստ Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» գյուղատնտեսությունից վերցվող հիմնական հարկը, որ գերազանցապես արվում էր բնամթերքով, կազմում էր եկամտի 1/5—1/10 մասը: Նույն սկզբունքով և չափով էին վերցվում հարկերը Էրզրումի՝ հետևապես և ամբողջ երկրի քաղաքների առևտրից ու արհեստներից:

Ահա այդպիսին էր մոտավորապես 12-րդ դարի վերջերի և 13-րդ դարի սկզբների Անիի արհեստների վիճակը՝ դրանց տեսակները, զարգացման աստիճանը, արտադրած ապրանքները, արհեստավորական եղբայրություններն ու դրանց սովորույթները, կախումը քաղաքային վարչական մարմիններից, հարկատվության սկզբունքները և այլն:

Հայտնի է, որ 11-րդ դարի երկրորդ կեսում և 12-րդ դարում Հյուսիսային Հայաստանի քաղաքային կյանքի ընդհանուր անկման հետ միասին անկում է ապրել և առևտուրը, մասնավորապես արտաքին և տարանցիկ առևտուրը: Ալփ-Արսլանի ավերիչ արշավանքը և դրան հաջորդած սելջուկյան ու արաբական էմիրների պարբերական հարձակումները և էմիրների ու Վրաց թագավորության միջև տեղի ունեցած քաղաքական դեպքերը, որոնց հիմնական նպատակներից մեկը Անիի գրավումն էր, անկման էին հասցրել նաև առևտուրը: Մելիք-շահի օրոք (1072—1092)

հաստատված համեմատաբար խաղաղ կացությունը խախտվում է նրա հաջորդների ժամանակ, երբ սելջուկյան պետությունը մասնատվել էր մեծ ու փոքր մի շարք իշխանությունների, որոնք թշնամաբար էին տրամադրված իրար և Վրաց թագավորության նկատմամբ։

Անին Շադդադյան լծից ազատագրելուց հետո, Զաքարյանների իշխանության օրոք՝ 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի առաջին տասնամյակներում վերակենդանանում է՝ դառնալով նաև առևտրի մեծ կենտրոն։ Աշխուժանում է նրա ներքին առևտուրը, նորից է ծավալվում արտաքին ու տարանցիկ առևտուրը։

Թվում է, որ Զաքարյանների ժամանակաշրջանի Անիի առևտրի զարգացման և ծավալման մասին այնուամենայնիվ պետք է խոսել որոշ վերապահությամբ։ Միջնադարի ընդհանուր պատմությունից հայտնի է, որ 11-րդ դարի վերջերից մինչև 13-րդ դարի վերջերը տեղի ունեցած խաչակիրների արշավանքների հետևանքով Արևելքն Արևմուտքի հետ միացնող հյուսիսային ճանապարհները, որոնցից մեկն անցնում էր Հյուսիսային Հայաստանով և այնքան մեծ նշանակություն էր ստացել Բագրատունիների թագավորության շրջանում, մեզ հետաքրքրող ժամանակներում ուներ ավելի համեստ դեր, միջազգային առևտրի կարևոր ուղիները անցնում էին ավելի հարավով՝ Միջագետքով ու Սիրիայով։ Հայտնի է նաև, որ դրա հետևանքով 11-րդ դարի վերջերից իր նախկին արտակարգ նշանակությունը կորցրեց նաև Բյուզանդիայի ու Կիևյան Ռուսիայի միջև Սև ծովի վրայով կատարվող առևտուրը, որն իր հերթին ազդեց վերջինիս անկման վրա։ Կարծում ենք, որ Ղրիմի և Հյուսիսային Հայաստանի ու նրա մեծ կենտրոն Անիի միջև տնտեսական կապերը 13-րդ դարի սկզբներին ամրացան հենց նշված հանգամանքների հետևանքով։

Զաքարյանների իշխանության օրոք Անիի առևտրատնտեսական կապերը նորից ամրապնդվում ու մշտական են դառնում Իրանի և Առաջավոր Ասիայի մյուս երկրների հետ։ Այստեղ հայտնաբերված են այդ երկրների, հատկապես իրանական ծագման խեցեղեն զանազան ապրանքներ։ Դրանց առատությունը և բարձր որակը նկատի ունենալով Բ. Ա. Շելկովնիկովը նշում է, որ իրանական հախճապակին Զաքարյանների տիրապետության շրջանում մրցակցում էր Անիում արտադրված նույնատեսակ ապրանքների հետ, և, նույնիսկ, այդ մրցակցության հետևանքով այստեղ հախճապակյա իրերի արտադրությունը, որ այնքան բարձր զարգացման էր հասել Բագրատունիների օրոք, գրեթե ընդհատվել էր։

Անիի արտաքին առևտրի մեջ 13-րդ դարի սկզբներին կարևոր դեր էր խաղում նաև հեռավոր Չինաստանը, որի հետ Հայաստանը առևտրատնտեսական կապեր ուներ դարեր առաջ և Բագրատունիների թագավո-

րության շրջանում դրանք զարգանում էին ավելի մեծ մասշտաբներով: Չինական ծագումի ապրանքներից Անիում հնագիտական պեղումների ընթացքում մեծ քանակությամբ հայտնաբերվել են հատկապես ճենապակյա իրեր, որոնք օգտագործվում էին հարուստ քաղաքացիների և հասարակության բարձր խավերի ընտանիքներում: Իրանական ծագումի հախճապակին ավելի հարուստ ցուցանմուշներով է ներկայացվում: Քաղաքի տարբեր մասերում դրանցից հայտնաբերվել են տարբեր որակի ու տեսակի բազմաթիվ իրեր:

Զաքարյանների շրջանում նորից բանուկ էին Անիից դեպի հարևան երկրներ՝ Վրաստան, Պարսկաստան, Միջագետք ու Փոքր Ասիա ձգվող առևտրի մայրուղիները, Անին կապված էր Հայաստանի տասնյակ քաղաքների հետ: Եվ հատկապես հենց այդ պատմաշրջանում էր, որ Անիի և Ղրիմի (իսկ վերջինիս միջոցով նաև Հարավային Ռուսիայի) միջև ընտեղծվում են մշտական աշխույժ կապեր, որոնք ոչ միայն առևտրական էին, այլ ընդհանրապես տնտեսական-արտադրական և մշակութային:

Հայաստանից արտահանվող ապրանքների կազմը նախորդ ժամանակների համեմատությամբ էական փոփոխություններ չէր կրել: Սակայն մեզ տվյալ դեպքում հետաքրքրում են ոչ թե ամբողջ երկրից, այլ Հյուսիսային Հայաստանից և Անիից արտահանվող ապրանքները: Անին արտաքին առևտրի բնագավառում փաստորեն ներկայացնում էր ամբողջ Հյուսիսային Հայաստանը, դրա միջոցով էին արտահանվում ու ներմուծվում երկրի այդ հատվածից արտահանվող ու դրան անհրաժեշտ ապրանքների մեծ մասը: Անիից այդ ժամանակներում արտահանվող ապրանքները հիմնականում հայտնի են և կարելի է բավարարվել միայն դրանց թվարկմամբ: Դրանք բաղկացած էին արհեստավորական ամենաբազմազան արտադրանքներից՝ մետաղյա իրերից, գործվածքներից, գորգերից, որոշ տեսակի խեցեղենից, գյուղատնտեսական մթերքներից ու անասուններից, ներկանյութերից և այլ ապրանքներից: Ընդ որում, Անին դեպի երկիր ներքին տարբեր շրջաններ առաքում էր մեծ քանակությամբ արհեստավորական արտադրանքներ, որոնց հետ միասին և ներմուծված ապրանքներ:

Անի ներմուծվող ապրանքները տարբեր ծագման էին: Տնտեսական կապերի հիման վրա կարելի է կռահել, որ Անի ներմուծվում էին չինական, իրանական, փոքրասիական, միջինասիական, հարավռուսական, Ղրիմի, վրացական և այլ ծագումի ապրանքներ: Դրանք հիմնականում բաղկացած էին մետաքսեղենից և ճենապակուց, բարձրորակ զանազան գործվածքներից ու հախճապակյա իրերից, մետաղյա իրերից, մուշտակներից և այլ ապրանքներից, որոնց մի մասը սպառվում էր Անիում, իսկ

մյուս մասն առաքվում էր տարբեր երկրներ և բուն երկրի տարբեր քաղաքներ ու գավառներ:

Դժվար է ասել ընդհանուր ծավալով Անիի առևտրի մեջ ո՞րն էր առաջնակարգը՝ արտաքին առևտուրը, թե՞ ներքինը: Մեզ թվում է, որ այնուամենայնիվ ներքին առևտուրը Անիի և ընդհանրապես երկրի քաղաքային կյանքի ու հասարակության զարգացման վրա ավելի մեծ ազդեցություն էր թողնում, քան արտաքինը, որը, ինչպես նշվեց, կարող էր ավելի քիչ բեկվել երկրում, զգալի մասով ստանալ տարանցիկ առևտրի բնույթ՝ առանց էական ազդեցություն թողնելու երկրի ընդհանուր դրության վրա:

Անիում, միջնադարյան արևելյան մյուս քաղաքների նման ներքին առևտրի կետերը բազմաթիվ էին և ցրված էին քաղաքով մեկ: Առևտուր էր կատարվում և հյուրատներում (խանապարներ), և փնդուկներում (պանդոկներ) ու կուղպակներում (կրպակներ), և հրապարակներում ու ոտքի վրա: Խանապարները, որոնցից մեկի ավերակները հնագիտական ուսումնասիրության է ենթարկվել պեղումների ընթացքում, հյուրանոցից բացի, ծառայում էին նաև իբրև առևտրի տուն՝ քարավանսարա, որն առևտրի համար ուներ զանազան հարմարանքներ ու օժանդակ սենյակներ: Խանապարները համարվում էին եկամտաբեր հաստատություններ և հիմնականում պատկանում էին քաղաքի ֆեոդալական վերնախավին կամ առևտրի, վաշխառության և այլ գործարքներով հարստացած մեծատուններին: Օրինակ, Զաքարյանների ժամանակ բարձրացած Տիգրան Հոնենցըն ուներ այդպիսի չորս խանապարից ոչ պակաս: Անիում մեզ հետաքրքրող ժամանակներում կային նաև խանապարների այլ տերեր: Անիից բացի խանապար-հյուրանոցներ կային նաև նրա մատույցներում՝ Հոռոմոսի վանքում, Ախուրյան գետի վրայի մեծ կամուրջի (Չրփլուի) մոտ և այլուր:

Անիում մեծ թիվ էին կազմում կուղպակները (կրպակներ): Դրանք ամենայն հավանականությամբ հասնում էին հարյուրների: Եվ զարմանալու ոչինչ չկա, եթե նկատի ունենանք, որ Անիից մի քանի անգամ փոքր Երևանը 18-րդ դարի վերջերին և 19-րդ դարի սկզբներին ուներ 851 խանութ ու կրպակ: Դրանք, ինչպես ցույց են տալիս պեղումները և Երևանի կրպակների մասին եղած գրավոր վկայությունները, շատ փոքր էին՝ իրոք իսկական կրպակներ՝ «կուղպակներ», ինչպես կոչված են մատենագրական և վիմագիր աղբյուրներում:

Անիում մեծ թվով կուղպակներ են հայտնաբերվել մանավանդ 1911 թվականին կատարված պեղումների ընթացքում, որ կենտրոնացած էին Գլխավոր փողոցի շրջանում: Դրանք դասավորված էին երկու շարքով՝

արևմտյան և արևելյան: Արևմտյան շարքը հարում էր Աբուլ-Մամրանի մզկիթին, իսկ արևելյանը՝ Մանուչեի մզկիթին («կամարակապ շենքին»): Կրպակների այդպիսի առատությունը մի փոքր տարածքում և դրանց դասավորվածությունը շարքերով, մեզ թվում է ցույց է տալիս, որ հենց այդտեղ էլ, քաղաքի կենտրոնական մասում՝ Աբուլ-Մամրանի և Մանուչեի մզկիթների շրջակայքում՝ Գլխավոր փողոցի վրա էլ գտնվում էր Անիի առևտրական գլխավոր թաղամասը կամ կենտրոնը:

Կրպակաշարքերում կատարված հնագիտական հայտնաբերումները հատուկ հետաքրքրություն են ներկայացնում: Արևելյան շարքի կրպակներից մեկում հայտնաբերվել են վեց կարաս: Նույն շարքում նշմարվել են նաև արհեստանոցներ (փականագործի և մետաղ ձուլող արհեստավորի), որոնք, ըստ երևույթին, առաջին հերթին սպասարկում էին երթևեկ վաճառականներին:

Իր կուղպակների ցանցն ուներ նաև Այրային Անին: Դ. Ա. Կիպշիձեն ենթադրում է, որ այդտեղի տասնյակների հասնող կուղպակները հաճախ հենց նույն բնակելի սենյակներն էին, որոնք ծառայում էին նաև իբրև կրպակներ և դժվար էր դրանք իրարից տարբերել: Նա մերժում է Ներսես Սարգսյանցի այն տեսակետը, ըստ որի Անիի քարայրներն իբր երկհարկանի կրպակներ են («կրպակք երկհարկեան»): Այրային Անին, այո, երկհարկանի կրպակների համատարած ցանց չէր, բայց այդտեղ իրոք որ գոյություն ունեին նաև այդ կարգի կրպակներ, որոնք առևտրի համար ունեին հատուկ հարմարանքներ: Այնպես որ բարեկարգ (ժամանակի իմաստով) խանութ-կրպակներ կային ոչ միայն քաղաքի կենտրոնական մասում՝ առևտրի թաղամասում, այլև արվարձաններում, որոնց թվում նաև Այրային Անիում:

Արտաքին առևտրի նկատմամբ ներքին առևտուրն ուներ որոշ առանձնահատկություններ: Նախ, ներքին առևտրի ապրանքների սպառողները քաղաքի ամբողջ բնակչությունն էր՝ սկսած օրավարձով աշխատողներից մինչև թագավորն ու իշխանները ներառյալ, երկրորդ, ներքին առևտուրը գրեթե բացառապես մանրածախ էր, երրորդ՝ ներքին առևտրի մեջ ապրանքափոխանակությունը խաղում էր կարևոր դեր և, չորրորդ՝ ներքին առևտրի ապրանքները ավելի բազմազան էին, զգալի մասով շուտ փչացող և մեծ զանգվածներ կազմող: Մինչդեռ արտաքին առևտրի ապրանքները (և արտահանվողները, և ներմուծվողները) ունեին սպառողների ավելի նեղ շրջանակներ, թանկարժեք էին, փչացման քիչ ենթակա և ունեին համեմատաբար աղքատ տեսականի:

Ամփոփելով հնագիտական հարուստ նյութերը, վիմագիր արձանագրությունների հիշատակությունները, հայ ու օտարազգի պատմագիր-

ների ու ժամանակագիրների վկայությունները և ժամանակակից հեղինակների ուսումնասիրությունների արդյունքները, Անիի մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի ներքին առևտրի ապրանքներից կարելի է թվարկել հետևյալները՝ գյուղատնտեսական մթերքներ (հացահատիկներ, բանջարեղեն, մրգեր, անասուններ, կաթնամթերքներ, կաշի ու մորթի, քընջութ ու կտավատ, բամբակ և այլն), արհեստագործական շինվածքներ ու իրեր (պատրաստի հագուստ, գործվածքներ, գորգեր, արհեստավորական գործիքներ, խեցեղեն, տնային գործածության զանազան իրեր, զենքեր, գյուղատնտեսական գործիքներ և այլն), կերակրի աղ, ներկեր, մետաղներ և այլն, և այլն:

Որոշ ելևէջներից հետո, Հյուսիսային Հայաստանում և նրա կենտրոն Անիում 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի սկզբներին շարունակվում է դրամական տնտեսության զարգացումը: Նրա ծավալուն առևտրի մեջ դրամը ձեռք էր բերել իշխող դիրք, ապրանքափոխանակությունը գնալով ընդունում էր ավելի համեստ չափեր: Այդ հիմքի վրա Հայաստանում աստիճանաբար ձևավորվում է խոշոր վաճառականությունը և վաշխառուական կապիտալը, որոնց տիպիկ ներկայացուցիչներից էր անեցի մեծատուն Տիգրան Հոնենցը: Այդ շրջանի վաշխառուական կապիտալի գործունեության վերաբերյալ բավական նյութեր են պահպանվել Կիլիկիայի հայկական պետության և ճենովական ու վենետիկյան հանրապետությունների տնտեսական հարաբերություններին վերաբերող փաստաթղթերում:

Պեղումների ընթացքում հայտնաբերված դրամների օգնությամբ հայտնի է դառնում, որ Զաքարյանների իշխանության օրոք Անիում շըրջանառության մեջ էին գտնվում բյուզանդական, վրացական և արաբական նշումներով («որոնց մեջ հանդիպում են տեղական»՝ «քրիստոնեական») դրամներ:

Միայն 1906 թվականի պեղումների ընթացքում հայտնաբերված դըրամների թիվը հասնում է տասնյակների: Դրանք բացառապես պղնձե դրամներ էին, որոնց մի մասը հայտնաբերվել է տարբեր կետերում մեկմեկ, իսկ ավելի քան հիսուն հատը՝ հատուկ դրամատուփի մեջ: Սեբաստիայում, Կոնիայում հատած 13-րդ դարի արծաթե դրամներ են ի հայտ եկել նաև Անիի պեղումների ընթացում և Հյուսիսային Հայաստանի մի շարք այլ վայրերում:

Ինչպես ասվեց, առևտրով զբաղվում էին հասարակության տարբեր խավերի ներկայացուցիչները: Պրոֆեսիոնալ առևտրականներն ու վաճառականներն ըստ իրենց կապիտալի քանակի և դրա հիման վրա ունեցած տնտեսական-իրավական վիճակի ենթարկված էին խիստ դասային շերտավորման: Ծաձրագույն աստիճանի վրա գտնվում էին մանրավա-

ճառները: Վերջիններս իրենց ապրանքները վաճառելու համար փողոցից-փողոց, թաղից-թաղ էին տանում շալակած և դրանց եկամուտը հավանաբար շատ չնչին էր՝ հազիվ էր հերիքում օրվա ապրուստի համար: Իսկ ամենաբարձր աստիճանի վրա գտնվում էին խոշոր վաճառականները՝ հոնենցները, որոնք ոչ միայն հարուստ վաճառականներ էին, այլ նաև վաշխառուներ, կապալառուներ: Վերջիններս պատմագրության մեջ ստացել են «մեծատուններ» հորջորջումը և իրենց դիրքով, աստիճանով ու իրավունքներով բարձր ազնվականությանը ոչնչով չէին զիջում:

Միանգամայն հասկանալի է, որ դրամական միավորների բազմազանությունը, ճանապարհների անբարեկարգությունը, կողոպտիչների հարձակումները, քաղաքի շուկայում տիրող խաբեությունը, այդ բոլորը արգելակում էին ներքին առևտրի ավելի լայն զարգացմանը: Այնպես որ ներքին առևտրի մասին խոսելիս՝ անկախ նրանից խոսքը վերաբերում է գյուղին, թե քաղաքին, հասարակարգի փակ բնատնտեսության բնույթից բացի պետք է նկատի ունենալ նաև նշված արգելակիչ հանգամանքները:

Հայտնի է, որ միջնադարյան քաղաքներում (դրանց թվում նույնիսկ «ազատ» քաղաքներում) զգալի չափով զբաղվում էին նաև գյուղատնտեսությամբ: Որոշ քաղաքներում և բոլոր գյուղաքաղաքներում գյուղատնտեսական զբաղմունքները տնտեսության մեջ կարևոր դեր էին խաղում, դրանք մի տեսակ գյուղական բնակավայրեր էին, իսկ մյուսներում՝ առավելապես խոշոր քաղաքներում, գյուղատնտեսությունը ուներ երկրորդական-երրորդական նշանակություն: Վերջին կարգի քաղաքների թվին էր պատկանում նաև Անին, որի գյուղատնտեսությունն ըստ ամենայնի ներկայացվել է Բագրատունիների շրջանի մասին խոսելիս, և այժմ դրա համակողմանի բնութագրման կարիքը չի զգացվում, որովհետև տնտեսության այդ ճյուղի զարգացման մեջ 11-րդ դարի համեմատությամբ 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի սկզբներին նոր երևույթներ չկային, սելջուկյան տիրապետությամբ ավերված, բավական հետադիմած գյուղատնտեսության ճյուղերը պարզապես նորից են վերականգնվում և բռնում իրենց բնականոն զարգացման ուղին: Իսկ այդ նշանակում է, որ Անիում բնակչության մի մասը, գերազանցապես արվարձանների բնակիչները շարունակում էին զբաղվել երկրագործությամբ, բանջարաբուծությամբ, ծաղկաբուծությամբ ու անասնապահությամբ: Պատմագիրների վկայություններից և վիմագիր արձանագրությունների հիշատակություններից երևում է, որ վերականգնված էր քաղաքի ոռոգման ցանցը, աղավնատների աղբը առաջվա նման օգտագործում էին պարարտացման համար, քաղաքի հյուսիս-արևելյան արգավանդ դաշտում մշակում էին



14—2682

հացահատիկներ, կտավատ ու քնջութ, իսկ ձորահովիտներում՝ զբաղվում էին այգեգործությամբ, բանջարաբուծությամբ ու ծաղկաբուծությամբ:

Այնուամենայնիվ, Անիի գյուղատնտեսության մասին մատենագրական ու հնագիտական որոշակի փաստեր կան, որոնք անմիջականորեն վերաբերում են Զաքարյանների շրջանին և չի կարելի դրանք շրջանցել:

Հայտնի է, որ նոր ժամանակներն հասած Անիի սովորական (այսինքն ոչ կոթողային) կառուցվածքների մեծագույն մասը պատկանում է համեմատաբար ուշ շրջանին՝ Զաքարյանների իշխանության և ավելի ուշ ժամանակներին: Այդ կարգի կենցաղային-տնտեսական «փոքր» կառույցներից էին մեծ թիվ կազմող հորերը, որոնք առաջին անգամ նըշմարել ու նկարագրել է Հ. Գեղամյանցը: Նա գրում է. «Անւոյ մեջ շրջելիս ճանապարհորդը ստեպ հանդիպում է, սովորաբար ձորերի եզերքներում և եկեղեցւոյ կողքերում, հացի հորերի: Դոքա փորված են կարմիր, դեղին և շատ քիչ անգամ սև ժայռերի միջին: Բերանները նեղ, ոչ ավելի մի արշինից, իսկ փորերը լայն»: Անիում մեծ թվով անասուններ կուտակելու համար այն պետք է ունենար իր նախադրյալները՝ գոմեր, անասնակեր և այլն, որոնք ինքնին հաստատում են անասնապահության գոյությունը և դրա զարգացումը:

Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» 121-րդ հոդվածում շարադրված են ընկերովի այգեգործության, հարակաշության և վարձկանների փոխհարաբերությունները նշելով, որ վերջիններս ըստ սովորության տարբեր տեղերում ու տարբեր գավառներում զգալի չափով տարբերվում են և հնարավոր չէ մի ընդհանուր ձևով ներկայացնել:

Ընդհանրապես միջնադարում Հայաստանի գյուղատնտեսության մեջ վարձկանների՝ մշակների գոյության վերաբերյալ խոսել են մի քանի հեղինակներ, օգտվելով այդ մասին ժամանակակից աղբյուրների վկայություններից: Առանձնապես նշելի է պրոֆ. Լ. Խաչիկյանի՝ Գրիգոր Տաթևացու աշխատություններում «երկրագործության մեջ աշխատող վարձկանների» մասին արած դիտողությունները: Պարզվում է, որ մշակներ վարձվում էին ոչ միայն այգեգործության (որի համար վարձված մշակների զգալի մասը պետք է որոշ որակավորում ունենար՝ գաղափար ունենար մրգատուների, կամ խաղողի մշակման մասին), այլ նաև երկրագործության մեջ, գյուղատնտեսության մի ճյուղ, որը Անիի տնտեսական կյանքում ուներ զգալի նշանակություն:

Այդպիսի բնույթ ունեին Անիի գյուղատնտեսական զբաղմունքները 12-րդ դ. վերջերին և 13-րդ դ. առաջին կեսին:

Զաքարյանների իշխանության շրջանում հարկերի տեսակները հիմնականում համապատասխանում էին Բագրատունիների թագավորության

ժամանակներում գանձվող հարկերին ու պարհակներին: Սակայն, ինչպես երևում է վիմագիր արձանագրություններից, Զաքարյանների օրոք եկեղեցական հարկերը բավական ծանրացել էին և այդ հողի վրա քաղաքային բնակչության լայն խավերում առաջացել էին անբավականություններ՝ ստիպելով հոգևոր հայրերին վերանայելու եկեղեցական հարկասիստեմը և վերացնելու որոշ հարկեր, որոնք քաղաքացիները, ըստ երևույթին, ի վիճակի չէին մուծել:

Էրզրումի համքարական սահմանադրության հիման վրա սովորաբար եզրակացնում են, որ տիպիկ քաղաքային հարկատու բնակչությունը՝ արհեստավորներն ու առևտրականները հարկադրվում էին արհեստի ու առևտրի համար, ավելի ճիշտ, դրանցով զբաղվելու համար, և հարկը հավանաբար կազմում էր դրանցից ստացվող եկամտի որոշակի տոկոսը: Հարկատու քաղաքացիները իրենց տների, պարտեզների, բանջարանոցների և մյուս անշարժ գույքի համար հարկեր չէին տալիս: Սակայն այդ ամենևին չի նշանակում, թե քաղաքացիները գյուղացիների նկատմամբ տնտեսական առումով գտնվում էին ավելի բարվոք վիճակում: Իշխողները և հոգևոր հայրերը քաղաքացիների վրա բարդել էին անօրինական այնքան շատ տուրքեր, որոնք արհեստավորներին ու մանր առևտրականներին հասցնում էին ծայր աղքատության:

Առաջվա նման բազմատեսակ էին Անիի հարկատու բնակչության վրա բարդված հարկերն ու տուրքերը: Քաղաքներում գանձվող հարկերը ընդհանուր անունով կոչվում էին «տամղա», որը մոնղոլական-թուրքական ծագումի տերմին է և բառացի նշանակում է «կնիք, խարանադրոշմ»: Նեղ իմաստով «տամղա»-ն մաքսը և առևտրից ու արհեստագործությունից գանձվող հարկն էր: Վիմագիր արձանագրություններում «բաժ-տամղա»-ից բացի հիշատակված են նաև ջրաղացներից, ներկատներից և ներկ վաճառողներից գանձվող հարկը՝ «տամղա»-ն: Քաղաքում գոյություն ունեին նաև այլ կարգի բազմաթիվ հարկեր՝ ախսրաթմար, աղըլհակ, «դռնագիր» և «դռնագիր մեծ» ու «դռնագիր փոքր», «թարխ», «խալա» կամ «խալե», «խարճ» (նաև «խարճող մեծ և փոքր») և այլն, և այլն: Դրանց մի մասը գոյություն ուներ նաև նախորդ ժամանակներում, իսկ մյուս մասը հիշատակվում է հաջորդ ժամանակներին վերաբերող վիմագիր արձանագրություններում:

Առևտուրը (ներքին և արտաքին) կարևոր նշանակություն էր ստացել ամբողջ երկրի համար: Հետևապես դրա կանոնավորմամբ մտահոգված էին և՛ տեղացի իշխանավորները, և՛, նույնիսկ, օտարերկրյա բռնապետները, որոնք սովորաբար առևտուրը (հատկապես արտաքինը) դիտում էին որպես հարստության մշտական ու հուսալի աղբյուր: Այդ է

պատճառը, որ մաքսի սահմանումը, դրա գանձումը անհրաժեշտություն էին դարձրել ոչ միայն օրենքի հրապարակման, այլև հատուկ պաշտոնեության առաջացման համար:

13—14-րդ դարերում մաքսի գանձումը կատարվում էր «տամղաչու» միջոցով, նա էր գլխավորում այդ գործը, իսկ չափի ու կշիռների և շուկայի հսկիչը կոչվում էր մութասիբ, որը փոխարինել էր նախկին «կըռփիչ»-ներին:

Քաղաքում և գավառներում մեծ տարածում էին գտել, այսպես կոչված, հասարակական աշխատանքները: Դրանք այնքան մասսայական բնույթ ունեին, որ Մխիթար Գոշի «Դատաստանագրքում» հատուկ հոդված է նվիրված դրանց: Հարկադիր աշխատանքներ էին կիրառվում բերդերի կառուցման, ճանապարհների անցկացման և այլ մեծ ծավալով ու պետական նշանակություն ունեցող կառույցներում: Ընդ որում, հարկադիր աշխատանքները հավասարապես տարածվում էին և գյուղական բընակչության, և քաղաքացիների վրա: Այդ տեսակետից վերջիններս գյուղական հարկատու բնակչությունից ոչնչով չէին տարբերվում:

Մեզ հետաքրքրող ժամանակներում եկեղեցուն տրվող նվիրատվությունները ընդունում են մեծ չափեր: Անիի եկեղեցիներն ու «վանք»-երը վերածվում են հայրենատեր խոշոր կալվածատերերի: Սակայն նվիրատվությունները նրանց հարստացման միակ աղբյուրը չէին: Նրանք հավատացյալ հասարակությունից գանձում էին մի ամբողջ շարք հարկեր ու տուրքեր՝ «տասանորդ» կոչված հարկը, թաղման, ամուսնության, կրոնական զանազան տոների առթիվ հավաքվող տուրքերը և այլն:

Ինչպես երևում է, հատկապես 13-րդ դ. առաջին քառորդում եկեղեցական հարկերն ու զանազան պատրվակներով գանձվող տուրքերն այնքան էին ծանրացել բնակչության վրա, որ տեղիք են տվել դժգոհությունների: Անիի և Շիրակի հոգևոր հայրերը՝ արքեպիսկոպոսները բընակչության ըմբոստացումներիցահաբեկված հարկադրված են լինում մի շարք, օրենքի ուժ ունեցող կարգադրություններ անել եկեղեցական որոշ տուրքեր վերացնելու և մի քանիսն էլ կանոնավորելու համար: Մեզ հայտնի է 1216—1227 թվականների ընթացքում արձակված այդպիսի չորս հրամաններ, որոնցից 3-ը արձանագրվել են քաղաքի Առաքելոց եկեղեցու պատերին, իսկ մեկը՝ Սեթի Պահլավունու եկեղեցու վրա:

Դրանց հեղինակը Ապուղամր իշխանի որդին էր, արքեպիսկոպոս Գրիգորը՝ Պահլավունի հայտնի տոհմից: Նա իր այդ հրամանագրով վերացրել էր թաղման հարկը, ըստ որի յուրաքանչյուր մեռելից վերցրել են 11 դրամ: Հավանական է, որ Գրիգոր արքեպիսկոպոսն իր այդ կար-

գադրություն-օրենքը արձակել է Զաքարյան իշխանների համաձայնությամբ, թերևս, նույնիսկ, վերջիններիս խորհրդով։

Նա հարկադրված է լինում հաջորդ տարում անել մի այլ կարգադրություն, այս անգամ աթոռին տրվող Շիրակի յուրաքանչյուր գյուղից տարեկան երկու գրիվ հացահատիկի (որը հավասար է շուրջ 20 կգ-ի) և Անիի յուրաքանչյուր եկեղեցուն զատկի տոնին պարտադիր կարգով մեկական մորթի տալու հարկի վերացման վերաբերյալ, այդ մասին հաջորդ՝ 1217 թվականին դարձյալ Առաքելոց եկեղեցու պատի վրա թողնելով մի այլ արձանագրություն։

Տուրքերի մասին խոսելիս նախ և առաջ պիտի նկատի ունենալ, որ դրանք լրացուցիչ պարտավորություններ էին, եկեղեցին երբեք և ոչ մի պայմաններում իր հիմնական հարկերից չի հրաժարվել։ Երկրորդ, եթե յուրաքանչյուր գյուղից վերցվող երկու գրիվ (մեկ գրիվը հավասար է 9,792 կգ-ի) հացահատիկն այնքան էլ մեծ քանակություն չէր (թեպետև անբերրի տարիներին, մանավանդ փոքր գյուղերը, այդքանն էլ դժվարությամբ կարող էին տալ), ապա նույնը չի կարելի ասել Անիում զատկի տոնին յուրաքանչյուր եկեղեցու մեկ մորթի (որ կարող էր լինել նաև խոշոր անասունի՝ կովի կամ եզան կաշի, ինչպես կարելի է եզրակացնել Վրաց կաթողիկոսի 1218 թվականի արձանագրությունից) տալու պարտադիր կարգի մասին։ Պետք է նկատի ունենալ, որ քաղաքն ուներ հարյուրավոր եկեղեցիներ և այդ մորթիները բնակչությունը կարող էր դրանց տալ միայն դրամով ձեռք բերելուց հետո, որ բավական դժվար էր քաղաքացիների համար։

Անիի արքեպիսկոպոս Գրիգորի 1217 թվականի այդ կարգադրությունն ամենայն հավանականությամբ ուղղակի կապի մեջ է գտնվում Վրաց կաթողիկոս Եպիֆանի 1218 թվականի համանման արձանագրության հետ, որը նա թողել է Անիում, այստեղ այցելելուց և բնակչության ու հոգևորականների միջև եկեղեցու կողմից անօրինական տուրքերի առիթով հակասություններին ու խմորումներին ծանոթանալուց հետո։ Իր ընդարձակ արձանագրության մեջ կաթողիկոսը տեղի հոգևորականների անօրինական տուրքերի ու գանձումների վերաբերյալ նշելուց և դրամական հարկը ուժի մեջ թողնելուց հետո՝ կարգադրություն է անում վերացնելու մորթու (արձանագրության մեջ՝ «կովի կաշվի») տուրքը, իբրև անօրինական։

Ուշադրության արժանի է նաև վերը նշված՝ Գրիգոր արքեպիսկոպոսի՝ Առաքելոց եկեղեցու արևելյան մասի կենտրոնում 1227 թվականին թողած արձանագրությունը, ըստ որի Անիի արքեպիսկոպոսը ստիպված

էր վերացնել քաղաքացիների կողմից «մահուան աւրն» եկեղեցիներին տրվող տուրքը:

Թեպետև եկեղեցուն տրվող հիմնական հարկը՝ «պտուղը» (կամ «տասանորդ») բոլոր դեպքերում մնում էր ուժի մեջ, և փոփոխությունները վերաբերում էին միայն զանազան տուրքերին, որոնց մի մասը սահմանվում էր միանգամայն կամայականորեն, այնուամենայնիվ, որոշ տուրքերի վերացումը արդյունք էր ժողովրդական հուզումների և անբավականությունների: Ի. Վ. Ջավախիշվիլին, իրավացիորեն, Վրաց Եպիֆան կաթողիկոսի վերը նշված արձանագրություն-կարգադրությունը ուղղակի համարում է Անիի բնակչության ու իրենց պահանջներն օրավուր ավելացնող հոգևորականության բախման արդյունք, ֆեոդալ-եկեղեցու դեմ ուղղված յուրահատուկ սոցիալական շարժման արդյունք:

12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի սկզբներին Անիում գույքային հարաբերություններն ու սոցիալական երևույթները էապես չէին տարբերվում նախորդ ժամանակների համանման երևույթներից: Հասարակական կարգը նույն ֆեոդալականն էր, միայն այն տարբերությամբ, որ նախկինից եկող որոշ երևույթներ զարգացել ու նոր ձևեր էին ընդունել, ինչպես նաև ժամանակի ազդեցության տակ հասարակական-գույքային հարաբերությունների բնագավառում տեղի էին ունեցել ուշադրության արժանի որոշ փոփոխություններ:

Այդ ժամանակներում ֆեոդալական և եկեղեցական սեփականատիրական իրավունքը հասնում է մեծ չափերի: Նույնիսկ Անի քաղաքն, որ ուներ ներքին այնքան լայն իրավունքներ, ինքնավարական մարմիններ, բազմամարդ քաղաքային դաս, այնուամենայնիվ, Ն. Մառի արտահայտությամբ ընդհանրապես Հայաստանի և Վրաստանի քաղաքների նման այն էլ համարվում էր «մասնավոր տիրույթ», տվյալ ժամանակաշրջանում պատկանելով Զաքարյան իշխաններին: Անիում տոհմական և սեփական եկեղեցիներ ունենալը դարձել էր սովորական երևույթ՝ մի քանի եկեղեցիներ ունեին Պահլավունի իշխանների շառավիղները, իր սեփական եկեղեցին ուներ մեծատուն Տիգրան Հոնենցը և ուրիշներ: Հարց է առաջանում, թե Անիում այնքան մեծ թվով եկեղեցիների գոյության պատճառներից մեկն արդյոք հենց այդ չէ՞ր. այստեղ թաղային եկեղեցիներ անհամեմատ ավելի քիչ կային, քան սեփական ու տոհմական:

Պատմագիտական առումով թվում է հարցի խիստ պարզեցում կլիներ, եթե այդ երևույթի հիմքում դնեինք միայն ֆեոդալների և մյուս մեծատունների «բարեպաշտությունը» և «ոգու փրկության համար» նրանց արած «նվիրատվություններն» ու «զոհաբերությունները», որոնք միանգամայն հասկանալի պատճառով պետք է կատարվեին այդպիսի քողի

տակ։ Իրականում և ֆեոդալները, և մեծատունները հետապնդում էին ավելի գործնական նպատակ. եկեղեցիների մասնատիրական իրավունքները ավելի հաստատուն ու անխախտ էին. դրանք ամենատարբեր եղանակով իրենց ձեռքում կենտրոնացած հարստությունների և կալվածքների մշտական տերերն էին և դրանցից զրկվելու ոչ մի վտանգ չկար, և ոչ միայն Զաքարյանների օրոք, այլ նաև հետագայում՝ օտարների տիրապետության ժամանակներում։

Արդ, մի քանի օրինակների հիման վրա տեսնենք ինչ կարգի նվիրաբերություններ էին կատարվում Անիի եկեղեցիների ու վանքերի համար մեզ հետաքրքրող ժամանակներում։

Հոգու փրկության քողի տակ եկեղեցիներին նվիրաբերվող կալվածքների և հարստությունների, եկեղեցիներ կառուցելու դիմաց պատարագի պահանջ մինչև 10-րդ դարի վիմագիր արձանագրություններում, ինչպես իրավացիորեն նշում է Թորոս Թորամանյանը, «բացարձակապես չեն տեսնվիր»։ Սակայն «Հայ կղերին հոգվո փրկության համար պատարագներ ծախելու սովորությունը այնքան չափազանցվեր է 11—12-րդ դարերուն,— գրում է նա,— որ հանձն առնված պատարագներու թիվը լիակատար իրագործելու համար բավական չէին տարվույն օրերը, ուստի ստիպված ամեն եկեղեցիներու մեջ ավելացուցեր են խորաններ՝ ավանդատուններու վրա, կրկնահարկ շիներ են ավանդատուններ հատկապես այդ նպատակով։ Կարծես այդ ալ բավական չէ եղած, եկեղեցիի արևմըտյան անկյուններուն վրա ալ շիներ են հաճախ 2—4 սենյակներ՝ պատարագի խորաններով և վերանորոգեր են հնադարյան արևմտյան սենյակներու սովորությունը, այս անգամ հիներեն բոլորովին տարբեր նպատակով մը»։ Այսպիսով, չբավարարվելով եկեղեցիները սեփականացնելուց, ժամանակի ընթացքում դրանք դարձրել են եկամտի աղբյուրներ՝ տարբեր քանակությամբ պատարագների դիմաց ստանալով կալվածքներ, թանկագին իրեր ու սպասք, մեծ քանակությամբ անշարժ գույք։ Ընդ որում, տոհմական (և մասնավոր) եկեղեցիներն ամբողջապես գտնվում էին դրանց տիրոջ՝ իշխանի և անմիջականորեն եկեղեցիների պատրոնների իրավասության ներքո, անշուշտ իր հերթին չդադարելով եպիսկոպոսական թեմին ենթարկվելուց։

Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ Անիի ավելի քան 250-ի հասնող մեզ հայտնի վիմագիր արձանագրությունների մեծագույն մասը նվիրատվական է՝ վերաբերում է եկեղեցիներին արված նվիրատվություններին։ Նվիրվող կալվածքները, անշարժ գույքը, թանկագին սպասքն ու իրերը, ձեռագրերը և այլն այնքան բազմազան են, որ նույնիսկ հնարավոր չէ դրանց սոսկ թվարկումը։ Այնուամենայնիվ, դրանցից կարելի

է նշել՝ ամբողջական գյուղեր, վարելահողեր ու այգիներ, կրպակներ ու պանդոկներ, ձիթհանքեր ու ջրաղացներ, բաղնիքներ ու հյուրատներ, տներ ու տեղական ջրմուղներ («միլ»-եր), մարագներ, ախոռներ, եկեղեցական զանազան իրեր ու թանկարժեք սպասք, ձեռագրեր, դրամ, տարբեր օբյեկտներից հարկ հավաքելու իրավունք և այլն, և այլն: Անիի տասնյակների հասնող նվիրատվական արձանագրությունների մեջ և իր ծավալով ու բովանդակությամբ, և լավ պահպանված վիճակով առանձնահատուկ ուշադրության է արժանի քաղաքի Զաքարյանների իշխանության ժամանակի ամենահայտնի հարուստներից մեկի՝ մեծատուն Տիգրան Հոնենցի թողած արձանագրությունն իր անվան եկեղեցու հարավային պատի վրա: 1215 թվականին վերաբերող այդ արձանագրությունը նախ տեղեկություններ է հաղորդում դրա հեղինակի՝ Տիգրան Հոնենցի տոհմագրության, սուրբ Գրիգոր եկեղեցու («վանքի») կառուցման, դրա բարեկարգման մասին և ապա թվարկում այն բոլոր նվիրաբերումները, որ կատարել է մեծատունն իր եկեղեցուն, վերջում նշելով նաև իր կողմից կառուցված Բեխենց վանքի մասին:

Արձանագրությունն ի լուր ժամանակակիցների և հետագա սերունդների ազդարարում է, որ Տիգրան Հոնենցը, Զաքարյանների ենթական («ծառա»-ն), դրամով գնել է ս. Աստվածածին մատուռի քարքարոտ ու մացառոտ վայրը, որը մեծ գումարներ ծախսելով պատել է պարսպով և նույն տեղում կառուցել ս. Գրիգոր Լուսավորիչ վանքը՝ այն զարդարելով ոսկե ու արծաթե խաչերով, կանթեղներով, սպասքով, ոսկեզօծ ու արծաթազօծ նկարներով, վանքին կից շինելով բազմազան բնակարաններ՝ վանականների, քահանաների ու իշխանների համար: Ղ. Ալիշանը և նրան հետևելով Հ. Մանանդյանը ի մի բելերով անեցի այդ մեծահարուստի նվիրաբերած միայն կալվածքներն ու գույքը՝ գրում են, որ նա հայրենատիրական իրավունքով ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցուն է նվիրել 8 գյուղ, 6 այգի, մեկ խանապար և Պապենց կոչված խանապարի 2/3-ը (4 դանգը), Հատեցոնց փողոցում գտնվող բոլոր տները, նշված խանապարին կից եղած բոլոր կրպակները (կուղպակներ) և Պապենց խանապարի մոտ գտնվող խանութը, 2 բաղնիք, ջրմուղի մեկ կետ («միլ»), երկու ակն ձիթհանք, երեք ջրաղացի տարբեր հատվածներ, մի քանի ախոռներ և մարագներ, երկու բանջարանոց («պահեզ»), Արոտավայրի լանջ կոչված հողամասը, քաղաքի տարբեր մասերում գտնըվող տարբեր կարգի հողակտորներ և այլն: Սակայն այդքանով չէր սահմանափակվում Տիգրան Հոնենցի բարեպաշտական նվիրատվությունները: Նա դրանից երկու տարի առաջ՝ 1213 թվականին կառուցել (կամ

վերանորոգել) էր Կաթողիկե եկեղեցու աստիճանները և այլ նվերների հետ միասին տաճարին էր տվել «գանձագին կուղպակն»:

Նման կարգի, բայց ավելի համեստ չափերի նվիրատվություններ են արել բազմաթիվ այլ անձնավորություններ՝ սկսած շարքային արհեստավորից մինչև հայտնի իշխաններն ու մեծատունները ներառյալ, այդ մասին թողնելով վիմագիր համապատասխան արձանագրություններ:

Եկեղեցիների ունեցվածքը, դրանց տրվող «պտղի» հարկի իրավունքը, քահանաներին տրվող զանազան հասույթները՝ բոլորը ստացել էին իրավական ճանաչում և հիմնավորված են Մխիթար Գոշի «Դատաստանագրքով», որտեղ մի քանի հոդվածներ են տրամադրված դրանց նորմավորմանը:

Տիգրան Հոնենցի թողած արձանագրությունից տեսանք, որ նա մեծ նվիրատվությունների հետ միասին կառուցել է երկու եկեղեցի՝ ս. Գրիգոր Լուսավորիչը (Տիգրան Հոնենցի) և Բեխենց կոչված վանքը, ինչպես և վերանորոգել է Կաթողիկե եկեղեցու աստիճանները: Սակայն Տիգրան Հոնենցը ո՛չ միակ նվիրատուն է, և ո՛չ էլ իր ծախսերով միակ եկեղեցի կառուցողը: Անիում գոյություն ունեին տոհմական տասնյակ եկեղեցիներ, որոնք կառուցված էին այս կամ այն բարերարի միջոցներով ու հոգացողությամբ:

Անիի բնակչության տարբեր խավերի ներկայացուցիչներ քաղաքում 12—13-րդ դարերում կանգնեցրել են բազմաթիվ հուշաքարեր, որոնք հիմնականում դրվել են պաշտպանական պարսպապատում, եկեղեցիների վրա և նշանավոր այլ կառույցներում: Այդ հուշաքարերը հայ վիմագրության մեջ սովորաբար կոչվել են «արձան»-ներ կամ «սուրբ նշան»: «Արձան»-ների կանգնեցումը նույնպես համարվել է մեծ բարեպաշտություն և դրա համար էլ այդ մասին յուրաքանչյուր դեպքում քանդակվել է վիմագիր արձանագրություն:

Մեծ բարեպաշտություն և հայրենասիրություն էր համարվում նաև քաղաքի պաշտպանական համալիրում, հատկապես պարսպի տարբեր հատվածներում նոր բուրգեր կառուցելը, հների վերանորոգումը, դարպասները վերանորոգելն ու վերակառուցելը և այլն:

Վիմագիր արձանագրությունների հաղորդած տեղեկություններից, Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» մի ամբողջ շարք հոդվածներից և պատմագիրների կցկտուր վկայություններից ակնհայտ է դառնում, որ տակավին 10—11-րդ դարերում, ֆեոդալիզմի զարգացման զուգընթաց սկսված կալվածքների, ամբողջական գյուղերի և, նույնիսկ, քաղաքների, անշարժ գույքի առ ու վաճառքը, գրավ դնելը, վաճառությունը 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի սկզբներին հասնում են ավելի մեծ չա-

փերի։ 11-րդ դարի պատմագիր Արիստակես Լաստիվերտցին արդեն տըրտընջում է, որ օրենք է դարձել վաշխառուների տված փողի դիմաց տոկոսներ վերցնելը։ Իսկ Մխիթար Գոշի «Դատաստանագրքում» տեղ են գտել և՛ գրավի իրավական սահմանումին, և՛ ամենատարբեր տեսակի անշարժ գույքի առ ու վաճառքի և ժառանգման, եկեղեցական ունեցվածքի իրավական նորմերին վերաբերող բազմաթիվ հոդվածներ։ Միայն Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» գույքային հարաբերություններին՝ առ ու վաճառքին, գրավ դնելուն, ժառանգելուն վերաբերող հոդվածները բավական են, որպեսզի գաղափար կազմենք, թե ինչպիսի եռանդուն գործունեություն կլինեին ծավալած այդ ժամանակվա վաշխառուները, խոշոր վաճառականները, կապալառուները։ Սովորաբար միևնույն մեծատունը և՛ վաշխառու էր, և՛ խոշոր վաճառական, և՛ կապալառու։

Անիի վիմագիր արձանագրություններն առատ նյութեր են տալիս քաղաքում մեզ հետաքրքրող ժամանակներում ծավալված առանձին անհատների առևտրական, վաշխառուական և կապալառուական գործունեության մասին։ Վաշխառու-առևտրական-կապալառուն, որի տիպիկ ներկայացուցիչներից Անիում Տիգրան Հոնենցն էր, հարստանում էր ոչ միայն լայնածավալ առևտրական գործարքներից, կապալառությունից, տոկոսով դրամ տալուց, այլև դրամի դիմաց գրավ դրված կալվածքների սեփականացմամբ, որովհետև վաշխառուն չէր բավականանում միայն իր տված փողի դիմաց տոկոսների ստացմամբ, նա աստիճանաբար իր ձեռքն էր վերցնում գրավ դրված կալվածքը, տունը կամ այլ անշարժ գույքը։ Վաշխառուի ընչաքաղցության մասին Կ. Մարքսը գրում է. «Վաշխառուն իր զոհի հավելյալ աշխատանքը դուրս քամելով չբավականացած՝ հետզհետե իր ձեռքն է գցում բուն իսկ նրա աշխատանքի պայմանները՝ հողի, տան և այլոց գույքատիրողները, և միշտ այն բանով է զբաղված, որ այսպիսով նրան սեփականազրկի»։

13-րդ դարի սկզբներին Անիի հասարակությունը տրոհված էր տրամագծորեն իրար հակադիր խմբերի, որոնք իրենց հերթին մասնատված էին զանազան ենթաշերտերի՝ դասերի։ Քաղաքի բնակչության ցածրագույն շերտը կազմում էին տնանկները, որոնք իրենց գոյությունը մի կերպ պահպանում էին աշխատելով օրավարձով, ծառաներն ու աղախինները, որոնց վիճակը գրեթե ստրկական էր, և շինականները, որոնք հիմնականում բնակվում էին քաղաքի արվարձաններում և զբաղվում գյուղատնտեսությամբ։ Այդ բոլորի իրավական վիճակն արտահայտված է Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» համապատասխան հոդվածներում, ինչը քաջ հայտնի է հայագիտությանը։ Հենց այդ է եղել Ֆրիկի «Գան-

գատ» հայտնի բանաստեղծության («Մէկն ի պապանց պարոնորդի Մէկն ի հորանց մուրող լինի...») հասարակական-սոցիալական հիմքը՝ դրդապատճառը:

Իրավական և տնտեսական առումով տարբեր աստիճանի վրա էին գտնվում նաև քաղաքի բուն բնակիչների՝ արհեստավորների և առևտրականների տարբեր խմբերը: Վարպետ-արհեստավորները շահագործում էին իրենց աշակերտներին ու ենթավարպետներին: Նրանք աշակերտներին արհեստ սովորեցնելու հետ միասին, նրանց ծանրաբեռնում էին ամենածանր ու սև աշխատանքով: Աշակերտները պարտավոր էին վարպետի տան համար ջուր բերել, փայտ ջարդել, թոնիր վառել և այլն: Տարածված էր ծեծը, արհեստ սովորեցնելու ժամկետների կամայական երկարաձգումը: Նախանձելի չէր նաև վարպետացուների (վարպետի օգնականների) տնտեսական ու իրավական վիճակը, թեպետև դրանք աշակերտների համեմատությամբ ունեին որոշ արտոնություններ: Վարպետացուները մասնակցում էին արտադրության որոշ պրոցեսներին և կատարում զանազան աշխատանքներ (բայց երբեք չհամարվելով համքարության անդամ) և ամբողջապես ենթարկվում էին վարպետներին: Նույն կարգի շերտավորումներ կային նաև առևտրականների խմբերում՝ աշակերտից ու հասարակ գործակատարից սկսած մինչև մեծահարուստ վաճառականները ներառյալ: Բայց կարելի է նաև ենթադրել, որ առևտրականներն ընդհանրապես իրենց իրավական դրությամբ արհեստավորներից ավելի բարձր էին գտնվում:

Շերտավորումը հատուկ էր նաև հասարակության բարձր խավերի համար: Դրանցում որոշ խմբեր գոյություն ունեին դարեր առաջ և ստեղծված պայմաններում ենթարկվել էին որոշ փոփոխության: Մեր խոսքն առանձնապես վերաբերում է ազնվականական-իշխանական դասին, որի տիպիկ ներկայացուցիչներն Անիում այդ ժամանակներում Զաքարյաններն էին, իրավական տեսակետից Վրաց թագավորների ենթակաները, իսկ իրականում միանգամայն ինքնուրույն իշխողներ, որոնք սուվերեն էին համարվում մյուս բոլոր հայ իշխանների համար, հայրենական իրավունքով իրենց ձեռքում էին կենտրոնացրել հսկայածավալ երկրամասեր և համարվում էին նաև Անիի իրավական տերերը:

Իրականում երկրի և Անի քաղաքի մասշտաբով պակաս դեր չէին խաղում նաև, այսպես կոչված, մեծատունները, որոնք կազմում էին հասարակության մի առանձին խավ: Դրանց առաջացումը կապված էր դրամական տնտեսության, առևտրի, վաշխառության հետևանքով հասարակության դասակարգային հետագա տրոհման խորացման հետ: Այդ նոր

խավն սկսեց ձևավորվել տակավին Բագրատունիների թագավորության ժամանակներում և ավելի մեծ դիրք ձեռք բերեց Զաքարյանների օրոք: Ի տարբերություն ազնվական հողատերերի, որոնք հիմնականում կապված էին գյուղի հետ, ֆեոդալական դղյակի հետ, ֆեոդալիզմի հետագա զարգացմամբ առաջացած այդ խավը՝ «մեծատունները» (որոնց հայագիտության մեջ երբեմն թյուրիմացաբար կոչել են «կապիտալիստ») անխախտ կերպով կապված էին առաջին հերթին քաղաքի հետ և այստեղ էին կառուցում (կամ դրամով գնում) իրենց տոհմական «գանձագին» եկեղեցիները, մասնակցում քաղաքի պաշտպանական կառուցվածքների ստեղծմանը՝ հիմնականում զբաղվելով վաշխառությամբ, առևտրով, կապալներով, անշարժ և շարժական գույքերի գնմամբ, ինչպես նաև բարեգործական աշխատանքներով:

Զաքարյանների ժամանակներում և հետագա մի քանի տասնամյակների ընթացքում Անիում ու Հյուսիսային Հայաստանում հայտնի «մեծատուններն» արդեն ունեին աշխարհիկ ծագում, թեպետև դրանք բոլորն իրենց գործունեությամբ, հատկապես բարեգործական գործարքներով, սերտորեն կապված էին եկեղեցու հետ: Ինչպես ասվեց, Զաքարյանների իշխանության օրոք Անիի «մեծատուններից» ամենահայտնին Տիգրան Հոնենցն էր, որը վիմագիր արձանագրությունների մեջ ամենուրեք իրեն համարում է Զաքարե Ամիրսպասալարի և նրա որդու՝ Շահնշահի ծառան ու սպասավորը, ենթական: Տիգրանի և նրա կարգի մյուս «մեծատունների» ձեռքին էր կուտակվել երկրի հարստությունը:

Եթե դատելու լինենք Տիգրան Հոնենցի կատարած բարեգործական աշխատանքների մասին, նկատի ունենալով դրանց ծավալն ու մեծությունը, ապա կարելի է ենթադրել, որ նրա անշարժ ու շարժական գույքը, դրամը, մյուս հարստությունները միասին վերցրած հավանաբար գնահատվում էին միլիոններով: Իր անբավ հարստությունների շնորհիվ էր, որ Տիգրան Հոնենցը դարձել էր Անիի ամենահայտնի քաղաքացին: Այստեղ նրա անունով նույնիսկ կար հատուկ փողոց: Սակայն Անիի 12-րդ դարի վերջերի և 13-րդ դարի սկզբների «մեծատունները» հավանաբար չէին սահմանափակվում միայն Տիգրան Հոնենցով: Նա ամենահայտնին էր, բայց ոչ միակը:

Երկրի տնտեսական կյանքի զարգացման հետևանքով առաջացած այդ նոր խավը՝ «մեծատունները», 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի սկզբներին դարձել էին կարևորագույն դեմքեր, երկրի ներքին կյանքի շատ կողմերի տնօրինողներ, երբեմն նույնիսկ կրելով պարոններ կամ պատրոններ տիտղոսները:

## 4. ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Երկրի ներքին լայն ինքնուրույնությունը, հաստատուն խաղաղությունը, տնտեսական կյանքի ընդհանուր զարգացումը, քաղաքային կյանքի վերելքը, արտաքին լայն կապերը նպաստեցին Անիում բուռն քաղաքաշինություն ծավալելուն: Հայ ճարտարապետության պատմության նահապետի արտահայտությամբ կարճ ժամանակամիջոցում «անհավատալի արագությամբ ամբողջ երկիրը ծածկվել է նոր ոճի նոր գեղեցկություններով զարդարված անթիվ հիշատակարաններով: Այս շրջանին մեջ ոչ միայն շինվեր են տաճարներ, այլև բերդեր, կամուրջներ, ձեռագործ ճանապարհներ և այլ բազմաթիվ հասարակական շինություններ»:

Հյուսիսային Հայաստանում կատարվող այդ բուռն շինարարության մեծ մասը բաժին է ընկնում Անիին՝ երկրի մեծագույն կենտրոնին: Ընդամենը երեք-չորս տասնամյակների ընթացքում Անիում վերականգնվել են ավերված եկեղեցիները, վերանորոգվել խարխլվածները՝ վանքերը, հասարակական շենքերը, քաղաքի պաշտպանական պարիսպները, կառուցվել են նոր եկեղեցիներ ու տաճարներ, բուրգեր ու պարսպահատվածներ, հյուրանոցներ, խանութներ, արհեստանոցներ, բնակելի տներ, պալատներ, կամուրջներ, վերաշինվել է Բագրատունիների պալատը և այլն:

Նշված ընդհանուր պատճառներից բացի, Անիի քաղաքաշինության ծավալման համար գոյություն ունեին նաև ներքին, յուրահատուկ նըպաստավոր պայմաններ: Բանը նրանում է, որ Անին մագնիսի պես դեպի իրեն էր ձգում երկրի լավագույն կառուցողներին ու ճարտարապետներին: «Հարուստ, վերակենդանացած Անին այնպես, ինչպես Բագրատունյաց ժամանակ, անկասկած, դեպի իրեն էր գրավում ստեղծագործող լավագույն ուժերը, որոնք այստեղ գտնում էին իրենց արժանավոր կիրառությունը»— գրում է Ն. Տոկարսկին: Եվ այդ ստեղծագործող լավագույն ուժերը քաղաքը նորանոր կոթողներով զարդարելու համար պատվերներ էին ստանում հասարակության տարբեր խավերից և, նույնիսկ, գեղեցիկ սեռից:

Քաղաքաշինության մասին մենք մեր խոսքն սկսում ենք եկեղեցիներից՝ պարզապես գտնելով, որ եկեղեցապաշտ քաղաքում Զաքարյանների իշխանության օրոք նույնպես ամենածավալուն շինարարական աշխատանքները կենտրոնացած էին այդ բնագավառում: Եկեղեցիներ կառուցելը, դրանց նվիրաբերումներ անելը, փլված եկեղեցիները վերա-

կանգնելը և հնից եկող եկեղեցիները վերանորոգելն ու նոր կառույցներով վերափոխելը համարվում էր մեծ բարեպաշտություն և հասարակության տարբեր խավերի շատ ներկայացուցիչներ՝ իշխաններ, ազնվականներ, հարուստ քաղաքացիներ, հոգևորականներ և այլք իրենց հնարավորության սահմաններում մասնակցում էին եկեղեցաշինությանը ու եկեղեցիների հարստացման գործին։

Զաքարյանների օրոք Անիում կառուցվել են բազմաթիվ եկեղեցիներ, մատուռներ, գավիթներ։ Եկեղեցական բուռն շինարարություն է կատարվել ոչ միայն վերգետնյա քաղաքում, այլև Այրային Անիում։ Վերջինիս ժայռափոր թաղամասերը նույնպես ունեին իրենց փոքրիկ եկեղեցիները՝ մատուռները, որոնք շատ դեպքերում ներկայացնում էին ճարտարապետական ինքնուրույն համալիրներ, ունենալով իրենց նախամուտքը, գավիթը, աղոթարանը և, դարձյալ ժայռափոր, մկրտման ավազանը։ Լավ հայտնի են Զաքարյանների ժամանակաշրջանում կառուցված միայն այն եկեղեցիները, որոնք իրենց ճարտարապետությամբ ու խաղացած դերով առանձնահատուկ նշանակություն են ունեցել։ Դրանք թվով չորսն են՝ Տիգրան Հոնենցի 1215 թվականին կառուցած Գրիգոր Լուսավորիչը («Նախշլու»), նույնի կառուցած Կուսանաց վանքի եկեղեցին, ինչպես և Բախտաղեկի և Աղջկաբերդի եկեղեցիները։

Նոր եկեղեցիներ կառուցելու հետ միասին, մեզ հետաքրքրող ժամանակներում, ինչպես ասվեց, զգալի աշխատանքներ են կատարվել նաև նախորդ ժամանակներից տարբեր վիճակում 13-րդ դարի սկզբները հասած մի շարք եկեղեցիների վրա։ Այդ կարգի աշխատանքներ են կատարվել ս. Աստվածածին, ս. Սարգիս, Կաթողիկե և բազմաթիվ այլ եկեղեցիների վրա։

Անիի պաշտպանական համալիրում, չհաշված Բագրատունիները, որ այդ համալիրի ստեղծման հեղինակներն են, ամենաեռանդուն ու ծավալուն աշխատանքներ են կատարել Զաքարյաններն իրենց իշխանության մի քանի տասնամյակների ընթացքում, ընդհանուր քաղաքաշինության հետ միասին։ Զաքարյանների օրոք կառուցվել են հսկա բուրգեր ու աշտարակներ, մի շարք հատվածներում վերանորոգվել են հին պարսպապատերը, հաստացվել նոր շերտով, իսկ մի քանի հատվածներում էլ կանգնեցվել է պարսպապատի նոր գիծ։ Ականատեսների ու մասնագետի կարծիքով, օրինակ, Զաքարյանների օրոք (1208 թ.) Սմբատյան պարըսպի Գայլիձոր-Իգաձոր հատվածը դարձվել է կրկնաշարք։

Զաքարյան ժամանակաշրջանի այդ բուռն պարսպաշինությունն ու բուրգաշինությունը՝ քաղաքի ամրացման համար այդքան եռանդուն գործունեությունը Թ. Թորամանյանը միանգամայն իրավացիորեն բացատը-

րում է նրանով, որ քաղաքական դրությունն անապահով էր, քաղաքն ամեն րոպե կարող էր ենթարկվել օտարների ներխուժումներին։

Ինքը՝ Զաքարե սպասալարը աթոռանիստ Անիի պարիսպներում կառուցել է տվել մի քանի բուրգ, իսկ մյուս՝ ստվար թիվ կազմող բուրգերն ու աշտարակները կառուցվել են ուրիշների կողմից։ Այդ բոլորով հանդերձ, չպետք է ստացվի այն տպավորությունը, թե Անիի ամրացման համար իբր Զաքարյանների ժամանակ ավելի մեծ գործ է կատարվել, քան Բագրատունիների թագավորության օրոք։ Չէ որ, ինչպես ասվեց, քաղաքի պաշտպանության համալիրը, ներառյալ և Ստորերկրյա ու Այրային Անիները, ստեղծվել էր Բագրատունիների օրոք, և Զաքարյաններն այն հասցրել են ավելի կատարյալ աստիճանի։ Զաքարյանների օրոք քաղաքի պարսպապատերն ունեցել են 80 աշտարակ (ըստ ոմանց՝ նույնիսկ 90), որոնցից 55-ը դասավորված էին երկու շարքով, 11 դարպաս կամ դուռ և 3 դռնակ։ Հիմնականում Զաքարյանների ժամանակաշրջանի արտաքին տեսքով է, որ Անիի պաշտպանական պարիսպներն ու բուրգերը, տարբեր վիճակում, հասել են մինչև մեր ժամանակները։

Պաշտպանական և ճարտարապետական առումով Զաքարյանների ու քաղաքացիների կառուցած բուրգերը, բոլորը ինչ-որ չափով նման են իրար։ Կարծես ճարտարապետն ու զորավարը դրանք կառուցել են համատեղ ջանքերով և համահունչ են քաղաքի պաշտպանական համալիրի կառուցվածքային ու նախագծային առանձնահատկությունների հետ։ Ընդ որում, տարբեր ժամանակներում կառուցված պարսպահատվածները, բուրգերը և պարիսպների քարապատումը իրարից տարբերվում են իրենց շարվածքի ձևով, քարերի մեծությամբ, պարսպի կամ բուրգի բարձրությամբ և այլն, որով և հնարավոր է դառնում որոշել դրանց կառուցման մոտավոր ժամանակը։

Կառուցողական հիշատակագիր-վիմագիր արձանագրությունները, որոնք վերաբերում են քաղաքի պաշտպանական համալիրին՝ պարիսպներին, բուրգերին ու դռներին, բովանդակությամբ իրար հար ու նման են։ Դրանցում նշվում են բուրգի, պարսպի, դռան կամ պարսպապատի որևէ հատվածի կառուցման թվականը, կառուցողը (այսինքն այն անձնավորության կամ անձնավորությունների անունները, որոնց միջոցներով կատարվել է տվյալ կառուցումը), ում հիշատակին է նվիրված տվյալ կառույցը՝ վերջում ավելացնելով իրենց թողած հիշատակագիրը կարդացողներին ուղղված խոսքերը՝ իրենց առհավետ հիշելու խնդրանքով։

Մեկ և կես տասնյակի են հասնում պաշտպանական շինարարական արձանագրությունները, որոնցից 14-ը գտնվում են պաշտպանական պարըսպի ու բուրգերի վրա, իսկ մեկը՝ Մայր տաճարի։

Զաքարյանների իշխանության ժամանակաշրջանում կառուցվել են շքեղ տներ ու պալատներ, վերականգնվել են շարքային քաղաքացիներին պատկանող տարբեր կարգի առանձնատներն ու սովորական բնակարանները, խրճիթները, որոնք ավերվել էին թշնամական հարձակումների հետևանքով և օտարի ծանր տիրապետության ժամանակաշրջանում հնարավոր չի եղել քաղաքն ընդհանրապես բերել իր նախկին տեսքին։

Դժվար է այդ զանազանակերպ տները ենթարկել շատ թե քիչ ընդունելի խմբավորումների։ Համենայն դեպս մատենագրության և վիմագրության մեջ հիշատակվում են պալատներ կամ ապարանքներ, սարավույթով տներ, առանձնատներ և սովորական տներ։ Ղ. Ալիշանը, չհաշված Բագրատունի Հովհաննես-Սմբատ թագավորի օրոք Ապլղարիբ մարզպանի կառուցած ապարանքը, վիմագիր արձանագրությունների հաղորդած տեղեկությունների հիման վրա, նշում է Անիում կառուցված (մեծամասամբ 13-րդ դարում) հիշատակության արժանի մի շարք տներ՝ Խաչատուրի «սարաւոյթով տուն»-ը, «տունք Տիգրանայ», «Բակուրանայ տներն», «Խաչատրոյ տունն» Ապուղամրենց ս. Գրիգոր եկեղեցու մոտ և այլն։ Հնագիտական պեղումների ընթացքում կատարված ուսումնասիրությունների շնորհիվ բնութագրվել են Անիի սովորական բնակելի տների առանձնահատկությունները՝ սենյակների քանակը, դասավորությունը, մեծությունը, պատերի շարվածքը, առաստաղի ծածկը, օժանդակ հարմարությունները և այլն։ Սակայն ցավով պիտի ասել, որ դրանց կառուցման ժամանակն անհնար է ճշտել և դժվար է ասել, թե դրանցից որոնք են կառուցվել Զաքարյանների օրոք, իսկ որոնք՝ հետագայում։ Միայն իբրև ընդհանուր երևույթ պիտի արձանագրել, որ Անիի բնակելի տների ավերակները, ինչքանով պարզել են պեղումները, մի քանի շերտ են կազմում և ներքևում գտնվող հին շերտերի բնակելի տների հետքերից երևում է, որ դրանք ավելի քաղաքատիպ են եղել, քան հետագայում՝ 13-րդ դարից հետո կառուցվածները։ Վերջիններիս մեծ մասը կիսաքոչվորական ժողովուրդներին հատուկ անշուք խրճիթներ էին, կառուցված հին, շքեղ շենքերի ավերակների վրա՝ երբեմն օգտագործելով վերջիններիս սրբատաշ քարերը։

Պատմաճարտարապետական առումով մեծ հետաքրքրություն են ներկայացնում մեզ հետաքրքրող ժամանակներում կառուցված իշխանական երկու պալատները, որոնցից մեկը պայմանականորեն կոչել են «Իշխանի» կամ «Պարոնի» պալատ, իսկ մյուսը՝ «Սարգսի»։ Անիում ամենայն հավանականությամբ այդպիսի ուրիշ ապարանք-պալատներ ևս կային, որոնք մեզ համար մնում են անհայտ։ Հնագիտական պեղումները կատարվել են վաղեմի քաղաքի միայն մի փոքր մասում, իսկ Զաքարյան-

ների ժամանակ, ինչպես ցույց է տալիս Իշխանի կամ Պարոնի պալատի տեղադրությունը (այն գտնվում էր քաղաքի հյուսիս-արևմտյան անկյունում), իշխանական-ֆեոդալական և «մեծատունների» ապարանքները կարող էին լինել ոչ թե քաղաքի կենտրոնում, այլ ծայրամասերում՝ մեկուսացած ու գեղեցիկ համայնապատկեր ունեցող տեղերում: Դրանք, ինչպես և Բագրատունիների ժամանակ կերտված տասնյակ կոթողներ, անհետ կորել են մեզ համար: Ի դեպ մեզ թվում է, որ հատկապես Զաքարյանների շրջանում պետք է կառուցված լինեին բավական թվով ապարանքներ: Նախ, ինչպես երևում է, եթե Բագրատունիների շրջանում պալատ կառուցողները գրեթե բացառապես իշխաններն էին, որոնք այնուամենայնիվ սահմանափակ թիվ էին կազմում, ոչ բոլորն իրավունք ունեին և ոչ բոլորը կարող էին կառուցել պալատներ, ապա Զաքարյանների ժամանակ իրադրությունը մի փոքր այլ էր: Քաղաքում հաստատված իշխաններն ու ազնվականները, «մեծատունները», հարուստ վաճառականները կառուցում էին շքեղ տներ՝ կատարյալ ապարանքներ, որոնք, հավանաբար, ըստ էության չէին զիջում վերը նշված պալատներին: Տրամաբանության թելադրանքով կարելի է կռահել, որ եկեղեցիներ կառուցող ու վերակառուցող Տիգրան Հոնենցը, որ միայն բարեգործական նպատակներով ծախսում էր ահռելի միջոցներ, հազիվ թե ժլատություն աներ և իր սեփական տունը չկառուցեր պալատի շքեղությամբ:

Բագրատունիների պալատի պեղումները ցույց են տվել, որ այն 12—13-րդ դարերում ենթարկվել է որոշ վերաշինման և վերանորոգումների: Մասնավորապես նշվում է, որ այն հարստացվել ու ճոխացվել է որմնանկարներով զարդարված դահլիճներով և օժանդակ սենյակներով: Պալատի դահլիճներում հայտնաբերված գիպսե նախշազարդերը նույնպես, որոնք շարված էին առաստաղի քիվերի ուղղությամբ, համարում են զաքարյան ժամանակաշրջանի հարդարանքներ:

12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի առաջին տասնամյակներին Անիում կառուցել են բազմաթիվ վաճառանոցներ՝ սկսած հասարակ կուղպակներից մինչև խանապարները ներառյալ: Վերջիններս այն հյուրատներն էին, որոնք երթևեկ վաճառականների գիշերելու համար սենյակներից («համարներից») բացի ունեին նաև առևտրի համար զանազան հարմարություններ՝ պահեստներ, խանութներ, քարավաններ սպասարկող արհեստանոցներ և այլն: Մի այդպիսի խոշոր ու շքեղ խանապար, հետազոտվել է (ոչ լրիվ) հնագիտական ուսումնասիրությունների ընթացքում: Շատերը դրա կառուցումը նույնպես վերագրում են զաքարյան ժամանակաշրջանին:

Բնակելի սովորական տների նման Անիում պեղած արհեստանոց-

ների և կրպակների մեծագույն մասը նույնպես վերաբերում է ուշ շրջանին՝ Զաքարյանների իշխանության տարիներին և, մասամբ, 13-րդ դարի երկրորդ ու 14-րդ դարի առաջին կեսերին: Ավելի հին ժամանակների արհեստանոցների ու կրպակների ավերակներն ու մնացորդները ընկած են հնագիտական ավելի խոր շերտերում. դրանք չեն նշմարվել և դուրս են մնացել հետազոտողների ուշադրությունից:

Ախուրյանի վրա, Անիի և շրջակայքի տարածքում տարբեր ժամանակներում կառուցվել են մինչև 10 կամուրջներ, որոնցից շատերը փըլվել ու վերացել են: Բազմամարդ քաղաքի ծավալուն առևտուրը և նույնքան ծավալուն տնտեսական կապերը իր գոյության ամբողջ ժամանակաշրջանում անհրաժեշտ էին դարձնում խոր ու անմատչելի կիրճով հոսող Ախուրյանի վրա կառուցել ու խնամքով պահպանել կամուրջներ: Այդ կամուրջներից մի քանիսը կառուցվել են 12—13-րդ դարերում՝ մասնավորապես Զաքարյանների իշխանության օրոք: Այդ ժամանակներում բավական թվով միաթռիչք հոյակապ կամուրջներ են կառուցվել ոչ միայն Անիում, այլև Հայաստանի մի շարք ուրիշ վայրերում (Սանահին, Ագարակաձոր և այլն):

Ըստ երևույթին ընդհանուր ծավալուն քաղաքաշինությունը վերգետնյա Անիի հետ միասին հավասարապես վերաբերում էր նաև Այրային Անիին: Այստեղ կերտված ժայռափոր բնակարանների, կրպակների, մատուռների մի մասը, անշուշտ, զաքարյան ժամանակաշրջանի գործ է: Չէ որ հենց այդ ժամանակներում է ստեղծվել նաև Տիգրան Հոնենցի տոհմական ժայռափոր պանթեոնը:

Մոտավորապես այդպիսին էր քաղաքաշինության բնույթն ու ծավալը Անիում Զաքարյանների իշխանության օրոք: Սակայն դրանցով չէին սահմանափակվում քաղաքի շինարարական աշխատանքները լայն առումով վերցրած: Քաղաքի բարեկարգումը, դրա կոմունալ պայմանների վրա կատարված աշխատանքները նույնպես կազմում են քաղաքաշինության բաղկացուցիչ մասը և անհնար է դրանք շրջանցել:

Բագրատունյաց ժամանակների նման Անին 12—13-րդ դարերում նույնպես ուներ արևելյան քաղաքներին հատուկ կառուցվածք: Այն բաղկացած էր միջնաբերդից, բուն քաղաքից և արվարձաններից: Զաքարյանների օրոք քաղաքի տարբեր մասերն ունեցել են բարեկարգման տարբեր աստիճան ու բնույթ: Քանի որ և՛ Շադադյանների, և՛ Զաքարյանների օրոք, ընդունված կարգի համաձայն, միջնաբերդը էմիրների և Զաքարյան իշխանների անմիջական աթոռանիստն էր, ապա պետք է ենթադրել, որ այնտեղ կատարված շինարարական աշխատանքներին զուգորդում էին բարեկարգման, կանաչապատման աշխատանքները: Եվ բացառված

չէ, որ Զաքարյանները իրենց աթոռանիստ միջնաբերդը բարեկարգած ու կանաչապատած լինեին Բագրատունիների օրինակով: Միջնաբերդի շենքերը մոնումենտալ էին, այնտեղ գոյություն ուներ տեղական կոյուղի, որովհետև և՛ խմելու, և՛ ոռոգելու ջուրը հասնում էր դրա ամենաբարձր կետը: Այդ բոլորը նկատի ունենալով դժվար չէ եզրակացնել, որ քաղաքի միջնաբերդը նրա մյուս բոլոր թաղամասերի համեմատությամբ ամենաբարեկարգն է եղել:

Կանաչապատման հարցը բուն քաղաքում (Հին և Նոր քաղաքներում) ավելի մեծ դժվարությունների հետ էր կապված: Չնայած Անին ուներ ոռոգման համար ջրի առատ պաշարներ, բայց դրա գրաված տարածությունը համեմատաբար փոքր էր, տեղը «նեղվածք» էր, շենքերը գրեթե կպած էին իրար և ազատ տարածություններ չկային: Այդ պատճառով էլ բուն քաղաքում լայն հրապարակներ չկային, փողոցները համեմատաբար նեղ էին (կենտրոնական փողոցների լայնքը 4—5—6 մետրից չէր անցնում) և կանաչապատման համար տարածություններ շատ քիչ կային: Սակայն փողոցների զգալի մասի սալարկումը, դրանց ուղղությամբ քարակերտ նստարաններ դնելու սովորությունը, որ գալիս էր հնից և շարունակվեց նաև հետագա դարերում, մոնումենտալ շատ շենքերի՝ տաճարների, մզկիթների, պալատների, հյուրանոցների, վաճառատների քաղաքի այդ մասում գտնվելը և ճարտարապետական առումով դրանց ակնահաճո տեղադրությունը հիմնականում քաղաքը սահմանագծող ձորերի պռնգին, այդ բոլորը Հին և Նոր քաղաքը դարձնում էին բարեկարգ ու գեղատեսիլ: Այդպիսին էր բուն քաղաքը և՛ Բագրատունիների օրոք, և՛ Զաքարյան իշխանության ժամանակներում:

Անիի արվարձաններից Հյուսիսայինը գրավում էր ընդարձակ տարածություն՝ Սմբատյան պարիսպների մոտից ձգվելով մինչև քաղաքի «հորիզոն»-ի գիծը: Սեահողային բարեբեր այդ դաշտում աղքատ քաղաքացիների (իրենց զբաղմունքով գյուղացիների) անշուք խրճիթների կողքին, ինչպես կռահում է Թ. Թորամանյանը այդ մասերում շրջագայելուց ու դիտումներ կատարելուց հետո, եղել են մի շարք առանձնատներ, իրենց շրջակայքում ունենալով ցանկապատված մշակովի ընդարձակ տարածություններ: Տնտեսական գործունեության բնույթի (գյուղատնտեսություն), գրաված ընդարձակ տարածության, ոռոգելի ջրի առատության շնորհիվ Հյուսիսային արվարձաններն ամենայն հավանականությամբ մի ամբողջական կանաչ զանգված էին ներկայացնում, որ իր ծոցում թաքցնում էր արվարձանի հարյուրավոր անհրապույր հյուղերը:

Վիմագիր արձանագրությունների հաղորդած տեղեկություններից և հնագիտական պեղումներից երևում է, որ Անին մեզ հետաքրքրող ժա-

մանակներում ամենահամեստ հաշիվներով ունեցել է 10—15 հյուրանոց: Առևտրի մեծ կենտրոն լինելը, տնտեսական լայն կապերը հարկադրում էին քաղաքում ստեղծելու այդպիսի եկամտաբեր հիմնարկներ՝ երթևեկ վաճառականների և տարբեր գործերով Անի այցելողների համար: Միայն ժամանակի մեծահարուստ Տիգրան Հոնենցն ուներ չորսից ավելի հյուրանոց (խանապարներ), որոնց մասին հիշատակություն կա արված նրա կառուցած ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու ընդարձակ արձանագրությունում: Տիգրան Հոնենցը եզակի չէր, սեփական հյուրանոցներ ունեին նաև այլ քաղաքացիներ: Հաճախ հյուրանոցները, իբրև եկամտաբեր հիմնարկներ, պատկանում էին եկեղեցիներին, որոնք դրանց սովորաբար տեր էին դառնում նվիրատվության կամ գնման կարգով:

Անիի մեզ հայտնի ամենաշքեղ հյուրանոց-խանապարը գտնվում էր Առաքելոց եկեղեցու մոտ և պեղվել է 1908 թվականին: Այն բաղկացած է ընդարձակ բակ ունեցող երկու մեծ սրահներից, որոնցից հյուսիսարևելյանը պայմանականորեն կոչել են «Սֆինքսների հյուրանոց», իսկ հարավ-արևմտյանը՝ «Օձերի և Առյուծների», նկատի ունենալով դրանց վրա եղած բարձրաքանդակները: Հյուրանոցը վերակազմվել է Թորոս Թորամանյանի կողմից: Այն նկարագրել են շատ հեղինակներ՝ նշելով հարմարությունները, ընդարձակությունը, ճարտարապետական նրբաճաշակությունը:

Բագրատունիների ժամանակաշրջանի Անիի պատմության մասին խոսելիս տեսանք, որ քաղաքը տակավին 10—11-րդ դարերում ունեցել է ջրմուղ: Նրա խմելու ջուրը բերել էին շրջակայքից՝ ավելի քան 10 կմ հեռավորությունից կավե խողովակներով, որը քաղաքում (համենայն դեպըս միջնաբերդում և բուն քաղաքում) ցանցավորված էր և ջուրը ինքնահոս հասնում էր նրա բոլոր կողմերն ու բարձրադիր թաղամասերը, որոնց թվում և միջնաբերդի ամենաբարձր կետը: Կարելի է չկասկածել, որ Բագրատունիներից հետո քաղաքի ջրամատակարարման ցանցը պետք է մի քանի անգամ ենթարկված լիներ վերանորոգումների ու վերափոխությունների: Չէ որ ջրմուղն այնպիսի կառուցվածք է, որ ենթակա է արագ փչացման ու խափանումների: Այսպես, օրինակ, Բագրատունիների թագավորության անկումից ընդամենը մի քանի տարի անց՝ 11-րդ դարի 50-ական թվականների հենց սկզբներին հարկ է եղել վերանորոգել, վերակառուցել և, թերևս, նաև որոշ չափով ընդարձակել Անիի ջրմուղի ցանցը, որ կատարվել է բյուզանդական Ահարոն կատապանի օրոք: Էլ չենք խոսում այն մասին, որ Զաքարյանների իշխանության ժամանակ ստեղծված բնակելի նոր զանգվածները նույնպես պիտի ապահովվեին խմելու ջրով: Զաքարյան ժամանակաշրջանում ջրմուղի վերաբերյալ

(«միլ» անունով, որ հասկացվում է ոչ թե գլխավոր ջրմուղը, այլ դրա ենթաձյուղը՝ վերգետնյա և ստորգետնյա սարքավորումներն ու կառուցվածքները միասին վերցրած) կա միայն մի հիշատակություն, որը տեղ է գտել Տիգրան Հոնենցի 1215 թվականի նվիրատվական ընդարձակ արձանագրության մեջ:

Հայաստանի պալատներում, քաղաքներում, բերդերում և համեմատաբար մարդաշատ մյուս բնակավայրերում միջին դարերում կային բաղնիքներ: Դրանք իրենց նշանակությամբ դուրս էին գալիս ժամանակակից բաղնիքների շրջանակներից: Միջնադարյան բաղնիքներում սովորաբար լողանալն ու լոգանք ընդունելը զուգակցվում էին նույն տեղում ծանոթների հանդիպմամբ, նրանց միջև տեղի ունեցող սրտակից զրույցներով, ժողովրդական խաղերի (նարդի, տամա, շախմատ և այլն) համառ մըրցակցություններով, հանգստով և զանազան գործարքներով:

Ճիշտ է նկատում միջնադարյան Հայաստանի բաղնիքների ճարտարապետությամբ ու պատմությամբ զբաղվող մասնագետը, որ բաղնիքներն առանձնապես մեծ թիվ էին կազմում 10—13-րդ դարերի Անիում: Անիում հայտնի են դարձել վեց բաղնիք, որոնցից մեկը Հյուսիսային արվարձանում՝ քաղաքի պաշտպանական պարիսպներից դուրս, մեկը՝ պալատական բաղնիքն է, իսկ մյուս չորսը գտնվում են բուն քաղաքի պեղումներով ընդգրկված փոքրիկ հատվածում: Քաղաքի հասարակական օգտագործման բաղնիքների մեծ մասը գտնվում էր կենտրոնական թաղերում, որոնք ավելի խիտ էին բնակեցված:

Պետք է ենթադրել, որ Անիի 13-րդ դարի բաղնիքների մեծ մասը գոյություն ուներ և նախորդ շրջանում, ժամանակի ընթացքում ենթարկվելով համապատասխան վերափոխությունների, կամ ոմանք լքվել են և դրանց փոխարեն կառուցվել են նորերը: Մի խոսքով, Բագրատունիների թագավորության ժամանակաշրջանի նման Զաքարյանների օրոք ևս Անին ուներ բավական թվով բաղնիքներ, որոնք իրենց տեխնիկակառուցողական և հիգիենիկ առումով համապատասխանում էին ժամանակի պահանջներին:

Մի քանի խոսք 13-րդ դարի սկզբներին հիշատակված Տիգրան Հոնենցի «հայրենիք» բաղնիքի մասին, որը նա «միլ»-ի (ջրմուղ) հետ միասին 1215 թվականին նվիրաբերել է Գրիգոր Լուսավորիչ եկեղեցուն: Մասնագետները նշում են, որ այդ բաղնիքն իր կառուցվածքով եղել է ինքնատիպ ու բարեկարգ: Այն գտնվում էր ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու մոտ, Ախուրյանի կիրճի պռնգին և պեղվել է 1893 թվականին: Պարզվել է, որ հանդերձարանի հատակագիծը եղել է խաչաձև: Լողասրահը մասնատված է եղել մի քանի փոքրիկ սենյակների, արևմտյան

մասում տեղադրված են եղել ջեռուցարանը և վառելիքի պահեստը: Լողարանները գտնվում էին անկյուններում և ծածկված էին ստալակտիտային գմբեթավոր առաստաղով: Դեպի յուրաքանչյուր լողարան կենտրոնական սրահից տանում էր հատուկ մուտք:

Բաղնիքների (այն էլ այդքան մեծ քանակությամբ) առկայությունը ենթադրել է տալիս, որ Անիում և՛ միջնաբերդում, և՛ բուն քաղաքում գոյություն են ունեցել տեղական կոյուղիներ, որոնց միջոցով, հատուկ խողովակաշարերով հեռացվել են բաղնիքների կեղտաջրերը: Իբրև կանոն, պեղումների ընթացքում հայտնաբերված այդպիսի խողովակների տրամաչափն ավելի մեծ է եղել, քան ջրատար խողովակներինը: Անիում հայտնաբերված մեծ թվով հորերը, որոնք փորված են գետնի կամ ժայռերի մեջ, ինչպես տեսանք, սովորաբար համարվել են հացի ամբարներ՝ պահեստներ: Սակայն բացառված չէ նաև ճարտարապետ Վարազդատ Հարությունյանի այն ենթադրությունը, թե դրանք կարող էին ծառայել նաև այլ մթերքներ, տնային գործածության իրեր պահպանելու համար, կամ նույնիսկ հնարավոր է, որ դրանց մի մասը եղել են «կլանիչ հորեր», որոնց մեջ թափում էին կեղտաջուրը, կերակրի մնացորդները, ջարդված ամանները և այլն:

Քաղաքների ոչ միայն նեղ կոմունալ պայմանների, այլև պատմության համար կարևոր նշանակություն ունեն գերեզմանոցներն ու դամբարանները՝ մակագրություն ունեցող նախշազարդ խաչքարերով, գերեզմանաքարերով, հուշարձաններով հանդերձ: Այդպիսի դամբարանների թիվը այդ ընդարձակ գերեզմանոցում հասնում էր մոտ 10-ի, չհաշված նույն գերեզմանատանը պատկանող Իգաձորի վրայի քարակերտ երկու դամբարանները:

Առանձնահատուկ հետաքրքրություն են ներկայացրել Այրային Անիի ժայռափոր դամբարանները: Այստեղ եղած ամենաշքեղ տոհմական դամբարաններից էր Տիգրան Հոնենցի հանգստարանը, որը ստեղծվել էր 13-րդ դարի սկզբներին և որտեղ էլ թաղվել է նաև ինքը՝ Տիգրան Հոնենցը: Դամբարանը շքեղ է, որմնանկարներով զարդարված: Հոնենցի տոհմական դամբարանում հայտնաբերվել է մի դեռատի (4—5 տարեկան) աղջկա բնականորեն զմռսված և այդ պատճառով էլ լավ պահպանված դիակ՝ հագուստով: Դրա գլուխը, ինչպես տեղեկացնում են ականատեսները, ոմն բժիշկ Թաշճյան բարբարոսաբար կտրել տարել է Պարսկաստան «իբրև սեղանի զարդ», իսկ մարմինը, նրանից հետո Անի այցելած Կ. Հ. Բասմաջյանը տարել է Փարիզ: Քարայրների հանգստարաններում հայտնաբերվել են նաև ուրիշ դիակներ, բայց ոչ ամբողջական մարմիններ, այլ մարմինների առանձին մասեր:

Միանգամայն ճիշտ են արձանագրում ուսումնասիրողները. Այրային կամ Քարանձավային Անիի հանգստարանները տոհմական էին և այդտեղ թաղվում էին գրեթե բացառապես հարուստ ու անվանի մարդիկ իրենց ընտանիքի անդամներով: Արդյոք հնարավոր չէ՞, որ Տիգրան Հոնենցի տոհմական հանգստարանի նման, Բագրատունի թագավորների պանթեոնը նույնպես գտնված լինի Այրային կամ Ստորգետնյա Անիի որևէ անկյունում:

12-րդ դարի վերջից հայ ճարտարապետության պատմության մեջ սկսվում է զարգացման մի նոր շրջան, որն իր հիմքում ուներ Բագրատունիների ժամանակվա հայկական ճարտարապետության լավագույն ավանդությունները և նոր պայմանների ազդեցության տակ ստացել էր նոր բնորոշ գծեր, որոնք արտացոլում էին հասարակական նոր երևույթներն ու այլ ժողովուրդների հետ ունեցած մշակութային, տնտեսական և քաղաքական կապերը: Նախորդ ժամանակաշրջանի նման 13-րդ դարում ևս Հայաստանի ճարտարապետության կանոնադիրը մնում էր Անին, նա էր տոն տալիս ամբողջ երկրում տեղի ունեցող ճարտարապետական զարգացմանը:

Զաքարյան ժամանակաշրջանի հայկական ճարտարապետությունն ուսումնասիրել են շատ հեղինակներ, նշելով դրա ոճական, կառուցողական, տեխնիկական կատարման, դեկորատիվության, մասշտաբների և այլնի մի ամբողջ շարք առանձնահատկություններ, որոնք մոտավորապես հանգում են հետևյալներին.

1. 13-րդ դարի ճարտարապետության ընդհանուր բնորոշ կողմը, որ նկատվում է բոլոր կարգի կառույցներում (հատկապես եկեղեցական շենքերում), աշխարհիկ մոտիվների կիրառությունն է՝ քաղաքացիական աշխարհիկ ճարտարապետության շատ տարրեր մուտք են գործում պաշտամունքային կառուցվածքների մեջ:

2. Եկեղեցական ճարտարապետության մեջ երևան են գալիս (12-րդ դարից) նախասրահները, գավիթները, ավանդատները, որոնք իրենց բովանդակությամբ ավելի աշխարհիկ էին և մի տեսակ իրենց մեջ համադրում էին աշխարհիկը հոգևորի հետ: Գավիթները, որ կառուցվում էին և հին, և նոր եկեղեցիներին կից, ճարտարապետական առումով նոր խոսք էին և դրանց ազդեցությունը նկատելի է հայկական ճարտարապետության հետագա բոլոր ժամանակների վրա:

3. Ի տարբերություն նախորդող ժամանակաշրջանների մեծամեծ կառույցների, Զաքարյանների ժամանակաշրջանի կառուցվածքները իրենց մասշտաբներով համեմատաբար փոքր էին, բայց գեղատեսիլ ու ակնահաճո: Այս ժամանակաշրջանում նույնպես կառուցվել են հիշատա-

կության արժանի պալատներ, առանձնատներ, պարիսպներ և բուրգեր, տաճարներ, եկեղեցիներ, մատուռներ, կամուրջներ, հյուրանոցներ և այլն:

4. Հայկական ճարտարապետությունը որոշ ազդեցություն է կրում արաբական, իրանական, վրացական ճարտարապետությունից, և ինքն իր հերթին, ավելի մեծ չափով, ազդեցություն է թողնում այդ և ուրիշ ժողովուրդների ճարտարապետության վրա: Սմիռնովն ու Ն. Մառն իրենց ուսումնասիրություններով հանգել են այն եզրակացության, որ Տիգրան Հոնենցի եկեղեցու որմնանկարներն արել է ռուս նկարիչ Ֆլորը, իսկ հայերը միջնադարյան Ռուսիայի մի շարք քաղաքներում կառուցել են եկեղեցիներ ու այլ շենքեր:

5. Որոշակիորեն սկսում են հիմնական ուշադրությունը դարձնել շենքերի դեկորատիվության վրա՝ դրանց ներսը զարդարում են տարբեր բովանդակության որմնանկարներով, որ նախորդ ժամանակներում գրեթե իսպառ բացակայում էր, իսկ արտաքին ճակատը, մուտքերի ու լուսամուտների շրջանակները՝ քարի վրա քանդակված ամենատարբեր տեսակի նախշերով, որոնցից յուրաքանչյուրը մի ավարտուն գործ էր և, չնայած արտաքին նմանությանը, իրար երբեք չէին կրկնում: Տարածում են գտնում ծեփը, ստալակտիտային առաստաղները:

6. Վերջապես, Զաքարյանների ժամանակաշրջանի ճարտարապետության համար շատ բնորոշ էին մանր կերտվածքները՝ իրար չկրկնող, բարձրարվեստ նախշաքանդակներով, ոսկերչական նրբությամբ կատարված հյուսվածքներով զարդարուն խաչքարերը Հայաստանում ընդհանրապես և Անիում մասնավորապես: Եվ թվում է, թե ճիշտ վարված կլինենք, եթե Անիի այդ ժամանակաշրջանի ճարտարապետության առանձնահատկություններին վերաբերող մեր խիստ համառոտ ու ամփոփիչ շարադրանքն ավարտենք Ն. Մառի՝ Անիին նվիրված առաջին աշխատություններից մեկում հայկական խաչքարերի բնութագրության խոսքերով և նրանից դեռ առաջ Անիի գեղեցկությամբ սքանչացած Ղ. Ալիշանի նույնքան դիպուկ մի բնութագրմամբ, որ վերաբերում է քաղաքի գեղատեսիլությանն ընդհանրապես. «... Անիում ամենասիրված հուշարձանները խաչքարերն էին, որոնցից յուրաքանչյուրն առանձին վերցրած ներկայացնում է նուրբ քանդակի նմուշ: Անիում ամենուրեք նախշավոր խաչերը փայլփլում էին աչքերի առաջ՝ խաչերը գեղեցիկ տեսք ունեին ոչ միայն եկեղեցիների պատերին ու գերեզմանոցներում, այլ նաև ամեն քայլափոխին — փողոցներում, հրապարակներում, դարպասների մոտ, քաղաքային պարսպապատերի վրա և պարսպապատերից դուրս, ժայռերի վրա և քարանձավային բնակատեղերում: Սակայն այդ երևույթը չպետք է դիտել իբրև տեղական-անիական: Ցանքսերի սահմանները, ճանապարհ-

ների խաչմերուկները, կիրճերի մոտ մուտքերն ու ելքերը, աղբյուրները..., քարակերտ կամուրջները... հայերի մոտ գեղեցկացնում էին նույն խաչքարերով: Խաչերով էր ծածկված բովանդակ Հայաստանը...»,— գրում է Ն. Մառը: Իսկ Ղ. Ալիշանը Հայոց մայրաքաղաքը բնութագրում է իբրև չքնաղ կերտված, իբրև գեղեցկագույն քաղաք, «ամուր» ապաստան և Հայոց բոլոր քաղաքների մեջ անգերազանցելի քաղաք:

Անիի ընդհանուր համայնապատկերում իշխողը եկեղեցիներն էին, բազում եկեղեցիները, որոնց թվի վերաբերյալ հիշատակություններ ունեն և հայ պատմագիրներն ու ժամանակագիրները (Մատթեոս Ուռհայեցի, Կիրակոս Գանձակեցի և այլք), և բավական թվով օտար հեղինակներ: Նոր ժամանակների հեղինակները, որոնք այս կամ այն առիթով անդրադարձել են այդ հարցին, Անիում «1001 եկեղեցու» գոյությունը կամ համարել են բացահայտ առասպել, կամ հիշատակված այդ թիվը պայմանականորեն ընդունել լոկ իբրև մեծաթիվության, բազմաթիվության խորհրդանիշ (ինչպես այդ ընդունված էր արևելյան այլ ժողովուրդների մոտ ևս), կամ էլ ընդունել են իբրև ճշմարտություն, հայտարարելով, որ իբր Անիում իրոք գոյություն է ունեցել 1001 եկեղեցի:

Մեր կարծիքով, հարցը նրանում չէ, թե Անիի եկեղեցիները ճշգրիտ քանիսն էին՝ 500, 800, 1000, թե՞ կիսաառասպելական 1001: Ճիշտ է նկատում Լեոն, դրանք ոչ ոք չի հաշվել և հաշվելու կարիքը չի էլ զգացվել: 1001-ի շուրջը բանավեճ բացելը նման կլիներ նրան, թե ասեղի ծայրին քանի՞ սատանա կարող է տեղավորվել: Էականն այն է, որ և՛ Ղ. Ալիշանի, և՛ վերջիվերջո նրան հետևող Լեոյի կարծիքով 1001-ը արևելքում ընդունված պայմանական թիվ է շատ մեծ քանակություն արտահայտելու համար և Անիի եկեղեցիներն էլ շատ մեծ թիվ են կազմել ու այդ պատճառով էլ կոչվել է «հազար ու մեկ եկեղեցի» ունեցող քաղաք:

Վկայությունների համաձայն, բազմաթիվ եկեղեցիներ կային քաղաքի պաշտպանական պարիսպների բուրգերում, Այրային Անիում, բուն քաղաքում, վերգետնյա արվարձաններում (որտեղ նոր ժամանակների այցելուները տասնյակ եկեղեցիների ու մատուռների ավերակներ են արձանագրել), հարուստների բնակելի տներում և այլուր: Վերջապես նըկատի պետք է ունենալ նաև այն, որ մեծ եկեղեցիների առանձին խորանները, ինչպես և գերեզմանոցների մատուռները (որոնք ամենայն հավանականությամբ հասնում էին հարյուրների) նույնպես համարվել են եկեղեցիներ: Այդ բոլորը թույլ են տալիս ենթադրելու, որ Անիի եկեղեցիների, տաճարների, «եկեղեցիկների» և մատուռների թիվը կարող էր իրոք հասնել շուրջ 1000-ի: Չէ որ այդ նույն ժամանակներում ուրիշ քա-

ղաքներում ևս (Արծն, Սեբաստիա, Նախիջևան և այլն) հարյուրավոր եկեղեցիներ կային։

Այսպիսով, միանգամայն հասկանալի է դառնում, թե ինչու Մատթեոս Ուռհայեցին հիշատակում է, որ Անին ունի 1001 եկեղեցի, իսկ Կիրակոս Գանձակեցին նշում է, թե «Եւ եկեղեցի բազում կայր ի նմա, մինչ ի կարգ խօսից երդման այսպէս երդնուին՝ «Անւոյ հազար և մի եկեղեցին»։

12—13-րդ դարերում, ինչպես ասվեց, հայկական ճարտարապետությունը բուռն վերելք էր ապրում ոչ միայն Անիում, այլև Հայաստանի մյուս բազմաթիվ քաղաքներում ու վանքերում։ Անիի այդ ժամանակաշրջանի ճարտարապետներից են՝ Ջունդիկը, Եղբայրիկը և ուրիշներ։

Ջունդիկի անունը հիշատակված է Անիի պաշտպանական պարսպի վրայի արձանագրության մեջ։ Արձանագրված քարը, որն ընկած է եղել Ջունդիկի դարպասի մոտ, գտել է Հ. Աբիխն իր ճանապարհորդությունների ժամանակ՝ 1845 թվականին և 1848 թ. ուղարկել ակադեմիկոս Բրոսսեին։ Վերջինս այն հրատարակել է Պետերբուրգում։ Ջունդիկը եղել է բուրգի ու դարպասի կառուցող ճարտարապետը։

Անիում նույն ժամանակներում ապրած Եղբայրիկ ճարտարապետը, որ Ջունդիկի ժամանակակիցն է, Ս. Բարխուդարյանի ենթադրությամբ եղել է Տիգրան Հոնենցի տոհմական ճարտարապետը։ Նա ընդհանրապես գտնում է, որ «միջնադարյան բոլոր նշանավոր վանքերն ու նախարարական տներն (և, ամենայն հավանականությամբ, մեծատունները— Թ. Հ.) ունենում էին իրենց ճարտարապետներն ու քարագործ վարպետները»։

Եղբայրիկն ապրել ու գործել է 13-րդ դարի առաջին կեսում։ Նրա կատարած գործերից պահպանվել են երկու խաչքար, որոնցից մեկը գտնվում է Հոռոմոսի վանքի մոտ, իսկ մյուսը, որ կերտված է 1222 թվականին, ագուցված է Անիի պաշտպանական պարսպի մեջ։

Անիի զաքարյան ժամանակաշրջանի այլ ճարտարապետների անուններ (եթե բացառելու լինենք ենթադրությամբ նույնպես ճարտարապետ համարված Սարգսին) չեն պահպանվել, թեպետև դրանք շատ են եղել։

Բագրատունիների ժամանակաշրջանի մասին խոսելիս մենք տեսանք, որ մայրաքաղաք Անին ենթարկված էր իր հիմքում որոշակի սկզբունքներ ունեցող հատակագծման։ Քաղաքի մասերից այդ ընդհանուր հատակագծման պահանջներն ավելի լիակատար էին հաշվի առնըված միջնաբերդում և բուն քաղաքում։ Ինչպես երևում է, Զաքարյանների ժամանակներում քաղաքի հետագա ընդարձակման, սելջուկյան ավերումների, այլ ժողովուրդների ներթափանցման հետևանքով զգալի չափով խախտվում են քաղաքի նախկին հատակագծման յուրահատկություն-

ները: Պեղումների ընթացքում հայտնի է դարձել, որ նույն Աշոտյան պարիսպների մոտ, Մայր եկեղեցու շրջակայքում, որ Բագրատունիների շրջանում հայտնի էին իրենց մոնումենտալ շենքերով, հետագայում դըրանց տեղում, հաճախ ուղղակի դրանց ավերակների վրա, անկանոն կերպով զետեղվել են աղքատ նորեկների խղճուկ խրճիթները՝ խախտելով միջնադարյան օրինակելի քաղաքի թաղամասերի բաժանման համաչափությունները, փողոցների դասավորությունը: Եթե Բագրատունիների ժամանակներում պալատները և մեծ ու շքեղ եկեղեցիները սովորաբար կառուցում էին քաղաքի կենտրոնում, ապա Զաքարյանների իշխանության օրոք ընդարձակվում են դրանց տեղաբաշխման աշխարհագրական սահմանները. պալատներ ու եկեղեցիներ են կառուցվում նաև քաղաքի համեմատաբար ծայրաշրջաններում, ավերակներից ազատ տարածություններում: Այդ բոլորը, անշուշտ, չէին կարող իրենց ազդեցությունը չթողնել Անիի հատակագծման վրա: Եվ մեզ թվում է, որ Անիի հատակագիծը Զաքարյանների օրոք Բագրատունիների ժամանակների համեմատությամբ ավելի անկանոն էր:

Ինչպես նշվեց, Անին ճարտարապետական առումով երկրում դարձել էր խոշորագույն կենտրոնը՝ «կանոնադիրը», ինչպես դիպուկ կերպով բնորոշել են մասնագետները: Անիի ճարտարապետության տարածողները թվում է, թե առաջին հերթին այլևայլ պատճառներով մայրաքաղաքից երկրի տարբեր մասեր գնացող ճարտարապետներն էին:

Ինչպես նշվեց, մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի Անիի ճարտարապետության բնորոշ կողմերից մեկն էլ համարվում է հարևան և մասամբ հեռավոր երկրների ճարտարապետությունների հետ ունեցած փոխազդեցությունները, որի մեջ հայկական ճարտարապետության թողած ազդեցության «հաշվեկշիռը» համարում են խիստ ակտիվ և միանգամայն հասկանալի է, որ դրանում մեծագույն դերն առաջին հերթին խաղում էր Անին:

## ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Նախորդ ժամանակների նման Զաքարյանների իշխանության օրոք ևս բնակչության ընդհանուր մարդահամարներ չեն կատարվել և Անիի բնակչության այս կամ այն չափով իրական թվի մասին խոսք լինել չի կարող: Այդ ժամանակաշրջանի Անիի բնակչության թվի վերաբերյալ ու-

նենք միայն Կիրակոս Գանձակեցու մի անորոշ վկայությունը, որի հիման վրա որևէ հաշվարկ անհնար է կատարել: Մոնղոլական արշավանքների գիտակ պատմագիրը դրանց նախօրյակին Անիի բազմամարդության մասին բավարարվում է հետևյալ անորոշ ու համառոտ վկայությամբ. «Քաղաքս այս Անի լցեալ էր բազմութեամբ մարդկան»: Եթե Բագրատունիների թագավորության վերջին շրջանում քաղաքն ունեցել է մոտ 100 հազար բնակիչ, ապա, մեր կարծիքով, Զաքարյանների օրոք նրա բնակչության թիվը ավելի փոքր է եղել: Սելջուկյան նվաճումների՝ հատկապես Ալփ-Արսլանի 1064 թվականի ավերիչ արշավանքի և հետագայի էմիրական հարձակումների հետևանքով Անիի բնակչության զգալի զանգվածները ոչնչացան, գերեվարվեցին, կամ դիմեցին արտագաղթի և հետագայում, ինչպես կարելի է եզրակացնել պատմական դեպքերի ընթացքից, նորից Անիում կենտրոնացող բնակչությունը երբեք չվերագրեց նախկին առավելագույն թիվը: Այնուամենայնիվ, նա Հայաստանի ամենաբազմամարդ քաղաքն էր, Մերձավոր Արևելքի ամենախոշոր քաղաքներից մեկը:

Բնակչության սոցիալական կազմը նախորդ ժամանակների համեմատությամբ էական փոփոխությունների չէր ենթարկվել: Բագրատունիների և Շադդադյանների ժամանակների նման Անիի բնակչությունը իր մեջ ամփոփում էր ֆեոդալական պատմաշրջանի հասարակական շերտերը: Այն բաղկացած էր ենթախմբերի բաժանված ազնվականությունից, մեծատուններից, որոնց դերն ու թիվը Բագրատունիների ժամանակաշրջանի համեմատությամբ ավելի էր մեծացել, բուն քաղաքացիներից՝ արհեստավորներից ու առևտրականներից, գյուղատնտեսությամբ զբաղվողներից և օրավարձով աշխատողներից: Առաջվա նման մեծաթիվ էր նաև կայազորը:

Բնակչության մեծագույն մասը կազմում էին հայերը: Սակայն մեզ հետաքրքրող ժամանակներում Անին որոշ չափով բազմազգ քաղաք էր: Այստեղ «հայկական հիմնական առևտրական դասակարգի կողքին խաղաղ ապրել են առևտրական մարդիկ պարսիկ-մուսուլմաններից»,— գրում է Ն. Մառը հենվելով Մանուչեի մզկիթի մոտ կատարված պեղումների որոշ տվյալների վրա: Մահմեդական բնակչության (պարսիկների և սելջուկ թուրքերի ու քրդերի) գոյությունն Անիում հաստատվում են նաև քաղաքում եղած երկու մզկիթներով: Հավանական կարելի է համարել Լեոյի ենթադրությունն այն մասին, որ Զաքարյանների իշխանության օրոք թերևս կարող էր Անիում մահմեդական բնակչության թիվը պակասել, բայց և այնպես շարունակում էր որոշ տոկոս կազմել:

Շադդադյանների տիրապետության ժամանակներից ի վեր, երբ Անին

պարբերաբար անցնում էր ձեռքից ձեռք, այստեղ բնակություն էին հաստատել նաև որոշ թվով վրացիներ, որոնք, ինչպես տեսանք, ունեին նաև իրենց եկեղեցին: Վրաց համայնքը ըստ երևույթին Զաքարյանների իշխանության օրոք համեմատաբար ավելի բազմամարդ էր: Այդ համայնքով նույնիսկ հետաքրքրվում էր Վրաց կաթողիկոս Եպիփանը, որը Անիի քաղկեդոնական («վրացական») եկեղեցու վրա թողած իր արձանագրության մեջ նշում է, թե «ինքը 1218 թվականին այդ քաղաքն է եկել «վրացական», այսինքն քաղկեդոնական եկեղեցիների «լուսավորման համար»: Ն. Մառը նկատում է, որ «վրացի» տերմինը Անիում նույնպես չի բացառում «վրացի» ազգության իմաստը, բայց այն ավելի լայն իմաստով նշանակում էր քաղկեդոնական եկեղեցու հավատացյալներ, որոնք կարող էին լինել նաև հայ քաղկեդոնականները: Իսկ վերջիններս Անիում Զաքարյանների իշխանության օրոք ըստ երևույթին բավական թիվ էին կազմում:

Մյուս ազգություններին պատկանողները հիմնականում երթևեկ առևտրականներն ու վաճառականներն էին, որոնք, հասկանալի է, շատ մեծ թիվ չէին կարող կազմել և Անի քաղաքի մշտական բնակիչներ չէին համարվում:

Անին կարելի է հայտնի համարել նաև նրանով, որ այստեղ հասարակական կյանքում, քաղաքաշինության մեջ, պաշտպանության գործում կանայք տղամարդկանց հետ գրեթե համահավասար էին: Նրանք կառուցում էին եկեղեցիներ ու տաճարներ, պաշտպանական բուրգեր ու պարսպահատվածներ, կատարում զանազան նվիրաբերումներ և հարկ եղած դեպքում զենքը ձեռքին արիաբար պաշտպանում իրենց սիրելի քաղաքը:

## 6. ՔԱՂԱՔԻ ՎԱՐՉԱԿԱՆ ՎԻՃԱԿՆ ՈՒ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Զաքարյանների ժամանակաշրջանի Հյուսիսային Հայաստանի վարչական վիճակի վերաբերյալ խոսելիս որոշ դիտողություններ արեցինք նաև Անիի մասին, որոնք անմիջապես կապված էին երկրի ներքին ընդհանուր կյանքի հետ:

Բագրատունյաց թագավորության անկումից հետո Հայաստանի և Վրաստանի քաղաքները, որոնց թվում և Անին, որը չնայած ուներ բավական լայն իրավունքներով օժտված ինքնավարական մարմիններ, այ-

նուամենայնիվ երկար ժամանակ մնում էր մասնատիրական տիրույթ։ Անին իբրև սեփականություն Վրաց թագուհու կողմից տրված էր Զաքարյան եղբայրներին, հանձինս դրանցից ավագի՝ Վրաց բանակի ամիրսպասալար Զաքարեի։ Զաքարեից հետո Անին իբրև ժառանգություն անցնում է նրա հաջորդներին, որոնք այստեղ իշխեցին բավական երկար՝ հարյուր տարուց ավելի։ Սակայն Անիի նկատմամբ նրանց դիրքը, իրավունքները կտրուկ կերպով փոփոխվեցին մոնղոլական 1236 թվականի նվաճումից հետո։

Անիի տերը Զաքարեից հետո (մահացել է 1213 թ. և թաղվել Սանահինի վանքում) նրա որդին էր, որ կենդանի էր մոնղոլական տիրապետության սկզբնական շրջանում։ Զաքարեի ժառանգորդ որդու՝ Շահնշահի փոքր լինելու պատճառով սկզբում նրա խնամակալն էր Զաքարեի կրտսեր եղբայրը՝ Իվանեն, իսկ հասունանալուց հետո նա ազատվում է այդ խնամակալությունից՝ դառնալով Անիի տեր-իշխանը։

Անիի հոգևոր առաջնորդները, իշխանները և դրանց անմիջական ենթակաները վիմագիր արձանագրություններում Զաքարյաններին՝ քաղաքի տեր Զաքարեին և նրա եղբայր Իվանեին համարում են իրենց պատրոնները (խնամակալները)։

Նկատի ունենալով այն, որ Զաքարյանների օրոք Բագրատունիների պալատի համալիրում կատարվել են նորոգումներ, վերակառուցումներ և մասնակի նոր կառուցումներ, կարելի է պնդել, որ այն էլ հենց եղել է Զաքարյան իշխանների աթոռանիստը։ Քաղաքի հայտնի մյուս պալատներից ոչ մեկը՝ իր տեղադրությամբ, հարմարանքներով ու պաշտպանական միջոցներով չէր կարող փոխարինել միջնաբերդում գտնվող Բագրատունյաց պալատին, որ աթոռանիստ էր եղել նաև բյուզանդական կատապանների և Շադդադյան էմիրների համար։ Իշխանի կամ պարոնի պալատը, որ ոմանք նույնպես հարմար են համարել աթոռանիստի համար և ենթադրել, թե այն պատկանում էր Զաքարյաններին և եղել է նրանց աթոռանիստը, զուրկ է հիմքից և անհավանական։

Անիի տերերը՝ Զաքարյան իշխանները իրենք էին նշանակում քաղաքի գերագույն կառավարիչներին։ Վերջիններս կրում էին էմիր կամ ամիր տիտղոսը և ենթակա էին Զաքարյան իշխաններին՝ Անիի իրավական տերերին (Հյուսիսային Հայաստանի գերագույն կառավարիչներին)։ Անիի «վրացական» եկեղեցու հարավային պատի վրա 1909 թ. հայտնաբերված հայերեն մի վիմագիր արձանագրության մեջ, որ գտնվում էր Վրաց Եպիֆան կաթողիկոսի արձանագրությունից ներքև, հիշատակված է Անիի գերագույն կառավարիչներից մեկը՝ Վահրամը։ Քաղաքի այլ էմիրներ մեզ հայտնի չեն։

Քաղաքի մյուս պաշտոնյաներից Զաքարյանների շրջանում հիշատակվում է նաև մութսիբը: Ակադեմիկոս Հ. Մանանդյանը մութսիբին համարում է հայկական միջնադարյան քաղաքների գլխավոր պաշտոնյաներից: Ամենայն հավանականությամբ, մութսիբը ենթակա էր էմիրին: Նրա պարտականությունները հիմնականում ֆինանսական-ոստիկանական էին: Ս. Ա. Եղիազարյանի ասելով Հայաստանի 11—14-րդ դարերի քաղաքների պաշտոնեությունը պահպանվել է նաև հետագա դարերում՝ միայն այլ անուններով, իսկ դրանցից տանուտերերը (մելիքներ) մնացին անփոփոխ նաև իրենց տիտղոսներով: Հավանական է, որ շարունակում էին գոյություն ունենալ նաև հարկահավաք կոփիչները, որ հիշատակվում են նախորդ ժամանակներից:

Դեռևս Բագրատունիների թագավորության ժամանակ Անիում ձևավորվել էր ինքնավարություն, որի մարմինները զգալի դեր էին խաղում քաղաքի կառավարման, նրա պաշտպանության կազմակերպման, տընտեսական կյանքը բնականոն ընթացքում դնելու և այլ բնագավառներում: Բագրատունիների անկումից հետո քաղաքի ինքնավարական մարմինների դերն ավելի է մեծանում: Բյուզանդական, սելջուկյան և Շադդադյանների տիրապետության շրջանում Անիի «երիցանին» (ավագների խորհուրդ) իրեն իրավասու էր համարում տնօրինել քաղաքի ճակատագիրը: Քաղաքային ինքնավարական մարմինների իրավունքների ու պարտականությունների այդ ընդարձակումը ըստ երևույթին հետևանք էր ոչ թե քաղաքի ներքին զարգացման, այլ օտարների կողմից քաղաքի հոգսերը տեղական մարմինների վրա բարդելու, մի գործելակերպ, որն այնքան հատուկ էր մանավանդ արևելյան բռնապետություններին:

Ն. Մառը և Հ. Օրբելին Անիի ինքնավարության վերջնական ձևավորումը, դրա բարձրագույն մարմնի՝ «երիցանու» առաջացումը կապում են 12-րդ և, հատկապես, 13-րդ դարերի հետ, չնայած իրենց ձեռքի տակ փաստեր չունենալով չեն կարողանում ժխտել նաև դրանց ավելի վաղ գոյություն ունենալու հնարավորությունը: Անիի երիցանին հիշատակվում է 13-րդ դարի վիմագիր մի քանի արձանագրություններում: Երիցանին քաղաքի ինքնավարական բարձրագույն մարմինն էր:

Զաքարյանների օրոք Անիի հոգևոր առաջնորդները սովորաբար Պահլավունի տոհմից էին, իշխանական այն տոհմի, որ քաղաքական այնքան կարևոր դեր էր խաղում Բագրատունիների թագավորության վերջին շրջանում: Մեզ հետաքրքրող ժամանակներում այդ տոհմի կալվածքները գտնվում էին Շիրակի ընդարձակ գավառում՝ Մարմաշենում, Բագնայրում, Լմպատավանքում (Արթիկի մոտ) և գավառի այլ մասերում: Այդ տոհմից էին Անի քաղաքի (և Շիրակի) Սարգիս, Գրիգոր, Բարսեղ

եպիսկոպոսները: Եվ, այսպիսով, Անիի ամիրայի պաշտոնի հետ միասին նրանց ձեռքում էր գտնվում նաև հոգևոր առաջնորդությունը:

Անիի հոգևոր առաջնորդները (ի տարբերություն Հայաստանի մյուս շատ քաղաքների ու գավառների առաջնորդ թեմակալների, որ սովորաբար ունեին եպիսկոպոսի կոչում) վիմագիր արձանագրություններում ավելի հաճախ կոչված են արքեպիսկոպոսներ: Նրանք թեմի հոգևոր բոլոր գործերը տնօրինելուց բացի, կարևոր դեր էին խաղում նաև քաղաքի ինքնավարական մարմիններում՝ լինելով «երիցանու» պատկառազդու անդամը: Հայաստանի հոգևոր մյուս առաջնորդների հետ միասին Անիի արքեպիսկոպոսն էլ ակտիվ մասնակցություն ուներ երկրի ներքին գործերում՝ հոգևոր կամ աշխարհիկ տարբեր հարցեր լուծելու համար գումարված ժողովներում ու դատավարություններում: Նա կարող էր փոփոխության ենթարկել՝ վերացնել, թեթևացնել եկեղեցուն տրվող տեղական զանազան տուրքեր կամ սահմանել այդպիսի նոր մուծումներ:

Զաքարյան ժամանակաշրջանի Անիի ներքին կարգ ու կանոնի մասին եղած ուղղակի և անուղղակի տվյալները սպառվում են նշվածներով: Օրինակ՝ մեզ հայտնի չէ, թե կարգապահական ու պատժիչ ինչպիսի օրենքներ կամ սովորույթներ կային, որոնք կիրառվում էին օրինազանցների, գողերի, քաղաքի անդորրը խանգարողների և միջնադարյան քաղաքների կյանքում սովորական դարձած հակահասարակական այլ տարրերի ու երևույթների դեմ: Հավանական կարելի է համարել, որ Անիում գործում էին և՛ Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» համապատասխան հոդվածները, որոնք ուղղված էին դրանց դեմ, և՛ տեղական, սովորույթի ուժ ստացած օրենքներ: Ընդ որում, նրա «Դատաստանագրքի» մի հոդվածով խստագույն պատիժ է սահմանված գողերի, նրանց «հյուրընկալողների» և ավազակների համար: Անին երկրից դուրս չէր: Այստեղ նույնպես գործում էին նույն օրենքները:

## 7. ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԿԱՌՈՒՅՑՆԵՐԸ

Քաղաքաշինության վերաբերյալ խոսելիս մենք անդրադարձանք Զաքարյանների իշխանության օրոք քաղաքի պարիսպներում, Բագրատունիների արքայական պալատում, առանձին եկեղեցիներում ու տաճարներում, ինժեներական ու տնտեսական կառույցներում կատարված վերանորոգումներին, վերաշինություններին, վերակառուցումներին և նոր կա-

ռուցված լրացուցիչ շենքերին։ Անհրաժեշտ ենք համարում ընթերցողի ուշադրությանը հանձնել Անիի միայն այն կառույցները, որոնք կերտվել են Զաքարյանների օրոք՝ դրանք բաժանելով երկու խմբի՝ աշխարհիկ կառույցների (պալատներ, տներ, խանապարներ և այլն) և պաշտամունքայինների։

Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի Անիի աշխարհիկ կառույցներից հայտնի են իշխանի կամ պարոնի պալատը, Սարգսի տունը (կամ պալատը), շախմատային տունը և երկու բաժիններից բաղկացած խանապար-հյուրանոցը։ Դրանք այն հուշարձաններից են, որոնք մեզ հայտնի են և մեր օրերն են հասել ավերված վիճակում։

Տարբեր վիճակում մեզ հասած Անիի քաղաքացիական շենքերի կառուցման ժամանակը գերազանցապես որոշվում է դրանց ճարտարապետական-կառուցողական ոճի և նախշազարդումների հիման վրա։ Այդ կարգի ամենահայտնի կառուցվածքներից մեկն էլ մի պալատ է, որի ավերակները գտնվում են քաղաքի հյուսիս-արևմտյան անկյունում, Ծաղկոցաձորի զառիվեր ձախ կողի պռնգին, որտեղից հրաշալի տեսարան է բացվում դեպի արևմուտք՝ Ծաղկոցաձորի նեղ գետահովիտը, իսկ արևելք՝ բուն քաղաք։ Բոլոր հին ու նոր հեղինակներն այդ շենքը համարել են պալատ (երբեմն զորանոց)։ Ուշ շրջանի ծագում ունեցող ժողովրդական ավանդության համաձայն իբր այն եղել է Պարսից Խոսրով Նոշիրվանի պալատը։ Ակնհայտ է, ավանդությունը չունի պատմական հիմք և Անիի այդ հրաշալիքը ոչ մի առնչություն չուներ Սասանյան արքայի հետ։ Նոր շրջանի Անիի առաջին այցելուներն ու նախնական ուսումնասիրողները այն նույնացրել են Բագրատունիների արքայական պալատի հետ։ Սակայն նկատի ունենալով այն, որ պատմագիրների վկայությունների համաձայն հայ թագավորների պալատը գտնվում էր քաղաքի միջնաբերդում և այն, որ կիսավեր վիճակում նոր ժամանակներ հասած այդ պալատը քաղաքի կենտրոնից հեռու էր ու պաշտպանական տեսակետից գտնվում էր համեմատաբար անապահով տեղում, հիմնովին ժխտվեց այդ տեսակետը։ Ուսումնասիրողներից ոմանք այն համարել են Պահլավունի իշխանների, իսկ ոմանք էլ՝ Զաքարե սպասալարի պալատը։ Դրանք, հասկանալի է, սոսկ ենթադրություններ են և լուրջ առարկությունների ենթակա։ Մասամբ այդ է եղել պատճառը, որ պալատին տվել են պայմանական անուն. այն կոչել են «Պարոնի» կամ «Իշխանի» պալատ։ Մեզ թվում է, այնուամենայնիվ, դրանցից ոչ մեկը չի կարելի վերջնական համարել։ Հայտնի է, որ հայ Բագրատունիները շատ կողմերով հետևում էին Արշակունիներին։ Այդ վերաբերում է և՛ պետական վարչակարգին, և՛ ֆեոդալական աստիճանավորությանը, և՛, նույնիսկ, պաշտոնների ան-



16—2682

վանումներին: Միաժամանակ հայտնի է նաև, որ հայ Արշակունիները մայրաքաղաքներում (դրանց միջնաբերդում)՝ Արտաշատում, Վաղարշապատում, Արշակավանում ունեցած իրենց հիմնական աթոռանիստներից բացի, հաճախ կառուցում էին և «հովանոց»-ներ (աթոռանիստ-ամառանոցներ), որպիսիք էին Գառնին և, սկզբնական շրջանում, Դվինը: Արդյոք Շիրակի Բագրատունիների համար նույնպիսի «հովանոց» չէ՞ր կարող լինել մեր նշած պալատը, որը Անիի մյուս հայտնի շենքերի նման կարող էր Զաքարյանների ժամանակ այնպես վերափոխվել, որ արտաքնապես (նախշազարդերով) նույնանար 13-րդ դարի կառուցվածքների հետ: Մեզ թվում է, թե այդ են հուշում պարոնի պալատի անզուգական դիրքն ու վեհությունը, ճոխությունը, ընդարձակությունը, մի խոսքով՝ արքայավայել կառուցվածքը:

Անհրաժեշտ է նկատի ունենալ նաև այն, որ Արշակունիների մայրաքաղաքների՝ Արտաշատի ու Վաղարշապատի կլիման շատ շոգ է և հարկ է եղել «հովանոց-ամառանոց» կառուցել դրանցից դուրս, զովասուն տեղում: Իսկ Բագրատունիները իրենց «հովանոցն» ուղղակի կարող էին կառուցել զով կլիմա ունեցող Անի մայրաքաղաքում: Ինչևէ, պարոնի կամ իշխանի պալատի պատկանելության, բնույթի (և նույնիսկ կառուցման ժամանակի) հարցը տակավին լուծված չի կարելի համարել: Համոզիչ չէ նաև Ն. Մ. Տոկարսկու ենթադրությունը, ըստ որի իբր այդ շենքը հասարակական-վարչական շենք է եղել և իբր այդտեղ էր տեղադրված քաղաքի ինքնավարության բարձրագույն մարմինը:

Պարոնի կամ իշխանի պալատը մեզ է հասել ավերված վիճակում. պահպանվել են միայն դրա պատերի որոշ հատվածներ, նկուղային հարկը, ներքին հարկի կամարակապ առաստաղի որոշ հատվածներ: Քաղաքի կողմից երկհարկանի (իսկ Ծաղկոցաձորի կողմից՝ եռահարկ) այդ պալատը պեղվել է և նախագիծը կազմվել 1912 թվականին: Կառուցված է պարսպի կարմիր քարից, որ պայմանականորեն կոչում են «աշոտյան» քար (Աշոտյան պարսպաքարի նման լինելու համար): Բոլոր այցելուներն առանց բացառության մեծ հիացմունքով են խոսում պարոնի պալատի մասին՝ այն համարելով Անիի լավագույն ճարտարապետական կոթողներից մեկը:

Պարոնի պալատն իր ճակատային մասով ուղղված է դեպի արևելք՝ դեպի քաղաք: Շենքի այդ մասը սքանչելի գեղազարդ է: Ստորին հարկի շքամուտքի շարվածքը խճանկարային է, բաղկացած քանդակած սև խաչերից և վարդագույն ութ թևանի աստղերից, քանդականախշերը վերին աստիճանի բազմազան են, բայց իշխողը երկրաչափական ոճն է: Երկրորդ հարկի շքամուտքը շարված է մաքուր սրբատաշ վարդագույն և սև

քարերով: Նույն ոճավորմամբ է զարդանախշված նաև պալատի ներքին միակ դուռը:

Պալատը բաղկացած էր մի քանի դահլիճներից և տարբեր մեծության սենյակներից, որոնք օգտագործվել են տարբեր կարիքների համար: Ներքին հարկերը՝ նկուղայինն ու առաջին հարկը անհամեմատ ավելի լավ են պահպանվել, քան երկրորդը (կամ երրորդ): Այնուամենայնիվ, վերջինիս պատերը նույնպես բավական լավ էին պահպանվել: Դըրանց վերին մասում առաստաղի գծի ուղղությամբ պահպանվել են փայտյա ծածկի գերանների համար թողած անցքերը: Երկրորդ հարկի պատերի ներսի կողմում տեղ-տեղ նշմարվել է ծեփը: Առաջին հարկից ստորին, ընդգետնյա հարկ հավանաբար մտել են շարժական աստիճաններով:

Առանձնապես սքանչելի տպավորություն են թողնում դռան և դրա շրջանակների վրա արված քանդակազարդերը՝ խաչերը, աստղերը, երկրաչափական ոճավորման բազմաձև պատկերները:

Վերին և ներքին հարկերը սահմանափակված են ուղղանկյուն, քանդակներ չունեցող շրջանակների մեջ: Երկրորդ հարկի հատակը ծածկված է շախմատի տախտակ ներկայացնող սև և վարդագույն սրբատաշ քարերով:

Ըստ 19-րդ դարի առաջին կեսին Անի այցելած որոշ ճանապարհորդների ու հեղինակների վկայության, այդտեղ, պատի վրա եղել է մի մարդու բարձրաքանդակ՝ զինվորական տեսքով, որի արտահագուստը հասել է մինչև ծնկները, և մեջքին գոտի, առանց գլխի: Սովորաբար ենթադրել են, որ բարձրաքանդակի այդ անձը կամ եղել է Անիի Արտաքին պարիսպը կառուցող Սմբատ Բ Բագրատունի թագավորը, կամ էլ՝ դավաճան Վեստ Սարգիս իշխանը: Աղբյուրները վկայում են, որ այդ բարձրաքանդակը տեղից հանել և ս. Պետերբուրգ են ուղարկել 1845 թ.:

Զաքարյանների ժամանակաշրջանի մեզ հայտնի երկրորդ շքեղ տունը՝ պալատը, նույնպես կրում է պայմանական անուն: Այն սովորաբար կոչում են Սարգսի տուն կամ Սարգսի պալատ: Այդ պալատը գտնվում էր Գագկաշեն տաճարից հարավ-արևմուտք: Կառուցման ճշգրիտ ժամանակը հայտնի չէ: Սովորաբար այն համարում են 12—13-րդ դարի կառուցվածք: Մեզ է հասել ավերված վիճակում: Ճակատի վրա ունի հրաշալի, հարուստ պատկերներ՝ նախշազարդ կարմիր աստղերով ու սև ռոմբերով: Պեղվել է 1905 թվականին և հատակագիծը վերականգնել է Թորոս Թորամանյանը: Պալատի խճանկարային նուրբ քանդակազարդ ճակատին, նախշազարդ աստղերով գրված է. «Սարգիս»: Պալատը կառուցված է դեղին քարից: Ուսումնասիրողները Սարգսին համարել են կամ

պալատի տերը, կամ կառուցող ու նախշազարդող վարպետը: Դրանցից հավանական կարելի է համարել երկրորդը, որովհետև սովորաբար հուշարձանների վրա գրվում էին ոչ թե դրանց տերերի, այլ կառուցող վարպետների անունները:

Հնարավոր են համարում, որ Սարգսի պալատը կառուցված կարող է լինել Բագրատունիների օրոք, իսկ 12—13-րդ դդ. ենթարկվել վերակառուցման կամ վերականգնման:

Հավանական կարելի է համարել, որ Զաքարյանների շրջանի հայտնի հյուրանոցներից շատերը գոյություն ունեին նախորդ ժամանակներում, բայց ենթարկվել էին վերափոխությունների՝ ժամանակի ճարտարապետական ոգուն համապատասխան, և սովորաբար վերագրվել են 12-րդ դարի վերջերին կամ 13-րդ դարին: Օրինակ՝ 13-րդ դարին են վերագրում հնագիտական պեղումների ընթացքում հետազոտված շքեղ, երկու մասից բաղկացած հյուրանոցը, որը իր հիմնական կառուցվածքով տիպական կարող է լինել նաև նախորդ շրջանի համար: Ն. Տոկարսկու կարծիքով հյուրանոցի երկու բաժինները, որ նա համարում է առանձին-առանձին հյուրանոցներ, կառուցվել են նույն 13-րդ դարում, իրարից մոտ 50 տարի տարբերությամբ: Նրա ասելով դրանցից Հարավային հյուրանոցը կառուցվել է 13-րդ դարի սկզբներին՝ Զաքարյանների իշխանության օրոք և սպասարկում էր զանազան գործերով Անի եկողներին, իսկ երկրորդը՝ Հյուսիսայինը, որ առաջինին կից էր, դարձյալ նրա կարծիքով հավանաբար կառուցվել էր մոնղոլական տիրապետության շրջանում՝ Հուլավյանների օրոք: Հ. Օրբելին գտնում է, որ երկու սրահն էլ կառուցվել են 12—13-րդ դարերում:

Ահա թե ինչպիսի կառուցվածք ու հարմարություններ ունեին Անիի «Հյուսիսային» և «Հարավային» հյուրանոցները, ինչպես կարելի է պայմանականորեն դրանք կոչել, եթե այդ մեծ հյուրանոցի սրահները համարենք ինքնուրույն միավորներ: Հյուրանոցը գտնվում էր Նոր քաղաքում և պեղվել է 1908 թվականին: Ինչպես ասվեց, այն բաղկացած էր երկու երկարավուն սրահից (կամ բակից), որոնցից յուրաքանչյուրի կենտրոնում կար մի ամբողջական քարից կերտված ջրավազան, սրահները սալարկված էին տաշած քարերով: Դրանց չորս կողմերում ձգվում էին մայթաձև բարձր ու լայն գոտիներ՝ նստելու կամ բարձելու և բեռնաթափելու համար, սրահների երկայնքով իրար կողք-կողքի շարված էին «համարները»՝ փոքրիկ կամարակապ ծածկով սենյակները, որոնց մուտքը փակում էին ոչ թե սովորական դռներ, այլ վարագույրներ: Այդ սենյակների տակ տեղ-տեղ կան նկուղներ՝ վաճառականների ապրանքները պահելու համար: Դռների շրջանակները, սրահների դեպի փողոց նայող

ճակատները զարդաքանդակ էին և իրենց վրա կրում էին կարմիր ու սև տուֆի շարվածքով կազմված զանազան պատկերներ՝ աստղեր, բազմանկյուններ, խաչեր և այլն: Դրանցից բացի, սրահներից մեկի մուտքի վրա քանդակված են սֆինքսներ, իսկ մյուսի վրա՝ հովազներ ու օձեր, իբրև մուտքի պահապաններ: Այդ պատճառով էլ պայմանականորեն դրանք կոչել են «Օձի հյուրանոց», «Սֆինքսի հյուրանոց»: Պահպանված քարե աստիճանների մնացորդներից եզրակացնում են, որ հարավային սրահը երկհարկանի է եղել: Մասնագետները ճարտարապետական առումով նմանության շատ գծեր են տեսնում նկարագրված հյուրանոցի և Զաքարյաններին վերագրվող պալատի միջև: Օգտվելով պեղումների արդյունքներից՝ Անիի այդ հայտնի հյուրանոցի երկու սրահների հատակագիծը կազմել է Թ. Թորամանյանը:

Հյուրանոցի մոտակայքում հայտնաբերված տարբեր կարգի իրերն ու առարկաները, շինությունների ավերակները թույլ են տվել եզրակացնելու, որ դրան կից կային հիմնականում եկվոր վաճառականներին սպասարկող զանազան կետեր՝ արհեստանոցներ, առևտրի կրպակներ և այլն: Այսպես, հայտնաբերվել են դրսից հյուրանոց-խանապարին հարող պղնձագործի արհեստանոց, որի մոտ գտնվող մի այլ սենյակում՝ կաշվե իրերի մնացորդներ, իսկ փողոցի հակառակ կողմում հայտնաբերված սենյակում՝ անվնաս մնացած մի շարք սնդկամաններ և բավական քանակությամբ սնդկամանների բեկորներ:

Անիում մինչև նորագույն ժամանակները քաղաքացիական կառույցներից կանգուն և լավ պահպանված միակ շենքը, այսպես կոչված, շախմատային տունն է, որը բացվել է վարդապետ Միքայելի 1908 թ. կատարած պատահական պեղումների ընթացքում: Այն գտնվում է Մայր եկեղեցու հյուսիս-արևմտյան անկյունում և փոքր, երկհարկանի շենք է՝ յուրաքանչյուր հարկում մեկական սենյակ: Ճակատը նախշազարդված է կարմիր ու սև մաքուր սրբատաշ քարերով շարված խճանկարով: Առաջին հարկը ծածկված է քարակերտ կամարով: Պատերը շարված են դարձյալ կարմիր ու սև քարերով՝ ներկայացնելով շախմատային տախտակ: Պեղումների ընթացքում «շախմատային տունը» լրիվ վերականգնըվել էր: Կառուցման ժամանակը չի ճշտված: Միայն նկատի ունենալով շարվածքի ոճը (շախմատաձև), այն վերագրել են Զաքարյանների ժամանակներին: Կարծում ենք, որ ուրիշ շատ շենքերի նման շախմատային տունը ևս գոյություն ուներ Բագրատունիների ժամանակներից և վերափոխման կամ վերանորոգման է ենթարկվել 13-րդ դարում:

Ինչպես նշվեց, Զաքարյանների իշխանության օրոք նախորդ ժամանակներից եկող եկեղեցիները վերանորոգելուց, վերականգնելուց կամ

վերակառուցելուց բացի, կառուցել են մի շարք եկեղեցիներ, որոնք հարդարվում էին ժամանակի պայմաններին համապատասխան ոճի քանդակներով ու շքեղ որմնանկարներով: Թե իր հարդարանքներով և թե նախշազարդումներով դրանցից ամենանշանավորը Տիգրան Հոնենցի 1215 թվականին կառուցած սբ. Գրիգոր Լուսավորիչ տաճարն էր, որի կառուցման մասին Անիի այդ մեծահարուստը եկեղեցու հարավային պատի վրա թողել է վերը նշված ընդարձակ արձանագրությունը: Արձանագրությունից իմանում ենք Տիգրան Հոնենցի եկեղեցու (որը նկարազարդ լինելու պատճառով թուրքերը կոչել են «Նախշլու»՝ զարդարուն եկեղեցի) կառուցման բոլոր հանգամանքներն ու դրան տրված մեծամեծ նվիրատվությունները: Հոնենցի այդ եկեղեցին կոչվել է նաև վանք (ըստ երևույթին նկատի ունենալով, որ այն իր օժանդակ շենքերով, ունեցվածքներով ու կալվածքներով ոչ թե հասարակ եկեղեցի, այլ մի հարուստ ֆեոդալ էր): Եկեղեցին կառուցվել է Ախուրյանի զառիվեր, գեղատեսիլ ձորի պռնգին, քաղաքի Արտաքին պարսպի Ավագ դռան մոտ, նախկին ս. Աստվածածին մատուռի գրաված քարքարոտ ու մացառոտ տեղում, որն ըստ արձանագրության գնել, պարսպապատել ու ծախսեր անելով շենացրել էր Տիգրան Հոնենցը: Եկեղեցուն նվիրված կալվածքների ու զանազան ունեցվածքների հետ միասին հիշատակվում է ոսկե ու արծաթե խաչերի, կանթեղների, սպասքների, ոսկով, արծաթով, ակներով ու մարգարիտով դրվագված պատկերների, վանականների, քահանաների և այլոց համար կառուցված սենյակների մասին:

Մեծ չէ սբ. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին: Դրա երկարությունը մոտ 14 մ է, իսկ լայնությունը՝ 10 մ: Ընդհանուր առմամբ նախագծային առումով նման է Մայր տաճարին, բայց վերջինից անհամեմատ փոքր է: Հատակագիծը խաչաձև է, գմբեթն ու դրա թմբուկն անկյունավոր: Պատերն ամբողջապես շարված են սրբատաշ քարերով՝ արտաքին չորս կողմերը հիմքից մինչև գմբեթ պատած զարդաքանդակներով, իսկ ներսի կողմն ամբողջությամբ՝ պատերի ստորին մասից մինչև գմբեթի ծայրակետը ծածկված է որմնանկարներով: Եկեղեցու արևմտյան կողմում, դրան կպած կառուցվել է գավիթը, որը ծածկել է տաճարի այդ կողմի պատի զարդաքանդակները: Եկեղեցու ընդհանուր կառուցվածքի մասին լիարժեք գաղափար է տալիս Թ. Թորամանյանի վերականգնած նախագիծը:

Առանձնապես սքանչելի են եկեղեցու պատերի արտաքին երեսները զարդարող կեղծ կամարները, որոնք հանգում են շքեղ կիսասյուների վրա: Դրանք բոլորը շքեղորեն զարդարված են բուսական զարդանախ-

շերով, որոնց միջև քանդակված են փասիաններ, ցախաքլորներ, եղջերուներ, արծիվներ և այլն։

Որմնանկարներով են պատած և՛ տաճարը, և՛ գավիթը։ Պատկերված են սբ. Փրկիչը, Աստվածածնի երթը ավանակով և հավիտենական քունը, հրեշտակապետներ, որոշ սրբազան տեղեր, դրվագներ Գրիգոր Լուսավորչի կյանքից, Տրդատի ճանապարհորդությունը, տաճարի կառուցումը և այլն։

Պատմաճարտարապետական առումով մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև Կուսանաց անապատի եկեղեցին։ Կուսանաց անապատի (կամ վանքի) եկեղեցին, ինչպես ենթադրում են, կառուցվել է 13-րդ դարի սկզբներին։ Այն նույնանուն վանքի համալիրի մեջ մտնող չքեղ եկեղեցին է։ Կուսանաց վանքը գտնվում էր Ախուրյանի կիրճի պռնգին, ս. Գրիգոր եկեղեցուց ներքև։ Վանքը գրավում էր բավական ընդարձակ տարածք և եղել է պարսպապատ։ Այն քաղաքի հետ կապ էր պահպանում ծածկված սրահի միջոցով, որի մոտ գտնվում էին խուցերը։ Վանքը տարբեր ժամանակներում վերանորոգվելուց ու վերականգնվելուց հետո՝ վերջնականապես լքվել է միայն 19-րդ դարում, Անիում հնագիտական պեղումներն սկսվելուց 30—35 տարի առաջ և նույն դարի վերջերին վերածվել էր ավերակների կույտի։ Կառուցվել է Տիգրան Հոնենցի կողմից։

Վանքի փոքրիկ եկեղեցին տիպիկ 13-րդ դարի հուշարձան է, հովհարաձև գմբեթով՝ ծավալային ձևերով ու դրվագներով նրբագույն և միաձույլ շինվածք։ Եկեղեցին վեց աբսիդիանի է, որը բավական փոքրացնում էր ներսի տարածությունը, բայց դրա փոխարեն ավելի էր մեծացնում դրա ուղղաձիգ ձգվածությունը։ Պատերի ներսից հաշված տրամագիծը ընդամենը 3,6 մ է։ Նուրբ կիսասյուները, դրանց վրա հանգող նույնքան գեղեցիկ կամարները, վարպետորեն կառուցված գմբեթը, ամբողջ եկեղեցու սլունաձևությունն ու սլացիկությունը, հարուստ հարդարանքը, ճարտարապետի ամենուրեք զգացվող ինքնուրույնությունը, այդ բոլորը Կուսանաց վանքի փոքրիկ եկեղեցին դարձնում են քաղաքի ճարտարապետական հրաշալիքներից մեկը։ Եկեղեցու ճարտարապետական արժանիքները թվարկելու հետ միասին Ա. Մ. Տոկարսկին նշում է նաև ճարտարապետի կողմից դրա գրաված տեղի ճշգրիտ ու նպատակադրված օգտագործելու, ինչպես նաև փոքր չափսերի հետևանքով քանդականախշերը միայն բուսական պատկերներով սահմանափակելու փաստը։

Կասկածից վեր է, որ 13-րդ դարի սկզբներին Անիում եկեղեցիներ են կառուցել ոչ միայն մեծատունները, Զաքարյաններին ենթակա իշխանները, այլև հենց իրենք՝ Զաքարյանները։ Մեզ հասած վիմագիր արձանագրություններից մեկը, որ բավական եղծված է, ազդարարում է

Զաքարե սպասալարի կողմից այդպիսի մի եկեղեցու կառուցման մասին: Զաքարեի այդ եկեղեցին գտնվում է Աղջկաբերդ (Կըզկալա) կոչված ժայռային հրվանդանի վրա, Ախուրյանի և Ծաղկոցաձորի գետախառնուրդում, Ախուրյանի բարձրադիր աջ ափին: Արձանագրությունը փորագրված է եկեղեցու հարավային պատի վրա, դրա 1—5 տողերի սկզբի մասերը չեն պահպանվել: Այնուամենայնիվ դրա ընդունելի վերծանումից ակնհայտ է դառնում, որ եկեղեցին կառուցել է (ոմանց կարծիքով միայն վերակառուցել է) Զաքարե Ամիրսպասալարը: Արձանագրության վերջին, մեծ մասը վերաբերում է զորավարի կողմից եկեղեցուն նվիրաբերած կալվածքներին ու անշարժ գույքին, իսկ առաջին տողերը՝ դրա շինարարությանը:

Աղջկաբերդ կոչված հրվանդանի վրա Զաքարեի եկեղեցուց բացի կային նաև տարբեր ժամանակների կառույցների ավերակներ և կիսականգուն շինություններ, որոնցից մեկի կառուցումը ավանդաբար կապում են Գրիգոր Լուսավորիչի հետ:

Հնագիտական պեղումների տարիներին տակավին անվնաս և կանգուն էին Զաքարեի կառուցած եկեղեցու հարավային ու արևելյան պատերն ամբողջությամբ և արևմտյան պատի կեսը: Շենքի մյուս մասերը լիովին ավերվել և վերածվել էին հողակույտի: Եկեղեցին ուներ մոտ 11 մ երկարություն և 6,5 մ լայնություն, հատակագծում ունենալով քառանկյունու ձև: Եկեղեցու անունը չի ճշտված, ոմանք այն կոչում են Կարմիր եկեղեցի (թուրքերեն՝ Կզըլ-քիլիսե), ոմանք ս. Աստվածածին, որը ավելի ճիշտ հիշատակվում է որպես վանք: Եկեղեցու արևմտյան կողմում նկատվել են մի այլ շինվածքի հետքեր: Ենթադրում են, որ վերջինս եղել է Զաքարեի եկեղեցու գավիթը: Եկեղեցու ավերակների մեջ նշմարվել են գեղեցիկ սյուների, կամարների, զարդաքանդակների բեկորներ, որոնք և թույլ են տվել մասնագետներին այն լիովին համարելու Անիի 13-րդ դարի ճարտարապետական կոթողներից:

1892 թվականի արշավախմբի ընթացքում ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցուց ոչ հեռու Ն. Մառը հայտնաբերել ու պեղել է մի ուրիշ, ավելի փոքր, բայց քանդակներով, որմնանկարներով և ընդհանրապես հարդարանքով դրան ոչնչով չզիջող մի ուրիշ եկեղեցի, որի մասին ճշգրիտ գաղափար է տալիս պատերի պահպանված ստորին մասերի ու հայտնաբերված ճարտարապետական բեկորների հիման վրա Թ. Թորամանյանի կատարած վերականգնումը: Հուշարձանը գտնվում էր քաղաքի հյուսիսային պարիսպների մոտ, Իգաձոր տանող ճանապարհին: Արտաքուստ քառակուսի շենք էր, պատերի դրսի մասը, Տիգրան Հոնենցի եկեղեցու նման, ամբողջապես ծածկված զարդաքանդակներով, իսկ ներքուստ՝ ճոխ

որմնանկարներով։ Սկզբնական շրջանում, նկատի ունենալով եկեղեցու պատի մեջ ագուցված 951 թվականը կրող մի խաչքար, հուշարձանի կառուցումը վերագրել են 10-րդ դարին։ Սակայն հետագա ուսումնասիրությունների ընթացքում հանգել են այն եզրակացության, ըստ որի եկեղեցին իբր կառուցվել է 13-րդ դարում, իսկ ավելի հին թվականություն ունեցող արձանագրված քարերը պարզապես օգտագործվել են որպես շինանյութ։ Մենք կարծում ենք, բացառված չէ, որ Բախտաղեկի եկեղեցին կառուցված լինի տակավին Բագրատունիների շրջանում, իսկ հետագայում՝ Զաքարյանների օրոք ենթարկված լինի վերականգնման ու վերակառուցման, որի ընթացքում և, հավանաբար, կատարել են դրա քանդակազարդումներն ու որմնանկարները։ Թվում է, թե անուղղակիորեն այդ են հուշում նրա ունեցած ճարտարապետական-կառուցողական ընդհանրությունները Բագրատունյաց շրջանի նույնատեսակ կոթողների հետ, որ արձանագրվել է մի քանի մասնագետների կողմից։

Այդ հուշարձանը մեզ հայտնի է երեք՝ ս. Գրիգոր, Խաչատուրի եկեղեցի և Բախտաղեկի եկեղեցի անուններով։ Այն եղել է տոհմական եկեղեցի և, մեր կարծիքով, ամենից ընդունելին Բախտաղեկի եկեղեցի անունն է։ Ի տարբերություն Անիի մյուս բազմաթիվ հուշարձանների, պեղումների շնորհիվ որոշ տեղեկություններ կան դրա շինարար վարպետների մասին։ Արձանագրություններից մեկից իմանում ենք, որ եկեղեցին կառուցող վարպետներից էր Ծահեր վարդպետը (վարպետը)։

Ս. Բարխուդարյանի կարծիքով Բախտաղեկի կամ ս. Գրիգոր եկեղեցու կառուցողներից են նաև արձանագրված քարերի բեկորների վրա կարդացվող «Գրիգոր» և «Վարդիկ» անուններով անձինք։

Տիգրան Հոնենցի եկեղեցու նման Բախտաղեկի եկեղեցու քանդակների ու որմնանկարների սյուժեն կազմել են բույսերը, կենդանիները, թռչունները, նաև մարդը, կրոնական թեմաներ և այլն։ Բոլոր կենդանիներն ու թռչունները քանդակված են սրընթաց շարժման մեջ։ Բարձրարվեստ քանդակների գոտին պատում է տաճարի բոլոր չորս կողմերը կազմելով յուրատեսակ «գազանանոց»։ Տաճարի ներսն ամբողջապես պատած է որմնանկարներով։ Պատերից մեկի մոտ հայտնաբերվել է կառուցողի ներկված մեծ արձանը՝ եկեղեցու մանրապատկերը ձեռքին։ Եկեղեցու քանդակազարդ քարերի և որմնանկարների բեկորները պահպանվում էին Անիի թանգարանի երկրորդ բաժնում, իսկ կառուցողի արձանը պեղումների 10-ամյա ընդհատման ժամանակամիջոցում ոչնչացել է անհայտ պատճառներով։ Որմնանկարներից չորս նմուշ տեղափոխված է եղել Էրմիտաժ։

Զաքարյանների իշխանության ժամանակներին վերաբերող եկեղեցական վերջին հուշարձանը, որի մասին անհրաժեշտ ենք համարում երկու խոսք ասել, պայմանականորեն այսպես կոչված «Ծախմատային» եկեղեցին է: Եկեղեցին 13-րդ դարին վերագրելու միակ փաստը համարում են հենց դրա պատերի երեսը սև ու կարմիր գույների քարերի շախմատային տախտակի վերածվելը: Մենք տեսանք, որ նույն կարգի շարվածքները օգտագործել էին նաև պաշտպանական կառույցներում («շախմատային» բուրգ) և բնակելի շենքերում («շախմատային» տուն): Սակայն այստեղ մենք գործ ունենք մի այնպիսի իրողության հետ, որ որոշ ենթադրությունների կամ, համենայն դեպս, մտորումների տեղիք է տալիս: Այսպես, «Ծախմատային» եկեղեցու պատերի լիցքերի մեջ օգտագործված ավելի հին եկեղեցու երեսպատման քարերից մեկի վրա հայտնաբերվել է մի արձանագրություն: Արձանագրությունից ակնհայտ է դառնում, որ կամ Ծախմատային եկեղեցին կառուցվել է Բագրատունիների օրոք և, ավերվելուց հետո, Զաքարյանների շրջանում նորից վերականգնըվել, կամ եկեղեցին կանգուն է եղել և գույնզգույն սալիկներով քարապատվել է 13-րդ դարի սկզբներին՝ ժամանակի ճարտարապետական ոճով:

Արդյոք այդ, ինչպես և հայ ճարտարապետության պատմության մասնագետների արձանագրած փաստերը, Բագրատունյաց շրջանի մի շարք հուշարձանների վերականգնման մասին եղած վիմագիր արձանագրությունները, Բագրատունյաց և Զաքարյանների ժամանակաշրջանների ճարտարապետական ոճերի (հատկապես ընդհանուր նախագծերի առումով) ընդհանրությունները չե՞ն հուշում այն մասին, որ Բագրատունյաց թագավորների օրոք Անիում կառուցած, իսկ հետագայում թշնամական հարձակումների հետևանքով ավերված շատ հուշարձաններ նույնությամբ վերականգնվել են Զաքարյանների օրոք՝ դրանց վրա դնելով ժամանակի ճարտարապետական առանձնահատկությունների կնիքը: Թեպետև մեզ հասած այդ փաստերը դեռևս թույլ չեն տալիս իրարից խստորեն սահմանազատել տարբեր ժամանակներին վերաբերող հուշարձանները, որովհետև Բագրատունիների շրջանում կառուցված շատ հուշարձանների Զաքարյանների օրոք «հագցրել էին նոր հագուստներ»: Դա վերաբերում է և՛ քաղաքի պարիսպներին, և՛ քաղաքացիական շինություններին, որոնց մասին առանձին-առանձին նշվեցին համապատասխան տեղերում:

Անիի հուշարձանների մի մեծ խումբ են կազմում մահարձաններն ու այնքան մեծ վարպետությամբ կերտված հարյուրավոր խաչքարերը, որոնց մասին վերը նշվեց:

## 8. ՄՇԱԿՈՒՅԹԸ

Տնտեսական վերելքին զուգընթաց 10—13-րդ դարերում, սելջուկյան տիրապետության շրջանում որոշ ընդհատումից հետո, բուռն առաջընթաց է ապրում հայկական մշակույթը՝ դպրոցը, գիտությունը, գրականությունը, արվեստը: Այդ առաջընթացում իր բաժինն ուներ նաև Անին: Մենք տեսանք թե Հայոց մայրաքաղաքում Բագրատունիների թագավորության օրոք և դրան հաջորդած ժամանակներում մշակույթի զարգացումն ինչ բնույթ և առանձնահատկություններ է ունեցել: Զաքարյանների ժամանակաշրջանի մշակույթը դրա բնականոն վերելքի շարունակությունն էր և ուներ նույն առանձնահատկությունները, անշուշտ իր վրա կրելով նաև նոր ժամանակների սոցիալ-տնտեսական կյանքի կնիքը: Այնպես որ, զարգացած ֆեոդալիզմի բնականոն առաջընթացի նոր պայմաններում՝ 13-րդ դարի առաջին տասնամյակներում մշակույթի առաջընթացին ուղեկցում էր դրա աշխարհականացումը՝ փիլիսոփայության, արվեստի, գրականության մեջ աշխարհիկ գաղափարախոսության ուժեղացումը: Եվ Անիում չնայած սնկի պես շարունակում էին բազմանալ մեծ ու փոքր եկեղեցիները, սակայն գնալով աշխարհիկ մտածողությունը, իրական կյանքի ծիշտ ըմբռնումները աստիճանաբար որակ էին կազմում, արտահայտելով երկրի հասարակական-տնտեսական կյանքի իրական վիճակը:

Հանրահայտ է, որ մշակութային կյանքի հիմքերի հիմքը դպրոցն է: Անիի մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի դպրոցների մասին ուղղակի տեղեկություններ ու հիշատակություններ չեն հասել: Սակայն անուղղակի որոշ փաստեր՝ ծագումով անեցի ճարտարապետների, գրիչների, թարգմանիչների, տարբեր կարգի հեղինակների գոյությունը գալիս է ասելու, որ Անիում մեզ հետաքրքրող ժամանակներում նույնպես գործում էին տարբեր բնույթի (այդ թվում, ինչպես կարելի է ենթադրել, նաև ճարտարապետական թեքումով) դպրոցներ և մասնավոր ուսումնարաններ:

Եթե ելնելով նշված անուղղակի փաստերից կարելի է ենթադրել ցածր տիպի դպրոցների և մասնավոր ուսումնարանների գոյության մասին, ապա նույնը չի կարելի ասել նախորդ շրջանում, Հովհաննես Սարկավագի և նրա նախորդների՝ Գրիգոր Մագիստրոսի ու այլոց ժամանակ գործող, իր հիմնական ուղղությամբ իմաստասիրական, բարձր տիպի դպրոցի՝ ճեմարանի վերաբերյալ: Հավանական կարելի է համարել, որ դրա տնօրեն Հովհաննես Սարկավագից հետո դպրոցը դադարել է գործելուց և մայրաքաղաքի ուսումնատենչ երիտասարդները բարձրագույն

կրթություն ստանալու համար նորից ուսումնառության էին գնում գլխավորապես Հաղպատ, որի բարձրագույն դպրոցն այնքան սերտ կապեր ուներ Անիի նշված ճեմարանի հետ:

Բագրատունիների օրոք սկսված գիտության զարգացումն առանց ընդհատվելու շարունակվում է: Գրիգոր Մագիստրոսի, Հովհաննես Սարկավագի, Մխիթար Հերացու, ինչպես նաև Սամվել Անեցու, Մխիթար Անեցու և այլոց գործը շարունակում են 13-րդ դարի հեղինակները, որ այնքան մեծ թիվ են կազմում:

Անին նույնպես անմասն չի մնացել գիտության զարգացման ընդհանուր գործից: Սակայն ցավով պիտի ասել, որ մեծ քաղաքի գիտական կյանքի մասին բնորոշիչ փաստեր չեն հասել և մենք զրկված ենք մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի Անիի այդ բնագավառի շատ թե քիչ արժանահավատ բնութագիրը տալուց: Այնուամենայնիվ, մի քանի անուղղակի փաստեր մեզ հիմք են տալիս ենթադրելու գիտական մտքի առաջադիմության մասին: Այսպես, ենթադրվում է, որ Հովհաննես Երզնկացու աշակերտ Գրիգոր գրչի 1342 թվականին Երզնկայում գրած հիշատակարանում մատնանշված տոմական որոշ աղյուսակները բերվել էին Անիից և այդ աղյուսակները պարունակող ձեռագիրը պատկանում էր կամ Հովհաննես Սարկավագին, կամ եղել է նրա աշակերտներից մեկի ձեռքով ընդօրինակվածը: Այնուհետև, Զաքարյաններն իրենք ժամանակի գիտակ անձնավորություններից էին: Նրանցից մանավանդ Իվանեն, ինչպես հաղորդում են աղբյուրները, «հոյժ» տեղյակ էր գրականությանը, փիլիսոփայությանն ու, հատկապես, կրոններին: Իվանեի գրականությանը լավատեղյակ լինելու մասին հաղորդում են նաև վրացական աղբյուրները:

Միջնադարյան Հայաստանի գրչության կարևոր դպրոցներից մեկը համարվում է Անիի դպրոցը: Այստեղ ձեռագրերն առաջվա նման կենտրոնացել էին գրատներում («գրատունք») ու եկեղեցիներում: Ընդ որում գրատների մի մասը ամենայն հավանականությամբ եկեղեցիներին կից էր, հատկապես այն եկեղեցիներին (Կաթողիկե, Առաքելոց և այլն), որոնց ձեռագրերը մեծ թիվ էին կազմում: Սակայն անհրաժեշտ է նշել, որ հնագիտական պեղումների ընթացքում Անիում ձեռագրեր ամենևին չեն հայտնաբերվել: Այդ մի կողմից կարելի է բացատրել նրանով, որ մոնղոլական նվաճումների ժամանակներից ի վեր Անին բազմիցս կողոպտվել է օտարերկրյա նվաճողների կողմից և, երկրորդ, մեր կարծիքով դրա ձեռագրերի հիմնական մասը պահված կարող էր լինել Ստորերկրյա և Այրային Անիում, որոնք այնքան քիչ են ուսումնասիրվել և որոնց, ինչպես և շատ եկեղեցիների գաղտնարանները, մեզ համար տակավին ան-

հայտ են մնում: Անիի ձեռագրերի մեծ մասը ոչնչացվել և «գերեվարվել» է քաղաքը մոնղոլների կողմից գրավելու ու ավերելու ժամանակ՝ 1236 թվականին: Միանգամայն հասկանալի է. «գերեվարված» ու տարբեր երկրներ տարված ձեռագրերը այլևս Անի չվերադարձվեցին, վերջինս զրկվեց իր այդ թանկագին ունեցվածքից: Անիի ձեռագրերը հիմնականում բաղկացած էին Մաշտոցներից, Տոնականներից, Ավետարաններից, պատմագրական երկերից և այլ բնույթի ու բովանդակության ձեռագրերից:

Ինքնատիպ գործեր ստեղծելու հետ միասին Անիում կատարել են նաև թարգմանություններ: Միանգամայն հասկանալի պատճառով, թարգմանական գրականությունն ուներ աշխարհիկ բովանդակություն: 12-րդ դարի վերջերին և 13-րդ դարի սկզբներին կատարված թարգմանություններից մեզ տեղեկություններ են հասել միայն երկուսի մասին: Դրանցից մեկն ունեցել է աստղագիտական-աստղաբաշխական բովանդակություն, թարգմանվել է պարսկերենից Մխիթար Այրիվանեցու կողմից, Անիում, 1181—1191 թվականների սահմանում: Մյուսը երազահան է և թարգմանվել է 1222 թվականին: Դրա վերաբերյալ բավական մանրամասնությամբ ասված է ըստ բովանդակության 13-րդ դարի առաջին քառորդի վերջերին վերաբերող ձեռագրաց հիշատակարաններից մեկում:

Երազահանը թարգմանել են արաբերենից Առաքել իմաստասեր աբեղան, որ կրում էր Վառ մականունը, Մխիթար Կլեկանցը և Ծերանը: Պարզվում է, որ թարգմանությամբ զբաղվում էին ոչ քիչ թվով մարդիկ, թարգմանություններ կատարում էին արաբերենից, պարսկերենից (բացառված չէ նաև այլ լեզուներից), իսկ բովանդակությամբ կարող էին լինել բժշկական, աստղաբաշխական և այլ բնույթի:

Գրիչներից բացի վիմագիր արձանագրություններ փորագրողները նույնպես իրենց համարել են գրիչներ: Անիի արձանագրությունները բոլորը գրել են երկաթագրով, երբեմն ծաղկազարդ տառերով: Դրանց փորագրությունն ամենուրեք կատարված է վարպետորեն: Այնպես որ վիմագիր արձանագրությունները փորագրող գրիչներն ինչ-որ չափով նաև արվեստագետներ են եղել: Մեզ հետաքրքրող ժամանակների ամենահայտնի գրիչը կարելի է համարել Իսրայելին, որը փորագրել է Տիգրան Հոնենցի 1215 թվականի ընդարձակ արձանագրությունը ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու հարավային պատի վրա: Նա սովորաբար ստորագրել է Իսրայել կամ Իսրաէղ, հաճախ դրանց ավելացնելով «գրիչ»-ը: Իսրայելի գրած արձանագրությունների մեսրոպյան տառերից յուրաքանչյուրը ճարտարապետական մի հրաշալի մանրակերտ է, գեղեցկության ու համաչափության չափանիշ:

Իսրայելի ժամանակակիցն էր Սիմեոն գրիչը: Նա 1216 թ. փորագրել է իր հիշատակին մի արձանագրություն Անիի պաշտպանական պարսպի բուրգերից մեկի վրա, որի կառուցումը Ս. Բարխուդարյանը ենթադրաբար վերագրում է հենց նրան՝ Սիմեոնին:

Ս. Բարխուդարյանը վիմագիր արձանագրությունների ժողովածուների հիման վրա կազմել է նաև Անիի հետագա ժամանակների փորագրող գրիչների ցանկը, նշելով դրանց փորագրած արձանագրության բովանդակությունը և փորագրման թվականը: Նա թվարկում է այդպիսի հինգ գրիչների անուններ, որոնք ապրել են տարբեր ժամանակներում: Դրանք են՝ Հովսեփ գրիչը, որը 1274 թվականին քաղաքի պարսպի Ջաքարեի բուրգի վրա փորագրել է իր ստորագրությունը, Սարգիսը՝ Անիի մոտ մի ժայռափոր եկեղեցու 1291 թվականի (մեկենասներ Գորգի և նրա կենակից Սիթի շինարարական) արձանագրության փորագրողը, Պտուղ գրիչը՝ Աթաբեկ Շահնշահի ամուսին Խուանդեսի 1320 թվականի՝ որոշ հարկերի վերացմանը վերաբերող Առաքելոց եկեղեցու պատի վրայի արձանագրության փորագրիչը, Բուբարաք գրիչը, որը 1342 թ. Անիի ս. Փրկիչ եկեղեցու գավթի պատուհանների շրջանակներին փորագրել է երկու կարճ հիշատակություն:

Անիի գրիչների հարցին նորից չանդրադառնալու միտումով մենք խախտեցինք ժամանակագրական կարգը և 13-րդ դարի առաջին կեսին ապրած գրիչների հետ միասին նշեցինք նաև այդ նույն դարի երկրորդ կեսի ու 14-րդ դարի մեզ հայտնի գրիչներին: Հարցը փակելու համար անհրաժեշտ ենք համարում նշել նաև, որ Անին ավերակների կույտի վերածվելուց հետո էլ «գրիչները» շարունակել են իրենց գործը. դրա հնություններով ու հուշարձաններով հրապուրված այցելուները ամենատարբեր կարգի մակագրություններ են արել կամուրջների, բուրգերի, եկեղեցիների և այլ հուշարձանների վրա: Անշուշտ դրանք ոչ թե գրիչներ են, այլ հուշարձաններ այլանդակողներ: Մի վատառողջ սովորույթ, որ ցավոք շարունակվում է նաև մեր օրերում:

Մեզ հետաքրքրող տասնամյակներում գրվել են տասնյակ վիմագիր արձանագրություններ: Դրանք առաջնակարգ սկզբնաղբյուրներ են Անիի պատմության համար, առանց որի թերի կլիներ նաև նրա բազմաձյուղ մշակույթը:

Չնայած 13-րդ դարի ընթացքում Հայաստանի բազմաթիվ գավառներում կերտվում են ճարտարապետական հրաշալի կոթողներ, սակայն մինչև 14-րդ դարը ճարտարապետության բնագավառում առաջնության դափնին շարունակում էր մնալ Անիի ձեռքին, նա շարունակում էր պահպանել հայկական ճարտարապետական մշակույթի հիմնական կենտրոնի

նշանակությունը: Իսկ նրա ճարտարապետության հետ էլ, մեզ հետաքըրքըրող շրջանում, միահյուսված էին քանդակագործությունն ու որմնանկարչությունը իբրև կիրառական արվեստի ճյուղեր: Դրանք իրենց մեջ, ժամանակի սոցիալ-տնտեսական պայմանների ու գաղափարախոսության բնագավառում տեղի ունեցած փոփոխությունների՝ աշխարհիկ մտածողության ուժեղացման ազդեցության տակ, ստանում են ավելի աշխարհիկ բովանդակություն: Այդ հավասարապես վերաբերում է և՛ քանդակագործությանը, և՛ որմնանկարչությանը, և՛ մանրանկարչությանն ու գրականությանը: Արվեստի պատկերման առարկաներ են դառնում ընտանի և վայրի կենդանիներն ու թռչունները, գյուղատնտեսական աշխատանքների զանազան պրոցեսներ ու դրվագներ և այլն: Մեզ հետաքրքրող ժամանակներում ստեղծվում են արվեստի շատ գործեր: Ճիշտ է, Հայաստանը կատարյալ անկախություն չէր վայելում, բայց տնտեսապես առաջադիմող երկրի միջոցները կարող էին ազատ կերպով տնօրինել ինչպես ցանկանում էին: Այս տեսակետից էլ անառարկելի է Ն. Մառի այն եզրակացությունը, թե՝ «Հայ հարուստ քաղաքացիները հանդես են գալիս իբրև» ազգային մշակույթի կրողներ և 13-րդ դարի մոտերքում «Հայաստանում մշակույթի լրիվ ծաղկման համար հողն արդեն պատրաստ էր»:

12-րդ դարի վերջի և 13-րդ դարի սկզբների Անիի քանդակագործության բնօրինակները կենդանիները, թռչունները և բույսերն էին: Ամենատարածված նախշերից էին մանվածո զարդաքանդակները, աստղերը, ռումբերը: Այդ նոր ոճերի քանդակագործությամբ առանձնապես հայտնի էին ս. Գրիգոր Լուսավորիչ (Նախշլու) եկեղեցին, 1892 թվականին Մառի պեղած ս. Գրիգորը (Բախտաղեկի եկեղեցին), պարոնի կամ իշխանի պալատի դուռը, հյուրանոցի դռները, Կուսանաց վանքի եկեղեցին, պաշտպանական պարսպի որոշ բուրգեր և այլն:

Գեղանկարչությունն ուներ երկու ուղղություն՝ որմնանկարչություն և մանրանկարչություն: Որմնանկարչությունը քանդակագործության հետ միասին լրացնում էր շքեղ շենքերի հարդարանքը: Ընդ որում, եթե սովորաբար շենքերի արտաքին մասը զարդանախշվում էր քանդակներով՝ քանդականախշերով, ապա ներսը զարդարում էին որմնանկարներով, որոնց բնույթի, սյուժեի և առանձնահատկությունների վերաբերյալ մասնակիորեն խոսվեց ճարտարապետության հետ միասին:

Անիի որմնանկարչության մասին բավական լավ գաղափար են տալիս Տիգրան Հոնենցի և, մասամբ, ս. Գրիգոր եկեղեցիների, Առաքելոց եկեղեցու գավթի որմնանկարների պահպանված պատառիկները: Տիգրան Հոնենցի եկեղեցու որմնանկարները արտանկարվել են 1906 թվականի պեղումների ընթացքում՝ Ն. Մառի հանձնարարությամբ նկարիչ Պոլտո-

րացկու ջանքերով, որն արտանկարել է Գրիգոր Լուսավորչի կյանքին վերաբերող բոլոր նկարները։ Այդ պատառիկների հիման վրա մասնագետները եկել են այն եզրակացության, որ 13-րդ դարի սկզբներին հանձինս Տիգրան Հոնենցի եկեղեցու և Անիի մյուս եկեղեցիների որմնանկարների, «հայկական գեղանկարչության մեջ երևան են գալիս նոր հոսանքներ..., որոնք ծանոթ են դեկորատիվ արվեստի լավագույն ձևերին»,— գրում է Ն. Սըչնը։ Գեղանկարչության այդ ճյուղի բնութագրման համար առանձնապես կարևոր են Տիգրան Հոնենցի եկեղեցու և դրա գավթի վառ գույներով որմնանկարները։

Եթե մեզ հասած որմնանկարների և դրանց պատառիկների հիման վրա հեղինակները կարող են տարբեր տեսանկյունից խոսել Անիի զարգացած որմնանկարչության մասին, ապա նույնը չի կարելի ասել դրանց հեղինակների վերաբերյալ։ Վերջիններս մեզ համար մնում են անհայտ, թեպետև 9-րդ դարի սկզբներից ի վեր հիշատակվում են մի քանի հայ նկարիչների անուններ։ Տիգրան Հոնենցի 1215 թվականի արձանագրությունից նույնպես երևում է, որ Անիում այդ ժամանակներում կային, արձանագրության լեզվով ասած, «պատկերագործ»-ներ, առանց սակայն նշելու որևէ նկարչի անուն։ Այդ անորոշությունն էլ պատճառ է դարձել որմնանկարների հեղինակների ազգային պատկանելության մասին նույնքան անորոշ ենթադրությունների համար։ «Պատկերագործ»-ներից բացի նկարիչ հասկացությամբ «փարշական» է հիշատակվում 1237 թվականի ավետարաններից մեկի հիշատակարանում և Անիի ս. Փրկիչ (կամ Ամենափրկիչ) եկեղեցու ու Տեկորի տաճարի արձանագրություններում։

Եվ «պատկերագործ»-ները և «փարշական»-ները կարող էին լինել և՛ վիմանկարիչներ, և՛ գեղանկարիչներ։ Անիի գրչության դպրոցի ձեռագրերը հայոց մյուս ձեռագրերի նման զարդարված էին մանրանկարներով, որոնց հեղինակների անունները ցավոք չեն պահպանվել։ Ենթադրվում է, որ Անիում է ապրել ու ստեղծագործել 1211 թվականի մի ձեռագրի նկարների հեղինակ՝ նկարիչ Մարգարը։ 13-րդ դարը հայկական մանրանկարչության ծաղկման շրջանն էր։ Ենթադրյալ անեցի նըկարիչ Մարգարից բացի այդ դարում են ապրել Վարդանը (Կիլիկիայում), Գրիգորը (Սյունիքում), հայկական մանրանկարչության մեծագույն վարպետներ Թորոս Ռոսլինը, Սարգիս Պիծակը և տասնյակ այլ նկարիչներ, որոնք նկարազարդում էին հարյուրավոր ձեռագրեր։

Հայ թատրոնի պատմության ականավոր մասնագետ Գ. Գոյանը 10—14-րդ դարերը համարել է թատրոնի առաջընթացի մի առանձին ժամանակաշրջան, որ կապված էր երկրի տնտեսական ու քաղաքային կյանքի զարգացման և քաղաքական անկախության հետ։ Նա գրում է, որ այդ

դարերում շարունակվում էին անտիկ ժամանակներից եկող թատերական ավանդությունները, «գուսան-խեղկատակներ»-ը «ներկայացնում էին ոչ միայն տարփալից-ֆարսային բնույթի» գործեր, «այլ նաև երգիծական ստեղծագործություններ», որոնք արտահայտում էին հասարակության ցածր խավերի հակումներն ու տրամադրությունները: Եվ հիմնականում թատրոնի այդպիսի բնույթն է եղել պատճառը, որ պաշտոնական եկեղեցին շարունակում էր իր պայքարը դրա դեմ, այն արտաքնապես դիտելով որպես «հեթանոսության մնացորդ»: Մասնագետի այդ ընդհանրացնող բնութագիրն ամբողջությամբ վերաբերում է Անիի թատրոնին, որի գոյությունը հայտնի է դառնում դերասանական որոշ դիմակների ու հնագիտական մի քանի գտածոների շնորհիվ:



Պատրիան՝ բացված
1892 թ. պեղումներով

Սվաստիկայով դարպասը





Աղջկաբերդի (Կըզկալա) ընդհանուր համայնապատկերը

Կամսարականների կառուցած պաշտպանական պարիսպը





**Միջնաբերդի ընդհանուր համայնապատկերը**

**Պալատական եկեղեցին**



**Բրոնզե ջահ՝ գտնված Գագկաշեն տաճարում**



**Ձիթհանք**





Կարասի Նախշազարդ գոտի



Նախշաքանդակ փայտյա իր

Միջանցք միջնաբերդում






Քարանձավային տուն



Քանդակազարդ քար (Սարգսի պալատ)

Անիի պաշտպանական պարիսպների ընդհանուր համայնապատկերը



Միջնաբերդ.
պալատի պատի մի հատվածը



Անի. միջնաբերդի
պարիսպների ընդհանուր տեսքը
Ծաղկոցաձորից և Ախուրյանից





Քաղաքի գլխավոր փողոցը. ջրմուղի մի հատված



Քաղաքի կեղտաջրի խողովակաշարը բաղնիքում



Միջնաբերդի պալատական բաղնիքը

Առյուծի քանդակ հյուրատան
գլխավոր մուտքի վրա



Օձի քանդակ հյուրատան
գլխավոր մուտքի վրա



Սմբատի աշտարակը





Հաղթական կամար



Քաղաքի զինանշանը
Սմբատյան պարսպի վրա



Մայր տաճարի կառուցողական արձանագրությունը

Կամուրջ Ախուրյան գետի վրա (վերակազմության նախագիծ)



Մայր տաճարի ներսը



Մայր տաճարը





Խոյակ (Գագկաշեն տաճար)



Գագկաշեն տաճարի վերակազմության
ճակատն արևմուտքից



Գագիկ 1-ինի արձանը Գագկաշեն տաճարի մանրակերտը ձեռքին



Գագկաշեն տաճարի սրահը



Ս. Փրկիչ եկեղեցին



Առաքելոց եկեղեցու ստալակտիտային գմբեթը

Ապուղամրենց ս. Գրիգոր եկեղեցին



Հովվի եկեղեցին





Հովվի եկեղեցու
վերակազմության ծակատը



Խամբուշեց եկեղեցու պեղումները



Հայ ծաղրածու-խեղկատակ
(12-րդ դ.)



Խեղկատակ (Անիից)

Մանուչեի աշտարակը արաբերեն արձանագրությամբ





Մանուչեի մզկիթը



Մանուչեի մզկիթի
սյունաշարքը



Առաքելոց եկեղեցու գավիթը

Վրացադավան եկեղեցին վերանորոգումից հետո





**Խաչքարի պատվանդան**

**Վրացաղավան եկեղեցին հարավ-արևմուտքից**



Հատակի խճանկար





Տակառաձև անոթ

Հոռոմի եկեղեցու պեղումները







Հյուսանոցի ավագ դռների նախշազարդերից

Պարոնի պալատը





**Սարգսի պալատի երեսապատման քարերից**



**Պարոնի պալատի գլխավոր մուտքը**





Տիգրան Հոնենցի եկեղեցու զարդաքանդակներից

Սարգսի պալատը (ճակատի վերակազմություն)



Բախտաղեկի եկեղեցին (վերականգնում)



Տիգրան Հոնենցի եկեղեցին





**Քարիմադինի արձանագրությունը**

**Շախմատային եկեղեցին**





**Սահմադինի արձանագրությունը**

# ԱՆԻՆ 13—15-ՐԴ ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԼԾԻ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ԱՆԻՈՒՄ

Մոնղոլների կողմից Անիի գրավման ու ավերման մասին տեղեկություններ են հաղորդել հայկական և վրացական աղբյուրները, ինչպես և արևմտաեվրոպական որոշ ճանապարհորդներ, որոնք սակայն այդ դեպքերի իսկական ժամանակակիցները չեն:

Մոնղոլներն Անդրկովկասում առաջին անգամ երևան են գալիս 13-րդ դարի 20-ական թվականների սկզբներին՝ կատարելով ավարառուական հապճեպ արշավանք և, կարելի է ասել, ռազմական հետախուզություն:

Թաթար-մոնղոլներն Անդրկովկասի նվաճումն սկսում են 1236 թվականին, երբ 30 հազարանոց բանակով ներխուժում են Մուղան և այստեղ ջոկատների բաժանվելով հարձակվում Հայաստանի, Վրաստանի ու Հյուսիսային Ադրբեջանի տարբեր շրջանների վրա:

Արարատյան ու Շիրակի դաշտերը և Անին «բաժին էր ընկել» մոնղոլական բանակի գլխավոր ջոկատին, ամբողջ արշավանքը գլխավորող Չարմաղանի հրամանատարությամբ: Ահա այդ ջոկատն է, որ Սևանա լճի ափերով մտնում է Արարատյան դաշտը և շարժվում դեպի Անի:

Անիի գրավման ու ավերման ամբողջ ընթացքը բավական մանրամասնությամբ ու գույների խտացմամբ նկարագրել է Կիրակոս Գանձակեցին:

Չարմաղանը ամենայն հավանականությամբ հաշվի առնելով Անին գրավելու դժվարությունները, նրա խիստ ամուր լինելը, պատվիրակություն է ուղարկում և առաջարկում առանց կռվի հանձնվել: Սակայն քաղաքի գլխավորները չեն համարձակվում վերջնական պատասխան տալ մոնղոլ զորավարի ուղարկած պատվիրակությանը, պատճառաբանելով, որ Անին գտնվում է Շահնշահի իշխանության տակ և այդ մասին նրան պետք է հարցում անեն: Թվում է, թե քաղաքի ավագանու այդ վարմունքը հասարակ քաղաքացիները («ամբոխ քաղաքին և ռամիկքն») դիտել են իբ-

րև թուլամորթություն (կամ, նույնիսկ, դավաճանություն) և հարձակվելով պատվիրակության վրա, ոչնչացրել են այն:

Պատվիրակների սպանության լուրը մոնղոլ զորավարին հասցնում է կատաղության: Առանց հապաղելու Չարմաղանն իր բանակով գալիս ու բոլոր կողմերից պաշարում է քաղաքը, բաբաններով կատաղաբար հարվածելով պաշտպանական պարիսպներին:

Պատմագրի վկայության տողամիջից երևում է, որ քաղաքացիները համառ դիմադրություն են ցույց տվել: Նրանք մարտնչել են իրենց հարազատ քաղաքի համար: Պաշարվածների մեջ այնուամենայնիվ գտնվում են իշխաններ, որոնք լքում են դիմադրողների շարքերը և դյուրահավատորեն դիմում մոնղոլների «ողորմածությանը»: Մոնղոլները սուտ խոստումներ տալով դրանց իրենց ընտանիքներով դուրս են բերում քաղաքից և ապա բաժանելով առանձին խմբերի՝ դավադրաբար ոչնչացնում բոլորին, բացառյալ փոքր թվով կանանց, մանուկների ու արհեստավոր մարդկանց, որոնք ենթարկվում են գերեվարման:

Դրանից հետո մոնղոլական հրոսակներին, այնուամենայնիվ, հաջողվում է կոտրել քաղաքացիների դիմադրությունը, հաղթահարել ամրակուռ պարիսպները և ներխուժել քաղաք՝ կողոպտելով նրա ամբողջ հարստությունը, եկեղեցիները, ավերելով ու քանդելով «զամենայն քաղաք»:

Մոնղոլական ավերիչ արշավանքների լուրն առնելով, Հյուսիսային Հայաստանի գավառների բնակիչների զգալի մասը ժամանակավորապես ապաստանում է բերդերում ու ամրացված քաղաքներում: Շիրակի և շրջակա մի քանի գավառների հազարավոր բնակիչներ իրենց կյանքը փրկելու համար դիմում են Անի և ապաստան գտնում նրա ամրակուռ պարիսպներից ներս: Այնպես որ Անիի գրավմամբ մոնղոլական ավարառու բանակը քաղաքացիների հետ միասին ոչնչացնում է այստեղ ապաստանած շրջակայքի հազարավոր բնակիչների, չհաշված գերեվարություններն և տասնյակ հազարների հասնող հարկադիր տարագրությունը:

Մոնղոլական արշավանքն Անիի համար ճակատագրական էր: Փաստորեն քաղաքը դրա հետևանքով այնպիսի հարված է ստանում, որ հետագայում երբեք լիովին չի վերականգնվում: Պատմագիրների նկարագրություններից պարզ երևում է, որ կարճատև պաշարումից հետո՝ մասամբ դավաճանության և մասամբ էլ դյուրահավատության հետևանքով, իրենք՝ հայերը փաստորեն օգնել են դաժան թշնամուն քաղաք մտնելու: Անիի ստացած վերքն անբուժելի եղավ: Ավերումը համատարած էր, կոտորածը՝ ահռելի, մոնղոլական ավազակաբարո զորքերի խժդժություն-

ները՝ աներևակայելի, գերեվարությունը՝ մեծ չափերի, տարագրությունը՝ անդարձ:

Անիի և Կարսի գրավումից հետո մոնղոլական արշավանքներն առժամանակ դադարում են: Դրանք վերսկսվում են 40-ական թվականներին: 1242—1245 թվականներին տեղի ունեցած հարձակումների ընթացքում մոնղոլները Բաչուի գլխավորությամբ գրավում են Հայաստանի մյուս մասերն ու դրանց հայտնի քաղաքները՝ Կարինը (Էրզրում), Երզնկան, Խլաթը և այլն, իրենց ծանր լուծը հաստատելով ամբողջ երկրում: Բաչուի արշավանքներին նույնպես հարկադրաբար («դաշնակցային պարտավորությունների կարգով») մասնակցում էին Զաքարյան և Օրբելյան հայ իշխաններն իրենց ջոկատներով, որոնք մոնղոլական զորավարների կարգադրությամբ մարտի էի նետվում առաջինը՝ իրենց վրա կրելով պաշտպանվողների առաջին հարվածները:

Մի շարք տեղերում մոնղոլական զորքը հանդիպել է համառ ու երկարատև դիմադրության, բայց վերջիվերջո Հայաստանը և Վրաստանն ամբողջությամբ ընկնում են մոնղոլական ծանր լծի տակ:

Մոնղոլների տիրապետության շրջանում՝ 13—14-րդ դարերում Անին լիովին ենթակա էր մոնղոլական խանի գերագույն իշխանությանը: Քաղաքը խասինջու էր, այսինքն՝ կազմում էր մոնղոլական խանի բաժնեկալվածքը՝ տիրույթը: Զաքարյանները մոնղոլական տիրապետության հաստատմամբ կորցնում են իրենց քաղաքական իշխանությունը և դառնում մոնղոլական խաների ենթակաները՝ վասալները: Սակայն Անին սկզբնական շրջանում վարչականորեն էական փոփոխություն չի կրել, բավական երկար ժամանակ այն համարվում էր Զաքարյան իշխանների հայրենական կալվածքը:

Մոնղոլներն իրենց գրաված հսկայածավալ երկրներում չնչին փոքրամասնություն էին կազմում և դրանք իրենց ձեռքում պահում էին, Կ. Մարքսի արտահայտությամբ, «սիստեմատիկ տեռորի» ու «ջարդերի» միջոցով: Դրա հետ միաժամանակ ոչ էական իշխանություն և հողատիրական իրավունքներ տալով տեղական հողատիրական ու զինվորական վերնախավի ներկայացուցիչներին՝ նրանց դարձնում էին կամակատարներ ու վստահելի անձինք՝ իրենց իշխանությունը անսասան պահելու համար:

Հյուսիսային Հայաստանում մոնղոլական տիրապետության սկզբնական շրջանում հատկապես մեծ արտոնություններ է ստանում Իվանեի որդի Ավագը, որն ամենից վաղ և առանց էական դիմադրության ընդունել էր մոնղոլական խաների իշխանությունը: Օգտվելով այդ դիրքից նա նույնիսկ կարողանում է իր շուրջը համախմբել Հայաստանի այդ մասի իշխաններին՝ Զաքարեի որդի Շահնշահին, Վահրամ Գագեցուն և նրա

որդի Աղբուղային, Խաչենի Հասան Ջալալյանին և ուրիշների, դրանց նկատմամբ ձեռք բերելով մի տեսակ վերադիր դիրք։ Նրա «ազդեցության ոլորտից» դուրս էին մնում Սյունիքի Օրբելյան Էլիկումն ու նրա ժառանգները, որոնք իրենց գործերը մոնղոլների հետ «կարգավորել» էին առանձին՝ Սյունիքը «խասինջու» դարձնելու պայմանով։

Զաքարյանները մոնղոլական տիրապետության շրջանում շարունակեցին իշխել Անիում։ Թաթար-մոնղոլները փաստորեն ճանաչել էին նրանց ժառանգական իրավունքները։ 13-րդ դարում հիշատակվում են Անիի Զաքարյան իշխանների մի քանի սերնդի ներկայացուցիչներ։ Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում Անիում և Շիրակում իբրև Զաքարյան իշխողներ հիշատակվում են ամիրսպասալար Զաքարեի որդի Շահնշահ Ա-ն (մահացած 1261 թ.) և նրա որդիներն ու թոռները։ 14-րդ դարի առաջին կեսում Անիում դեռևս շարունակում էին գոյություն ունենալ Զաքարյանների շառավիղները՝ Շահնշահ Ա-ի թոռները՝ Շահընշահ Բ-ն (մահացած 1320 թ.), Վահրամը և Զազան։

Եթե Զաքարյան տոհմիկ իշխանները գնալով «մանրանում» են ու կորցնում իրենց կշիռը, ապա նույնը չի կարելի ասել քաղաքի ներքին տնտեսական ու վարչական կյանքում կարևոր դեր խաղացող «մեծատուն-ների» մասին, որոնք մոնղոլական իշխանությունների կողմից քաղաքում նշանակվում էին որպես «պարոններ» և փաստորեն իրենց ձեռքն էին վերցրել Հայոց վաղեմի մայրաքաղաքի կառավարման գործը։ Սակայն «պարոն»-ները քաղաքական իշխանություն ամենևին չունեին և զբաղվում էին սոսկ տնտեսական հոգսերով՝ հարկերով, շինարարությամբ, առևտրի կարգավորմամբ և այլն։ Ընդհանուր առմամբ, հենց այդպիսի ուղղություն և շրջանակներ ուներ և՛ Զաքարյան իշխանների, և՛ մեծատուն-պարոնների, և՛ քաղաքագլխի («շահնայ») ու քաղաքի մյուս պաշտոնյաների գործունեությունը։ Պաշտոնեության հետ միասին, առաջվա նման, շարունակում էին գոյություն ունենալ նաև քաղաքի ինքնավարական մարմինները՝ «երիցանու» գլխավորությամբ։ Ինչպես երևում է անուղղակի հիշատակություններից, քաղաքի ինքնավարական մարմինների իրավունքները մոնղոլների ժամանակ նույնպես խիստ նեղացվել էին և գրեթե բացառապես սահմանափակվում էին տնտեսական ու մշակութային գործերի տնօրինմամբ։

Չնայած վաղուց Անին մայրաքաղաք չէր, որովհետև Հայաստանի՝ 1045 թվականին կորցրած քաղաքական անկախությունը այլևս չվերականգնվեց, սակայն միջնադարյան բոլոր կարգի հեղինակները, պատմության իներցիայով, շարունակում էին այն կոչել մայրաքաղաք, նույնիսկ հետագայում, երբ վերածվել էր ավերակների կույտի։

## 2. ՔԱՂԱՔԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԿՅԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԸ

Մոնղոլական տիրապետության շրջանում Անիի տնտեսական կյանքի որոշ կայունացման ու 1236 թվականի սոսկալի ավերածության հետեվանքները վերացնելու համար մեզ թվում է զգալի նշանակություն է ունեցել քաղաքը խասինջու համարվելը, որով այն անմիջապես ենթարկվում էր մոնղոլական մեծ խաներին և առայժմ զերծ էր մնում ցածրադիր իշխանավորների ու կապալառու հարկահավաքների կամայականություններից:

Քաղաքի տնտեսական կյանքի աշխուժացման պատճառներից էր նաև այն, որ նրա ներքին կյանքը առայժմ ամբողջապես գտնվում էր Զաքարյան հայ իշխանների ձեռքին, իսկ մոնղոլները դրանց (և ընդհանրապես երկրի մյուս իշխանական տների նկատմամբ, հատկապես՝ կրոնական հարցերում) մի տեսակ հանդուրժող էին և վարում էին սիրաշահող քաղաքականություն՝ երկրի տնտեսական ու ռազմական հնարավորություններն իրենց նպատակներին ի սպաս դնելու հավակնությամբ:

Երկրում և նրա խոշորագույն քաղաք Անիում կյանքը կայունանում է մոնղոլական նվաճողական արշավանքներից հետո՝ 13-րդ դարի 40-ական թվականների վերջերից:

Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում Անիի (և երկրի) տնտեսական պայմանները այս կամ այն չափով բարելավելու այլ ազդակներ գրեթե անհնար է մատնանշել: Իսկ նշվածները՝ երկրի վերջին հյութերը քամելու նպատակով այս կամ այն խանի ու էլիխանի «բարյացակամությունը», «հանդուրժողականությունը», «արդարամտությունը», քաղաքի ներքին կյանքն առայժմ տեղական իշխաններին վստահելը և այլն, չեն կարող արմատական փոփոխությունների հիմք լինել, դրանք միայն կարող էին ժամանակավորապես ընդհատել կամ դանդաղեցնել (որ ավելի հավանական է) նվաճված ու ավերված քաղաքի տնտեսական ընդհանուր անկումը, որ բխում էր հենց մոնղոլական տիրապետության բուն էությունից:

Մոնղոլական տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում Անին անկում էր ապրում: Այն, ինչպես տեսանք, նախ սոսկալի ավերման է ենթարկվում Չարմաղանի 1236 թվականի արշավանքի ժամանակ և հետագայում այլևս երբեք չի վերականգնվում նրա նախկին վիճակը:

Կ. Մարքսի բնութագրմամբ թաթար-մոնղոլներն «ստեղծեցին պար-

բերական տեռորի ռեժիմ», որին հատուկ էին «քայքայումն ու զանգվածային սպանությունները»: Կ. Մարքսի այդ խոսքերը, որ ասված են թաթար-մոնղոլների Ռուսաստանում վարած քաղաքականության բնութագրման համար, հավասարապես վերաբերում են նաև նրանց գրաված մյուս երկրներին, որոնց թվում և Հայաստանի ու նրա վաղեմի մայրաքաղաք Անիին:

Անիի պատմության ուշ շրջանում հայ իշխանները մղված էին հետին պլան: Նրանք փոխարինվել էին օտար իշխողներով, որոնք օժտված էին ավելի լայն իրավունքներով՝ նրանց նույնիսկ վերապահված էր դրամ կտրելու իրավունքը: Սակայն օտար իշխողներին տրված այդ իրավունքները ոչնչով չէին նպաստում քաղաքի անկման պրոցեսը կանգնեցնելուն: Նրանց կատարած մասնակի բարեփոխությունները, որ հիմնականում վերաբերում էին հարկերին, չէին կարող ընդհանուր հետադիմությունը որևէ չափով կանգնեցնել:

Անիի տնտեսական անկումը անխուսափելի էր դարձել նաև նրանով, որ մոնղոլական արշավանքների և բռնությունների հետևանքով, գերեվարություններից բացի, քաղաքի արհեստավորությունը զանգվածներով դիմում էր արտագաղթի: Գնալով արհեստագործությամբ նախկինում այնքան հայտնի Անին միջնադարյան քաղաքը բնութագրող այդ ճյուղով ևս դառնում է երկրորդական-երրորդական: Վիմագիր արձանագրություններից ակնհայտ է դառնում, որ Անին 14-րդ դարի սկզբներին արդեն ծանր կացության մեջ էր:

Երկրի հետ միասին ավելի վատթարացավ Անիի տնտեսական դրությունը 14-րդ դարի երկրորդ կեսից, երբ մոնղոլական աշխարհակալությունը գահակալական կռիվների պատճառով մասնատվում է մուսուլմանական ֆեոդալական մի շարք իշխանությունների: Վերջիններս հարատև կռիվներ էին մղում նորանոր երկրամասեր գրավելու համար: Հայաստանի և Վրաստանի տարածքներում ֆեոդալական այդ կռիվները դարձել են անընդհատ և բերում էին մեծ ավերում ու տնտեսական քայքայում: Կռիվները, բնակչության բնաջնջումը, գերեվարությունը, տնտեսական քայքայումն իրենց առավելագույնին են հասնում Լենկ Թեմուրի, թեմուրյանների և թուրքմենական ցեղերի տիրապետության շրջանում:

Այդ բոլորով հանդերձ, Անիի տնտեսական անկման առաջին պատճառը մոնղոլների վարած կողոպտիչ հարկային քաղաքականությունն էր, որ ծայրաստիճան աղքատության էր հասցրել ժողովրդական զանգվածներին: Պատահական չէ, որ քաղաքի 13—14-րդ դարերի վիմագիր արձանագրությունների ճնշող մասը վերաբերում էր հարկերին՝ այս կամ այն իշխանի, «պարոն»-ի, օտար իշխանավորների, հոգևորականների,

հարկահավաքների ու հարկային վերահսկիչների կողմից որոշ հարկերի վերացմանը, հարկային սիստեմի կանոնավորմանը, որոնք սակայն կիսատ-պռատ էին և նույնպես չէին կարող կանգնեցնել քաղաքի տնտեսական կյանքի անկումը:

Մեզ թվում է, որ մոնղոլական տիրապետության շրջանում Հյուսիսային Հայաստանի երկու խոշորագույն քաղաքների՝ Անիի և Դվինի պատմությունը զգալի չափով տարբերվում էր երկրի մյուս քաղաքների և գավառների պատմությունից: Հայտնի է, որ Հայաստանի տարբեր մասերում՝ հատկապես Սյունիքում, 13-րդ դարում տնտեսական ու մշակութային կյանքը մեծ առաջադիմություն է կատարել: Սյունյաց Օրբելյան և Պռոշյան իշխանները օգտվելով իրենց տրված արտոնություններից՝ ծավալում են լայն թափի շինարարական աշխատանքներ: Սյունիքում 13-րդ դարում գործում էին մի շարք դպրոցներ, որոնց պսակն էր հանդիսանում Գլաձորի համալսարանը (13—14-րդ դարեր): Մինչդեռ Անին և Դվինը հենց այդ դարում բռնել էին անկման ուղին: Խոսքը մասնավորեցնելով Անիի վերաբերյալ կարելի է ենթադրել, որ մոնղոլները ամեն կերպ խափանում էին դրա զարգացումը: Քաղաքական այդպիսի մեծ կենտրոնի առկայությունն ըստ երևույթին տիրողներին հաճելի չէր և դրա նշանակության անկումը նրանց այնքան էլ չէր անհանգստացնում, եթե նկատի չունենանք հարկերին վերաբերող այս կամ այն իշխողի մասնակի կարգադրությունները, որոնք մեզ են հասել վիմագիր արձանագրությունների շնորհիվ:

Փաստական նյութերի և գրավոր վկայությունների խիստ սակավության պատճառով անհնար է քայլ առ քայլ հետևել Անիի 13—14-րդ դարերի արհեստագործության վիճակին, նրա ընդհանուր անկման ընթացքին: Հնագիտական նյութերը թույլ են տալիս արհեստներից համեմատաբար արժանահավատ ներկայացնել կավագործությունը: Ինչպես տեսանք, նախորդ պատմաշրջաններում Անին կավագործական արհեստների մեծ կենտրոն էր և այստեղ հասարակ կավե անոթներից բացի արտադրվում էին հախճապակյա ու ճենապակյա ընտիր առարկաներ, որոնք հաջողությամբ կարող էին մրցել զանազան երկրների ու քաղաքների նմանատիպ ապրանքների հետ: Սակայն 13—14-րդ դարերում Անին դադարել էր կավագործության հայտնի կենտրոն լինելուց: Հնագիտական պեղումների ընթացքում հայտնաբերված տեղական արտադրության կավագործական իրերը, ինչպես նշում է Ն. Մառը, առանց բացառության հասարակ էին ու կոպիտ: Մեծ քանակությամբ հայտնաբերված այդ իրերը՝ կավե զանազան անոթները, ամանեղենը, կարասները զանգվածորեն գործածվում էին բնակչության լայն խավերի կողմից: Բարձր դասի օգ-

տագործած իրերը, որ հիմնականում ունեին մուսուլմանական մշակույթին հատուկ ոճավորում, ներմուծովի էին։ Այնպես որ Անիում 13—14-րդ դարերում կավագործությունը հետադիմել էր։ Անիի բրուտները մյուս արհեստավորների նման կամ գերեվարվել էին կամ քաղաքի տնտեսական կյանքի մարման հետևանքով հարկադրված են եղել իրենք դիմել տարագության։ Նրանք երկա՜ր-երկա՜ր ժամանակ նոր բնակավայրերում ավանդաբար պահպանում էին այդ արհեստով զբաղվելու ունակությունները և հայտնի էին իրենց բարձր վարպետությամբ, որ կարող ենք համոզվել Թոմարզայում ու դրա շրջակայքում հաստատված անեցի բրուտների տոհմիկ ժառանգորդների օրինակով։

Անիի մյուս արհեստները նույնպես 13—14-րդ դարերում մեծապես հետադիմել էին և կորցրել իրենց նախկին առաջնակարգ նշանակությունը։ Ավելին, կավագործական իրերը ընդհանրապես դժվար էր երկար տարածությունների վրա տեղափոխելը և դրանց արտադրությունը հիմնականում կատարվում էր տեղում։ Այդպիսի պայմաններում եթե այնուամենայնիվ կավագործությունն այդքան հետադիմել էր, ապա կասկած չի մնում, որ մյուս արհեստները նույնպես ունեցել են նույն ճակատագիրը։

Թվում է, թե զինագործությունը և ռազմական գործի հետ կապված մի քանի ուրիշ արհեստներ (թամբագործություն, պայտարություն և այլն) 13—14-րդ դարերում այնուամենայնիվ շարունակում էին զգալի դեր խաղալ։ Օտար նվաճողներն իրենց բանակները զինելու ու հանդերձավորելու համար ունեին նաև տեղական արհեստավորների կարիքը։

14-րդ դարի սկզբներից Անիում հատում էին պղնձյա տարբեր դրամներ և դրամահատությունը քաղաքում դարձել էր մշտական գործող արհեստներից մեկը։ Դրամական հայտնաբերումները ցույց են տալիս, որ այստեղ դրամահատությունը տևել է մինչև ընդհուպ 15-րդ դարի սկզբները, մինչև Լենկ Թեմուրի աշխարհավեր արշավանքներն ու թուրքմենական կարա-կոյունլու ցեղի տիրապետության ժամանակները։ Անիում հատած դրամները սկզբնական շրջանում ոճավորված էին քրիստոնեական-մուսուլմանական ճաշակով, իսկ հետագայում՝ զուտ մուսուլմանական։ Անուղղակի տվյալները ցույց են տալիս, որ բոլոր դեպքերում Անիի դրամահատները հայեր էին և նրանք տիրապետում էին այդ արհեստի բոլոր գաղտնիքներին։ Այնպես որ քաղաքի տնտեսական կյանքի կարեվոր հիմքերից մեկը կազմող արհեստագործությունը լիովին գտնվում էր հայ արհեստավորների ձեռքին, արհեստն այստեղ մինչև վերջ իր բնույթով մնաց «հայկական»։

Ներքին առևտուրը արգելակող մի շարք դրդապատճառներից բացի,

երկրում փակ բնատնտեսության ուժեղացումը, քաղաքային կյանքի անկումը, ճանապարհների վտանգավորությունն ու անբարեկարգությունը, չափերի, կշիռների ու դրամական միավորների բազմազանությունն ու անորոշությունը, տիրողների միջև մղվող կռիվները, որ 14-րդ դարից դարձել էին անընդհատ, աննպաստ պայմաններ էին ստեղծել նաև արտաքին ու տարանցիկ առևտրի համար, թեպետ մոնղոլական խաները վերջիններս համարում էին պետական գանձարանը հարստացնելու կարևոր միջոց և ամեն կերպ նպաստում էին դրանց ծավալմանը: 14-րդ դարի սկզբներին Անին իբրև արտաքին ու տարանցիկ առևտրի կենտրոն կորցրել էր իր նախկին նշանակությունը: Դրա հիմնական պատճառներից մեկն էլ այն էր, որ միջազգային տարանցիկ առևտրի ճանապարհները մոնղոլական տիրապետության շրջանում Հյուսիսային Հայաստանի փոխարեն ձգվում էին Հարավային Հայաստանով և Դվինը, Անին ու Կարսը իրենց նախկին առևտրական դերը զիջել էին հարավի տարանցիկ ճանապարհների վրա գտնվող քաղաքներին՝ Վանին, Արճեշին, Մանազկերտին, Խլաթին: Միջազգային առևտրի ուղղության այդ փոփոխությունը, կարելի է ասել, դարձավ Անիի աղքատացման արտաքին տնտեսական հիմնական պատճառներից մեկը: Մենք կարծում ենք, որ Անիի առևտրատնտեսական կյանքի նվազման համար պակաս դեր չի խաղացել նաև 13-րդ դարի երկրորդ կեսի սկզբներին Հուլավու ելխանի կողմից Ալադաղ ապարանքի կառուցումը, որը գտնվում էր Անիից ոչ այնքան հեռու (Ծաղկանց լեռների մոտ, Դառն դաշտում) և, վայելելով մոնղոլական խաներին հատուկ հովանավորությունը, շուտով դարձավ քաղաք և սկըսեց առևտրի բոլոր թելերը ձգել դեպի իրեն:

Ալադաղով անցնող տարանցիկ ճանապարհը գալիս էր Դարոյնքի (Բայազետ) կողմերից, ձգվում Ալաշկերտի դաշտով և Դալիբաբա կոչված լեռնանցքով դուրս գալիս Արաքսի հովիտ, իսկ այստեղից էլ՝ Կարին—Էրզրումի վրայով դիմում դեպի Սև ծովի առափնյա քաղաքները: Եվ թվում է, թե հյուսիսային՝ Դվինով ու Անիով և հարավային՝ Արճեշով, Մանազկերտով ու Խլաթով ձգվող երկու ճանապարհների միջև գտնվող այդ ճանապարհը ավելի մեծ հարված էր հասցնում Անիին, քան ավելի հարավային ճանապարհները: Արդյոք Ալադաղը չէ՞ր կառուցված մասամբ հենց Անիի տնտեսական ու քաղաքական կշիռը նվազեցնելու նպատակով:

Սակայն ինչպիսի ծավալ ու մասշտաբներ էլ որ ունենար արտաքին ու տարանցիկ առևտուրը, միևնույն է, այն համեմատաբար քիչ էր ազդում քաղաքի տնտեսական կյանքի վրա: Քաղաքի բուն տնտեսության էությունից բխողը և դրա վրա էապես ազդողը ներքին առևտուրն էր, որն իր ծավալով նվազելով 14-րդ դարի սկզբներին հասել էր ողորմելի

չափերի: Չի կարելի ասել, թե 13—14-րդ դարերում Անիի ներքին առևտրի վիճակով ամենևին չեն անհանգստացել: Ժամանակի պայմաններին համապատասխան փորձեր կատարվել են Անիի ներքին առևտուրը կազմակերպելու և առևտրից գանձվող տուրքերը չափավորելու համար: Սակայն դրանք էական ազդեցություն չէին կարող ունենալ Անիի ներքին առևտրի վրա: Նրա ներքին առևտուրը տնտեսական կյանքի ընդհանուր անկման հետ միասին գնալով նվազում էր:

Առաջվա նման քաղաքի ներքին առևտուրը հիմնականում կենտրոնացած էր կուղպակ-խանութներում, խանապար-հյուրանոցներում, հրապարակներում, փողոցների տարբեր հատվածներում: Քաղաքում գոյություն ունեին հարյուրավոր կուղպակներ («կրպակ»-ներ), որոնք նախորդ ժամանակների նման նույնպես կարող էին դառնալ առ ու վաճառքի և նվիրատվության առարկա:

Խոսելով 13—14-րդ դարերի Անիի առևտրի մասին անհնար է շրջանցել դրամ հատելու փաստը: Այստեղ 14—15-րդ դարերում, ավելի ճիշտ 13-րդ դարի երկրորդ կեսից մինչև 15-րդ դարի 20-ական թվականները հատել են տարբեր կարգի (դիրհեմ, կրկնակի դիրհեմ, դինար, կրկնակի դինար և այլն) պղնձյա դրամներ, որոնք սկզբում հատում էին Զաքարյան Շահնշահյանների ծալապատիկ նստած պատկերներով, իսկ հետագայում մոնղոլ ու կարա-կոյունլու իշխողների անունով: Անիում հատած մուսուլմանական առաջին պղնձյա դրամը վերաբերում է հուլավյան Մահմուդի (1205—1304), իսկ վերջինը՝ կարա-կոյունլու Կարա-Յուսուֆի և Փիր-Բուդաղի (1407—1420 թթ.) իշխանության ժամանակներին: Անիում հատած պղնձյա դրամներից հայտնաբերվել է բավական քանակությամբ քաղաքի ավերակներում և շրջակայքում: Անիի յուրատեսակ այդ դրամները միայն պղնձյա էին և եթե սկզբնական շրջանում՝ մինչև 14-րդ դարի սկզբները այսպես կոչված քրիստոնեական-մուսուլմանական էին, այսինքն՝ դրանց վրա մուսուլմանականի հետ միասին կային նաև հայկական գրեր, ապա դրանից հետո շուտով դառնում են «մաքուր» մուսուլմանական: Անիում հատում էին նաև ոսկե և արծաթե դրամներ՝ ընդհանուր հուլավյանական և ջելայիրյան տեսակի:

Մոնղոլական Արևմտյան (կամ Հուլավյան) էլխանության դրամները, որոնց թվում և Անիում հատվածները, իրենց արժեքի տեսակետից շատ դեպքերում անորոշ էին և առևտրի մեջ տեղիք էին տալիս շփոթության: Այդտեղ սովորաբար մեկ թումանը հավասար էր 10000 դինարի, մեկ դինարը՝ 6 դիրհեմի: Դինարի արժեքը տարբեր ժամանակ ունեցել է տարբեր մեծություն, հետևապես տարբեր արժեքներ են ունեցել նաև թու-

մանն ու դիրհեմը, որոնց իրական մեծության մասին ուսումնասիրողներն արտահայտել են տարբեր կարծիքներ։

Օտար հորջորջումի դրամական միավորների հետ միասին գործածական է եղել և մեր ազգային անվանումը՝ դրամը։ Եվ ապրանքների գները մեր ազգային հեղինակները սովորաբար հիշատակում են դրամով արտահայտված։ Ընդ որում, ապրանքների գների մասին մենք չունենք հստակ և բոլոր ժամանակներին վերաբերող տվյալներ։ Սակայն ընդհանուր ձևով կարելի է ասել, որ հացի, աղի և լայն սպառման այլ մթերքների գները խիստ կերպով բարձրանում էին հատկապես թշնամական հարձակումների, անբերրի տարիների, աննպաստ եղանակների, մոնղոլական արշավանքների և այլ դեպքերում։ Սիմեոն գրիչը 1422 թ. իր հիշատակարանում նշում է, թե ինքն այն գրել է «խիստ դառն ժամանակի», երբ «մոթ հացն ԸԾ (800) դրամ եղաւ և մոթ աղն ի ՌԲԾ (1200) դրամ, և ոնց որ յԱնի անկ եղաւ»։

Մոթը հավասար էր մոտ 10 կգ-ի և գրիչի ասածից հետևում է, որ իր հիշատակարանը գրելու ժամանակ հացի և աղի գինը շատ բարձր է եղել։ Եվ այդ բացառիկ երևույթ չէր։

Անիի 13—14-րդ դարերի գյուղատնտեսության վերաբերյալ գրավոր հիշատակությունները շատ սակավ են։ Եղածներն էլ, որ հիմնականում գտնվում են վիմագիր արձանագրություններում, կցկտուր են ու անորոշ։ Այդ բացը նույնպես մասնակիորեն լրացվում է հնագիտական նյութերի շնորհիվ։ Անկասկած է, որ Անիի ավերակներում հայտնաբերված գյուղատնտեսական գործիքների, ցորենի հորերի, ձիթհանքերի և գյուղատնտեսության հետ կապված մյուս պարագաների մի մասը պատկանում է 13—14-րդ դարերին։ Ավելին, կարելի է ենթադրել, որ բուն քաղաքային զբաղմունքների՝ արհեստագործության ու առևտրի անկմամբ քաղաքի գյուղատնտեսությունը ոչ թե նվազել, այլ ավելի մեծ նշանակություն էր ձեռք բերել՝ Անին փաստորեն վերածվել էր սովորական գյուղի, ապա նոր վերացել պատմական ասպարեզից։

Քաղաքաշինության առումով մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանը Անիում կարելի է բաժանել իրարից խստորեն տարբերվող երկու շրջանի՝ 13-րդ դարի 30-ական թվականներից (երբ քաղաքն ընկավ մոնղոլական լծի տակ) մինչև 70-ական թվականներն ընդգրկող տասնամյակների և դրան հաջորդած պատմաշրջանի, որն իր մեջ ընդգրկում էր նաև Լենկ Թեմուրի, թեմուրյանների և կարա-կոյունլու թուրքմենական ցեղերի տիրապետության շրջանը՝ մինչև քաղաքի վերացումը պատմական ասպարեզից։

Վիմագիր արձանագրություններից և պատմագիրների առանձին հի-

շատակություններից երևում է, որ Չարմաղանի ավերիչ արշավանքից հետո, երբ կազմավորվեց Արևմտյան էլխանությունը, շինարարական որոշ աշխատանքներ են կատարվել ավերված Անին վերականգնելու համար: Անիի այդ ժամանակների «քաղաքաշինությունը» սահմանափակվում էր մի քանի զանգակատների կառուցմամբ և եկեղեցիների ու, հավանաբար, պաշտպանական պարիսպների որոշ մասերի վերանորոգմամբ, իսկ հետագայում գրեթե միանգամից մարում են նաև մեծ քաղաքի համար այդ չնչին ծավալի աշխատանքները: Ավելին, տիրողները մեծ գյուղի են վերածում նախկին ծաղկած քաղաքը՝ նրա սքանչելի եկեղեցիներից մի քանիսը նույնիսկ վերածելով գոմերի: Ընդ որում, բոլոր կառուցումները կատարվում էին հայերի միջոցներով և հայ վարպետների ձեռքով ու չնայած քաղաքը գտնվում էր օտարի ընդհանուր տիրապետության տակ, բայց իր բնույթով մինչև վերջ մնաց իբրև զուտ հայկական քաղաք, որի համայնապատկերի վրա գերիշխողը եկեղեցիներն էին և պաշտպանական պարիսպներն իրենց աշտարակներով:

Ուշադրության արժանի կառուցումներից կարելի է համարել ս. Փրկիչ (կամ Ամենափրկիչ) եկեղեցու (Ապլղարիբ Պահլավունու եկեղեցի) զանգակատունը, որ կառուցվել է 1271 թ. ոմն Մխիթարի կողմից, Քարիմանդինի եկեղեցու զանգակատունը՝ կառուցված 1273—1274 թթ. մեծատուն Քարիմանդինի կողմից, սբ. Գրիգոր (կամ Խաչատուրի) եկեղեցու վերականգնումը Ծահեր անունով վարդպետի (վարպետի) ձեռքով և այլն:

14-րդ դարում Անին աղքատացել էր: Այստեղ այլևս նոր կառուցումներ չեն կատարում: Այդ նույն դարի առաջին կեսի ընթացքում մեզ հասած տեղեկությունների համաձայն կատարվել են միայն երկու շատ թե քիչ հիշատակության արժանի գործ: Ըստ Տիգրան Հոնենցի եկեղեցու արևելյան պատի արտաքին կողմում գտնվող 1310 թ. վիմագիր արձանագրության, Մաթեսը, նրա կին Սթենին և եղբայրը՝ Մարկոսը վերականգնել են Տիգրան Հոնենցի անցկացրած ջրմուղը, որը խախտված է եղել ու խափանված:

Կառուցողական մյուս արձանագրությունը, որ գտնվում է ս. Փրկիչ եկեղեցու վրա, վերաբերում է 1342 թվականին: Այդ արձանագրությամբ աթաբեկ Վահրամ Զաքարյանը հիշատակ է թողել այն մասին, որ ինքը նորոգել է սբ. Փրկիչի գմբեթը: Վերանորոգումն անմիջականորեն կատարել է Գրիգորի որդի ոմն Ասլիսը՝ Վահրամի հրամանով: Այդ արձանագրությունը Անիի կառուցողական՝ մեզ հայտնի վերջին արձանագրությունն է:

Ավելի ուշ ժամանակներին վերաբերող կառուցողական վիմագիր

արձանագրություններ այլևս չկան: Անին արագորեն անկում էր: Նոր ոչինչ չէր կատարվում այնտեղ:

Գույքային հարաբերությունների մեջ, առաջվա նման, իշխողը եկեղեցիներին տրվող նվիրատվություններն էին՝ կալվածքների, շենքերի, ծիթհանքերի, ձեռագրերի, սպասքի նվիրաբերումները հոգու փրկության քողի տակ, որի դիմաց նվիրաբերողներն ու նրանց հարազատները ստանում էին «համապատասխան» քանակի պատարագներ: Այդ մասին մեզ հետաքրքրող ժամանակների նվիրատվական վիմագիր արձանագրություններ կան Առաքելոց եկեղեցու, Մայր տաճարի, սբ. Գրիգոր և այլ եկեղեցիների վրա: Նվիրատվական այդ արձանագրությունները գրեթե բոլորն իրար նման են: Դրանց մեջ սովորաբար նշվում են նվիրատվության թվականը, նվիրատուի ով լինելը, նվիրվող կալվածքը կամ ունեցվածքը, վերջինիս դիմաց տրվող պատարագի քանակը (հաճախ նաև պատարագելու ժամանակը) և ավարտվում խախտողների հասցեին ուղղված նզովքի խոսքերով:

Նվիրատուները պատկանում էին հասարակության տարբեր խավերի: Դրանց մեջ մենք տեսնում ենք ազնվականներ, մեծատուններ, սովորական քաղաքացիներ և, նույնիսկ, հոգևորականներ: Այդ արձանագրություններից միաժամանակ երևում է, որ եկեղեցու սպասարկուները և այլ անձինք ամենևին չէին խորշում նվիրված կալվածքների ու անշարժ գույքի հափշտակությունից: Այդ է եղել պատճառը, որ եկեղեցուն տրըված մեծ ու փոքր գրեթե բոլոր նվերների (անգամ մի հասարակ ավետարանի կամ այլ ձեռագրի) մասին անպայման թողել են վիմագիր արձանագրություն և արձանագրությունները բոլորը, ինչպես ասվեց, ավարտվում են դրանց պայմանները խախտողների ու կողոպտիչների հասցեին ուղղված նզովքի խոսքերով:

Պատմաիրավագիտական առումով առանձնահատուկ հետաքրքրություն են ներկայացնում Առաքելոց եկեղեցու վրայի մի քանի արձանագրություններ, որոնք վերաբերում են մեզ հետաքրքրող ժամանակներին և որոշ առումներով Հայոց առաքելական եկեղեցու կանոնների կրկնությունն են: Դրանք հիմնականում վերաբերում են ընտանեկան հարաբերություններին, ապահարզանի ժամանակ կնոջ և ամուսնու իրավունքներին, ինչպես և եպիսկոպոսների ու հոգևոր առաջնորդների կաշառակերությանը և մյուս օրինազանցություններին:

Կողոպտիչ բնույթի էին մոնղոլների դրած հարկերը: Նվաճված երկըրներում մոնղոլները սահմանում էին «օրինականացված» և ապօրինի բազմաթիվ հարկեր ու տուրքեր, հարկադիր աշխատանքներ ու պատերազմական ժամանակներում կամայականորեն նշանակված տուրքեր: Նը-

վաճողներն այդ եղանակով քամում էին նվաճված ժողովուրդների վերջին ունեցվածքը և դատապարտում ծայրահեղ աղքատության ու սովի: Հարկադրման ու հարկահավաքման գործում մոնղոլ աստիճանավորները դաժան էին ու անզիջում: Ժամանակակցի վկայությամբ մոնղոլական մեծ խանի կարգադրության համաձայն նվաճվածները պարտավոր են տալ «տղղու, և մալ, և թաղար, և ղփչուր»: Մեծ խանի կարգադրությունը դատարկ խոսքեր չէին: Հարկից հրաժարվողները կամ հարկ տալու ի վիճակի չեղողները ենթարկվում էին մահապատժի՝ ի սարսափ մյուս հարկատուների:

1251 թվականին Մանգու մեծ խանի հրամանով Արղունը կատարում է ընդհանուր աշխարհագիր և քրիստոնյա արական սեռի բնակչությանը՝ 15 տարեկանից մինչև 60 տարեկանը ենթարկում գլխահարկի, այդ մասին գրանցում կատարելով հատուկ «դավթար»-ում (մատյան) և յուրաքանչյուրից տարեկան գանձելով 60 դրամ: Պատմագրի ասելով մոնղոլները խիստ ծանր հարկեր էին նշանակել ոչ միայն հասարակ ժողովրդի վրա, այլև «հարկաւ նեղացուցանէին զվրաց և զհայոց իշխանքն...», որը և պատճառ է դարձել մեծ անբավականության: Հարկերը հավաքում էին կապալառու-տամղաչիների ձեռքով: Անիի կապալառու-տամղաչիները նըշանակվում էին նորելուկ հարուստներից՝ մեծատուններից, որոնք կարող էին լինել հայ կամ օտարազգի: Դրանց թվին էին պատկանում նաև Սահիբ Դիվանը, Սահմադինը և Քարիմանդինը:

Ծանր հարկերի պատճառով Հայաստանի և Անիի տնտեսական դրությունը խիստ վատանում է հատկապես 14-րդ դարի սկզբներից: Մոնղոլական հարկահավաքները գործադրում էին բռնություններ և կատարում ամեն տեսակի կամայականություններ: Երկրի բնակչության զգալի զանգվածներ այդ անելանելի դրությունից իրենց փրկությունը գտնում էին արտագաղթի մեջ:

Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանի հարկատեսակները տասնյակների էին հասնում: Ղ. Ալիշանը վիմագիր արձանագրությունների տեղեկությունների հիման վրա կազմել է այդ շրջանի հարկացուցակը, ըստ որի միայն դրանցում հիշատակված հարկերի, տուրքերի ու զանազան գանձումների տեսակները հասնում էր 25-ի, որոնցից ամենածանրը դամղա-ն էր: Այդ հարկը Թավրիզում հասնում էր 115 թումանի (862.500 ռուբլի), Սպահանում՝ 35 թումանի (262.500 ռուբլի) և այլն: Անիի դամղան, ինչպես ենթադրում է Վ. Բարտոլդը, դրանց նկատմամբ հավանաբար ավելի փոքր էր, բայց նույնպես շատ ծանր էր նստում քաղաքի հարկատուների վրա:

Վիմագիր արձանագրություններում հիշատակված 40-ի հասնող զա-

նական հարկերից ու տուրքերից 23-ը ուժի մեջ էին մոնղոլական շրջանում։ Ընդ որում, դրանցից մի քանիսը գալիս էր նախորդ ժամանակներից և պահպանվեցին նաև մոնղոլների օրոք (թաղար, անասունների «համբարել» հարկ, սայլի բաժ և այլն), իսկ մյուս՝ մեծագույն մասը սահմանել էին իրենք՝ մոնղոլական խաները և նրանց ստորադրյալները։

Մոնղոլական ժամանակաշրջանի բազմատեսակ հարկերի ուսումնասիրության բնագավառում դեռևս անելիք շատ կա, բայց հայտնի է, որ դրանք ամբողջության մեջ վերցրած կողոպտիչ բնույթ ունեին և անասելի ծանր էին նստում հարկատու բնակչության վրա։ Դրանում կարելի է համոզվել թեկուզ միայն Անիի օրինակով։ Քաղաքի վիմագիր արձանագրությունների հարկերին վերաբերող հիշատակություններն ի մի բերելով կարելի է ասել, որ նրա անկման հիմնական պատճառներից մեկը (թերևս ամենահիմնականը) եղել են ծանր հարկերը։ Իսկ վաճառաշահ ու «եկամտաբեր» քաղաքի անկումն անցանկալի էր և բնիկ իշխանավորների ու մեծատունների և, նույնիսկ, օտարերկրյա տիրողների համար, որոնք դրա պահպանմամբ ակնկալում էին մեծ եկամուտներ։ Միայն դրանով կարելի է բացատրել Անիի բնակչությունից գանձվող հարկերի թեթևացման և մի շարք հարկերի ու տուրքերի վերացման համար եղած այն ընդհանուր շահագրգռվածությունն ու գործնական քայլերը, որոնց մասին այնքան առատ տեղեկություններ են հաղորդում վիմագիր արձանագրությունները։ Թվարկենք դրանցից մի քանիսը։ 1276 թվականին վերաբերող մի արձանագրությունում, որ գտնվում է Առաքելոց եկեղեցու գավթի վրա, ասված է այն մասին, թե քաղաքի հարկահավաքները («տամղաչիք») վերացրել են քաղաք մտնող դատարկ գրաստների համար վերցվող կես «սպիտակ» տուրքը։ Նույն տեղը գտնվող 1290 թվականի մի այլ արձանագրությամբ Նուրայդին Քոթոթը և նրա ընկերակիցները իբրև հարկահավաքներ գալով Անի՝ վերացնում են «բաժ» և «տամղա» հարկերը։ Երրորդ արձանագրությունը դարձյալ գտնվում է Առաքելոց եկեղեցու գավթի վրա և վերաբերում է 1301 թվականին։ Սրանից ակնհայտ է դառնում, որ ծանր հարկերի պատճառով Անին 14-րդ դարի սկզբին աղքատացել էր և քաղաքի վիճակը թեթևացնելու համար Ղազանշահի ուղարկած կառավարիչ Աղբուղան վերացնում է երեք կարգի գանձումներ՝ եզների ու կովերի համար վերցվող և ոչխարների կանգառի համար գանձվող տուրքերը։ Նույն պարոն Աղբուղայի հրամանով հարկահավաքներ նշանակված Մխիթարը և Գրիգորը վերացնում են ջրաղացահարկը և դահեկ կոչված հարկը, այդ մասին նույնպես արձանագրելով Առաքելոց եկեղեցու գավթի վրա։ 14-րդ դարի սկզբների մի ուրիշ արձանագրության (անթվական) համաձայն, Անիի հարկային վերատե-

սուչ (կամ կապալառու) Գեշը՝ Պապկանի որդին, նույն Աղբուղայի օրոք վերացնում է ներկարարներից գանձվող հարկը՝ «քասանիկ»-ը:

Անիի և Հայաստանի ծանր հարկերի, բնակչության ծայրաստիճան աղքատացման, հարկադիր արտագաղթի ու դրանց առաջն առնելու համար անօրինական հարկերի ու տուրքերի վերացման մասին է ասված մոնղոլական խանի՝ Աբու-Սայիդի (1316—1335) Մանուչեի մզկիթի վրա թողած արձանագրության մեջ: Մոնղոլական խանի թողած այդ արձանագրությունը պարունակում է և՛ յուրատեսակ խոստովանություն ծանր ու քայքայիչ հարկերի մասին, և՛ անհանգստություն, և՛ ծիգեր իրենց տիրապետությունը նվաճած քաղաքում ու երկրում հաստատուն պահելու համար: Սակայն հարկերի թեթևացման ու անօրինական հարկերի վերացման մասին Նրա արձակած յարլըխ-հրամանը անզոր էր Անիի անկումը կանգնեցնելու: Անիի և Հայաստանի հյուսիսային մյուս քաղաքների (Դվինի, Կարսի և այլն) անկումը բխում էր մոնղոլական տիրապետության ընդհանուր բնույթից, մոնղոլների հաստատած քաղաքական ու սոցիալ-տնտեսական կարգերից, որ միայն հարկերի թեթևացմամբ էապես ոչնչով չէին կարող բարեփոխվել:

Մի մեծ խումբ էին կազմում նաև եկեղեցական հարկերն ու տուրքերը, որոնք սահմանվել էին նախորդ ժամանակներում և, չնչին փոփոխություններ կրելով, ուժի մեջ էին նաև մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում ու դրանից հետո:

Մոնղոլների լծին համահավասար չարիք էին դարձել և անբերրիությունններն ու սովը: Ոռոգման ցանցի ավերումն ու խափանումը, երկրագործության անկումը, նախկինում յուրացված ու մշակման ենթակա հողերի զգալի մասի արոտավայրերի վերածվելը (որ դարձյալ հետևանք էին մոնղոլական տիրապետության և բխում էին դրա էությունից), ինչպես և բնական աղետները երկիրն ու Նրա երբեմնի հռչակված քաղաքը պարբերաբար կանգնեցնում էին մարդկային հսկայական զոհեր խլող սովի առաջ, որին գումարվում էին նաև մահասփյուռ հիվանդությունները:

Մենք տեսանք, որ տակավին Բագրատունիների թագավորության ժամանակներից առևտրի, տնտեսական ու հասարակական կյանքի զարգացման և դրանց հետևանքով առաջացած նոր երևույթների հիմքի վրա աստիճանաբար կազմավորվում էր, այսպես կոչված, մեծատունների դասը, որ իր գոյությունը պահպանեց սելջուկների ու Շադդադյանների տիրապետության շրջանում և ավելի կարևոր նշանակություն ձեռք բերեց Զաքարյանների իշխանության օրոք:

Առաջին հայացքից թվում է, թե մոնղոլական լուծը պետք է բացառեր տնտեսական ու հասարակական կյանքի առաջադիմության հետևան-



18—2682

քով առաջացած այդ դասի գոյությունը: Սակայն դա այդպես չէ: Մեծատունները մոնղոլական տիրապետության շրջանում իրենց գոյության ու գործունեության համար ունեին ոչ պակաս ամուր հիմքեր: Առևտուրը (հատկապես արտաքին ու տարանցիկ առևտուրը), որ մոնղոլները համարում էին պետական գանձարկղը հարստացնելու կարևոր աղբյուրներից և հովանավորում էին այն, հարկահանությունը կապալով տալու սովորությունը, որ այնքան տարածված էր մոնղոլական աշխարհակալ պետության բոլոր մասերում, տեղական տոհմիկ ազնվականներին նոր, ավելի «հնազանդ» վասալներով փոխարինելը և տեղական իշխանության մարմինները վերջիններիս վստահելը, որ դարձյալ նկատվում է ամենուրեք, մեծատունների դասի գոյությունը մոնղոլական տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում դարձնում են անհրաժեշտություն: Նրանք այդ շըրջանում դարձել էին կապալառուներ, խոշոր վաճառականներ ու վաշխառուներ, պետական-ֆինանսական պաշտոնյաներ՝ ստանալով պարոն տիտղոսը:

Օգտվելով մոնղոլական տիրապետության շրջանում իրենց համար ստեղծված պայմաններից, հայ և օտարազգի մեծատունները ծավալում են լայն գործունեություն՝ կապալառությունից, վաշխառությունից, վաճառականությունից մինչև բարձր պաշտոններ վարելը ներառյալ, պաշտոններ, որոնց հասնելու համար նրանք շատ էլ հաշվի չէին նստում միջոցների ընտրության հետ: Այդ բոլորով հանդերձ, սահմադիները, քարիմանդիները, սահիբդիվանիները կատարում էին նաև բարեգործական որոշ աշխատանքներ: Միաժամանակ կարելի է ենթադրել, որ 14-րդ դարից, երբ ամբողջ երկրի հետ միասին տնտեսական կտրուկ վայրէջք է ապրում նաև Անին, նրա մեծատուններն էլ այդ պրոցեսի ընթացքում աստիճանաբար կորցնում են իրենց նախկին արտակարգ նշանակությունը և «մանրանալով» փաստորեն դադարում են երկրի ու քաղաքի կյանքում էական դեր խաղալուց:

Մոնղոլական տիրապետության շրջանում համահայաստանյան մասշտաբներով մշակույթի առաջընթաց ենթադրելն անիմաստ է: Պատերազմների, բռնությունների, արտագաղթերի, գերեվարությունների, ավերումների պատճառով Հայաստանը նախորդ ժամանակների համեմատությամբ մշակութային առումով նույնպես ապրում է հետադիմության շրջան: Այդ տեսակետից մի փոքր այլ պայմաններ կային մոնղոլական արշավանքների ժամանակներից ի վեր խասինջու դարձած Սյունիքում և մի քանի այլ լեռնային գավառներում: Մասնավորապես Սյունիքում 13-րդ դարում շարունակվում է մշակույթի այն զարգացումը, որ սկսվել էր Բագրատունիների թագավորության շրջանում և, որոշ ընդհատումներից հետո, նո-

րից իր բնականոն ընթացքի մեջ մտել Զաքարյանների իշխանության օրոք: Բավական է ասել, որ այդ ժամանակներում է գործել միջնադարյան Հայաստանի ամենահայտնի բարձրագույն դպրոցը՝ Գլաձորի համալսարանը, որ գտնվում էր Սյունիքի Վայոց ձորի գավառում, և դարձել էր երկրի մշակույթի խոշորագույն կենտրոններից մեկը: Մշակութային կյանքի բուռն զարգացման ընթացքը այստեղ շարունակվեց ընդհուպ մինչև 14-րդ դարի սկզբները:

Միանգամայն այլ ընթացք ուներ Անիի մշակույթը՝ ճարտարապետությունը, դպրոցական կյանքը, մատենագրությունը, գրչության արվեստը և այլն: Մենք տեսանք, որ մոնղոլական ավերումներից հետո Անիում չի կառուցվել ճարտարապետական այնպիսի նշանավոր որևէ հուշարձան, որ սազական լիներ այդ գեղեցկագույն քաղաքի ընդհանուր ճարտարապետական բարձր արվեստին: Հիշատակություններ չկան դպրոցական կյանքի վերաբերյալ, իսկ գրչության, արվեստի, փորագրության ու այլ բնագավառների վերաբերյալ եղած տեղեկությունները՝ դրանց վիճակին համապատասխան, աղքատիկ են: Եվ եթե Անիում նույնպես մինչև 13-րդ դարի վերջերը նկատվում են ավանդույթի ուժով իրենց գոյությունը պահպանող մշակութաշին որոշ երևույթներ, ապա 14-րդ դարի սկզբներից դրանք նույնպես իսպառ մարում են և նախկին մշակութային խոշորագույն կենտրոնը վերածվում է նախ սովորական բնակավայրի, ապա՝ ավերակների կույտի:

Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Անիի ձեռագրերի մեծ մասը տարագրվել էին կամ նվաճողների, կամ արտագաղթողների կողմից: Մոնղոլական արշավանքի ժամանակ, 1236 թվականին, ոմն Նացուալը մի ավետարան է նվիրել Կաթողիկե տաճարին: Այդ ավետարանի սկզբնագիրը արտագրված է եղել 1181 թվականին և ունի հիշատակարաններ: Մյուս ձեռագիր մատյանը, որը դարձյալ ավետարան է արծաթե կազմով և ստեղծվել է 13-րդ դարի կեսերին, նույնպես համարում են ծագումով Անիից: Այն նկարազարդ էր և մի ոմն Ջաջուռ և նրա որդի Ամիր Սըմբատն այն 1347 թվականին նվիրել են Հոռոմոսի վանքին: Կազմը բավական շքեղ է, պատրաստված ոսկերիչ Գրիգորի կողմից, որի անունը գրված է իր պատրաստած այդ կազմի վրա:

Անիից տարագրվեցին նաև մշակույթի այդ հուշարձանների երախտավորները՝ հեղինակներ, գրիչներ, ճարտարապետներ և այլ զբաղմունքի տեր մարդիկ: Տարագրությունը, ինչպես ենթադրում են, սկսվելով 13-րդ դարի առաջին կեսին շարունակվել է նաև Ղազան Մահմուդի (1295—1304) և նրա հաջորդների օրոք:

## 3. ԱՆԻԻ ԱՄԱՅԱՑՈՒՄԸ ԵՎ ԱՎԵՐԱԿՆԵՐԻ ՎԵՐԱԾՎԵԼԸ

Տասնյակ հեղինակներ այս կամ այն առիթով անդրադարձել են Անիի ամայացման ու ավերակների կույտի վերածվելու ճշգրիտ ժամանակի որոշման ու հանգամանքների պարզաբանման հարցին: Սակայն առ այսօր քաղաքի պատմության համար հույժ կարևոր այդ հարցի լուսաբանումը սահմանափակվում է սոսկ ենթադրությունների շրջանակներում: Այլ կերպ էլ լինել չէր կարող: Անիի պատմական ասպարեզից վերանալն ու ամայացումը տեղի է ունեցել այն ժամանակներում, երբ Լեոյի արտահայտությամբ՝ «թաթարական սուրը, լենկթեմուրները մի խավար ու անշարժ գերեզման էին դարձրել մեր ամբողջ աշխարհը», հայ պատմագրությունն այլևս չուներ նախկին երևելի դեմքերը, որոնք իրենց աշխատություններում այնքան հարուստ փաստական նյութեր են հաղորդել երկրի ընդհանուր վիճակի մասին: Իսկ 14—15-րդ դարերի գրիչները, հեղինակների վկայությունները, վիմագիր արձանագրություններն ու նյութական մշակույթի հուշարձանները միայն հիմք կարող են լինել հավանական ենթադրությունների համար: Այնպես որ ստույգ հայտնի չէ, թե «ո՞վ վերջին անգամ փակեց մեռնողի աչքերը», թե ո՞ր թվականին վերջին բնակիչը լքեց ավերված Անին, ե՞րբ այն վերածվեց միանգամայն մեռած քաղաքի՝ բուերի «ապաստարանի» և շրջակայքի բնակիչների համար՝ սոսկ «քարհանք»-ի, անորոշ է, բայց ոչ միանգամայն անհայտ:

Անիի անկման պատմությունը տեղի է ունեցել ամբողջ երկրի և դրա մյուս քաղաքների անկման հետ միաժամանակ՝ սկսած 13-րդ դարի վերջերից: Մոնղոլների տիրապետությամբ ստեղծված տնտեսական ու քաղաքական ծանր պայմանների հետևանքով Հայաստանի մեծագույն մասում աստիճանաբար մեռնում է քաղաքային կյանքը՝ առևտուրը, արհեստագործությունը: Երկրի ու դրա քաղաքների վիճակն ավելի է վատթարանում 14-րդ դարի երկրորդ կեսին, երբ մոնղոլական աշխարհածավալ պետությունը ներքին գզվրտոցների հետևանքով մասնատվում է մի քանի իշխանությունների, որոնք հարատև պատերազմներ սկսեցին Հայաստանի ու Վրաստանի տարածքներն իրենց լծի տակ գցելու համար: Երկրի վիճակը ողբերգական է դառնում մանավանդ 14-րդ դարի վերջերին՝ Լենկ Թեմուրի աշխարհակործան արշավանքների և դրանց հաջորդած տասնամյակների ընթացքում: Ուսումնասիրողները, իրավացիորեն, հենց այդ մռայլ ժամանակաշրջանի հետ էլ կապում են նաև Անիի վերջնական կործանումը:

Անիի կործանման շուրջը հյուսվել է հոգևորականների միջավայրում

ստեղծված և Ղազար Ջահկեցի կաթողիկոսի (18-րդ դ. կեսեր) միջոցով մեզ հասած մի հրաշապատում-ավանդություն, որը, հավանաբար, նա վերցրել է մի ավելի վաղ ժամանակի հեղինակից: Ավանդությունն ամբողջությամբ զետեղված է Ղ. Ալիշանի «Հայապատում» աշխատության մեջ «Աւանդութիւն կործանման Անւոյ» վերնագրի տակ: Ավանդության ասելով Հովհաննես Երզնկացի վարդապետը, որ կարճահասակ լինելու պատճառով ստացել է Պլուզ (=պզտիկ) մականունը, գալիս է Անի իր քարոզներով նրա բնակիչներին «խրատելու» և «մոլորությունից» ու «չար գործերից» դարձի բերելու համար: Սակայն մայրաքաղաքի զվարճասեր, շվայտ կյանքով ապրող բնակիչները ծաղրում են նրա «աստվածային» պատվիրանները և «հրաշագործությունները»: Այդ «հերետիկոսության» և վարդապետին ծաղրելու համար, իբր աստված պատժում է անեցիներին՝ նախ մահասփյուռ հիվանդությամբ, ապա կործանիչ երկրաշարժով, որի հետևանքով իբր ավերակների կույտի է վերածվում ամբողջ քաղաքը, իսկ նրա բնակիչները «թողլով զքաղաքն և զեկեղեցիս և զոսկեզօծ պալատս և զճաղկաւետ դաշտս իւրեանց, իբր փախստականք, կէսքն ճղեալ գնացին ի ծուղայ. և կէսքն առ եզրն Կասպիական ծովուն, և ոմանք ի Վան, և այլք ի Սիս»:

Մինաս Բժշկյանցը վկայում է, որ Անիի անկման հետ կապված այդ ավանդությունը 19-րդ դարում պահպանվել էր Անիից գաղթած անեցի լեհահայերի մեջ:

Մեզ այդ ավանդությունը տվյալ դեպքում հետաքրքրում է ոչ թե գաղափարական տեսակետից, այլ՝ պատմական: Ո՞րն է եղել դրա հիմքը: Արդյո՞ք Անիում 1319 թվականին կործանիչ երկրաշարժ տեղի ունեցել է, թե ոչ և արդյո՞ք այդ երկրաշարժն է եղել դրա կործանման պատճառը:

Արարատյան դաշտում և նրա շրջակայքում, Հայկական լեռնաշխարհի մի քանի այլ շրջանների նման, երկրաշարժերը պատահական չեն, դրանք պարբերաբար կրկնվել են և անցյալում, կրկնվում են և ներկայումս: Այստեղ ավերիչ երկրաշարժեր են տեղի ունեցել 341, 862, 893, 1045, 1131, 1679, 1681, 1819, 1827, 1840, 1926 թվականներին, որոնք հսկայական վնասներ են պատճառել բնակավայրերին ու բնակիչներին: Եվ կարծում ենք, որ վերը նշված ավանդությունը ունեցել է իր հիմքը՝ հանձինս 1319 թվականին Անիում և շրջակայքում տեղի ունեցած երկրաշարժի, որ սովորաբար կոչել են Անիի երկրաշարժ, ինչպես 862 և 893 թթ. երկրաշարժերը կոչվել են Դվինի անունով, 1679 թ.՝ Երևանի, 1926 թ.՝ Լենինականի և այլն:

Հ. Աբիխը, որ այդ հարցում մեծ հեղինակություն է, ուսումնասիրելով Անիի ավերակները, հատկապես միջնաբերդի ու դրա շրջակայքի մի քա-

նի կառուցվածքների փլատակներ, եկել է այն եզրակացության, որ դըդրանք ամենայն հավանականությամբ ավերվել են հատկապես երկրաշարժի հետևանքով։

Սակայն ավանդության հիշատակած 1319 թ. երկրաշարժից հետո Անիի կանգուն ու «կենդանի» լինելն ապացուցող փաստարկներ շատ կան, որոնք կարելի է բաժանել մի քանի խմբի՝ վիմագիր արձանագրությունների, դրամագիտական նյութերի, մատենագրական հիշատակությունների և այլն։

Ենթադրվող երկրաշարժից առաջ և հետո Անիում փորագրվել են մեզ հասած մի ամբողջ շարք վիմագիր արձանագրություններ, որոնք վերաբերում են 1320, 1330, 1341—1342, 1348 թվականներին։ Այնպես որ քաղաքի կյանքը 1319 թվականից հետո չէր ընդհատվել։ Ընդ որում, նըշված արձանագրությունների բովանդակությունից անհնար է որևէ եզրահանգում կատարել տեղի ունեցած երկրաշարժի մասին, որովհետև բացի ս. Փրկչի վրայի արձանագրությունից, որտեղ խոսվում է եկեղեցու գըմբեթի վերանորոգման վերաբերյալ, ավերումների մասին այլ արձանագրություններում չկան նույնիսկ անուղղակի ակնարկներ։

Նույնն են հաստատում նաև դրամագիտական նյութերը։ Ղազան խանի ժամանակներից (1295—1304) Անին դարձել էր մոնղոլական դրամահատության կարևոր կենտրոններից։ Ե. Ա. Պախոմովի դրամագիտական արժանահավատ ուսումնասիրության հիման վրա կարելի է պնդել, որ ամբողջ 14-րդ դարում և հաջորդ դարի սկզբներին Անիում կյանքը չէր ընդհատվել և քաղաքը շարունակում էր իր գոյությունը։ Այլապես անբացատրելի կմնար դրամագիտական այն հարուստ գտածոները, որոնք վերաբերում են 1300—1420 թվականներին։

Եթե 1319 թվականի երկրաշարժից հետո Անին կանգուն ու «կենդանի» մնալու փաստը հաստատող վիմագրական ու դրամագիտական նյութերը որոշակի և արժանահավատ են, ապա նույնը չի կարելի ասել մատենագրության մասին։ Ինչպես հայտնի է, 14—15-րդ դարերում հայ մատենագրությունը կտրուկ վայրէջքի շրջան էր ապրում։ Այդ պատճառով էլ ընդհանրապես նշված դարերի պատմության շատ հարցեր, որոնց թըվում և Անիի պատմության շատ կողմեր, համապատասխան արտացոլում չեն գտել մեր մատենագրության մեջ և պատմագիտական տեսակետից թերի են ուսումնասիրված։ Անիի այդ ժամանակների վիճակի վերաբերյալ արժանահավատ վկայություններ ընդհանրապես չկան։ Բայց և այնպես չի կարելի ասել, թե վկայություններն ընդհանրապես բացառված են։ Անիի անունը որոշ տեղեկություններով հանդերձ հիշատակված են հայերեն մի քանի ձեռագրերի հիշատակարաններում, Կլավիխոյի ճանա-

պարիոդական հուշերում (1403—1406) և այլ աղբյուրներում։ Մատենագրական այդ կցկտուր տեղեկությունները նույնպես գալիս են հաստատելու, որ Անին 14-րդ դարում չնայած անկմանն ու նախկին արտակարգ դերի նվազմանը, որպես քաղաք շարունակում էր գոյություն ունենալ։

Նշված բոլոր փաստերը նկատի ունենալով, կրկնում ենք մեր եզրահանգումը. 14-րդ դարի սկզբներին իրոք Անիում տեղի է ունեցել երկրաշարժ, որը քաղաքին պատճառել է մեծ վնասներ, բայց այն շարունակել է իր գոյությունը։

Վաղուց ընդունված է այն կարծիքը, ըստ որի Անին վերջնականապես ու հիմնահատակ ավերվել է Լենկ Թեմուրի արշավանքների ժամանակ՝ 1386—1387 թվականներին։

Սակայն իներցիայի ուժով նույնիսկ այդ ավերումից հետո Անին շատ հեղինակների մոտ դարձյալ հիշատակվում է իբրև քաղաք, թեպետ այդ կործանիչ հարվածից հետո հազիվ էր շարունակում իր խղճուկ գոյությունը։ Անին սովորական բնակավայրի է վերածվել 15-րդ դարի վերջերին և հաջորդ դարի սկզբներին։ 16-րդ դարում այն մի սովորական գյուղ էր՝ շրջապատված տարբեր ժամանակների հուշարձաններով։ Իսկ թե ե՞րբ է միանգամայն մարդաթափ եղել և ամայացել, ե՞րբ է վերջին բնակիչն այն լքել, դժվար է որոշակի որևէ բան ասել։

## 4. ՔԱՂԱՔԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ

Մոնղոլական արշավանքների ժամանակներից սկսած Հայաստանից ծայր է առնում զանգվածային արտագաղթը, որ շատ թանկ է նստում երկրի ճակատագրի վրա։ Մոնղոլները չեկան և չբնակվեցին իրենց նվաճած երկրում։ Սակայն նրանց ուղեկցող թուրքական վաչկատուն ցեղերը աստիճանաբար գրավեցին մեր երկրի հարթավայրային շրջանները, այնտեղից դուրս մղելով դրանց բուն բնակիչներին։ Մի կողմից հարատև պատերազմների ընթացքում բնակչության զանգվածային ոչնչացումը, գերեվարությունը, սովամահությունը, իսկ մյուս կողմից հարկադիր արտագաղթը պատճառ դարձան մոնղոլական, թուրք-թաթարական և թուրքմենական ցեղերի տիրապետության շրջանում Հայաստանի բնիկ բնակչության՝ հայության քանակի խիստ նվազմանը, ամբողջական շրջանների ամայացմանը և քաղաքների մարդաթափ լինելուն։

Դա առաջին հերթին վերաբերում էր Հյուսիսային Հայաստանի քաղաքներին՝ Դվինին, որ 14-րդ դարում արդեն վերացավ պատմական ասպարեզից, Կարսին, որը վերածվեց սովորական գավառական քաղաքի, Կարին-Էրզրումին և մյուսներին:

Անիի համար նույնպես այդ հարվածը մահացու էր: Տնտեսական ու քաղաքական վատթար պայմանները, օտարի գործադրած բռնությունները, գերեվարությունները, երկրի սոցիալտնտեսական կյանքի ընդհանուր հետադիմությունը պատճառ դարձան քաղաքի աստիճանաբար ամայացմանը:

Ինչպես տեսանք, առաջին մեծ արտագաղթը հավանաբար կատարվել է 1045 թվականից հետո, երբ Անին գրավվեց բյուզանդացիների կողմից և նրա վերջին թագավոր Գագիկ 2-րդը հարկադրաբար բնակություն հաստատեց կայսրության արևելյան կողմում՝ այստեղ հիմք դնելով մի փոքր կախյալ հայկական իշխանության, որը հետագայում իր մեջ ընդգրկեց նաև Վասպուրականի Արծրունյաց վերջին թագավորին տրված գավառները: Հաջորդ մեծ արտագաղթը Անիից տեղի է ունեցել Ալփ-Արսլանի 1064 թվականի արշավանքի և քաղաքի գրավումից ու ավերումից հետո: Այս անգամ ևս Անիից դուրս եկող գաղթականական հոսանքներն ուղղվում են հիմնականում դեպի արևմուտք՝ դեպի Կիլիկիա, ինչպես և բյուզանդական կայսրության տարածքով ավելի հեռու՝ դեպի Մոլդավիա և Լեհաստան: Այդ երկու արտագաղթերի ժամանակ, ինչպես նշվել է տեղում, Անիի բնակչության թիվը բավականաչափ նվազել է, բայց մասամբ շրջակայքում ապաստանածների վերադարձով և մասամբ էլ օտար տարրերի ներհոսքով, քաղաքի բնակչության թիվը հետագայում, մանավանդ Զաքարյանների իշխանության օրոք, նորից է մեծացել, սակայն առանց 11-րդ դարի առաջին կեսի մակարդակին հասնելու: Քաղաքի (և երկրի) համար ճակատագրական նշանակություն են ունեցել մոնղոլական ավերիչ արշավանքների և ծանր լծի հետևանքով սկսված արտագաղթերը, որոնք կրկնվում էին պարբերաբար և որոնք երկրի բնիկ բնակչության թվի կտրուկ նվազման հետ միասին ամայացրին նախկին մարդաշատ Անին:

Ամենազանգվածային արտագաղթերից մեկը կատարվել է 1236 թվականին, երբ մոնղոլները գրավեցին ու ավերեցին Անին: Չարմաղանի այդ աշխարհավեր արշավանքից հետո Հյուսիսային Հայաստանից և, հատկապես, նրա նշանավոր քաղաք Անիից հազարավոր բնակիչներ հարկադրված են լինում թողնել իրենց մայր հայրենիքն ու հայրենի քաղաքները և բռնել գաղթի ուղին: Դրանց մի փոքր մասը դիմում է դեպի Վան, Ջուղա և Սիս, իսկ մյուս, մեծ մասը Կասպից ծովի ափերով՝ դեպի Վոլ-

գայի ստորին հոսանքի շրջանները: Արտագաղթողների այս վերջին խումբը հիմնականում բաղկացած էր անեցիներից:

Անիի գաղթականական մեծ խումբը Սարայ է հասել 1299 թվականին և ոչ երկար ժամանակով այդտեղ բնակություն հաստատել թաթար-մոնղոլական խանի համաձայնությամբ, որն ամենայն հավանականությամբ նկատի էր ունեցել խանության առևտրատնտեսական շահերը. հայ վաճառականները դեռ դրանից առաջ որոշ առևտրական գործունեություն էին ծավալել Վոլգայի ջրային ճանապարհով և այդ չէր կարող ուշադրության չառնվել գաղթականական նոր խմբին բնակվելու տեղ տրամադրելու ժամանակ: Միանգամայն որոշակի է նաև, որ եթե սկզբնական շրջանում թաթարական խաները բարեկամաբար են վերաբերվել գաղթողների հետ, ապա շուտով նրանք թշնամաբար են տրամադրվում: Անեցիների համար այսպիսով ստեղծվում են անելանելի պայմաններ և նրանք ստիպված են լինում նախ հատուկ պատվիրակություն ուղարկելու միջոցով ստանալ Ղրիմի ճենովական իշխանությունների համաձայնությունը, ապա զենքով կռվել Ղրիմի ճանապարհին գտնվող թաթար-մոնղոլների հետ և այնտեղ հասնել 1330 թվականին:

Կարելի է ենթադրել նաև, որ գաղթականական այդ խումբը նույնը չէր Չարմաղանի արշավանքի ժամանակ գաղթածների համեմատությամբ: Աղսարայ, Ազով և Ղրիմ երթուղով գաղթած այդ խումբը մեզ թվում է, որ Անիից դուրս է եկել ոչ թե մոնղոլական արշավանքների ժամանակ, այլ նրանց ծանր լծի հաստատումից հետո՝ կողոպտիչ հարկային քաղաքականության հետևանքով, կամ, նույնիսկ, 1319 թվականի երկրաշարժի հետևանքով, ինչպես ենթադրել է Մ. Չամչյանը: Եվ մի՞թե այդ մասին չի հուշում նույն ժամանակներում Աբու-Սայիդի թողած արձանագրությունը, որտեղ ասված է, թե անօրինական ու ծանր հարկերի հետևանքով բնակչությունը ցրվում է զանազան կողմեր և կարգադրում դրա առաջն առնելու համար վերացնել բնակչությունից անօրինական գանձվող հարկերն ու տուրքերը:

Ենթադրվում է, որ մինչև 40 հազար մարդու է հասել 1330 թվականին Ղրիմում հաստատված գաղթողների թիվը: Դրանք Ղրիմում հաստատվող առաջին անեցիները չէին: Ղրիմում մինչ այդ կային մեծ թվով հայեր և նորեկները գումարվելով դրանց կազմեցին բազմամարդ գաղթօջախ, որն այնքան կարևոր դեր է խաղացել Ղրիմի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքում:

Անիից զանգվածային արտագաղթ է կատարվել նաև դրանից հետո, 14-րդ դարի 20-ական թվականներին: Այս մեծ արտագաղթը արդեն կապում են Անիում տեղի ունեցած կործանիչ երկրաշարժի հետ:

Ժամանակի ընթացքում Տրապիզոնում այնքան հայեր էին կուտակվել, որ այստեղ ստեղծվել էր եպիսկոպոսական հատուկ թեմ, որի առաջնորդներից մեկը՝ Ստեփաննոսը 1342 թվականին մասնակցել է Սիսի եկեղեցական ժողովին։ Համշենում հաստատված անեցիների մի մասը, աղքատության պատճառով նույնպես վերահաստատվել է Տրապիզոնում, իսկ մյուս մասը, ինչպես հայտնի է, հարևան Խաղտիքի հայ բնակչության նման դարեր շարունակ շրջապատված լինելով մուսուլմանական ժողովուրդներով, այնուամենայնիվ կարողացավ պահպանել իր մայրենի լեզուն (համշենի բարբառը) և կրոնը. Նրանք առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հարկադրված եղան գաղթել ու բնակություն հաստատել Աբխազիայում՝ գլխավորապես Սուխումի շրջակայքում։

Տրապիզոնի շրջանում, Համշենում ու Խաղտիքում, ինչպես վկայում է նույն Մինաս Բժշկյանցը, 19-րդ դարի սկզբներին (1817 թվականին նա շրջագայել է այդ կողմերում) դեռևս նկատվում էին անեցիների կառուցած զանազան շինությունների ավերակներն ու հետքերը։

Ըստ երևույթին Անիից գաղթածները բավական մեծ թիվ էին կազմում նաև Շապին Գարահիսարում և նրա շրջակայքում։ Նրանք հիմնականում այդ շրջաններում բնակություն էին հաստատել 11-րդ դարում՝ Բագրատունյաց թագավորության անկումից հետո։ Թորոս Թորամանյանը, իր ծննդավայր Շապին Գարահիսարի մասին խոսելիս նշում է, որ այնտեղի բնակչությունը հիմնականում բաղկացած էր Վասպուրականի ու Անիի գաղթականներից, իսկ «մասնավորապես Թոմզարա գյուղաքաղաքի բնակչությունը զուտ Անիի գաղթականությունն էր», այսինքն՝ Անիի գաղթականների հետնորդները։ Նա այնուհետև բնութագրում է նոր ժամանակների այդ անեցիներին և նշում նրանց մոտ պահպանված իրենց պապուպապերի տնտեսական հմտություններն ու ազգագրական սովորությունները։

Ժամանակի ընթացքում անեցի հայերի մեծագույն մասը տարբեր ճանապարհներով ձգվում է դեպի Լեհաստանի տիրապետության տակ գտնվող Արևմտյան Ուկրաինայի նահանգները, Վալախիա, Մոլդավիա և Հունգարիա։ Անեցի հայ գաղթականների բազմամարդ գաղութներ են ստեղծվում հատկապես Լվով և Կամենեց քաղաքներում։ Լեհաստանին ենթակա նահանգներում ու քաղաքներում գնալով մեծանում է Անիից գաղթածների թիվը։ Ըստ որոշ աղբյուրների, հայերի թիվը Լեհաստանում 14-րդ դարում հասնում էր 40 հազար ընտանիքի, կամ մոտավորապես 200 հազար մարդու, եթե յուրաքանչյուր ընտանիքը հաշվենք հինգ անձից բաղկացած։ Հայ գաղթականներին այդտեղ սրտաբաց ու բարեկամաբար էին ընդունում ոչ միայն հասարակ բնակիչները, այլև իշխանու-

թյունները, որոնք հանձինս հայերի տեսնում էին իրենց հավատարիմ հպատակների ու դաշնակիցների, երկրի ներքին կյանքի եռանդուն մասնակիցների: Հայտնի է, որ հայ համայնքները հարավ-արևմտյան Ռուսիայի այդ նահանգներում օգտվում էին լայն արտոնություններից և իրենց ներքին գործերում ունեին ինքնավարական իրավունքներ: Այդ էր հիմնական պատճառը, որ լեհահպատակ նահանգները մագնիսի պես դեպի իրենց էին ձգում հայ գաղթականներին, որոնք այստեղ էին գալիս և՛ արևելքից (Աստրախան—Ղրիմ ուղղությամբ), և՛ հարավից (Բյուզանդական կայսրության վրայով): Իսկ դեպի Կիլիկիա գաղթած անեցիները, միանգամայն հասկանալի պատճառով, առանձին համանքներ չկազմեցին, այլ միացան ու ձուլվեցին տեղում եղած հայ հասարակության համապատասխան շերտերի հետ: Այդ է պատճառը, որ եթե մյուս վայրերի Անիի գաղթականները երկար-երկար ժամանակ իրենց շարունակում էին կոչել անեցիներ, ապա Կիլիկիայում բնակվածները համեմատաբար կարճ ժամանակամիջոցում դադարել էին իրենց անեցի համարելուց:

Չպետք է կարծել, որ Անիից արտագաղթողները միշտ դուրս են եկել մեծ խմբերով: Մեզ հայտնի աղբյուրների հիման վրա կարելի է պնդել, որ քաղաքից զանգվածային արտագաղթ է կատարվել երեք անգամ՝ մեկը Ալփ-Արսլանի 1064 թվականի ավերիչ արշավանքից հետո, երկրորդը՝ Չարմաղանի կողմից 1236 թվականին Անին գրավելուց ու ավերելուց հետո, իսկ երրորդը՝ 13-րդ դարի վերջերին կամ 14-րդ դարի սկզբներին, երբ, ըստ ավանդության, կործանիչ երկրաշարժը փլատակների է վերածել չքնաղ քաղաքը: Բացի այդ մեծ արտագաղթերից, 13—14-րդ դարերում քաղաքում տնտեսական կյանքի անկմանն ու նշանակության նվազմանը մշտապես ուղեկցել են մասնակի արտագաղթերը. իրենց գոյությունը պահպանելու համար նրա բնակիչներից շատերը մեծ ու փոքր խմբեր կազմած պարբերաբար հեռացել են քաղաքից և բնակություն հաստատել հարևան ու հեռավոր երկրներում: Այդ եղանակով նույնպես, բայց աննկատելի կերպով, քայլ առ քայլ մարդաթափ էր լինում Անին, զրկվում հոգատար ու ստեղծագործ ուժերից:

Անիից գաղթում էին ոչ թե հասարակության առանձին շերտերը, այլ ամբողջ բնակչությունը՝ իշխանները, ազնվականությունը, առևտրականներն ու արհեստավորները, հասարակության ցածրագույն խավի ներկայացուցիչները: Օտարի ծանր տիրապետությունը «մահվան» էր դատապարտել երբեմնի ծաղկած քաղաքը և բնակչությունը իրեն փրկելու միակ ելքը տեսնում էր արտագաղթերի մեջ, որը պատմական առումով ոչ բոլոր դեպքերում կարելի է արդարացնել:

Զարմանալի լայն են Անիից արտագաղթողների բնակության աշ-

խարհագրական սահմանները: Ղ. Ալիշանը անեցի գաղթականների հանգըրվանները համարում է՝ Նախիջևանը, Ջուղան, Վանը, Սիսը, Համշենը, Կարինը, Սեբաստիան ու Տրապիզոնը, Վրաստանը, Աստրախանն ու Աղսարայը, Ղրիմն ու Լեհաստանը: Դրանց վրա պետք է գումարել նաև Կազանը, Հունգարիան, Հունաստանը, Բուլղարիան, Մոլդավիան, Անդրպատականը: Այլ կերպ ասած, Անիի (և Շիրակի) բնակչությունը սփռըվել էր մի հսկայական տարածության շրջաններում ու քաղաքներում, որի սահմանը հարավում հասնում էր Միջագետք ու Կիլիկիա, արևելքում՝ Կասպից ծով ու Վոլգա, արևմուտքում՝ Բալկաններ ու Հունգարիա, իսկ հյուսիսում՝ Լեհաստան: Նրանք ընկնելով տարբեր քաղաքական կարգեր, տնտեսական զարգացման աստիճան ու կազմ ունեցող երկրներ, ենթարկվեցին տեղական պայմանների ազդեցությանը և իրենց մասնակցությունն ունեցան այդ երկրների ընդհանուր տնտեսական ու քաղաքական կյանքին, պաշտպանության գործին, մշակույթին, բայց միաժամանակ դարերով պահելով իրենց սեփականը՝ անիականը, հայկականը, նույնիսկ մայրենի լեզուն կորցնելուց հետո: Նրանք կառուցել են բնակավայրեր, եկեղեցիներ, պաշտպանական պարիսպներ, զբաղվել արտաքին ու ներքին առևտրով, գյուղատնտեսությամբ, իրենց ջոկատներով մասնակցել արտաքին թշնամիների դեմ մղվող պատերազմներին, զբաղվել գրչության արվեստով, մանրանկարչությամբ և այլն, և այլն:

Այդ բոլորով հանդերձ, Անիի գաղթականության պատմությունը գերազանցապես կապված է Հարավ-արևմտյան Ռուսիայի և Լեհաստանին անցած նրա մի քանի նահանգների հետ: Այդտեղ և անեցիների թիվն է մեծ եղել, և նրանք ավելի ակտիվ են մասնակցել երկրամասի ներքին կյանքին, և ավելի մեծ արտոնություններ են ստացել իշխանությունների կողմից: Այդ կողմերի հայերը մինչև նույնիսկ 20-րդ դարի սկզբները իրենց համարում էին անեցիներ և հպարտանում դրանով:

Ռուսաց ու ընդհանրապես սլավոնական ժողովուրդների պատմությամբ զբաղվող մասնագետները, ընդհանուր առմամբ, բարձր են գնահատում Հարավային Ռուսիայի այդ մասերի և Լեհաստանի կյանքում հայերի խաղացած դերը: Այդ կարգի հեղինակներից մեկն էլ Ի. Ա. Լիննիչենկոն է, որը բանավեճի մեջ մտնելով մի քանի ուսումնասիրողների հետ և փաստական նյութերով համոզիչ կերպով ապացուցելով, որ Հարավային Ռուսիայի քաղաքներում հայերը միջին դարերում կազմում էին բավական մեծ թիվ, անչափ բարձր է գնահատում նրանց խաղացած դերը:

Հայկական գաղթավայրերում ընդհանուր մարդահամարներ չեն կատարվել: Բացի դրանից, գաղթավայրերում հաստատուն վիճակ չկար: Դրանցում բնակվող հայերը հաճախ մեծ կամ փոքր խմբեր կազմած մի-

գաղթավայրից տեղափոխվել են մի այլ տեղ։ Այնպես որ հնարավոր չէ որոշել ոչ նրանց ընդհանուր և ոչ էլ առանձին գաղութներում կամ երկըրներում հաստատվածների թիվը։ Միայն հայտնի է, որ ամենաբազմամարդը եղել են լեհահպատակներն ու ղրիմահայերը։ Ըստ որոշ տըվյալների, Լեհաստանում հայերը հասել են 40 հազար ընտանիքի, իսկ Ղրիմում 14—15-րդ դարերում սովորաբար հաշվում են մոտ կես միլիոն հայեր, թեպետ ոմանք ջանասիրաբար փորձում են ժխտել այդ վարկածը։ Բավական բազմամարդ էր նաև Մոլդավիայի ու Հունգարիայի հայությունը։

Չնչին բացառություններով Անիի գաղթականների հետնորդները նըշված երկրներում 18—19-րդ դարերում կորցրել էին իրենց մայրենի լեզուն և ձուլվել դրանցում ապրող բնիկ ժողովուրդների մեջ, թեպետ, ինչպես ասվեց, իներցիայի ուժով շարունակում էին իրենց կոչել անեցիներ։

Միանգամայն ճիշտ է նկատում Հ. Օրբելին. 16-րդ դարում Անին արդեն սովորական գյուղ էր և կարծում ենք, որ դրանից հետո որոշ հեղինակների մոտ շարունակվել է քաղաք կոչվել միայն ավանդույթով: Դրանով պետք է բացատրել, որ նախ շատ սակավ են 16—17-րդ դարերի վկայություններն ու նկարագրությունները և երկրորդ՝ այդ ժամանակների հեղինակներն առաջին հերթին այն նշում են որպես բերդ կամ ուղղակի որոշ տեղեկություններ հաղորդում արդեն ավերված քաղաքի պաշտպանական կառույցների և մյուս հուշարձանների ու հնությունների մասին:

1500 թվականին վերաբերող խիստ համառոտ և գրեթե ոչինչ չասող մի հիշատակություն կա «Վրաստանի պատմության» մեջ: Այնտեղ ասված է. «[Շահ-Թահմազն] Անիի ճանապարհով գնաց Տորագյալ [Տորեկալ], որտեղից անցավ Սամցխե...»: Այդ վկայությունից միայն կարելի է եզրակացնել, որ Անին չնայած դադարել էր քաղաք լինելուց, բայց մընում էր հանրահայտնի և Շիրակ տանող ճանապարհը տակավին հայտնի էր նրա անունով:

Ամբողջ 16-րդ դարի ընթացքում Անին չի հիշատակվել որևէ հեղինակի մոտ: Այդ պարզապես պետք է բացատրել նրանով, որ հիշատակության առիթներ չեն եղել, Անին իբրև ավերակ քաղաք առնչություն չի ունեցել այդ ժամանակներում տեղի ունեցող քաղաքական դեպքերի հետ:

Անիի մասին հիշատակությունները համեմատաբար շատ են 17-րդ դարում: Դարի հենց սկզբներին, կապված թուրք-պարսկական պատերազմների հետ՝ Անին հիշատակվել է մի քանի հեղինակների մոտ: Այսպես, գրիչ Հովհաննես երեց Խարբերդցին 1606 թվականին վերաբերող իր հիշատակարանում խոսելով Շահ-Աբասի ավերիչ արշավանքի, դրա հետևանքով բռնկված սովի և երկրի ծանր կացության վերաբերյալ, իր հիշատակությունն ավարտում է հետևյալ խոսքերով. «Եւ [Շ]ահն այրեաց յԱնու քաղաքէն մինչև զճուխայ (Ջուղա) զՆախճըւան զամենայն գիւղ և զքաղաք...»:

Ինչպես տեսնում ենք, անունը հիշատակելու փաստից բացի, գրիչը

17-րդ դարի սկզբների Անիի մասին որոշակի տեղեկություններ չի հաղորդում: Նույն բովանդակությունն ունի Շահ-Աբասի արշավանքի առընչությամբ Անիի հիշատակությունը նաև նրա արշավանքների ականատես Հովհաննես Մակվեցու չափածո ողբում:

Հաջորդ հիշատակությունները վերաբերում են նույն 17-րդ դարի 30-ական թվականներին, կապված թուրք-պարսկական այն կռիվների հետ, որոնք անմիջականորեն նախորդել են 1639 թվականի հաշտությանը: Մենք այդպիսի հիշատակություն գտնում ենք երկու հեղինակների՝ Հակոբ Կարնեցու և Գրիգոր Կամախեցու մոտ:

Այսպիսով, 17-րդ դարի առաջին կեսում չնայած Անին միայն փլատակների վերածված հնավայր էր, որի ավերակների մեջ, ըստ երևույթին, տակավին իր գոյությունն էր քարշ տալիս մի փոքրիկ գյուղ, իսկ բերդը սոսկ ժամանակավոր ապաստան կամ կռիվների ոլորտ էր դառնում թուրք-պարսկական պատերազմների ժամանակ, այնուամենայնիվ տարբեր հեղինակների մոտ դեռևս չէր մարել նրա վաղեմի փառքը:

17-րդ դարի 30-ական թվականներին է վերաբերում նաև Սիմեոն Լեհացու հիշատակությունը, ըստ որի Լվովի հայերը հին անեցիներ են և դրա համար նրանք հպարտ են եղել:

Անին երեք անգամ հիշատակվում է նաև 17-րդ դարի ամենահայտնի պատմագիր Առաքել Դավրիժեցու պատմության ժամանակագրությունում, սակայն ոչ թե ապրած ժամանակաշրջանի կամ նույնիսկ ոչ թե քաղաքի ավերումից հետո եղած ժամանակների հետ կապված, այլ Սմբատ Տիեզերակալի կողմից Անիի Կաթողիկե եկեղեցու հիմնադրման, Վրաց Դավիթ թագավորի կողմից քաղաքի գրավման և մոնղոլների կողմից դրա ու Լոռի քաղաքի գրավման հետ առնչված, առանց այդ դեպքերի մանրամասնությունները նկարագրելու:

Ինչպես ժամանակին նկատել են, ամբողջ 18-րդ դարի ընթացքում Անի այցելած գրեթե որևէ հեղինակ կամ ճանապարհորդ չկա, որ նկարագրած լինի դրա ավերակները: Այդ դարի այցելուների մակագրությունները քաղաքի տարբեր հուշարձանների վրա նույնպես չի կարելի գրավոր վկայություններ համարել, որովհետև դրանք փաստորեն ոչ թե վիմագիր արձանագրություններ են, այլ ածուխով, կավճով, մատիտով կամ քարերով տուփակերտ շենքերի վրա արված խզբզանքներ: Բացառություն են կազմում միայն երկու շատ թե քիչ ուշադրության արժանի մակագրություն-«արձանագրություն», որ գտնվում են Աղջկաբերդի ս. Հովհաննես եկեղեցու վրա և մտել են Անիի վիմագիր արձանագրությունների լիակատար ժողովածուի մեջ: Դրանցից մեկը պարզապես ոմն Մարտիրոսի մակագրությունն է՝ «ԹՎ:ՌՃՁԴ: (1735 թ.) ես Մարտիրոս գրեցի»

ոչինչ չհուշող վիմագրության ձևով, իսկ մյուսում նշված է միայն նույն թվականը՝ «ԹՎ ՌՃՉԴ», առանց լրացուցիչ որևէ անվան կամ բառի։

Սակայն այդ լռությունն ամենևին չի նշանակում, թե հայերը 18-րդ դարում ընդհանրապես մոռացել էին իրենց վաղեմի հռչակված մայրաքաղաքը։ Հետաքրքրությունն Անիի նկատմամբ ամենևին չի մարել մեր ժողովրդի մեջ նույնիսկ 18-րդ դարում, երբ դրա ավերակների մասին մենք չունեինք լիարժեք որևէ նկարագրություն։ Այդ հետաքրքրությունն արտահայտվել է երկու եղանակով։ Մեկն այն է, որ 18-րդ դարի հայ հայտնի հեղինակներից մեկը՝ Աբրահամ Կրետացի կաթողիկոսը անդրադարձել է դրա պատմությանը, իսկ հայտնի հասարակական քաղաքական գործիչ Հովսեփ Արղությանը հայկական անկախ պետություն ստեղծելու համար Ռուսաց կառավարության հետ 18-րդ դարի վերջին քառորդում վարած բանակցությունների ժամանակ իբրև մայրաքաղաք առաջարկում էր նաև Անին։ Եվ եթե կաթողիկոս պատմագրին, որին Ն. Մառը համարում է Անիի առաջին պատմության հեղինակ, հետաքրքրում էր գերազանցապես միայն ավերված քաղաքի ավերման մասին եղած ավանդությունը՝ «համեմված» կրոնական առասպելաբանությամբ, ապա դըժվար չէ կռահել, որ Հ. Արղությանը Անին առաջարկելով նոր ստեղծվելիք հայկական պետության մայրաքաղաք, դրանով իսկ հարց է առաջ քաշում նաև նրա վերականգնման մասին։

Սակայն այլ ճակատագիր ունեցավ Անին։ Այն ոչ միայն չվերականգնըվեց (դրա համար պատմական պայմաններ չկային), այլև ժամանակի ընթացքում մարդկանց և բնական ամենազոր ուժերի ազդեցության տակ ենթարկվեց և շարունակում է ենթարկվել նորանոր ավերումների, թեպետև եղել են պահեր, երբ, ինչպես կտեսնենք, որոշ աշխատանքներ են կատարվել նաև նրա հուշարձաններն ու հնությունները պահպանելու ուղղությամբ։

Անհնար է մեկ առ մեկ թվարկել բոլոր ավերումները՝ դրանց ծավալն ու բնույթը, ժամանակն ու հանգամանքները։ Մեզ հասած աղբյուրները բացառում են այդպիսի մանրամասնությամբ ներկայացնել ավերված ու ամայի Անիի հետագա ավերումների պատմությունը։ Սակայն այդ ամենևին չի բացառում մեզ հասած նյութերի հիման վրա ուրվագծել փլատակների վերածված քաղաքի հետագա ավերումների ընթացքն ընդհանրապես։

Գնալով Անիի ավերակները ենթարկվում են ավելի ու ավելի նոր փլուզումների ու քանդումների։ Ամենազոր ժամանակը, երկրաշարժերը, մի շարք պատերազմների ժամանակ թշնամական զորքերի զետեղավայրի ու ընդհարման ոլորտի վերածվելը, ավերակների վայրում ժամանակավոր-

րապես հաստատված անասնապահ ցեղերն ու Ծաղկոցաձորի բանջարաբույծները, հարստություն և ոսկի որոնող քրեական տարրերը, որոնք քահն ու բրիչը վերցրած դարերով զբաղվել ու զբաղվում են հուշարձանների ու հնությունների կողոպուտով, շրջակայքի բնակիչների (և նույնիսկ պետական հիմնարկների) կողմից ավերված Անին «քարհանք»-ի վերածելը նրա կառույցների ու հուշարձանների սրբատաշ և նախշազարդ քարերը զանգվածորեն առևտրի ու սպեկուլյացիայի առարկա դարձնելը որդի նման «ուտում» ու ոչնչացնում են Անիի հիասքանչ հնություններն ու ճարտարապետական կոթողները։

Եթե 19-րդ դարի սկզբներին Անիի ավերակները մեծ դժվարությամբ այցելած էջմիածնի Խաչատուր և Հովհաննես քահանաները իրենց հապճեպ շրջագայության ժամանակ նկատել են 40-ի չափ եկեղեցիներ, իսկ ճանապարհորդ Դեսիեն նշում է մինչև 50 եկեղեցի, ապա մեր դարի սկզբներին նոր ավերումներն այնքան շատ էին, որ առանց հնագիտական պեղումների այցելուն կարող էր տեսնել տարբեր վիճակում գտնվող հազիվ 10—12 եկեղեցի։

Ավելի բնորոշ է Ն. Մառի մի վկայությունը։ Նա գրում է, որ միայն 11 տարվա ընթացքում՝ 1892—93-ից մինչև 1904 թվականները, երբ ընդհատված էին հնագիտական պեղումները, տեղի էին ունեցել ցավալի փոփոխություններ՝ «փլվել էր մզկիթի արաբերեն, վրացերեն և հայերեն արձանագրություններ ունեցող պատը, փլվել էր վրացական եկեղեցու ներքին հարկին հարող շարվածքի հենց վրացերեն արձանագրության մոտի մասը, պատերից քաշել հանել էին» իր կողմից «պեղած Խամբուշենց Աստվածածին եկեղեցու սյուները, ջարդել երկու կեսի էին բաժանել» նրա կողմից ս. Գրիգոր փոքրիկ եկեղեցու մոտ գտած Անիի թվական ունեցող ամենահայտնի քարե խաչը, և տարել նրա մի (առանց թվականի) կեսը, քաշել ջարդոտել էին Աշոտյան հին պարսպի մի աշտարակի երեսպատման քարերը, փչացրել կամ մասնակիորեն ցանկապատի համար օգտագործել էին 1892 թվականի պեղումներից [մնացած] որմնանկարներով քարերը, ոչնչացրել էին նաև 1892 և 1893 թվականներին հայտնաբերված արձանագրությունների մի մասը, գերեզմանները բոլորը փորփրված էին...։

Պարզվեց, որ Անիի տեղադրավայրը վարձակալությամբ տրված էր Արազ գյուղի գյուղացիներին, որոնք այստեղ էին քշում ոչխարների և խոշոր եղջյուրավոր անասունների հոտերը»։

Անիի ավերակներին ավելի վտանգավոր և մահացու հարված էին հասցնում շրջակայքի բնակիչները, Անիի տեղադրավայրի տերերը, որոնք անխնա քանդում ու վաճառում էին քաղաքի կառույցների երեսապատ-



19—2682

ման սրբատաշ քարերը: Անի այցելած ու դրա ավերակները բավական մանրամասն նկարագրած Հ. Գեղամյանցը սրտի կսկիծով է խոսում այդ մասին, նշելով, որ քաղաքն ավելի շուտ քարուքանդ են անում հենց մարդիկ՝ գլխավորապես շրջակայքի թուրքերը: Լիովին կարելի է միանալ նրա այն արտահայտությանը, թե՝ «Անւոյ ամայանալը որքան որ ամբողջ դարեր են կազմում, այնուամենայնիվ, այդ քաղաքի քարուքանդ լինելը ոչ այնքան ժամանակի, որքան մարդկանց անգթութեան հետևանք էր»: Այնուհետև նա հաղորդում է, որ «Այդ քարուքանդ անողներն են գլխավորապես շրջակայ տաճիկները», որ ինքը Անի գյուղում տեսել է Անի քաղաքից բերված մեծ-մեծ քարեր, որոնցով «գյուղացիները շարել էին իրենց հյուղերը»: Շարունակելով իր խոսքը՝ Հ. Գեղամյանցը գրում է՝ «Բարեկամներիցս մինը ինձ գրում էր Կարսից, որ նա այնտեղ տեսել էր ամբողջ տներ և մարտկոցներ Անւոյ քարից շինուած: Անւոյ տէրը՝ Մադաթ-օղլին, որը յայտնի Ղարա Իսմայէլ փաշայի եղբայրն է, դիտմամբ քանդել էր տալիս... այդ քաղաքի շինութիւնները: Պ. Քիւրքճեանը ինձ պատմեց, որ նա մի անգամ պատահել է սայլերի, որոնք կրում էին Լուսավորիչ եկեղեցու գաւթի քարերը Խաթուն-օղլու տիրապետության ժամանակ: Անին քանդել են Ծաղկոցաձորի մեջ բանջարներ ցանող պարսիկները և իրենց բանջարանոցները ցանկապատել: Քանդել են նույնպես և մոտակայ քրդերը և իրենց բնակարաններն, գոմերն ու ձիանոցները շինել: Անւոյ հիւսիսային կողմում շինուած տաճկաց պահակատունը Անւոյ քարերով է շինուած: Նույն քարերով է շինուած ասում են և Ռուսաց պահակատունը Ախուրեան գետի ձախ կողմում: Ցաւալին այն է, որ այդ անխիղճ մարդիկը միշտ ձեռք տուել են լաւ շինութիւնների լաւ և ընտիր մասերին»:

Սուր դիտողականության և հանգամանքներին տեղյակ ականատեսի պատմածը կասկածանքի ենթակա չի կարող լինել: Նույն կարգի վկայություններ ունեն նաև ավերակ քաղաքն այցելած մյուս հեղինակները՝ Ե. Մարկովը, Լինչը, Լեոն և ուրիշներ: Անիից կողոպտված քարերով են կառուցել նույնիսկ բավական հեռու գտնվող Կարսի ամրությունները, ինչպես և Երևանի երկաթուղու կայարաններից շատերը:

Այսպիսով, ավերված քաղաքը ենթակա էր և է կողոպուտի ու նորանոր քանդումների:

Անիի ավերակներին բազմաթիվ վերքեր են պատճառում, ինչպես ասվեց, քաղաքում ժամանակավորապես իրենց անասունները պահող քրդերը, ինչպես և Ծաղկոցաձորում բանջարաբուծությամբ զբաղվող այլազգի բնակչությունը: Առաջինների գոմերն ու փարախները, երկրորդների բանջարանոցների ցանկապատերն ու հյուղերը կառուցված էին Անիի

պարիսպներից, եկեղեցիներից և մյուս հուշարձաններից պոկած սրբատաշ քարերով, որոնցից շատերը քանդակազարդ էին, կամ իրենց վրա կրում էին պատմության համար այնքան թանկարժեք վիմագիր արձանագրություններ։ Նրանք Անիի շատ եկեղեցիներ վերածել էին գոմերի ու փարախների։ Նրանք բոլորը, վաղեմի քաղաքից ոչ հեռու գտնվող թուրքական Անի գյուղի բնակիչների հետ միասին, ավերակների համար (հատկապես մինչև 1877—78 թթ. ռուս-թուրքական պատերազմը) դարձել էին կատարյալ պատուհասներ։ Անիի ավերակները քիչ չէին այլափոխվում ու աղքատացվում նաև ամենատարբեր կարգի այցելուների թողած խըզբըզանք-ստորագրություն-«հիշատակություններից», որոնք կարծես հին վիմագիր արձանագրությունների ծաղրանկարները լինեին, և մանր կարգի կողոպուտից. յուրաքանչյուր Անի այցելող փափագում էր այստեղից իբրև հիշատակ իր հետ տանել քանդակված քարի կտոր, խեցեղենի նըմուշներ, որմնանկարների փշրանքներ, արձանագրությունների բեկորներ և այլն, որոնց մասին այնքան դառնությամբ են գրել ողջախոհ բազմաթիվ ճանապարհորդներ։ Այդ եղանակով են Անիից տարվել նաև ամբողջական արձանագրություններ, բարձրաքանդակներ և, նույնիսկ, արձաններ։ Դրանց մի մասը առհավետ չի կորել, այլ կենտրոնացվել է զանազան թանգարաններում։ Սակայն մյուս, մեծ մասը քաշել-տարել են անհատ ճանապարհորդներ ու սովորական այցելուներ և առհավետ կորել է պատմության համար։

Անիի համար մեծագույն չարիքներից մեկը երկրաշարժերն են, որ կրկնվել են մի շարք անգամ և հսկայական փլվածքներ առաջացրել քաղաքի տարբեր հատվածներում։ Մի՞թե պատահական է, որ Անիի կործանումը ավանդաբար կապել են աղետաբեր երկրաշարժի հետ։ 19-րդ դարում Արարատյան դաշտում և հարակցող շրջաններում երկու այդպիսի երկրաշարժ է արձանագրված։ Դրանցից մեկը, որի էպիկենտրոնը գտնըվել է Մեծ ու Փոքր Մասիսների շրջանում, տեղի է ունեցել 1840 թվականին, իսկ մյուսը՝ 1880-ական թվականների սկզբին։ 1840 թվականի երկրաշարժի հետևանքով Անիում նույնպես առաջացել են նոր փլվածքներ։ Հենց այդ երկրաշարժից էլ փլվել է Անիի լավագույն զարդերից մեկի՝ Մայր տաճարի գմբեթը։ Փլվածքի հետ միասին տաճարի վրա առաջացել է մեծ ճեղքվածք, որը սպառնում է ճարտարապետական այդ մեծագույն հրաշալիքի հետագա գոյությանը։ 1880-ական թվականների սկզբըներին տեղի ունեցած երկրաշարժը մի շարք փլվածքներ առաջացնելու հետ միասին գետին է տապալել նաև քաղաքի ամենաբարձր կառույցը՝ Աբուլ-Մամրանի մզկիթի մինարեն, որի բեկորները զանգվածներով պահպանվել են մինչև մեր օրերը։ Դեռևս 1848 թվականին արտագրվել էր

(Խանիկովի կողմից) մինարեի վրայի Ծաղաղյան Քեյ-Սուլթանի թողած 1198—99 թվականների արձանագրությունը, այլապես մեզ զրկված կլինեինք Անիի պատմության երկու կարևոր պահերի պարզաբանման համար այնքան կարևոր նշանակություն ունեցող այդ արձանագրությունից։

Այդ և նախորդ երկրաշարժերից վնասվածքներ էին ստացել դեռևս մի կերպ կանգուն մնացած նաև մյուս հայտնի կառույցները՝ Մանուչեի մզկիթը, «վրացական»փոքրիկ եկեղեցին, Այրային Անիի որոշ կերտվածքներ և այլ շենքեր, որոնց նույնիսկ սոսկ թվարկումն անհնար է։

Թեպետև քաղաքի պաշտպանական պարիսպներն ավելի ամրակուռ են և համեմատաբար ավելի լավ են պահպանվել, բայց այստեղ էլ իրսկայական փլվածքներ ու ավերումներ են առաջացրել ամենազոր երկրաշարժերը։ Ճիշտ է նկատել 1817 թվականին Անի այցելած ճանապարհորդ Մորից ֆոն Կոցեբուն՝ այստեղ «պարսիկների սկսած քանդումի գործը ամբողջացրել են երկրաշարժերը»։ Նոր փլվածքներ ու ավերումներ են առաջացրել նաև 1926 թվականի և հետագայի մի քանի երկրաշարժերը, որոնց պատճառած վնասների ծավալն ու բնույթը, հասկանալի է, մեզ համար մնում են անորոշ։

Անի այցելած ճանապարհորդներից և ոչ մեկը նպատակ չի ունեցել նկարագրել դրա ավերակներն ամբողջությամբ։ Նրանք հիմնականում բավարարվել են տարբեր վիճակում իրենց ժամանակները հասած կառույցների նկարագրությամբ, միայն երբեմն-երբեմն նշելով իրենց նախորդների կատարած նկարագրությունների համեմատությամբ այս կամ այն կառույցում նկատված փոփոխությունները։ Իսկ այդ հնարավորություն չի ընձեռում պատկերացնելու ամբողջ քաղաքում մարդու ձեռքով, ժամանակի ազդեցությամբ և երկրաշարժերի հետևանքով փլվող և փըլված ու երկրի երեսից ջնջված բոլոր հուշարձանների վերացման ժամանակագրությունն ու հանգամանքները։ Այդ խնդրում մեծ է լուսանկարչության դերը։ Անիի ընդհանուր համայնապատկերը և նրա առանձին կոթողները լուսանկարվել են շատերի կողմից։ Բայց այդ բնագավառի երախտավորները երկուսն են՝ Հովհաննես Քյուրքչյանը, որ ռուս-թուրքական 1877—78 թթ. պատերազմից անմիջապես հետո տասնյակների հասնող իր լուսանկարներով, Լեոյի արտահայտությամբ, «կենդանացրեց Անին, ժամանակի խորտակող ժանիքներից ազատեց հոչակավոր ավերակները» և դերասան, սիրող-նկարիչ Արամ Վրույրը, որը քաղաքի ավերակներում կատարել է հարյուրավոր լուսանկարումներ։ Նրա լուսանկարչական այդ գործունեության դիպուկ գնահատականը նույնպես տվել է բազմավաստակ Լեոն. «Հայ բեմի այդ համեստ և... չքավոր գործիչը, կարելի է ասել, Անիի մեջ և Անիի շուրջը ոչինչ անծանոթ բան չէ թողել,

այնպես որ Նրա ժողովածուն ավերակների մայրաքաղաքի լիակատար, ամենամանրամասն տեսարանացույցը պիտի դառնա»։

Չնայած Անին վաղուց արդեն ավերված էր, անկենդան, բայց շատ կողմերով առնչվել է 19-րդ դարի և 20-րդ դարի սկզբներին տեղի ունեցած քաղաքական անցքերի հետ։ Այնպես որ անտեղի չի լինի, եթե մի քանի խոսք ասվի այդ առնչությունների և Անիի քաղաքական կացության վերաբերյալ։ Անիի ավերակների վայրը Երևանի խանությունից դուրս էր գտնվում։ Այդ կողմերում Երևանի խանության ու Կարսի փաշայության սահմանն անցնում էր Ախուրյան գետով, որի աջ ափին փռված էին ավերակները։ Եվ թեկուզ ավերակ էր Անին, բայց այնտեղ են ձգտել շատերը։ Անին հայերի համար մնում էր իբրև հավերժական կենդանի քաղաք, իբրև յուրատեսակ պաշտամունքի առարկա։ Դրա վառ օրինակը կարող է լինել մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանի» պատմավեպի գլխավոր հերոս Աղասու երազանքները կապված Անիի ավերակների հետ։ Իրականում գոյություն ունեցած այդ հերոսը 1821 թվականի հուլիսի 23-ին ապստամբում է պարսկական դաժան տիրապետության դեմ և գումարելով ավելի քան 300 հայազգի քաջակորով երիտասարդներից բաղկացած մի ջոկատ, անցնում է Ախուրյան գետն ու ամրանում Անիի ավերակներում։ Աղասու այդ ջոկատը երկու մասի բաժանված, թիկունք դարձնելով իրենց վաղեմի մայրաքաղաքը և ամրանալով նրա ավերակներում, անակնկալ հարձակվում է մեծ թվով գերիներով և հսկայական ավարով այդտեղ եկած Հասան-խանի ավարառու զորքի վրա ու խայտառակ պարտության մատնում նրան՝ ազատելով գերիներին ու գրավելով ռազմական ավարը շտապում է Կարս։ Աղասին սրտի մրմուռով է թողնում Անին՝ նրա «սուրբ հողերը», «տաճարները, ապարանքները, պարիսպները, տապանները...»։

Ռուս-թուրքական 1806—1812 ու 1828—1829 թթ. և ռուս-պարսկական 1804—1813 ու 1826—1828 թթ. չորս պատերազմները Անիի հետ քիչ են առնչվել, Անին պատերազմական գործողությունների անմիջական ոլորտ չի դարձել, թեպետ այն գտնվում էր առաջին գծի վրա։ Այդ ժամանակների հետ կապված հիշատակության արժանի դեպքը միայն կարելի է համարել այն, որ ռուս-թուրքական 1828—1829 թթ. պատերազմի ժամանակ դեպի Էրզրում կատարած իր ճանապարհորդության ընթացքում Անիի ավերակներով հետաքրքրվել է մեծ Պուշկինը, իր ձեռքով գծելով դրանց յուրատեսակ հատակագիծը։

1853—1856 թվականների արևելյան պատերազմի ժամանակ դարձյալ Անին գտնվում էր ռազմական գործողությունների գոտում։ Այդ տարիներին այն դեպի իրեն է գրավում մեծ թվով այցելուների՝ հատկապես

ռուս զինվորականների՝ և՛ սպայական կազմից, և՛ շարքային զինվորներից, որոնցից շատերը կավճով, ածուխով կամ քարով իրենց մակագրություններն են թողել Անիի դեռևս մի կերպ կանգուն մնացած հուշարձանների վրա։

Անիի ավերակների ճակատագիրը զգալի չափով կապված էր նաև ռուս-թուրքական 1877—78 թվականների պատերազմի հետ։ Այդ պատերազմում Անին որոշ ժամանակ (1877 թվականի ամռանը) ուղղակի գտնվում էր պատերազմական գործողությունների գոտում և նրա ավերակները ենթարկվում էին նոր փլուզումների։ Այդտեղ տարբեր ժամանակներում հանգրվանել էին թշնամական բանակների ջոկատներ։ Թուրքական բանակի հրամանատար Մուխթար փաշան քանի դեռ ջախջախիչ պարտություն չէր կրել և չէր նահանջել դեպի արևմուտք, ամեն ինչ անում էր, որպեսզի Անիի ավերակներում զետեղի մի ջոկատ և այն նույնպես դարձնի ռուսական բանակի դեմ գործող կարևոր ստորաբաժանումներից մեկը։ Ըստ երևույթին, Անիի ավերակների շրջանին պաշտպանական (և, թերևս, բարոյական) մեծ նշանակություն էր տալիս նաև ռուսական զորքերի հրամանատարությունը։ Հենց դրանով էլ պիտի բացատրել 1877 թ. ամռանը այստեղ ռուսական մի հատուկ զորաբաժնի բանակ դնելը և այդ զորամասն այլ տեղ ուղարկելուց հետո, ռազմագիտական նկատառումներով Անին նորից գրավելը։ Անիի մոտակայքում (բայց ոչ անմիջապես Անիում) տեղի են ունեցել «փառահեղ ռազմական գործողություններ», որոնք կազմում են 1877—1878 թթ. պատերազմի ամենավառ էջերից։

Պատերազմի ընթացքը, դրա մանրամասների շարադրանքը մեր նպատակներից դուրս է։ Սակայն այդ պատերազմը, որի հետևանքով Ռուսաստանին միացվեց Կարսի ընդարձակ մարզը, կարելի է ասել, բախտորոշիչ նշանակություն է ունեցել Անիի ավերակների համար։ Ցարական Ռուսաստանի կազմի մեջ մտնելով նախ այն մատչելի դարձավ ճանապարհորդների ու զբոսաշրջիկների համար, որոնք այնքան մեծ թվով հիշատակություններ ու նկարագրություններ են թողել մեռած քաղաքի հուշարձանների վերաբերյալ, երկրորդ՝ ռուսական իշխանությունների տեղական ներկայացուցիչների և հայկական համայնքների ջանքերով հիմնականում կանխվում են նոր ավերումներն ու հուշարձանների կողոպուտը, երրորդ՝ հետաքրքրությունն Անիի նկատմամբ այնքան է ուժեղանում, որ այն 90-ական թվականների սկզբներից դառնում է մեծ մասնագետների պարբերական ուսումնասիրության (այդ թվում հատկապես հնագիտական առումով) առարկա և չորրորդ՝ գիտական հաստատությունները,

անհատ մարդիկ, ընկերությունները և հայկական համայնքները օգնում են Անիի որոշ հուշարձանների վերականգնման ու ավերակների պահպանության այնքան մեծ ժողովրդականություն ստացած գործին։

17—19-րդ դարերում, մինչև Ռուսաստանի կազմի մեջ մտնելը՝ Անիի ավերակների շրջանը, ինչպես նշվեց, պատկանում էր թուրքական Խաթուն-օղլի ցեղապետին, որպես արոտավայր։ Նրանք բացահայտորեն քանդում ու վաճառքի առարկա էին դարձնում Անիի հուշարձանների քարերը։ 1878 թվականով եկավ և Խաթուն-օղլիների տիրապետության վերջը։ Ճիշտ է, դրանից հետո, նույնիսկ 20-րդ դարի սկզբներին, տակավին կենդանի էր այդ ավազակաբարո ցեղի վերջին ներկայացուցիչ Յուսուփ բեկը, որ հաստատված էր Անիից 6—7 կմ արևմուտք, Սյոգութլու գյուղում, բայց առանց Անիի ավերակների վրա որևէ իշխանություն ունենալու։ Անիի ավերակները ենթակա էին ռուսական իշխանություններին, գործող պետական օրենքներին և կարգ ու կանոնին։ Դրանք չէին կարող անհատների կողմից օգտագործվել նեղ շահադիտական նպատակներով և դառնալ ստոր վաճառքի առարկաներ։ Էլ չենք ուզում խոսել այն մասին, որ Ռուսաստանի կազմի մեջ մտնելու շնորհիվ փաստորեն Անին «նորից հայտնագործվեց» և նրա հրաշալիքները, որ կարող էին թուրքական տիրապետության տակ մշտապես գտնվելու հետևանքով անհետ կորչել պատմության համար, հայտնի դարձան գիտական աշխարհին և դրանով իսկ անմահացան։

Մորից ֆոն Կոցեբուի վկայությամբ իր ժամանակ՝ 19-րդ դարի երկրորդ տասնամյակների վերջերին Անիի բուն ավերակների շրջանում ապրում էր միայն 10 ընտանիք, թեպետ վաղեմի քաղաքի շրջապատը մոտ 9 կմ-ի է հասել։ Նույն դարի վերջերին և 20-րդ դարի սկզբներին, ինչպես Ն. Մառն է վկայում, Անիում այլևս մշտական բնակիչ չկար, բացառյալ Անիի վանահորը, որի տունը, կառուցված 1877 թվականից անմիջապես հետո, նույնպես ներկայացնում էր յուրատեսակ ավերակ։

19-րդ դարում Անիի ավերակների շրջակայքում այնուամենայնիվ իրենց գոյությունը պահպանում էին մի քանի փոքրիկ գյուղեր։ Դրանցից մեկը թուրքական Անի գյուղն էր, որն այժմ նույնպես գոյություն ունի, Ճալա կամ Ջալա, Արազ և Ենիքյոյ (այժմ՝ Խարկով ՀՍՍՀ-ում) հայկական գյուղերը, որոնց գյուղացիները սակավահող էին և հնագիտական պեղումների ընթացքում նրանցից շատերն ամռանն աշխատում էին Ն. Մառի արշավախմբում։ Անիի մոտակայքում էին գտնվում նաև Ալաջա ու Բականան քրդաբնակ գյուղակները, ինչպես և Անիի ավերակներից ավելի քան 10 կմ հեռավորության վրա՝ Ալաջա լեռների ստորոտում գտնըվող Սյոգությու գյուղը, որի տարածքում բխող սառնորակ աղբյուրներից

հատուկ ջրմուղով տարված էր Անիի խմելու ջուրը: Առաջին համաշխարհային պատերազմը Անիի համար նույնպես ճակատագրական եղավ: 40 տարի Ռուսաստանի կազմում լինելուց հետո ավերված քաղաքը նորից դարձավ պատերազմական գործողությունների ոլորտ: 1917 թվականին սկսված թուրքական հարձակման հետևանքով՝ այդտեղից հապճեպորեն դուրս բերվեցին պեղումների ընթացքում ձեռք բերված հնագիտական նյութերը: Օգտվելով Անդրկովկասի ներքին անկայուն դրությունից, թուրքերը հետագայում շարունակեցին իրենց հարձակումները՝ գրավելով ամբողջ Կարսի մարզը և ավերելով Ախուրյանից արևելք ընկած տերիտորիաների զգալի մասը: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո Սովետական Ռուսաստանի և Սովետական Հայաստանի կառավարությունները 1921 թվականին մեծ ջանքեր գործադրեցին դիվանագիտական ճանապարհով Անիի ավերակների շրջանը ՀՍՍՀ-ին միացնելու ուղղությամբ, բայց այդ բոլորն անցան ապարդյուն, Անին նորից անցավ Թուրքիայի տիրապետության տակ: Ներկայումս, եթե մի կողմից անխնա ոչնչանում են նրա հնությունները, ապա մյուս կողմից դրանք թուրքերի կողմից օգտագործվում են իբրև եկամտի աղբյուր. այստեղ, թուրքական Անի գյուղում ստեղծված է մի անշուք պանսիոնատ-տուրիստական հանգըրվան և Անիի ավերակների շրջանն են գալիս զանազան երկրներից տարեկան տասնյակ հազարավոր զբոսաշրջիկներ, որոնց նրա հուշարձանների մասին թուրք էքսկուրսավարը պատմում է առանց դրանց ստեղծողների նույնիսկ անունները տալու:

Բովանդակալից ու շատ հարուստ է Անիի ուսումնասիրության պատմությունը: Ավերված քաղաքի կանգուն, կիսակործան, խարխլված կամ վաղուց փլված և զանգվածախառն հողակույտերի վերածված սքանչելի կառուցվածքներն ու հնությունները՝ աննման տաճարներն ու եկեղեցիները, արքայական ու իշխանական հոյակապ պալատները, հյուրատներն ու երկու մզկիթները, պաշտպանական պարիսպները, որոնք, ականատեսների վկայությամբ, իրենց արվեստով ու ամրությամբ ոչնչով չեն զիջում Հռոմի պարիսպներին, Ախուրյանի վրայի միաթռիչք քարակերտ կամուրջները և մյուս կառույցները 19-րդ դարում իրենց վրա էին բևեռել տարբեր մասնագիտության տեր տասնյակ ճանապարհորդների, ճարտարապետների, հնագետների, պատմաբանների, հոգևորականների, արվեստի սիրահարների, երկրաբանների, բուսաբանների, ինչպես նաև հարյուրավոր զինվորականների ու ընդհանրապես հետաքրքրասերների ուշադրությունը:

Այդ նույն 19-րդ դարի տարբեր թվականներին Անիի ավերակներն այցելած արևմտաեվրոպական հեղինակներից էին՝ անգլիացի Կեր Փոր-

տերը (1817 թ.), որ այնքան ջերմությամբ է խոսում քաղաքի կառուցվածքների մասին, նրա հայրենակիցներ Էբբոթը (1830 թ.), Համիլտոնն (1836 թ.) ու Ուիլբրիամը (1837 թ.), գերմանացի բուսաբան Կոխը (1837 թ.), ֆրանսիացի լեզվագետ Է. Բոռեն (1838 թ.), նրա հայրենակից՝ ճարտարապետ Տեքսիեն (1843 թ.), անգլիացի բանասեր և հայագետ Կոնիբերը (1888 թ.), նրա հայրենակից Լինչը և ուրիշներ։ Ռուս հեղինակներից, գիտնականներից ու ճանապարհորդներից՝ Պուշկինը (1829 թ.), ակադեմիկոս, երկրաբան Հ. Աբիխը (1844 թ.), որին պատկանում է Անիի ավերակների առաջին հատակագծի կազմման պատիվը, Ա. Մուրավյովը (1846 թ.), որ այնքան բանաստեղծական է արտահայտվել ավերված քաղաքի հրաշալիքների մասին, Խանիկովը (1848 թ.), որը արտագրել է Աբուլ-Մամրանի մզկիթի մինարեի վրայի Քեյ-Սուլթանի թողած պարսկերեն ընդարձակ արձանագրությունը (1198—99 թթ.), Գրիմը (1854 թ.), գերմանացի Քեսթերնը, որը Անի էր ուղարկվել 1850 թվականին Պետերբուրգի գիտությունների ակադեմիայի կողմից և որի հավաքած նյութերը ատաղձ դարձան նույն ակադեմիայի ակադեմիկոս, ֆրանսիացի արևելագետ Բրոսսեի «Les Ruines d' Ani» վերնագրով երկհատորանոց աշխատության համար (СПб., 1860—1861), ռուսական բանակի սպա Ռիժկովը (1877 թ.), Անդրեևը (1897 թ.), որ մինչև Անի այցելելը հայության և հայ արվեստի մասին այնքան թյուր կարծիք ուներ, իսկ դրանից հետո մեծ գովեստով է խոսում Անիի հուշարձաններից և ընդհանրապես հայկական արվեստի վերաբերյալ, Ե. Մարկովը, որ այնքան ջերմությամբ և բանաստեղծական է նկարագրել ավերակ Անիի կառուցվածքները, և ուրիշներ։

Միանգամայն հասկանալի է, որ Անիի նկատմամբ հետաքրքրությունը ավելի մեծ էր հայկական շրջաններում։ Անի այցելած հայ հեղինակները, ճանապարհորդները, հոգևորականները և այլ կարգի անձինք կազմում են ավելի մեծ խումբ։ Ինչպես նշվեց, 19-րդ դարի սկզբին՝ 1804 թվականին Անիի ավերակները նկարագրելու համար ուղարկվել են երկու հոգևորական՝ Խաչատուրն ու Հովհաննեսը։ Նրանցից հետո Անի այցելել են քաղաքի պատմության առաջին հեղինակներից մեկը՝ Մինաս Բժշկյանցը (1830 թ.), Կարապետ վարդապետը (1848—49 թթ.), Աբել Մխիթարյանցը (1855 թ.), արքեպիսկոպոս Սարգիս Ջալալյանցը (1857 թ.), Ներսես Սարգսյանը (1864 թ.), Հովհ. Տեր-Աբրահամյանը (1867 թ.), Հ. Քյուրքչյանը (1878 թ.), Հ. Գեղամյանցը (1880 թ.) և հետագայի բազմաթիվ հեղինակներ (որոնց թվում նաև Լեոն և Գ. Պալաքյանը)։

Անի այցելած թե արևմտաեվրոպական, թե ռուսական և թե հայ հեղինակների կատարած աշխատանքներին, ուսումնասիրություններին ու

նկարագրություններին մենք անդրադարձել ենք քաղաքի բուն պատմությունը շարադրելիս՝ ըստ բնագավառների ու հարցերի, առանց, սակայն, դրանց ընդհանուր հանրագումարի մասին խոսելու, որ միանգամայն հասկանալի է: Եթե ի մի բերենք 19-րդ դարի տասնյակների հասնող նշված հեղինակների թողած ժառանգությունը, ապա այն ընդհանուր գծերով կարելի է բնութագրել հետևյալ կերպով.

Տարբեր հեղինակների կողմից նկարագրվել են քաղաքի ընդհանուր տեսքը և նրա ճարտարապետական կոթողներն ու առանձին հնությունները, չափագրվել են տասնյակների հասնող կառույցներ, արտագրվել են հայերեն և այլ լեզուներով գրված բազմաթիվ արձանագրություններ, ճարտարապետական առումով գնահատվել են շատ հուշարձաններ, արձանագրվելով դրանց արվեստի ակունքները և փոխադարձ ազդեցությունները, նկարագրվել են բուն քաղաքը, մասամբ Ստորգետնյա Անին և Այրային Անին, մի քանի հեղինակների կողմից կազմվել է քաղաքի հուշարձանների և հնությունների հատակագիծը և այլն, և այլն: Ընդ որում, Անի այցելողներն առանց բացառության հիացմունքով են խոսում հատկապես նրա ճարտարապետական գլուխգործոցների՝ պաշտպանական պարիսպների, Մայր տաճարի և մյուս եկեղեցիների, Պարոնի պալատի, կամուրջների, Մանուչեի մզկիթի և մյուս կառույցների մասին: Եվ մենք կարծում ենք, որ անարդարացի է Ն. Մառը՝ Անիի գեղեցկությունների ու հուշարձանների նկարագրություններում դրանց մեղադրելով չափազանցությունների մեջ: Այցելուները չէին կարող չհափշտակվել ավերակ քաղաքի կոթողներով: Այո, սկսած սառնարյուն ակադեմիկոսներից մինչև շրջագայությունների սիրահարները ներառյալ Անիի մասին խոսել են ոգեշունչ խոսքերով, բայց ոչ չափազանցություններով, ինչպես Անիի հնագիտության երախտավորն է կարծում:

Այցելուներից շատ-շատերը իրենց տպավորություններն ու հիշատակությունները, ինչպես ասվեց, կավիճով, ածուխով, մատիտով, քարով գրել են քաղաքի կառույցների պատերին՝ հայերեն, ռուսերեն, ֆրանսերեն, գերմաներեն, անգլերեն, թուրքերեն: Քարագիր այդ հիշատակությունների մեծ մասը ուղղակիորեն փչացնում են հուշարձանները, սակայն դրանք մեծ մասամբ սրտառուչ արտահայտություններ են, որոնցով այցելուն հայ ճարտարապետությանը, քաղաքի հրաշալի կերտվածքներին և հայ ժողովրդին ուղղված խոսքերով (որ հաճախ չափածոյի ձևով են) ձգտել են արժանահիշատակ դարձնել իրենց այցը Անի:

Հ. Գեղամյանցի ճանապարհորդական նոթերի մեջ բերված է այդ արձանագրություն-հիշատակարաններից մի ամբողջ շարք: Անհրաժեշտ ենք համարում դրանցից մեջ բերել միայն մի քանի համառոտ նմուշներ:

Այսպես, մի այցելու հայերեն գրել է. «Եկի, տեսի և ողբացի», իր համար այդպես ձևափոխելով Հուլիոս Կեսարի հայտնի դարձվածքը («Եկա, տեսա, հաղթեցի»), մի ուրիշը, դարձյալ հայերեն գրել է՝ «Աշխատիլ և երբեք չյուսահատիլ»): Ռուս գնդապետներից մեկը ռուսերեն թողել է հետևյալ մտորումը. «Աստված իմ, ինչո՞ւ թողիր որ անօրէնները պղծեն քո սուրբ տաճարը, ինչո՞ւ թողիր քեզ սիրող և պաշտող ազգը», իսկ մի ֆրանսիացի իր այցը մայրենի լեզվով նշել է հայ ժողովրդին ուղղված հետևյալ լավատեսական արտահայտությամբ. «Այսքան զորություն ունեցող մի ազգ եթէ մինչև հիմայ չի անհետացել, այսուհետև երբեք չի անհետանալ»:

Սակայն ցավով պիտի ասել, որ ոչ ոքի մտքով չի անցել հավաքել այդ հիշատակարան-արձանագրությունները, որոնք շատ կողմերով կլրացնեին Անիի մասին եղած ժողովրդական ստեղծագործությունների հավաքածուն:

Երբ 19-րդ դարում Անին դառնում է համընդհանուր հետաքրքրության առարկա, հայ հասարակությունը և եկեղեցին ջանքեր են գործադրում ավերակ քաղաքում այցելուների համար հանգստի ու գիշերելու պայմաններ ստեղծելու, ինչպես և որոշ հուշարձաններ պահպանելու ուղղությամբ: Մինչև պեղումների սկսվելը հաջողվում է միայն Անիում հաստատել մի աղքատ վանահայրություն և, այցելուների համար, Մայր եկեղեցու մոտ 60-ական թվականների վերջերին կառուցել մի քանի սենյակներից բաղկացած փոքրիկ շենք, այն դնելով վանահայր նշանակված Միքայել վարդապետ Տեր-Մինասյանի տրամադրության տակ: Ղարաբաղցի այդ եռանդուն, հյուրընկալ ու բարեհամբույր վարդապետը, ամայի քաղաքի միակ մշտական բնակիչն էր: Նա ուներ իր փոքրիկ տնտեսությունը և կարող էր հյուրերին՝ Անի այցելողներին օթևան տրամադրելու հետ միասին, նրանց տալ իր ունեցվածքից՝ կաթ, մածուն, բանջարեղեն, ինչպես և խիստ պետքական որոշ իրեր՝ ինքնաեռ, բաժակ, աման և այլն: Նա վայելում էր ընդհանուրի համակրանքը: Միքայել վարդապետն իր մոտ պահում էր «մի հին քրքրված մատյան»՝ հուշամատյան, որտեղ տարբեր լեզուներով իրենց տպավորություններն էին գրառում տարբեր ազգությունների պատկանող այցելուները: Դրանք բոլորը սրտառուչ էին, ջերմ ու հիացական: Կ. Բասմաջյանը վկայում է, որ այցելուներից մեկը Անին ուղղակի կոչել է «թանգարան»:

Անիի վանահայրությունը որոշ հոգ է տարել հուշարձանները մաքրելու, պահպանելու և որոշ վերանորոգումներ կատարելու համար: Սակայն հնագիտական պեղումների տարիներին վանահոր հյուրատունը արդեն աչքաթող էր արված:

Անառարկելի է ուսումնասիրողների միահամուռ կարծիքը. առանց հնագիտական պեղումների Անիի համակողմանի պատմությունն անհնար կլիներ կազմել, առանձնապես թերի կլիներ նրա տնտեսական կյանքի և սոցիալական-գույքային հարաբերությունների պատմությունը: Այդ տեսակետից էլ կարելի է նույնիսկ պնդել, որ Ն. Մառի կատարած պեղումներն ու դրանց արդյունքների ամփոփումը Անիի և մասամբ Հայաստանի ու հարևան երկրների միջնադարյան մյուս տասնյակ խոշոր քաղաքների պատմության համար շատ կողմերով իսկական հայտնագործություններ էին, անգնահատելի այնպիսի ծառայություններ, որոնք առ այսօր չեն խամրել, չեն կորցրել իրենց թարմությունը, չնայած դրանցից հետո հայտնի են դարձել ու հրապարակի վրա դրվել հիշատակարաններ, ժամանակագրություններ, ուղեգրություններ և այլն, և այլն:

Պեղումների և դրանց արդյունքների ամփոփումներին զուգորդել են թանգարանների կազմակերպումն ու դրանց հարստացումը, գրադարանի ստեղծումը, աշխատասենյակների և պեղումների մասնակիցների համար օթևանների կառուցումը, որոշ հուշարձանների վրա կատարված վերանորոգման ու վերականգնման աշխատանքները, թանգարանի գծով հրատարակչության գործի կազմակերպումը, ֆինանսական միջոցների հայթայթման գործը, Անիի հնագիտական ինստիտուտ ստեղծելու հոգսերը և այլն: Իսկ բավարարվել միայն դրանց սոսկ թվարկումով, առանց որոշ հանգամանքների պարզաբանման, կնշանակեր թերի թողնել Անիի ճակատագրին և նորագույն ժամանակաշրջանի վիճակին վերաբերող մի ամբողջ ոչ քիչ կարևորություն ունեցող հարցեր:

Անդրկովկասում և Անիում պեղումներ կատարելու մասին Կայսերական Գիտությունների Ակադեմիայում խոսք է գնում տակավին 19-րդ դարի 70-ական թվականների վերջերից, ռուս-թուրքական 1877—78 թթ. պատերազմից անմիջապես հետո: Սակայն այդ հարցը մոտ 15 տարի տեղից չի շարժվում: Միայն 90-ական թվականների սկզբին ԳԱ հնագիտական հանձնաժողովն արդեն ձեռնամուխ է լինում այդպիսի պեղումների կազմակերպման գործին: Ակադեմիայի հնագիտական հանձնաժողովը հանձնարարում է երիտասարդ, տաղանդավոր Ն. Մառին պարբերական հետազոտություններ սկսել Ռուսական Հայաստանում: Նրան կարգադրված էր պեղումներն սկսել առաջին հերթին մեզ ավելի մոտ ժամանակների պահպանված հուշարձաններից՝ ընտրված շրջանների կենտրոնից և աստիճանաբար ընդգրկել դրա ծայրամասերի ու շրջակայքի տարածքների հուշարձանները:

Դրան համապատասխան Ն. Մառը որպես հետազոտության ու հնագիտական պեղումների առաջին վայր ընտրում է Անին՝ ամայացած, բայց

բազմաթիվ կանգուն հուշարձաններ ունեցող միջնադարյան Հայաստանի մայրաքաղաքը: Պեղումներն սկսվում են 1892 թվականին: Այդ և հաջորդ՝ 1893 թվականի ամառը ԳԱ հնագիտական հանձնաժողովի հանձնարարությամբ և հատկացրած միջոցներով հնագիտական որոշ աշխատանքներ են կատարվում քաղաքի կենտրոնական մասի մի քանի կետերում: Դրանց արդյունքներին թռուցիկ կերպով անդրադարձել է ինքը՝ Ն. Մառն իր «Ани, столица древней Армении» փոքրածավալ, բայց քաղաքի ողջ պատմությունն ուրվագծող աշխատության մեջ: Պարբերական բնույթ չկրող այդ պեղումների շնորհիվ բացվել են քաղաքի հին՝ Աշոտյան պարիսպը, մի ամբողջ տոհմային գերեզմանատուն միջնաբերդի մոտ, մի փոքրիկ նեղ փողոց՝ շինությունների կիսատ պահպանված պատերով և այլն:

Դրանից հետո ավելի քան 10 տարի Անիում պեղումներն ընդհատվում են և նորից վերսկսվում միայն 1904 թվականին: Այդ նոր սկսված պեղումներն արդեն ընդհատվում են միայն ավելի քան 13 տարուց հետո՝ 1917 թվականին, առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով: 1904—1917 թվականներին, յուրաքանչյուր տարի ամռանը, Ն. Մառի ղեկավարությամբ, մասնակիցների տարբեր կազմով ու տարբեր ծրագրով կատարվում են պեղումներ, որոնց արդյունքների մի մասը մշակվում էր պեղումների ընթացքում, իսկ մյուս մասը մշակվում և ուսումնասիրվում էր պեղումներից ազատ ամիսներին: Այդ երկարամյա պեղումները նույնպես կատարվում էին հանձնաժողովի հանձնարարությամբ և հայկական համայնքի բացառիկ օգնությամբ ու միջնորդությամբ:

Պեղումների համար անհրաժեշտ ֆինանսական միջոցներն ստացվում էին տարբեր աղբյուրներից՝ Պետերբուրգի Արքայական հնագիտական ընկերությունից, Պետերբուրգի հայկական եկեղեցիների խորհրդից և անհատ մարդկանցից՝ բացառապես հայ հարուստներից, որոնց թվում էին բաքվեցի փաստաբան Ն. Հ. Յուզբաշևը և երևանցի վաճառական ու ձեռնարկատեր Տ. Ն. Աֆրիկյանը: Վերջինս պարտավորվել էր այդ նպատակի համար յուրաքանչյուր տարի տրամադրել 1000 ռուբլի և առաջին մուծումը կատարել է 1916 թվականին: Տարբեր ժամանակներում Անիի հնագիտական արշավախմբի ֆինանսական միջոցները լրացվել են «Մըշակ» թերթի խմբագրության (խմբագիր՝ Ալ. Ա. Քալանթար), Պետերբուրգի Արքայական համալսարանի տրամադրած և արշավախմբի ղեկավար Ն. Մառի՝ Ալեքսանդրապոլում ու Թիֆլիսում կարդացած դասախոսություններից ստացվող գումարների շնորհիվ:

Պեղումների արդյունքների մասին եղած տարբեր հաշվետվություններից երևում է, որ 1904—1917 թվականներին կատարված աշխատանք-

ների ընթացքում Ն. Մառի արշավախումբը ֆինանսական միջոցների մեծ սղություն չի զգացել: Ավելին, արշավախմբի ղեկավարը մի քանի տեղ նշում է, որ իրենք այդ աշխատանքների վրա ծախսում էին բավական միջոցներ՝ պարտավորված զգալով, որ դրանց դիմաց պետք է հասնել համապատասխան արդյունքների:

Ֆինանսական միջոցներին և կատարվելիք աշխատանքների ծավալին ու բնույթին համապատասխան որոշվել է պեղումներին ու մյուս աշխատանքներին մասնակցողների կազմը՝ արշավախմբի անձնակազմը: Անիի պեղումներին ու հնագիտական ուսումնասիրությանը մասնակցել են մի քանի տասնյակի հասնող տարբեր մասնագետներ՝ պրակտիկանտ ուսանողներից մինչև ականավոր գիտնականները ներառյալ, չհաշված օժանդակ անձնակազմը՝ արհեստավորները, սպասարկողները, բանվորները և ուրիշներ:

Այսպես, աշխատանքների ընդհանուր ղեկավար, ակադեմիկոս Ն. Յա. Մառից բացի, որ տոն էր տալիս բոլոր կարգի աշխատանքներին և որոշում դրանց ուղղություններն ու ծավալը, մյուս ականավոր գիտնականներից էին՝ Հ. Ա. Օրբելին, Թ. Թորամանյանը, Յա. Ա. Սմիռնովը, Վ. Վ. Բարտոլդը և ուրիշներ: Մասնակիցների թվում էին ճարտարապետներ Ն. Բունիաթյանը, Ն. Մ. Տոկարսկին, Պ. Ե. Կնյազիցկին, Դ. Ա. Կիպշիձեն, Գ. Ն. Չուբինովը, երիտասարդ բանասեր-պատմաբաններ (որ հետագայում նույնպես դարձան ականավոր գիտնականներ) Ն. Գ. Ադոնցը, Գ. Ղափանցյանը, ինչպես նաև հնագիտության ինստիտուտի իսկական անդամ Ա. Ա. Լորիս-Քալանթարը, պրակտիկանտ Վ. Մ. Բերիձեն, 1912 թ. Պետերբուրգից Անի գործուղված Յու. Կ. Ստրաումեն, նկարիչներ Ս. Ն. Պոլտորացկին և Ա. Յա. Անդրյանովը, լուսանկարիչ Ա. Վրույրը և նրա որդին, ինժեներ տեղագրող Ֆ. Կ. Մոսևիչը, ուսանող Լ. Ա. Քալանթարը և ուրիշ շատերը:

Անիի պեղումների արդյունքներն ու հաշվետվությունները պարբերաբար հրատարակվել են առանձին գրքույկներով: Սակայն դրանց իսկական գիտական ամփոփումը կարելի է համարել Ն. Մառի բազմաթիվ աշխատություններից երկուսը, որոնցից մեկում օգտագործված են միայն 1892—1893 թթ. պեղումների արդյունքները (ինչպես ասվեց, կրում է «Ани, столица древней Армении» վերնագիրը և հրատարակվել է ս. Պետերբուրգում 1898 թվականին), իսկ երկրորդը, որը Անիի հնագիտությանը վերաբերող ամենահայտնի աշխատությունն է, իր մեջ բովանդակում է նաև գրական աղբյուրների հաղորդած տեղեկությունների արդյունքները: Ն. Մառի այդ աշխատությունը, որը նույնիսկ մեր օրերում չի կորցրել իր թարմությունն ու արժեքը, ունեցել է երկու հրատարակու-

թյուն՝ մեկը լենինգրադյանը (1934 թ.), իսկ մյուսը՝ երևանյանը (1939 թ.), և կրում է «Ани, книжная история города и раскопки на месте городища» վերնագիրը։

Ն. Մառից բացի, որին ամենայն իրավամբ կարելի է անիագիտության դափնեկիր համարել, Անիում հիշատակության արժանի գործեր են կատարել նաև հնագիտական ուսումնասիրություններին մասնակցած մըյուս մի շարք հեղինակները՝ Թ. Թորամանյանը, Հ. Օրբելին, Դ. Ա. Կիպշիձեն, Վ. Վ. Բարտոլդը, Ս. Ն. Պոլտորացկին, Ա. Վրույրը և ուրիշներ։ Անիի համեմատաբար ճշգրիտ հատակագիծը, նրա հնությունների, հուշարձանների, թաղերի ու երևացող «փողոցների» նշումով առաջին անգամ կազմել է ինժեներ-տեղագրող Ֆ. Կ. Մոսևիչը, 1908 թվականին տեղում կատարած հանույթի հիման վրա։ Հետագայում նրա թույլ տված սխալները շտկել է Ս. Ն. Պոլտորացկին և հատակագիծը միանգամայն պատրաստ վիճակում հրապարակի վրա է դրվել 1909 թվականին։ Այդ հատակագիծը՝ ավելի փոքր մասշտաբի (օգտվելու համար հարմար չափսերով) կցվել է Հ. Օրբելու «Краткий путеводытель по городищу Ани» աշխատությանը։

Պարբերական ու ծավալուն հնագիտական պեղումների շնորհիվ Անին դարձել էր հետաքրքրության առարկա ոչ միայն գիտական շրջաններում, այլև բնակչության լայն շերտերում։ Ջանգվածորեն բոլորը հետաքրքրվում էին Անիով, այնտեղ կատարվող պեղումների արդյունքներով։ Առանձնապես մեծ հետաքրքրություն էին ցուցաբերում հայկական համայնքները, որոնք ամենից շատ էին շահագրգռված պեղումներով ու դրանց ընթացքում հայտնաբերված նյութական մշակույթի նմուշների պահպանմամբ։ Այս տեսակետից էլ մեզ թվում է այնքան էլ տեղին չէ Ն. Մառի զայրույթը Ս. Պ. Սերեբրյակովի դեմ, որը առաջարկում էր հենց սկզբից ստեղծել ազգային թանգարան, որպեսզի «մեր ազգային ունեցվածքը չքաշեն տանեն և չցրեն» զանազան տեղեր։ Չէ որ Ն. Մառն էլ սկզբում, դեռևս 1893 թվականին, այդ կարծիքին էր և գտնում էր, որ թանգարան պետք է ստեղծվի Էջմիածնում, բայց քանի որ այդպիսին չստեղծվեց, ապա հիմնականում այդ պատճառով էլ պեղումները ընդհատեց ավելի քան 10 տարով։ Երբ հայ համայնքի ներկայացուցչի և Ն. Մառի միջև ծագել էր այդ հարցը, Անիում արդեն մի քանի տարի էր, ինչ ստեղծված էր թանգարան (այդ մասին քիչ հետո)։ Ս. Պ. Սերեբրյակովն, հավանաբար նաև շատ ուրիշներ, Անիի թանգարանը համարում էին խիստ ժամանակավոր, կիսաբացօթյա և անհարմար։ Նա գրում է, որ կանոնավոր թանգարան ունենալու դեպքում հայկական համայնքը հանգանակության միջոցով կարող է պեղումների համար տրամադրել

տասնյակ հազարներ: Սակայն գործի համար այդքան օգտակար առաջարկը Ն. Մառի կողմից ընդունվում է ոչ բարեկամաբար և այն նույնիսկ բնութագրվում իբրև «նեղ ազգային»:

Այդ և նման փոքրիկ «միջադեպերը» անցողիկ էին: Պեղումները շարունակվեցին բնականոն ընթացքով, մինչև առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով Անիի շրջանը ռազմական գործողությունների ոլորտի վերածվելը: Եվ այդ ընթացքում Անին ուսումնասիրվեց այնպիսի խորությամբ ու համակողմանի, որպիսին նախասովետական շրջանում չի ուսումնասիրվել Հայաստանի և ոչ մի քաղաք:

Անիի հնագիտական մանրամասն ուսումնասիրությունն ուներ ոչ միայն հայագիտական, այլև ավելի լայն նշանակություն: Դրանց արդյունքները հնարավորություն են տալիս նաև պարզաբանելու Բյուզանդիայի, Մերձավոր Արևելքի և, նույնիսկ, Հարավային Ռուսիայի քաղաքներին ու տնտեսական հարաբերություններին վերաբերող շատ հարցեր: Անիի հուշարձանների ուսումնասիրությունը մասնավորապես հիմք է դարձել մի շարք ականավոր գիտնականների համար արձանագրելու հայ-վրացական, հայ-արաբական-պարսկական, հայ-բյուզանդական, հայ-սլավոնական, հայ-եվրոպական ճարտարապետական առնչությունները և փոխադարձ ազդեցությունները, որ այնքան կարևոր են ընդհանուր մշակույթի պատմության համար:

Արդ ի՞նչ է կատարվել պեղումների ընթացքում, որ այնքան բարձր են գնահատվում դրա արդյունքները. Բացվել են ամայացած քաղաքի գետնի տակ անցած մի քանի գլխավոր և բավական թվով երկրորդական փողոցներ, հրապարակներ, տասնյակներով արհեստանոցներ, բացվել ու ուսումնասիրվել են ավերակների կույտի վերածված բազմաթիվ եկեղեցիներ ու մատուռներ, հյուրատներ, աղքատ բնակիչների հյուղեր ու անշուք տներ, բացվել ու հետազոտվել են ջրմուղի ցանցը, քաղաքի պաշտպանական ամբողջ համալիրը՝ կործանված պարսպահատվածները, Արտաքին պարսպի փլատակների վերածված մուտքերն ու դրանց երկու կողմերում եղած աշտարակները, Բագրատունիների կործանված պալատը, իշխանական պալատներ, ուսումնասիրվել են քաղաքի ներքին թաղամասերը, Այրային Անին, մասամբ Ստորգետնյա Անին, պաշտպանական պարիսպներից դուրս գտնվող ընդարձակ արվարձանները: Հնագիտական և ճարտարապետական առումով նկարագրվել ու ուսումնասիրվել են եկեղեցիներն ու տաճարները, Սմբատյան պարիսպն ու կանգուն մնացած մյուս պարսպահատվածները, գերեզմանոցները, մատուռները, խաչքարերը, կամուրջների ավերակները: Կատարվել են վերականգնումներ, վերանորոգումներ, հանույթի է ենթարկվել և ստեղծվել ավերված

քաղաքի համեմատաբար լիակատար ու ծշգրիտ հատակագիծը։ Հավաքվել են մի քանի հարյուր վիմագիր արձանագրություններ և պատառիկներ, որոնց մեծագույն մասը (266 հատ) հայերեն, իսկ մնացածը արաբերեն, պարսկերեն, վրացերեն։ Դա մի քարագիր ամբողջական գրադարան է, որ պատասխանում է շատ հարցերի։ Պեղումների ընթացքում հայտնաբերված կենցաղային իրերի, արհեստավորական բազմաթիվ շինվածքների, տարբեր երկրների դրամների, զենքերի, զարդերի, եկեղեցական սպասքի, գործիքների և քաղաքի տնտեսական կյանքն ու բնակչության կենցաղը բնութագրող ուրիշ արտադրանքների թիվը հասնում է հազարների։ Պեղումների ընթացքում հրատարակվել են հանրամատչելի գրքեր, մենագրություններ, պարբերական մամուլում լույս են ընծայվել մեծ թըվով հոդվածներ ու հաղորդումներ։

Այդ ամենով հանդերձ, Անիում կատարված հնագիտական պեղումները անթերի չի կարելի համարել։ Նախ, դրանք տարածքային առումով գերազանցապես ընդգրկել են միայն վաղեմի քաղաքի կենտրոնական մի քանի թաղերը՝ միջնաբերդն ու դրա շրջակայքը։ Քաղաքի տարածքի մեծագույն մասը հնագիտական պատշաճ ուսումնասիրության չի ենթարկվել կամ ուշադրության է առնվել դիպվածով։ Երկրորդ՝ համեմատաբար լավ է ուսումնասիրվել միայն կուլտուրայի վերին շերտերը։ Պեղումների ընթացքում ավելի ցածր շերտերին հասել են միայն մի քանի կետում։ Այդ տեսակետից միանգամայն իրավացի է Թ. Թորամանյանը, գրելով. «Երկու-երեք հարյուր տարի շարունակ ավազակաբարո ցեղերու որջ դառնալե հետո, եթե ավելացնենք Անիի մեջ մեռելակրկիտներու մշտական խուզարկությունները, գանձ փնտրելու համար անվերջանալի պեղումներե զատ, մինչև իսկ եղեցեկիներու պատերու քանդվելը, մինչև մեր օրերը անդադար իբրև քարահանք գործածվելը, միանգամայն կհամոզվենք, որ Անին, զուտ հայկական քաղաքակրթության շրջանի ներքին կենցաղի տեսակետով, մեծ բան չէր կարող տալ, ինչ որ տվավ, մեծ մասամբ վերջին բնակությունն ունեցող այլազան ցեղերու թափթփուկներն էին, հազվադեպ բացառությամբ։

Ի տես այս անվիճելի տխուր իրականության,— շարունակում է նա,— շատ մեծ սխալ կլինի հիմնվելով մինչև այժմ հավաքված տընտեսական, կենցաղային և նույնիսկ եկեղեցական առարկաներու վրա, դատել ու վճռել ավելի քան վեց-յոթ դար առաջ ինքնուրույն զարգացումով այնտեղ ապրող հայ բնակչության քաղաքակրթության աստիճանը...»։ Մի այլ տեղ նա մատնանշում է, որ Անիի բնակչությունն արտագաղթերի ժամանակ իր հետ դեպի նոր բնակավայրերն է տարել ոչ միայն շարժական գույքն ու հարստությունը, այլ նաև եկեղեցիների գմբեթ-

ների խաչերը, սպասքը և, անգամ, դրանց «գեղաքանդակ դռները»։ Այսպես, օրինակ, Անիի Մայր տաճարի դռները, որ այժմ գտնվում են Լենինգրադի Էրմիտաժում, տարված էին Ղրիմ՝ Թեոդոսիա, քաղաքից դուրս էին տարված նաև գրքակալները, եկեղեցական սպասք և այլ իրեր։

Ն. Մառը քիչ է հաշվի նստել այդ պատմական իրականության հետ, զանց է առել նշված հանգամանքները և եկել այն սխալ եզրակացության, որ իբր Անին իր զարգացման գագաթնակետին է հասել ոչ թե 11-րդ դարի առաջին կեսին, այլ Զաքարյանների օրոք։ Այս հարցում նույնպես Թ. Թորամանյանը միանգամայն ճիշտ է. «Շատ կսխալին անոնք, որոնք հայ ժողովուրդը քաղաքակրթության և զարգացման գագաթնակետին կբարձրացնեն 12—13-րդ դարերուն»։

Պեղումների ընթացքում ձեռք բերված տնտեսական ու կենցաղային կյանքը արտացոլող իրերի պակասը, ինչպես նկատում է ճարտարապետության պատմաբանը, կարելի է լրացնել Անիից արտագաղթողների հետագա սերունդների մոտ պահպանված ավանդույթներով ու ավանդություններով։

Մեր ասածները և ճարտարապետության պատմության ականավոր մասնագետի խոսքերը ճարտարապետությանը չեն վերաբերում։ Անիում պեղումներ կատարելու ժամանակ կային մի շարք կանգուն ու կիսականգուն հուշարձաններ, հայտնաբերվեցին ավերված ու հողի տակ անցած շատ կառույցներ։ Այնպես որ Թ. Թորամանյանի այն խոսքերը, թե «Անիի պեղումները անհունապես մեծ ծառայություն մատուցեցին՝ հայոց ճարտարապետության անգնահատելի գանձերը ի լույս հանելով», ինչում են իբրև իրականության ճշմարտացի ընդհանրացում։

Մինչև հնագիտական նյութի հիման վրա Անիում հնադարանի ըստեղծման ու դրա գործունեության մասին խոսք ասելը, հարկ ենք համարում մի փոքրիկ դիտողություն անել Անիի գրավոր աղբյուրների վերաբերյալ Ն. Մառի արտահայտած ոչ ընդունելի կարծիքի մասին։ Ոչ ոք չի կարող ժխտել, որ հնագիտական նյութերը, նյութական մշակույթի մնացորդները պատմության իրեղեն փաստեր են, պատմությունը բնորոշող հասարակական արտադրության արգասիքը։ Բայց անժխտելի է նաև գրավոր վկայությունների հույժ կարևորությունը։ Ն. Մառը պեղումների ու դրանց շնորհիվ ձեռք բերած նյութերի կարևորությունը ավելի ընդգծելու մղումով, թերագնահատել է գրավոր աղբյուրների՝ հատկապես հայ մատենագիրների վկայությունները, դրանք համարելով «կողմնակալ», «ավանդական», «չափազանցված», «միակողմանի» և այլն։ Նա այդ հարցում ինքն է չափազանցության հասել, գրելով, թե իբր «Բուն Անի քաղաքի պատմությունը, ինչպես շարադրված է գրողների (պատ-

մագիրների— Թ. Հ.) մոտ, կարող է զբաղեցնել ընդամենը տաս, քսան րոպե», «խիստ աղքատիկ» է և այլն։ Որ գրավոր աղբյուրները նույնիսկ նվազագույն չափով չեն տվել (և չէին կարող ու նպատակ էլ չունեին տալու) Անիի համակողմանի պատմությունն, այդ փաստ է, բայց որ կան նաև հարցեր, որոնց պատասխանը մենք գտնում ենք ոչ թե անկենդան քաղաքում, այլ կենդանի քաղաքի ժամանակակիցների մոտ, այդ էլ է անժխտելի։ Չէ որ քաղաքի ելևէջներով հարուստ քաղաքական պատմությունն ամբողջապես, հասարակական շարժումները, արտագաղթերը, մշակութային զանազան երևույթներ և բազմաթիվ այլ հարցեր առանց պատմագիրների ու հիշատակագիրների վկայությունների անհնար է պատկերացնել։ Այլ բան է, որ միջնադարյան հեղինակներից պետք է օգտվել դրանց հաղորդագրությունները քննարկելով գիտական-քննական լույսի տակ։

Այնուհետև, ոչ ոք չի կարող ժխտել, որ Անիի հնագիտության ուսումնասիրության բնագավառում Ն. Մառը չունի մրցակից և նրա այդ մեծ ծառայությունը գնահատվել է իր ժամանակակիցների և գնահատվում է ներկա սերնդի ներկայացուցիչների կողմից։ Սակայն այդ ամենևին չի նշանակում, թե կարելի է Ղ. Ալիշանի «Շիրակ» աշխատությունը համարել սոսկ «կոմպիլյացիա», որտեղ իբր «գիտական ստեղծագործությունը փոխարինված է ազգային-ռոմանտիկ տրամադրված ոգով», կամ եվրոպական հեղինակներին, հատկապես արվեստի պատմության մասնագետներին բոլորին համատարած մեղադրել չափազանցության մեջ և համարել «հետազոտողի դերով պատահաբար այդ մարզն ընկածներ...»։ Անիի պատմությունն ուսումնասիրվել է քայլ առ քայլ, շատ երկար ժամանակամիջոցում և այդ ուսումնասիրության բնագավառում կան շատ երախտավորներ, որոնց ծառայությունները մեխանիկորեն ժխտելն անընդունելի է։ Այդ երախտավորներից մեկն էլ մեծ Ալիշանն է, որ առանց Անին տեսնելու, բազմալեզու աղբյուրների հաղորդած տեղեկությունների և այլ կարգի փաստերի (որոնց մի մասը Ն. Մառին հայտնի է հենց պոլիգլոտ Ղ. Ալիշանի շնորհիվ) հիման վրա ստեղծել է Շիրակի գավառին ու նրա հռչակավոր քաղաք Անիին նվիրված «Շիրակ» աշխատությունը, որը շատ կողմերով նույնիսկ մեր օրերում, Ն. Մառի կապիտալ աշխատությունը լույս աշխարհ դուրս գալուց կես դար հետո էլ, չի կորցրել իր թարմությունը, չնայած արդեն ավելի քան 100 «տարեկան է»։

Նորից վերադառնանք Ն. Մառի գլխավորած հնագիտական պեղումներին։ Դրանք, ինչպես ասվեց, սոսկ պեղումներ չէին, դրանց նպատակը միայն փորփորելը, նյութեր հայթայթելը և դրանց հիման վրա քաղաքի հնագիտության և պատմության գիտական շարադրանքի ստեղծումը չէր։

Պեղումները զուգորդվում էին այլևայլ կարգի աշխատանքներով, որոնց մեջ պետք է առանձնացնել հատկապես երկուսը՝ հնադարանի ու հնագիտական ինստիտուտի ստեղծումը, որ այնքան կարևոր դեր խաղացին ձեռք բերված նյութերի հավաքման, պահպանման, ուսումնասիրության ասպարեզում և հուշարձանների պահպանության ու որոշ հուշարձանների վերանորոգման համար կատարված աշխատանքները:

Պեղումների ընթացքում հայտնաբերված իրերն ու առարկաները պահպանելու համար հատուկ պահեստարանի հարցն առաջին անգամ հարուցել է Ն. Յա. Մառը դեռևս 1893 թվականին: Նա առաջարկում էր էջմիածնում այդ նպատակով ստեղծել թանգարան և այնտեղ հավաքել պատմական Հայաստանի սահմաններում ձեռք բերված հնությունները: Սակայն նրա առաջարկը ինչ-ինչ պատճառներով մնում է թղթի վրա, և ըստ Հ. Օրբելու վկայության «նա (Ն. Մառը) հարկադրված էր դադարեցնել պեղումները, քանի որ ծայրահեղորեն ցանկալի չէր Անիի հնությունները ցրել տարբեր թանգարաններում»:

1904 թվականին, պեղումները վերսկսելու հետ միասին, Ն. Մառը հարց է հարուցում հնադարան-թանգարան ստեղծել տեղում՝ Անիում: Առաջարկն ընդունվում է Կայսերական հնագիտական հանձնաժողովի կողմից և հենց նույն ամառը, բժիշկ Հ. Խ. Ջավրիևի Բաքվում հավաքած միջոցներով (950 ռ.) Մանուչեի մզկիթը, որ բավական լավ էր պահպանված, վերանորոգում և դարձնում են թանգարան: Ընդամենը 3—4 տարում հնադարանը լցվում է վիմագիր արձանագրություններով ու ճարտարապետական նշանակություն ունեցող քանդակազարդ հսկա քարերով:

1907 թվականին արդեն նոր, ավելի ընդարձակ հնադարանի ստեղծումը դառնում է խիստ անհրաժեշտ: 1908 թվականի հուլիսի 15-ին գցվում է նոր հնադարանի շենքի հիմքը և սեպտեմբերի սկզբներին ավարտվում է դրա կառուցումը: Անիի այդ հնադարանը կառուցվել է Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների խորհրդի (700 ռուբլի), Պ. Ղուկասովի (1000 ռ.) և Ա. Մանթաշևի (1000 ռ.) տված միջոցներով:

1909 թվականի ամռանը հին թանգարանի իրերի մի մասը տեղափոխվում է նորակառույց հնադարան և վերջինիս հանդիսավոր բացումը կատարվում է նույն թվականի օգոստոսի 20-ին:

Դրանից հետո Անիի հնադարանը փաստորեն բաղկացած էր երկու բաժնից: Այն սովորաբար կոչել են Մառի անունով: Թանգարան-հնադարանի հին բաժինը, որ տեղադրված էր Մանուչեի մզկիթում, համարվեց առաջին բաժին, իսկ 1908 թվականին կառուցված նոր թանգարանը՝ երկրորդ բաժին:

Թանգարանի առաջին բաժնում պահպանվում էին գտածո բոլոր

մանր իրերը, Գագիկ 1-ինի արձանը, տարբեր տեղերից հավաքված գիպսե նախշազարդերը, սվաղի մնացորդները, փայտյա իրերն ու դրանց առանձին մասերը, իսկ թանգարանի նկուղային հարկում կենտրոնացրել էին կավե իրերի կրկնօրինակներ և առանձին բեկորներ, սբ. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու որմնանկարների մի մասը և այլ նմուշներ: Եվ այդ բոլորը դասավորված են եղել ըստ հայտնաբերման թվականների, հնարավորություն ստեղծելով դրանք ուսումնասիրելու համար:

Հնադարանի նոր բաժնի շենքի մոտ պեղումների ղեկավարի ու մասնակիցների համար կառուցել էին մի փոքր տուն: Այդ բաժինը բուն թանգարանից բացի ուներ նաև մի փոքրիկ գրադարան, որտեղ պահվում էին հիմնականում Անիին և միջնադարյան Հայաստանին վերաբերող գրքեր: Այդտեղ էին գտնվում հնագիտական աշխատանքների ղեկավարի և հայտնաբերված իրերի մաքրման ու վերականգնման կաբինետները, ինչպես և ատաղձագործական ու փականագործական փոքրիկ արհեստանոցներ, իսկ բնակելի տան մի սենյակը դարձրել էին լուսանկարչական լաբորատորիա:

Հնադարանի երկրորդ բաժնում կենտրոնացրել էին վիմագիր արձանագրությունները, տարբեր մեծության ճարտարապետական մասեր՝ երեսպատման քարեր, նախշազարդ խոյակներ, խաչքարեր, բարձրաքանդակներ և այլն:

Ականատեսների վկայությամբ, Անիի հնադարանի երկու բաժիններում հնարավորությունների սահմաններում ցուցանմուշները պահպանվում էին խնամքով, դասավորված ըստ հայտնաբերման ժամանակի ու ցուցանմուշների բնույթի: Դրանցում պահպանվում էին ինչպես պեղումների ընթացքում հայտնաբերված, այնպես էլ պատահականորեն հայթայթված առարկաները:

Շուտով թանգարանի երկու բաժինները լցվում են ամենատարբեր կարգի հազարավոր հնություններով և այլևս գրեթե անհնար է դառնում նոր ցուցանմուշներ տեղադրել այնտեղ: Հարկադրված են լինում Մայր տաճարին կից ստեղծել յուրատեսակ բացօթյա թանգարան և այնտեղ հավաքել ճարտարապետական մեծ ցուցանմուշների մի մասը, հետագայում այդպիսի բացօթյա նոր հնադարանների ստեղծման և Անին ամբողջությամբ մի հսկա ճարտարապետական թանգարանի վերածելու մտադրությամբ, ինչպես մտածում էր Ն. Մառը:

Անիի թանգարանում ջանասիրաբար աշխատել ու նրա ցուցանմուշների դասավորությամբ եռանդագին, «երբեմն» նույնիսկ նաև «գիշերները», աշխատել են նկարիչ Ս. Ն. Պոլտորացկին, Հ. Ա. Օրբելին և ուրիշներ: Անիի թանգարանը սոսկ հնությունների պահեստարան չէր: Այն

ռներ իր հրատարակչությունը։ Թանգարանի միջոցով են տպագրության պատրաստվել «Анийская серия» աշխատությունների ժողովածուները, կատարվող պեղումների ամենամյա ընդարձակ հաշվետվությունները, առանձին հարցերին նվիրված գիտական հոդվածներ, բանասիրական ու հնագիտական ծշգրտումներ, թանգարանի կատալոգները, պեղված ու գտնված իրերի ցուցակները և այլն։ Ն. Մառի գլխավորած հնագիտական արշավախումբը հրատարակչության գործին մասնակցելու հետ միասին Անիից բացի հնագիտական ուսումնասիրություններ է կատարվել նաև Շիրակի դրան հարակցող հնավայրերում և այդ ուսումնասիրությունների արդյունքներն ու հաշվետվությունները նույնպես պատրաստել հրատարակության համար։

Պեղումների ընթացքում կատարվել էին հազարավոր լուսանկարումներ, գծագրումներ, արձանագրությունների ընդօրինակումներ։ Տեղում այդ նյութերից օգտվելը թանգարանի գերծանրաբեռնվածության պատճառով գրեթե անհնար էր։ Դրանք պահվում էին Պետրոգրադի համալսարանի արևելյան թանգարանի շենքում։ Դրանք ուրիշ շատ նյութերի հետ միասին, որոնք մինչև հնադարանի բացումը ուղարկված էին Կայսերական հնագիտական ընկերությանը, 1917 թվականին հետ են ուղարկում Թիֆլիս, Կովկասի պատմահնագիտական ինստիտուտ, որի իրավասությանն այդ ժամանակ ենթարկվում էր նաև Անիի հնավայրը։ Պատերազմի պատճառով ստեղծված խառնակ դրության հետևանքով Պետրոգրադից Թիֆլիս ուղարկված հնագիտական այդ ծանր և անգնահատելի բեռը ճանապարհին անհետ կորչում է, անիագիտությանը զրկելով այնքան կարևոր նյութերից։

Գնալով Անիի ավերակներն այցելողների ու դրա հնությունների ծանոթացողների թիվը տարեցտարի ավելանում էր։ Հնագիտական արշավախմբի և հնադարանի աշխատակիցները Անի եկող զբոսաշրջիկներին ու հետաքրքրասերներին ծանոթացնում են հուշարձաններին ու հնություններին, նրանց առաջ երբեմն հանդես գալով դասախոսություններով։ Անիի թանգարան մտնում էին տոմսերով։ 1908—1910 թթ. յուրաքանչյուր տարի, ըստ վաճառված տոմսերի, Անիի հնադարան ամռանն այցելել են ավելի քան երկու հազար մարդ։ Շրջակայքի գյուղացիներից, զինվորականներից ու աշակերտներից բացի, այցելողների թվում էին նաև մասնագետներ, Ռուսաստանի ներքին մարզերից եկող աշակերտական ու ուսանողական էքսկուրսիոն խմբեր, արտասահմանյան գիտնականներ։

Այնպես որ տարիների ընթացքում կատարված պեղումների, երկու բաժնից բաղկացած հարուստ հնադարանի ու հնագիտական ինստիտու-

տի ստեղծմամբ, հուշարձանների պահպանության համար տարվող աշխատանքների, հնագիտական ուսումնասիրությունների արդյունքների (հաշվետվություններ, օրագրեր, գիտական հոդվածներ, մենագրություններ, գիտահանրամատչելի գրքույկներ և այլն) հրապարակմամբ Անին իր հուշարձաններով ու հնություններով ամենուրեք դառնում է հանրահայտնի և դեպի իրեն է ձգում բազմաթիվ մասնագետների և հազարավոր հետաքրքրասերների ու զբոսաշրջիկների: Կարծես թե այն արդեն սկսում էր ապրել իր երկրորդ կյանքը:

Սակայն մի փոքր առաջ գնալով ասենք, որ այդ բոլորը տակնուվրա եղավ առաջին համաշխարհային պատերազմի և դրան հաջորդած տարիների ընթացքում: Թուրքերի նվաճման հետևանքով ոչնչացվեցին Անիի ինստիտուտն ու հնադարանը իր հազարավոր ցուցանմուշներով: Հաջողվում է մի կերպ փրկել միայն ցուցանմուշների մի չնչին մասը և վիմագիր արձանագրությունների ընդօրինակությունները: Ընդ որում, հնադարանի այդ մասնակի էվակուացումը և վիմագրական նյութերի փըրկումը գերազանցապես կապված են Աշխ. Քալանթարի և Անիի պեղումների մշտական մասնակից (Ն. Մառի բացակայության ժամանակ՝ նաև ընդհանուր ղեկավար) Հ. Ա. Օրբելու անվան հետ՝ ականավոր հայագետ-արևելագետ, որի գիտական գործունեության զգալի մասը կապված է Հայոց վաղեմի մայրաքաղաքի ուսումնասիրությանը ընդհանրապես:

Թուրքական բարբարոսական հարձակման ու նվաճման հետևանքով ոչ միայն կիսատ մնացին պեղումները, այլև ընդմիշտ ընդհատվեցին Անիի հուշարձաններն ու հնությունները պահպանելու համար 1877—1878 թվականների ռուս-թուրքական պատերազմից հետո ձեռնարկված աշխատանքներն ընդհանրապես և հնավայրը մատնվեց նորանոր, ավելի սոսկալի ավերումների ու փլուզումների:

Կարսի մարզի հետ Ռուսաստանին միացված Անիի ավերակներով, ինչպես ասվեց, առաջին հերթին զբաղվում են հայկական շրջանները: Բոլորը ոգևորված էին Անիի մի շարք հուշարձանների վերանորոգման ու պահպանության գաղափարով, որ պրոպագանդվում էր մամուլում: Սակայն այդքան մեծ ոգևորության արդյունքները աննշան էին: Անիում հաստատված վանահոր հավաքած միջոցները չնչին էին և չէին կարող նույնիսկ նվազագույն չափով հոգալ պահանջվող մեծ կարիքները: Գևորգ կաթողիկոսի հրամանով և Էջմիածնի սինոդի վճռով Անիի ավերակների պահպանությունը հանձնված էր Կարսի առաջնորդ Աղվանյան Գրիգորիս եպիսկոպոսին և թվում էր, թե վերջինիս եռանդագին գործունեությունը կարող էր հասցնել ցանկալի արդյունքների: Սինոդի կարգադրությամբ Կարսի առաջնորդը ստեղծում է մի հոգաբարձություն բաղկացած 6 ան-

ծից, որը պետք է կազմակերպեր և՛ դրամական միջոցների հավաքման, և՛ հուշարձանների պահպանման ու վերանորոգման գործը: Սակայն հավաքված միջոցներն այնքան խղճուկ էին, որ բավականացրին միայն մի քանի չնչին բաներ կատարելուն: Այսպես, Մայր եկեղեցու ներսը, որ լցվել էր քանդված գմբեթի քարերով, մաքրում են ու մատչելի դարձնում այցելուների մուտքի համար, մի անշուք դուռ են կախում, բեմի վրա դընում են մի սեղան և մի ժամագիրք: Նույն եկեղեցու մոտ կառուցում են մի փոքրիկ շինություն, որը բաղկացած էր 5 սենյակից և նախատեսվում էր տրամադրել ապագա միաբանությանը, երրորդ՝ կանգուն մնացած սբ. Լուսավորիչ եկեղեցին կարգի է բերվում՝ այնտեղ մշտական ժամասածություն սկսելու համար: Այլ աշխատանքներ Անիի հոգաբարձությանը չի հաջողվում կատարել: Նույնիսկ թղթի վրա է մնում այնտեղ հատուկ միաբանություն ստեղծելու գաղափարը և հարկադրված են լինում բավարարվել միայն մի վանահայր-«պահակի» նշանակմամբ, որի մասին մասամբ ասվել է այլ առիթներով:

Մինչդեռ Անիի հոգաբարձությունն ըստ մամուլում հրապարակված ծրագրի նպատակադրվել էր միաբանության համար կառուցել նոր շենք, իսկ արդեն կառուցվածը թողնել ուխտավորներին ու ճանապարհորդներին, վերանորոգել Մայր տաճարը, ընդարձակել այցելուներին տրամադրված շենքը, կարևոր ավերակների վայրերը ազատ գնալու համար հարթել կանոնավոր ճանապարհներ, մոտակայքից բերել ոռոգելու ջուր և շինությունների մոտ ստեղծել ծառուղիներ ու պարտեզներ, ծաղկոցածորում տնկել պտղատու այգիներ, մոտակայքի հայաբնակ գյուղերի երեխաների համար հիմնել մի կենտրոնական ուսումնարան: Այնուհետև, հոգաբարձությունն իր կարևոր գործերից էր համարում նաև ավերակների պահպանումը, ազգային հնագիտության ու պատմության պրոպագանդումը, հնարավորին չափ հուշարձանների ու հնությունների վերանորոգումները, ստեղծվելիք միաբանության և ուսումնարանի պահպանության համար անհրաժեշտ միջոցների հայթայթումը և այլն:

Անիի հնությունների պահպանման և որոշ հուշարձանների վերանորոգման համար Ն. Մառի արշավախմբի ձեռնարկած գործերը համեմատաբար ավելի շոշափելի էին, թեպետև այդ նպատակով հավաքված դրամական միջոցները նույնպես խիստ անբավարար էին: Հնագիտական արշավախմբի կատարած նորոգումներից կարելի է հիշատակել հետևյալները. Ն. Ա. Յուզբաշևի ջանքերով 1906 թվականի ամռանը Բաքվում հավաքված դրամով վերանորոգել են Առաքելոց եկեղեցու գավիթը, որի արևելյան պատն ուղղակի ենթակա է եղել փլուզման: Համեմատաբար մեծ աշխատանքներ են կատարվում 1912 թվականին: Նախ վե-

քանորոգում են պալատական եկեղեցին, որը ենթակա էր կործանման, ապա ավելի վտանգված վիճակում գտնվող «վրացական» եկեղեցին՝ ամբողջովին վերականգնելով վերջինիս արևելյան փլված պատը։ Այդ նույն թվականի հնագիտական պեղումների ամիսներին բավական մեծ ջանքեր ու միջոցներ են գործադրվում սբ. Խաչ և Առաքելոց եկեղեցիների վրա։ Հաջողվում է նորից կյանք տալ փլման եզրին գտնվող ս. Խաչ եկեղեցուն, սակայն միջոցների պակասության պատճառով հնարավոր չի լինում լիովին վերանորոգել նաև ոչ պակաս փլման վտանգի ենթակա Առաքելոց եկեղեցին։ Այնուամենայնիվ, հաջողվում է ներսի կողմից անկյուններում՝ ամենավտանգված տեղերում կանգնեցնել նեցուկներ՝ 8 սյուներ և այն փրկել կործանումից։ Իսկ եկեղեցու այնքան հայտնի գավթի գմբեթը, որի կեսն արդեն կախված վիճակում է եղել, ամրացրել են, այդ մասում կանգնեցնելով փայտյա նեցուկներ։

Հարկ ենք համարում Հովվի եկեղեցու վրա կատարված նույն կարգի աշխատանքների առնչությամբ մի քանի խոսք ասել հետևյալի մասին։ Բայց ինչու համարձակվենք մենք ասել, երբ Վարպետն է պատմում այդ հրաշք եկեղեցին կործանումից փրկելու հանգամանքների վերաբերյալ։ Ընդ որում, մեծ բանաստեղծի խոսքը վերաբերում է ոչ միայն եկեղեցուն, այլև հայ ճարտարապետության մեծ պատմաբանին, Անիում կատարած նրա աշխատանքներին։ Ավետիք Իսահակյանն իր հուշերում գրում է, որ ինքը Թ. Թորամանյանի հետ ծանոթացել է Ալեքսանդրապոլում, և նա «1903 ու 1905—6 թվականներից սկսած աշխատում էր Անիի մեջ և շրջակայքում», որ ինքը հաճախակի այցելում էր Անի և ականատես է եղել, թե ինչպես Անիի վանահայրը՝ «սքանչելի Միքայել վարդապետը», «Անիի ավերակների» այդ «անձնվեր» պահապանը սրտագին սիրել, խնամել, հոգացել է նրա կարիքները, իր մի կտոր հացը կիսել ճարտարապետի հետ։ Վարպետն այնուհետև գրում է. «Մի օր ճարտարապետը չափում և գծում էր Անիի ծիրի մեջ գտնվող «Հովվի» փոքրիկ եկեղեցին, իսկ Վրույրը լուսանկարում էր։

— Այս եկեղեցին պստիկ մի գոհար է... Բայց դժբախտաբար շատ է խարխլված և իսպառ կործանվելու վրա է,— թախիծով ասաց ճարտարապետը,— արդյոք չե՞ս կարող Ալեք-պոլում մի հանձնաժողով կազմել, դրամ հավաքել, որով կարելի լինի որոշ տեղեր կարկատել, նեցուկ դնել, որ չմեռնի։ Ափսոս է։ Ի՞նչ ես ասում, մի լավ մտածիր։ Շատ փող պետք չէ»։

Վարպետը խոսք է տալիս կատարել ճարտարապետի ցանկությունը։ Նա Ալեքսանդրապոլում Նիկողայոս Կարապետյանի և Վաղարշակ Ստեփանյանի հետ միասին հավաքում է մոտ 1000 ռուբլի և տրամադրում

Թ. Թորամանյանին, որն էլ «անմիջապես» գործադրում է «... Գոհարի պահպանման նպատակին»:

Անիով հետաքրքրվողները միայն գիտնականները, ճանապարհորդները, ուխտավորները, զինվորականները, արվեստագետները չէին: Անին մեր ժողովրդի ընդհանուր հետաքրքրության առարկան էր՝ ասացվածքների, ավանդությունների, ոտանավորների աղբյուրը, նկարիչների, գրողների ու բանաստեղծների ներշնչանքի առարկան: Անիի սքանչելի տեսարաններն ու առանձին կոթողներն անմահացրել են ոչ միայն լուսանկարիչները, այլև գեղանկարիչները: Առանձնապես նշելի են Գ. Բաշինջաղյանի Անիին նվիրված կտավները:

Ժողովուրդը զանազան ասացվածքներ ու ավանդություններ է հյուսել իր սիրելի մայրաքաղաքի շուրջը, նրա «1001» եկեղեցիների, «բյուրավոր» պալատների, կործանման հանգամանքների, սելջուկյան ու մոնղոլական գրավումների մասին: Ժողովրդին է պատկանում այն ասացվածքը, թե՝ «Անին շեն, աշխարհս ավեր, աշխարհս շեն, Անին ավեր», դրանով ցանկանալով ասել, որ երբ Անին շեն էր, իբր աշխարհը նրա դիմաց ավերված էր երևում, իսկ երբ այն ավերվեց, իբր միայն այն ժամանակ աշխարհը շեն երևաց:

Անիի դիրքը, նրա գեղեցկությունը մեծ ներշնչանքով է երգել Ներսես Շնորհալին իր «Ողբ Եդեսիոյ» քերթվածում: Հետագայում բազմաթիվ ողբեր, ոտանավորներ ու երգեր են գրվել Անիի, նրա փառավոր անցյալի և հետագայի անմխիթար վիճակի մասին և՛ ինքնուս, և՛ ականավոր շատ գրողների ու բանաստեղծների կողմից: Առաջինների թվին են պատկանում Ալեքսանդր Արարատյանի (19-րդ դ.) «Անի քաղաք նստեր կուլա», Մովսես եպիսկոպոսի (17-րդ դ.) «Ողբ Անիեա քաղաքին...», Գրիգոր Օշականցու (18-րդ դ. վերջեր) «Ողբ ի վերայ Անի քաղաքին» ողբերը, Մկրտիչ Շահնազարյանի նույնպես չափածո քերթվածը, Անկյուրիայի Կարմիր վանքի և շրջակայքի ձեռագրերից մեկի՝ մի հավաքածուի մեջ պահպանված անհայտ հեղինակի «Տաղ ի վերայ Անի քաղաքին» վերնագրով չափածո քերթվածը, որ գրված է Ներսես Շնորհալու ողբի նմանությամբ, և այլն: Հայոց վաղեմի մայրաքաղաքին բազմաթիվ էջեր է նվիրել մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը: Հանդիսավոր է հնչում Ղ. Ալիշանի «Անդորրանք Անւոյ» չափածո քերթվածը, որ նա գրել է հիմք ընդունելով Անիի այցելուների թողած հիշատակությունները: Հայրենաշունչ բանաստեղծի 200 տողից բաղկացած այդ բանաստեղծության մեջ փաստորեն խտացված են Անիի ողջ պատմությունը, նրա զավակների խիզախություններն ու աշխարհաշինությունը, ճարտարապետական կոթողների սքանչելիությունը պատկերող դրվագներ,

Հայոց հռչակավոր մայրաքաղաքի նկատմամբ բանաստեղծի անհուն սերը։

Այժմ նույնպես Անին չի դադարել գրողների, երգի ու բանաստեղծության, գեղանկարչության ու հուշագրության առարկա լինելուց։

Վերջին տասնամյակներում Անիի հնավայրը գրավել է նաև ՅՈՒՆԵՍԿՕ-ի ուշադրությունը։ Նրա հանձնարարությամբ իտալացիականավոր ճարտարապետ Պաոլո Կունեոն երկու անգամ (1967 և 1969 թվականներին) այցելել է Անի՝ առաջադրանք ունենալով պարզել դեռևս մի կերպ պահպանված հուշարձանների ու հնությունների վիճակը, դրանց վերանորոգման ու վերականգնման հնարավորությունները, ավելի լայն տարածք ու մեծ խորություն ընդգրկող հնագիտական պեղումներ կազմակերպելու անհրաժեշտությունը։ Պ. Կունեոն իր կազմած զեկուցագիր-տեղեկագրում նախ նշում է Անիի ավերակների շրջանում Անկարայի համալսարանի հնագիտական արշավախմբի 1965—1967 թթ. կատարած մասնակի պեղումների մասին (որի արդյունքը իբր եղել է Կաթողիկե եկեղեցու մոտ թուրքական մի բաղնիքի մնացորդների հայտնաբերումը), ապա խիստ համառոտ ուրվագծում Անիի անցած ուղին, նրա պատմության, հնագիտության, ճարտարապետության վերաբերյալ եղած գրականությունը, Ն. Մառի կատարած պեղումները, 1917 թվականից հետո հնավայրը Թուրքիային անցնելու ու անմատչելի դառնալու, նրա հնությունների մեծ մասը անհետ կորչելու, իսկ դրանից մի փոքր ուշ հայտնաբերված հնությունները նախ Կարսի թանգարան, ապա այդտեղից էլ Մուշի Առաքելոց եկեղեցի տեղափոխելու մասին։ Այնուհետև, նկարագրում է տարբեր վիճակում մի կերպ պահպանված հնություններն ու հուշարձանները, անելով իր առաջարկները «թե ինչ պետք է անել, որպեսզի նման անգնահատելի հարստությունը՝ Անիի պատմական վայրը պահպանվի և արժեքավորվի համաշխարհային մշակույթի ընդհանուր շրջանում»։ Դրա համար նա առաջարկում է հնավայրի ամբողջ տարածքում պարբերաբար կատարել չափագրումներ, վերականգնել նրա ամբողջական հատակագիծը, ցուցակագրել բոլոր հնություններն ու հուշարձանները՝ տալով դրանց ժամանակակից վիճակի նկարագրությունը, շարունակել Անիի «պատմության, պատմագրության և մասնագիտական քննության գիտելիքների ավելի խորը ուսումնասիրությունը», սկսել նոր, ավելի լայն մասշտաբի պեղումներ և միջոցներ ձեռնարկել համաշխարհային մշակույթի համար կարևոր նշանակություն ունեցող հուշարձանների՝ առաջին հերթին Կաթողիկե տաճարի, Տիգրան Հոնենցի եկեղեցու, Մանուչեի մզկիթի, Կուսանաց վանքի պահպանման համար, ցավով նշե-

լով Առաքելոց, ս. Փրկիչ, Վրացական, Հովվի, պալատական եկեղեցիների արդեն այլանդակված կամ ոչնչացված լինելու մասին:

Պ. Կունեոն հույս է հայտնում, որ «Հոգեբանական որոշ դժվարություններ, որոնք կարող են առաջանալ այն բանից, որ արժեքավորվում է սահմանամերձ մի շրջան, ուր թուրքական հուշարձանների քանակը նվազագույն է, կարելի է հաղթահարել՝ հարցին մոտենալով բաց և արդի տեսությամբ...»: Չէ որ այդպես չեն մտածում թուրքական կառավարող շրջաններն ու «մասնագետները», որոնք թուրքական են հայտարարում իրենց պետության տարածքի բոլոր հին ու նոր հուշարձանները՝ նույնիսկ քրիստոնեական եկեղեցիները: Ուրեմն թող ների բարի առաքելությամբ մեր վաղեմի մայրաքաղաք այցելած իտալացի հեղինակը, եթե նրա առաջարկներն ու մտորումները առայժմ համարենք միայն բարի ցանկություններ:

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

ĩ

ՀԱԿՈԲՅԱՆ ԹԱԴԵՎՈՍ ԽԱՉԱՏՈՒՐԻ

# ԱՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ

Հրատարակության է ներկայացրել
համալսարանի հայագիտության պրոբլեմային լաբորատորիայի
գիտական խորհուրդը


Հրատարակչության խմբագիր՝ Գ. Գ. Բրուտյան
Նկարիչ՝ Ս. Ս. Միլիտոնյան
Գեղարվեստական խմբագիր՝ Ն. Ա. Թովմասյան
Տեխնիկական խմբագիր՝ Հ. Ս. Ալվրցյան
Վերստուգող սրբագրիչ՝ Ս. Վ. Ղազարյան

ԻԲ 818
Հանձնված է շարվածքի 03. 11. 1987 թ.: Ստորագրված է տպագրության 22. 03. 1988 թ.: ՎՖ 01328: Չափսը՝ 60×84 1/16: Թուղթ № 1: Տառատեսակը՝ «Արմենուհի»: Տպագրության եղանակը՝ «Բարձր»: Հրատարակչական 16,8 մամուլ+16 ներդիր: Տպագրական 20,5 մամուլ=19,06 պայմանական մամուլի: Տպաքանակ 20000: Պատվեր 2682:
Գինը՝ 1 ռ. 60 կ.: Գինը՝ սուպեր-շապիկով 1 ռ. 70 կ.:
Երևանի համալսարանի հրատարակչություն, Երևան, Մռավյան փ. № 1:
Издательство Ереванского госуниверситета, Ереван, Мравяна 1.

Երևանի համալսարանի տպարան, Երևան, Աբովյան փ. № 52:
Типография Ереванского госуниверситета, Ереван, Абовяна 52.

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|
| էջ 25, տ. 6—7 | Հիվանդանոցներ | Հյուրանոցներ |
| էջ 127, տ. 7 | Շուշիկի եկեղեցի | Շուշանի եկեղեցի |
| էջ 163, տ. 18 | Հակադակորդի | Հակառակորդի |
| էջ 253, տ. 4 | Իսրաէդ | Իսրաեղ |
| էջ 267, տ. 16 | (1205—1304) | (1295—1304) |

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ